# ԼԻԱԿԱՏԱՐ ՎԱՐՔ

## ԵՒ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

# ՍՐԲՈՑ

Որք կան 'ի հին Տօնացուցի Եկեղեցւոյ Հայաստանեայց ։

Յօրինեալ վաւերական բանիւք ճառընտրաց մերոց և այլոց ազգաց, հանդերձ ծանօթութեամբ ։

'Ի Հ. Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, յաշակերտութենէ մեծին Մխիթարայ Աբբայհօր ։

Հրամանաւ Տն Տն Ստեփաննոսի Ագոնց' Աբբայի և Արքեպիսկոպոսի ։

Արդեամբք մեծատէր Մանուկ Աղայի Կարնեցւոյ մահտեսի Ածատուրեան ։

## ՀԱՏՈՐ. Զ.

Միջոց Խաչին մինչև ցկէսն.

'Ի Մամաս և 'ի փիլիկտիմոնէ մինչև 'ի Ղուկիանոս քահանայ ։



1813. 'Ի ՎԵՆԵՏԻԿ. ՌՄԿԲ ։

'Ի Վանս Սրբոյն Ղազարու ։



Արժան լիցին արքայութ- եան ․
որք աստ յաւէտ ընա խո կան ։

և սննդեամբ 'ի կեսարիոյ կապադովկացւոց, այն է ղայսերի:

Իսկ ծնունդ սրբոյն մամասայ առի լինել ըստ օրինակիս ընդ այսմիկ: Թէոդոտոս կամ Թէոդիտոս անուն ոմն էր հաւատացեալ և ածասէր 'ի քաղաքին գանգրայ` համդերձ ռուփինաւ բարեպաշտ կնաւ իւրով. զորս կալան հեթանոսք, և ստիպէին զոհել կռոց, և ուրանալ զՔն ած: Իսկ նոքա չառին ընդ յանձն, առաքեաց զնս իշխան քաղաքին` որ յոմանց աղեքսանդր կոչի, կապանօք 'ի կեսարիա կապադովկացւոց առ աղեքսանդրոս փոստոս դատաւոր, որ ունէր իշխանութիւն դատելոյ զքրիստոնեայս մինչև 'ի մահ: Նորա իբրև հարցափորձիւ քննեաց զնս դատաւորն, նոքա համարձակութբ խոստովան եղեն զանուն Քի. վն հրամայեաց արգելուլ զնս 'ի բանտ բազում նեղութբ. և էր ռուփինա յղի:

Եւ եղև հիւանդանալ երանելւոյն Թէոդոտոսի, և վախճանիլ 'ի բանտի անդ բարի խոստովանութբ 'ի Քս. իսկ բարեպաշտին ռուփինայ լցան աւուրք յղութե, և ծնաւ 'ի բանտին արու մանուկ. և 'ի ծնանելն մեռաւ և նա, խոստովանողական պսակի եղեւ արժանի ընդ Թէոդոտոսի. զոր հանեալ Թաղեցին առ առն իւրում. և մնաց նորածին մանուկն անհայր անմայր:

Բայց կին մի քրիստոնեայ 'ի քաղաքէ անտի կեսարացւոց` մեծատուն հաւատով, ամմիա կամ ամիա մատրոնա անուանեալ, այն` որ ընդ ամանց 'ի պարտիզի իւրում Թաղեաց զմարմինս

մինչ ծնողաց մանկանն, հրամանաւ հրեշ-
տակի տ̅ն բարձեալ զմանուկն 'ի բանտէ՝ տա-
րաւ 'ի տուն իւր, և սնուցանէր ա̅մ խնամով
և ք̅նական հաւատով։ Եւ յորժամ տարե-
կան եղև տղայն, և 'ի գիրկս առեալ զնա մատ-
րոնայ՝ ողջագուրէր և համբուրէր, սկսաւ
տղայն ձայնել զնա մամա, այս է մայրիկ.
Նմին իրի մայրագիր ն̅ր ետ կոչել զանուն ն̅ր
'ի մկրտութ̅ե Մամաս։ Եւ մինչ զարգացաւ
մանուկն, ետ զնա 'ի դպրոց, և ուսաւ գիր։
Կային ը̅ նմա և տղայք հեթանոսաց 'ի յու-
սումն. իսկ ա̅ծուսոյց մանուկն Մամաս ու-
սուցանէր զդպրոցակիցս մանկունսն 'ի բաց
կալ 'ի սնոտի պաշտամանց կռոց, և հաւա-
տալ յա̅ծ կենդանի՝ որ յերկինսն է։ Օ այն
երբև գիտաց իշխանն դիմիկրատոս կ̅մ դե-
մոկրիտոս, որ կարծի լինել ուսուցչապետ,
կ̅մ դատաւոր նստեալ փոխանակ փոստոսի,
կոչեաց զՄամաս, և հարցանէր՝ թէ իցէ՞
քրիստոնեայ։ Եւ նա խոստովան եղև յայտ-
նապէս զք̅ս. և էր յայնժամ Մամաս ամաց
մետասանից։ Ապա առաքեաց զնա առ ա-
րիանոս դատաւորն եգէացւոց քաղաքին. և
անդ ևս դաւանեաց երանելին զբարւոք դա-
ւանութիւն. վ̅ոյ հրամանաւ դատաւորին գան
հարին դահիճքն զՄամաս, և յաւելին խան-
ձողել զմարմին ն̅ր հրով. և տեսեալ զհաս-
տատութ̅ի մտաց ն̅ր՝ արկին ծանր կապար
'ի պարանոց ն̅րյն, տանել ընկենուլ զնա 'ի
խորս ծովու. և հրեշտակ տ̅ն կորզեաց զՄա-
մաս 'ի ձեռաց դահճաց, և եհան զնա 'ի

լեառն կեսարու ։

Եւ արարեալ անդ աւուրս քառասուն աղօ-
թելով՝ խնդրէր 'ի Տեառնէ յայտնել նմա զկամս
իւր զբարիս, զհաճոյս և զկատարեալս . և
լուաւ ձայն՝ որ ասէր . ընկալ զաւազանս,
և զոր ինչ և խնդրեսցես յայ՝ տացի քեզ . և
առեալ նր զաւազանն՝ հարկանէր զերկիր .
և քանզի 'ի քրիստոնէից փախուցելոց յերե-
սաց հալածանաց 'ի լերինս՝ մնացեալ էր անդ
աւետարան մի 'ի թաքստի, գտեալ զայն
մամասայ՝ ուրախ եղև, էառ և համբու-
րեաց . և գիտաց՝ զի կամք այ են կալ մնալ
նմա առ ժամանակ մի 'ի լեռնակեաց և յա-
ռանձնակեաց վարս ճգնութե՝ իբրև հովիւ
եղանց և անասնոց անապատի, միանգամայն
և հովիւ հոգւոց եկելոց առ նա՝ քարոզութ
աւետարանին ։

Եւ այնուհետև 'ի լերինս ունէր զբնակու-
թիւն իւր՝ հրաժարեալ 'ի բազմամբոխ քա-
ղաքաց, և հաճեալ էր անապատասուն կեանս .
կանխէր հանապազ յաղօթս և յօրհնութիւնս
այ՝ հանդերձ պահօք և ճգնութբք . և մրգօք
միայն շատանայր . և զամ փոյթ բարեպաշ-
տութե 'ի մէջ առնոյր, մինչև զզգաստութի
առաքինութե ուղղել, և կատարեալ վարս
ստանալ ածահաճոյս . լի իմաստութ և բարի
խորհրդով . և յընթերցմունս սբ գրոց անե-
ձանձրոյթ . ուսեալ էր և զսաղմոս 'ի բերան ։
Ունէր և ձայն զարմանալի իբրև զբազմա-
բարբառ քնար . և 'ի սաղմոսելն հալածէր
զամ ոգիսն չարութե . և զգազանս մարմնոյն խա-

ղա

զաղացուցանէր . և էր իբրև զանմարմին ոք յերկրի , երկնաւոր կրօնիւք վարեալ ։ Տեսանէր տեսիլս ա̃ծեղէնս . և յետ ժամանակաց անցելոց լսէր ձայն , որ ասէր ցնա . ժամանակ պատերազմի , և ժամանակ խաղաղութե̃ . ժամանակ արհամարհելոյ զառժամանակեայ զկեանս , և բուռն հարկանելոյ զյաւիտենական կենացն ։ Եւ նր̃ լուեալ զայն՝ պնդէր զխորհուրդս իւր , և պատրաստէր տալ զանձն 'ի հանդէս վկայութե̃ վ̃ն անուանն ա̃յ . քանզի գիտաց , եթէ կամք ա̃յ են յայտնել այնուհետև զանձն իւր . վ̃յ և զերկիւղ մահու 'ի բաց ընկեցեալ՝ առանց զանգիտելոյ այնուհետև ցուցանէր զինքն ամենեցուն . և բազումք եկանէին առ նա ։ Եւ տեսեալ զնա հեթանոսաց հովուացն՝ որ 'ի լերինն էին , և զվայրենի անասունսն՝ զոր ձեռնասուն արարեալ էր սորին , իջեալ 'ի քաղաքն՝ պատմեցին ամենեցուն . և յաճախեաց բազմութի̃ գնալ առ նա ։ Եւ տեսանէին զսքանչելիսն , մանաւանդ զեղջերուսն հանդերձ եղամբք , որք իբրև իջաւանս ինչ առնէին առ նմա , նախ՝ վ̃ն աղբերացն , որ էին անդ . դարձեալ և 'ի գազանաց փախուցեալ՝ իբրև յամուրս ինչ անդ ապաւինէին . զորս ընդելացուցեալ նորա՝ կթէր բազում անգամ . ք̃զի և շուրջ զյարկաւ նորա ծնանէին ։

Եւ հաս համբաւ նորա մինչև 'ի հեթանոսս , և յոյժ խռովեաց զն̃ս . քանզի բազումք վարդապետութե̃ նր̃ դառնային յա̃ծ կենդանի .

որում

որում ոչ կարացեալք համբերել պաշտօնեայք կռոցն՝ երթեալ առաջի իշխանին՝ ասեն. Կախարդ ոմն է՛ի լերինն, որ կախարդէ զերդջերուս. և զբազումս յիմարեցուցանէ գիտութեմն. և ասէ, թէ չեն դիքն ստեղծօղք ձի և յօրինիչք ամի, այլ՝ ոմն յս քս ած ճշմարիտ, որ զամ ինչ արար և յօրինեաց. այն՝ զորմէ հրեայքն ասեն, թէ մոլորեցուցիչ էր:

Զայն լուեալ իշխանին՝ հրամայեաց փաղփաղակի երթալ ըմբռնել զմանուս. և զահճացն երթեալ գտին զնա, զի յաղօթս կայր, և երգէր զերգս հոգևորս. և զարմացեալ ը սքանչելի տեսիլ նր՝ ոչ իշխէին բուռն ինչ գործել նմա. այլ որոք բանիւք ողջագուրեալ՝ աղաչէին գալ ը իւրեանս առ իշխանն: Իսկ նա ուրախութբ մեծաւ հաւանեցաւ գնալ. այլ միայն կամեցաւ յառաջագոյն կատարել զառաքինի մարդասիրութե զգործ. աղափութացեալ նոյնժամայն եդ առաջի նց միրգ. և պանիր եղանց, զոր ինքն էր գործեալ. և աղաչէր՝ զի կերիցեն. և նք կերան և արբին. և յարուցեալ անկան 'ի ճանապարհ նովաւ հանդերձ:

Իբր եկեալ 'ի կեսարիա առ իշխանն՝ կացուցին առաջի զերանելին. յայնժամ ասէ ցնա իշխանն. որդի՛ կախարդ ես, և զի՛նչ է արուեստ կախարդութե քո. մինչ յառաջ քան զտանջանսն խոստովանեսցի զխաբէութի քո: Սամաս ասաց. ես զքս ունիմ. ո՛չ կախարդ եմ, և ո՛չ խաբեբայ. քանզի այնպիսիքն

Ճէլլի կարգ ։

փորձել կամեցաւ զնա դատաւորն և ասաց բանիւք . ասէ . Եկ հաւանեաց պարգևաց թագաւորաց , որ շնորհեմ քեզ զպատիւ և զփառակցութիւն և զմեծութիւն . Լեր կենաց խորհրդակից անձին քում ։ Պ̃տնի ետ վկայն ք̃րի . այդ ա̃ծ է՝ որ մոլորեցուցանէ զքեզ ապստամբեցուցանել յա̃յ , անցաւորացս ասեմ վայելչութիւն . զոր մեք կամօք արհամարհեցաք և ընկեցաք՚ի բաց իբրև զխափանիչ առաքինութե̃ն . և եթէ դուք այդու համարիք զանձինս երանելիս յաստի կեանս , յետ մահուա̃ն ձերոյ չիք ոք ողորմելի քան զձեզ ։ Բարկացաւ դատաւորն և ասէ . զոհեա թշուառական , զի մի և ՚ի հոգւոյդ զրկեսցիս ։ Զայս ասացեալ՝ հրամանն ետ մատուցանել զնա ՚ի տանջանս ։ Մատեան ասաց . հաւատամ իմն ով իշխան , զի դու թերևս շարժիս ՚ի բարկութէ . այլ յիս ամենևին ցաւ ոչ մերձենայ , ա̃յ իմոյ մարդասիրի զցաւելն՚ի բաց առեալ յինէն . զոր օրհնեմ հոգւով և փառաւորեմ յա̃մ զօրութէ . զի արժանի արար զիս զստառապեալս վ̃ն իւր չարչարիլ ։ Դատաւորն ասէ . ահա յայտնի երևեցար ամենեցուն կախարդ գոլ . զի և ցաւոց անզգամ չզգալ ասես . վ̃ն որոյ և ես հանեից զքեզ՚ի քաղցր կենաց ։ Նա ցդահիճսն ասէ . մինչև ցներքինս ոսկերս մերձեցուցէք զքերանսն , և երկաթօք զձեռս դորա գելեալ՝ անպիտան կացուսջիք ։ Նա ն̃ք բուռն ձկտանօք զբազուկս երանելւոյն յօդախաղաց առնէին ՚ի

և ամբոխն անօրինաց աղաղակէր, զի առիւծ արձակեսցեն: Եւ իբրև արձակեցին, եւ առիւծն գոչելով. և թողեալ զսրբն՝ յամբոխն դառնայր. և այնպէս ահ արկեալ նց՝ 'ի տեղի իւր չոգաւ: (3)

Մինչդեռ զայրացեալ կայր դատաւորն, և զմտաւ ածէր՝ թէ որով մահուամբ սպանցէ զնա, ձայն ետ առ նա սրբն մամաս արիաբար, և ասէ. ածատեաց և մարդատեաց, և թշնամի արդարութե, զի՞ յապաղես առնել զկամս հօրն քո սատանայի, և յուղարկել զիս 'ի պսակն պատրաստեալ յերկնաւոր հանդիսադրէն: Յայնժամ հրաման ետ դատաւորն, զի ամ ամբոխն քարկոծեսցեն զնա. և բազմութեն կրձտեալ զատամունսն՝ կուտեցան 'ի վր նր, և քարկոծ արարին իբրև ժամ մի, մինչև համարեցան՝ թէ մեռաւ. այլ նա տակաւին յաղօթս կայր 'ի վր սպանողաց իւրոց: Յայնմ վայրի թը ակնարկելոյ դատաւորին յարձակեցաւ 'ի վր սբյն ըմբիշ մի, և եհար զնա երեքժանի նիզակաւ, կմ տապարաւոր գեղարդեամբ. և սբն յարուցեալ եկաց 'ի վր վիմի արտաքոյ քաղաքին կեսարու իբրև ասպարէզս երկուս, և օրհնեաց զած. և հեղոյր 'ի մարմնոյ նր արիւն ոպ յաղբերէ: Եւ նոյնժամայն ձայն եղև 'ի տնէ, և կոչեաց զնա յարքայութն երկնից. և այնպէս հայեցեալ մամասայ յերկինս՝ աւանդեաց զհոգին 'ի ձեռս այ 'ի սկզբան տարեգլխոյն յունաց, որ օր առաջին կմ երկրորդ էր սեպտեմբեր ամսոյ՝ յամի տն իբր

274 : Մոյ և մեծն բարսեղ կեսարացի ասէ
'ի կատարած ներբողեանի սրբոյն Մամասայ ,
զոր խօսեցաւ 'ի վկայարանի նորա . * Իսկ այն՝
,, որ գլխաւորեաց զմեր զայս տօնաժողով
,, հանդէս , և սահման եդ ուխտից անցե-
,, լոյ ամի , և գլուխ եւս առաջիկայ տարւոյս .
,, քանզի սոյն այս օր աւարտէ մեզ զանցեալ
,, շրջանն , և գլուխ լինի դարձեալ եկաւորե-
,, լոյն . արդ՝ որ ժողովեացն զմեզ միաբան ,
,, և շնորհեաց զհանդերձեալոյն զներգործու-
,, թիւն , պահեսցէ և պահպանեսցէ զմեզ 'ի
,, նմին անարատս , անփորձս և անյափշտա-
,, կելիս 'ի գալլոյ . և անշարժ պահեսցէ զե-
,, կեղեցիս զայս զպարսպեալն մեծամեծ աշ-
,, տարակօք վկայից " : Իսկ գրիգոր Ածա-
բանն 'ի ճառն նոր կիւրակէի նշանակեաց և
զյիշատակ սրբոյն Մամասայ , կոչելով զնա
* հովիւ և վկայ , և իմ պսակաւոր , որ յա-
ռաջ եղինս կթէր " . զի թերևս յայն օր կա-
տարէր նաւակատիք եկեղեցւոյ նորա , և կամ
փոխադրութիւն նշխարացն :

"Սիկեստոս մեկնիչ ճառի Ածաբանին ասէ
իբրև յաւանդութենէ , թէ ամենայն դայեակն
Սրբոյն Մամասայ ամփոփեաց զմարմին նորա , և
շինեաց զվկայարան 'ի վերայ գերեզմանին՝ իբր
ասպարիզաւ հեռի 'ի կեսարիոյ . իսկ այլք
համարին զամենայն յառաջագոյն վախճանեալ .
և զեկեղեցին յետ ժամանակաց շինեալ ,
կամ 'ի հիմանց հոյակապ կառուցեալ յաւուրս
մեծին բարսղի . զորմէ այսպէս գրէ սոզոմե-
նոս ( Գիրք . Ե . Գլ . Գ ) : 'Ի ժամանակին՝ յա-

Բ ւում

բում չև էր յուլիանոս ապստամբեալ 'ի քսէ ,
և չև ևս էր թագաւորեալ , այլ յիշխանա-
կան կարգի հանդերձ եղբարբ իւրով գաղղ-
սիւ՝ վարէր զքրիստոնէութիւն , երկոքին սք
եղբարք կային 'ի հրահանգս սննդեան յեր-
կրին կապադովկացւոց 'ի շէնն մակեղոն կո-
չեցեալ առ արգէոս լերամբ՝ ոչինչ հեռի 'ի
կեսարիոյ . մեծարէին զքահանայս և զեկե-
ղեցիս : Արդ 'ի նոյն աւուրս ձեռն արկին
սոքա , որպ ասի , պատել զգերեզման մամա-
սայ վկայի մեծակառոյց վկայարանաւ , բա-
ժանելով զգործն 'ի մէջ իւրեանց : Իսկ յոր-
ժամ միմեանց յաղթել ջանային մեծագոր-
ծութբ , գործ դիպաւ զարմանալի՝ և ամե-
նևին իսկ անհաւատալի , եթէ չլինէին բա-
զումք 'ի նոցանէ առ մեօք կենդանի՝ որք յա-
կանատեսից անտի լուեան զիրսդ : Վասն զի
այն կողմն գործոյն՝ որ անկաւ գաղոսի , եր-
թալով երթայր և բարձրանայր , և ըս փա-
փաքման նորա յառաջ խաղայր . իսկ գործն
յուլիանոսի՝ էր զի կործանէր անկանէր , և էր
զի հիմն 'ի վեր տապալէր . մինչ զի և ուրեք
ուրեք չհանդարտէր գործոյն տեղակալել 'ի
գետնի՝ իբրև յերեսաց դիմամարտ ընդունէր
'ի բաց վանեալ քակտէր : Զսոյն զայս յիշա-
տակէ և ժամակիցն գրիգոր ածաբան ( որ
յայնժամ յաթէնս էր ) , 'ի ճառն դ . ընդդէմ
յուլիանոսի . ուր յետ նշանակելոյ զայս
սքանչելիս՝ 'ի վր բերէ . * Ապա եթէ ոք
,, ոչ արժանահաւատ դատեսցի զիմ բանս ,
,, զնոսին իսկ վկայս 'ի մէջ առից՝ որք ակա-

„ նաւատեսեղեն իւրայն, քանզի ղեւպատուամն ու-
„ նիմ, որք արդէն առ մեզ հասուցին զայս
„ ոգւանչելիս, նոյնպէս և յետնոց աւանդեա-
ցեն »:

Յետ ժամանակաց շինեցաւ և 'ի կոստանդենուպօլիս եկեղեցի յանուն նորին մամասայ 'ի լեւոնէ կայսերէ առաջնոյ. և առ նմին վանք նորին մամասայ՝ քսիլոկերկոս կոչեցեալ. զոր ըստ ոմանց շինեաց փարսման ներքինապետ յուստինիանոսի. և ըստ այլոց քոյրն մօրիկ կայսեր, որ ետ թաղել անդ զմարմին եղբօր իւրոյ սպանելոյ 'ի փոկասայ՝ համդերձ կոստանդինէ դշխոյիւ, և երեք որդւովք նոցա: 'Ի վանս անդ սրբոյն մամասայ՝ զոր զկնի դարուց նորոգեաց կայսրն իսահակ անգեղոս, զորին լատինացիք զգլուխ սրբյն յառնուլ իւրեանց զկոստանդինուպօլիս յամի տն 1204. տարեալ արծաթի շրջանակաւ՝ յորում գրեալ էր հին նշանագրօք յունաց, այսօս ձաձաս. և տարան 'ի գաղղիա, 'ի լինգոն կամ լանկրէ քաղաք շամբանիոյ. ուր և քաղուկ մի նորին նոյ, և ոսկր պարանոցին, և այլ նշխարք յայլում ժամանակի տարեալ եղեն անդր: Թող զի և այլ գլուխ համանուն սբյ գտանի 'ի լուկա քաղաք իտալիոյ. և յայլ տեղիս պանծալի մասունք յանուն սբյն մամասայ. ուր և եկեղեցիք և մկայարանք կային երբեմն յանուն նր 'ի հռաւեննա իտալիոյ, 'ի վերոնա, և 'ի թրեվիզ, և 'ի վիճանկին միդուլեայ կմ մեդիոլանու:

Այլ հաշակաւոր է քան զամ նշխարս սբյն մա-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սբյն Փիլիկտիմոնի, որ ըստ այլոց՝ Փիլումենոս:

Հ. դեկտ. 2: Յ. Լ. նոյեմ. 29:



ԵՐԱՆԵԼԻՍ ԱՅՍ ՎԿԱՅ քի, որ 'ի տօնացոյցս մեր Փիլիկտիմոն կմ̃ Փիլիքտիմոն անուանի, և 'ի յայսմաւուրս Փիլիմոն կմ̃ Փիլիմանոս. Ը̃ յունականին Փիլումենոս (որ թարգմանի սիրեցեալ, կամ սիրելի), խորհրդով տնօրինմանն 'ի մէջ Ը̃ սբյն մամասայ, զի 'ի նոյն հալածանս աւրելիանոսի կայսեր կատարեցաւ. և սա իսկ չէր կարի հեռաւոր. քանզի բնիկ էր յերկրէն լիկայոնիոյ, և վաճառական ցորենոյ. զոր առեալ բերէր և վաճառէր յանկիւրիա քաղաք գաղատացւոց: Այլ քանզի քրիստոնեայ էր, և ոչ ծածկէր զհաւատս իւր նաև յաւուրս հալածանաց, մատնեցաւ յատեան իշխանին անկիւրիոյ. և հարցափորձեալ համարձակ խոստովան եղև զքս̃ ա̃ծ, և անարգեաց զկուռս:

Յայնժամ հրամանն ետ իշխանն., և հեղուին յոտս և 'ի ձեռս քաջ նահատակին բևեռս եր-

երկաթիւ , և տանջեցին չարաչար . ապա հանեալ ՚ի կախաղան՝ քերեցին . և յետ քերանաց արկին զնա ՚ի հնոց բորբոքեալ : Եւ իբրև անվնասելի պահեցաւ զօրութեամբ այ , միւսանգամ բևեռս անցուցին յաչս և ՚ի ձեռս նր և ՚ի գլուխն . և խաղացուցին ընդ ասպարէզս երեսուն . կամ ոմն այլք գրեն , զերկուս ձեռս բևեռեցին ՚ի գլուխն , և զերկոսին ոտսն ը միմեանս , և այնպէս քարշեցին ը երկիր : Եւ յայնպիսի տանջանս աւանդեաց երանելին զհոգին իւր առ ած :



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Սիմէոնի Սիւնակեցի առաջնոյ :

Հմ. Յ. տօնից . 1 : Լ. յայսմաւուր . 5 : Բոլլանդեան յունվ. ՚ի ա. հատոր. յունվ . եջ . 261 = 286 : Մ. վարք հարանց : Ա. նորին աշակերտ Անտոնի : Թէոդորետոս ՚ի Փիլոթէոսն : Եւագրիոս . Միքայէլ . և այլք բազումք : (1)



ԱՇԽԱՐՀԱՎԱՐՈՂ այրն այ , և կատարեալ ճգնաւորն քսի՝ մեծն սիմէոն սիւնակեաց , էր յաւուրս կայսերութե Թէոդոսի փոքու և յաջորդաց նր , ՚ի սիսան գեղջէ՝ որ ՚ի սահմանս անտիոքայ ասորւոց .

ա-

անուն հօր նր իսիւքլիոս , և մօրն մարթա ․ աննշան , այլ բարեպաշտ ծնողաց զաւակ ․ որ 'ի տղայութեն արածէր զխաշինս հօր իւրոյ ․ իսկ յաւուրս կիրակէից կանխէր յեկեղեցին , և լսէր զածային գիրս ։ Եւ յորժամ եղև նա ամաց իբրև երեքտասանից , լուեալ յեկեղեցւոջ զընթերցուած առաքելոյն պօղոսի և զաւետարանական երանութիս , վառեցաւ սիրտ նր առաւել քան զսովորականն 'ի սէր և յերկիւղն այ ։ Եւ գտեալ ծերունի զոմն ածասէր՝ հարցանէր 'ի նմանէ ․ զի՞նչ էր հայր բանն կարդացեալ ։ Եւ ծերն ասէ ․ վն ժուժկալութե անձին որդեակ ։ Սիմէոն ասէ ․ և զի՞նչ ժուժկալութին իցէ , աղաչեմ զքեզ հայրիկ , ուսո զիս , զի մանուկ տգետ եմ , և ցանկամ ճանապարհին այ ։

Յայնժամ ասէ ծերն ․ ժուժկալութին փրկութի է անձին , առաջնորդ լուսոյ՝ որ տանի յարքայութին երկնից ․ և եթէ ուսանել կամիս որդեակ , ժուժկալութի է՝ եթէ ոք պահս պահէ սբ սրտիւ , և յաղօթս կայ այ երկիւղիւ և պատկառանօք , կատարելով զպաշտօն առաջին ժամուն և զվեցերորդին և զիններորդին և զգիշերայինն , և հպատակելով այ գործոց բարեաց զցայգ և զցերեկ․ զորս և յաշխի մարթ է լնուլ , այլ այս այ օրէնք կատարին 'ի վանս ։ Ահա իմացար որդեակ․ քննեա զայս այ 'ի սրտի քում, և ընտրեա զքո բարին ․ զի եթէ ցանկանաս զկատարեալ ճանապարհէն բուռն հարկանել , պարտ է քեզ և քաղցնուլ և ծարաւիլ , մերկ

երկաթիւ, և տանջեցին չարաչար. ապա
հանեալ 'ի կախաղան՝ քերեցին. և յետ քե-
րանաց արկին զնա 'ի հնոց բորբոքեալ։ Եւ
իբրև անշիջանելի պահեցաւ զօրութեամբն այ,
միւսանգամ բևեռս անցուցին յոտս և 'ի
ձեռս նր և 'ի գլուխն. և խաղացուցին ընդ
ասպարէզս երեսուն. կամ որպ այլք գրեն,
զերկուս ձեռս բևեռեցին 'ի գլուխն, և զեր-
կոսին ոտսն ը միմեանս, և այնպէս քարշե-
ցին ը երկիր։ Եւ յայնպիսի տանջանս աւան-
դեաց երանելին զհոգին իւր առ այծ ։



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Սիմէոնի Սիւնակեցի առաջնոյ ։

Հյ. Յ. սեպտ. 1 ։ Լ. յունվար. 5 ։ Բոլլանդ. յունվ. 'ի ա հատոր. յունվ. եջ. 261=286 ։ Մարտ հոռոմոց ։ Նորան աշակերտ սէյն ։ Խնկողորնեայս 'ի ծննդեանն ։ Նահատակ. մեծարեալ. և այլք ճառագայթ ։ (1)

ԱՇԽԱՐՀԱՔԱՐՈԶ այրն այ, և կատարեալ ձգնաւորն քսի՝ մեծն սիմէոն սիւնակեաց, էր յաւուրս կայսերութեն Թէոդոսի փոքու և յաջորդաց նր, 'ի սիսան գեղջն՝ որ 'ի սահմանս անտիոքայ ասորւոց.

ա-

լինել, զրկիլ, անպատակիլ, նախատիլ, հե-
ծել, արտասուել և ողբնիլ. երբեմն առողջ,
և երբեմն հիւանդ լինել. յիրս իրս բերիլ,
և յայլոց հրաժարիլ. խոնարհութիւն յանձին
ունել, հալածանաց համբերել, և բազում
ինչ կրել՝ ի մարդկանէ. սակայն և ոչ այնպէս
անայցելու մնայցես ՝ի հրեշտակաց այ: Ահա
լուար որդեակ զբանն. Տէրն փառաց տացէ
քեզ միտս բարիս ըստ յօժարութեան սրտի քո:
Յայնժամ գնացեալ սիմէոնի ՝ի վկայարան
սուրբ սբոց՝ տարածեաց զանձն ՝ի գետին, և
խնդրեաց ՝ի նմանէ ցուցանել նմա ճանապարհ՝
յոր գնասցէ: Եւ ինչ ոչ զգացուցեալ ծնո-
ղացն՝ դիմեդեալ չոգաւ ՝ի տեղի անապատ.
ուր անկեալ ՝ի վր երեսաց իւրոց յերկիր՝
լայր և աղաչէր զած, անսուաղ ամենևին
զաւուրս եօթն: Եւ յետ աւուրց եօթանց ել
գնաց առաջնորդութբ նն ՝ի կողմանս տե-
ղեդայ աւանի՝ ՝ի վանս հեղիոդորոսի աբբա-
յի, որ էր այր հոգելի և մեծ առաջի այ. և
ընկեցեալ զանձն յոտս նորա արտասուօք՝
ասէր. ողորմեա՛ ինձ մեղաւորիս և հիգոյս.
ապրեցո՛ զանձն իմ կորստական, որ ցանկայ
ծառայել այ:

Ասէ արքիմանդրիտն. ո՞վ ես դու, և ո՞յր որդի.
զի՞նչ անուն է քո, և ուստի՞ եկիր առ մեզ:
Պատասխանի ասէ. ազգաւ ազատ եմ ՝ի մար-
մնաւոր ծնողաց. և անուն իմ սիմէոն է. բայց
զծնօղս իմ և զտեղի մի՛ խնդրեր. աղաչեմ
տր, այլ ապրեցո՛ և եթ զանձն իմ: Յայնժամ
յարոյց զնա հայրն զուարթութեամբ, և ասէ.
եթէ

եթէ յԱստուծոյ առաքեցար որդեակ, Աստուած ապրեցուսցէ և պահեսցէ զքեզ՝ անփորձ յամենայն չարէ և 'ի խարդախութեանց չարին. և դու հպատակ լինիջիր ամենայն եղբարց, և ծառայեսցես նոցա սիրով. զի և ամենեցուն սիրելի լինիցիս ։ Նորա ընկալեալ Սիմէոնի զձև կրօնի՝ եկաց 'ի վանսն անդ ամենայն բարեկարգութեամբ, և հանճարական վարուք առաջի Աստուծոյ և մարդկան. և անձանձրոյթ ծառայէր եղբարց. և այնչափ 'ի ճգնութիւն կայր և 'ի պահեցողութիւն, մինչև ամենեքեան զարմանային ։ Իսկ ծնօղք նորա զամս երկու ոչ դադարէին 'ի խնդրել լոյ զնա լալագին. և ոչ կարացին գտանել կամ իմանալ զտեղի նորա ։

Եւ եղև յետ կալոյ Սիմէոնի 'ի վանսն անդ զամս իբրև երիս՝ ըղձանայր յե՛ս խստակրօն վարս յառաջադէմ լինել ։ Եւ յաւուր միում երթեալ 'ի ջրհոր վանացն՝ էառ զպարան դոյլին, որ էր մաղեայ կամ հիւսեալ յարմաւոյ. և քակեալ զայն՝ լայնեաց փոքր մի, և պատեաց 'ի մերկուց զմիջովն իւրով. և այնչափ պնդեաց, մինչև յոսկերսն թաղեցաւ. և զգեցեալ 'ի վերայ զխորգեղէն քուրձն իւր՝ եկն առ եղբարսն, և ասէ. գնացի առ ջրհորն, և ահա պարան ոչ գոյ անդ, զի լինիցի հանել ջուր ։ Եւ նոցա կարծեցեալ՝ եթէ կորեաւ, ասեն ցնա. լաւ լեր, զի մի՛ հասցէ բանն յականջս աբբայուն, և բարկասցի մեզ. և ոչ գիտաց ոք՝ զոր արարն Սիմէոն ։ Եւ 'ի մնալ այսպէս ժամանակս ոչ սակաւ (2)՝ նեխեցաւ մարմինն նորա, և ժահահոտութիւն

յոյժ

յոյժ եւ լանէր 'ի նմանէ , մինչեւ չհանդուրժել այլոց մերձենալ առ նա . իսկ սենեակն եւ խշտի նորա լի էր որդամբք . եւ ընդ այսպիսի անքերելի նեղութեան առաւելոյր 'ի պահս . եւ զկերակուրն՝ զոր տային նմա , 'ի ծածուկ տայր աղքատաց . քանզի եղբարքն յաւուրն միանգամ ընդ երեկս առնուին կերակուր . իսկ սրբուհին կիրակէէ 'ի կիրակէ ճաշակէր : Զոր իմացեալ միոյ յեղբարցն՝ զեկոյց հօր վանացն , եւ ասէ . սրբուհիդ այդ խախտել կամի զկարգ վանացս , եւ զկանոնս՝ զոր դուդ մեզ ետուր . զիւր հացն եւ զըմպելիսն՝ տեսի , զի տայ աղքատաց . եւ ինքն միանգամ յեօթնեկի ճաշակէ . թո՛ղ զի որդունք եռան 'ի սենեակ նորա . արդ եթէ այլ եւս պահել կամիցիս զնա , մեք 'ի բաց գնամք աստի :

Զարմացաւ հայրն . եւ եկեալ զանխուլ 'ի սենեակն՝ ետես զխշտիս նորա որդնալից . եւ ասէ . ահա նոր յոբ : Կոչեաց զսրբուհին , եւ ասէ ցնա յանդիմանելով եղբարց . զի՞ գործեցեր զայդ . ուստի՞ իցէ այդ նեղութիւն 'ի քեզ . եւ ընդէ՞ր տրտմեցուցանես դու զեղբարս՝ լուծանելով զկանոնս վանացս . միթէ անշունչ պատկե՞ր իցես՝ ժուժկալել այդչափ խստութեան եւ պահոց . ասա՛ մեզ , եթէ արդարեւ մա՞րդ իցես դու , որ ոչ պատմեցեր եւ զտուն հօր քո : Իսկ երանելին սրբուհին 'ի խոնարհ ունելով զդէմս՝ լուռ եւեթ կայր , եւ միայն արտասուս ցօղէր յաչացն : Նոյն հայրն իբրեւ զայրացեալ . մերկացուցէք զդա , զի տեսցուք՝ ուստի՞ իցէ ժահահոտութիս : Բայց

չեւ

դիտ Ջրհոր մի ցամաք՝ լի թունաւոր զեռա-
նօք. որ և համարեալ էր բնակութի՛ դիւաց,
մինչև բազմաց զանգիտել անցանել ընդ այն.
անդր ընկեց զանձն երանելին՝ անտես 'ի
մարդկանէ, և եկաց անսասան զաւուրս
եօթն։

Յետ այսորիկ տեսիլ երեւ վանաց հայրն,
զի զօրք երկնից պատեալ պաշարեալ զմե-
նաստանն՝ ջահ 'ի ձեռս ցուցանէին, և սպառ-
նացեալ ասէին. այրեմք զքեզ և զվանս քո,
եթէ ոչ տացես 'ի ձեռս մեր զծառայն ա̃յ
զոսիմէոն. և առ 'ի մէ՞ջ արտաքսեցեր զնա.
զի՞նչ մեղս մեղաւ. ո՞չ գիտես՝ եթէ մեծ է
նա քան զքեզ առաջի ա̃յ, և մեծ ես երևե-
ցի յաւուրն ահեղի։ Զարթուցեալ վանա-
կանին ահի՛ մեծաւ՝ կոչեաց զեղբարսն, և
պատմեալ նոցա զտեսիլն՝ ասէ. փութացա-
րո՛ւք աղաչեմ, գտէք և ածէք զճշմարիտ
ծառայն ա̃յ։ Իսկ ն̃ք յուղեալ ընդ ա̃մ տեղիս՝
ուր և կարծէին, եկին և ասեն ցաբբայն.
ո՛չ գտաք ուրեք. և ո՛չ մնաց տեղի այլ՝ բայց
'ի խաւարչտին և յօձաբնակ գբոյ անտի։ Իսկ
նա հրամայեաց լուցանել լապտերս՝ 'ի փա-
րատել զխաւար և 'ի փախուցանել զօձ-
սն, և խաչակնքելով զանձինս՝ իջանել
'ի գուբ անդր պատրաստանաւ. և այնպէս գտին
զնա. և 'ի վեր առեալ բերին 'ի վանս։

Յայնժամ անկաւ աբբայն յոտս ն̃ր, և ասէ.
Թո՛ղ ինձ ծառա՛յ ա̃յ, զոր 'ի քեզ յանցեայ
անխորհրդաբար. դո՛ւ լեր այսուհետև ինձ
առաջնորդ և ուսուցիչ ուղղութե̃։ Իսկ ա-



դայն

դարն յալտասաւս հարեալ լայր՝ ի մէջ քանից հօրն. և արարեալ նմա անդ աւուրս ինչ՝ դաղտ մեկնեցաւ անտի՝ յետ երից ամաց բնակութե իւրոյ ՚ի վանս. և գնաց յանապատն՝ յոր մերձ էր գիւղն Թալամբսին կամ տեղանիս կոչեցեալ՝ առ ստորոտով լերին. և շինեաց իւր արգելանոց նեղ ՚ի քարանց կուտելոց. և բնակեաց ՚ի նմին միակեցական ճգնութե ամս երիս կամ չորս ։ Նա ոչինչ ճաշակեր, բայց միայն սակաւ սպոյն թրջեալ. և զայն միանգամ յեօթնեկի, որպ կալաւ սովորութի. իսկ զաւուրս քառասնորդացն իսպառ անսուաղ անցուցանէր, նախանձաւոր լինելով Մովսեսի և Եղիայի ։ Նա էլ անուն սրբութե նորա. և սկսան դիմել առ նա բազումք, և օգտիլ ՚ի նմանէ ։

Նա էր բասոս անուն ումն կամ վլատոս աբբայ՝ (3) առաջնորդ երկերիւր եղբարց խըստակըօնից յանապատի, միանգամայն և գլուխ քհնյից բնակելոց ՚ի շրջակայ գիւղորէս, այր տծաշնորհ և արթուն ՚ի վերայ հոգւոց տմ եղբարց. որ շրջէր ստէպ ՚ի սենեակս, և զմի մի ՚ի միայնակեցաց զօրացուցանէր ՚ի վարս սրբութե, և հաղորդէր պատուական խորհրդոյ մարմնոյ և արեան տն ։ Զսա ընտրեաց սիմէոն իւր ՚ի հայր հոգեւոր, և յայտնեաց նմա զտմ խորհուրդս սրտի իւրոյ, և զանյագ տենչումն ՚ի սէր ծառայութեն տյ ։

Յայնժամ խրատեաց զնա հայրն բասոս՝ պահել զընտրողութի ՚ի ճգնութի պահոց, և

'մի լինել անձնասպան . այլ Է յանձին զգալ զնուաղութիւն և զօտվ կարեւոր՝ ճաշակել փոքր մի . զի զանցանելն աւէ զչափու՝ մարթի ոչ մարմնոյ միայն , այլև հոգւոյ վնասել . և առ ած կարծեցուցանելով տանել՝ 'ի բաց տանի 'ի նմանէ ։ Այս երանելին սիմէոն կատարեալ հնազանդութի յանձին բերեալ՝ ասէ . դիցես հայր առ իս հացս տասն , և անօթ ջրոյ . զի երբ կարօտ տեսանեմ զանձն իմ 'ի բանի քում , առից կերակուր , զի զօրացայց ։ Այս հայրն բասոս արար այնպէս . և փակեալ զդուրսն՝ ծեփեաց կաւով , զի մի ումեք լիցի գալ առ նա զաւուրս քառասուն ։ Յետ աւուրցն այնոցիկ եկն եբաց զդուրսն . և եգիտ զհացն ողջոյն ամբողջ , և զանիկ ջրոյն լի . և զճգնաւորն քմի զսիմէոն գետնատարած յաղօթս՝ յափշտակեալ արտաքոյ իւր . և իբրև դրդեաց զկողսն նր , եգիտ զնա անկ կիսամահ անբարբառ . զի նուաղեալ էին ոգիք նր յանչափ պահեցողութէ ։ Այս իբրև մատոյց սպունգ ջրոյ 'ի բերան նր , բացան աչք նր . ապա խնդրեաց երանելին զփրկական խորհուրդ նր հաղորդութն . զոր առեալ՝ իսկ և իսկ զօրացաւ . և յարուցեալ 'ի գետնոյ՝ ճաշակեաց փոքր ինչ բանջար վայրի . և զայն շատ համարեցաւ ։ Ընդ որ հիացեալ հօրն բասոսի՝ ոչ ևս իշխէր յանդիմանել զնա վասն պահոց պնդութե . այլ եկեալ պատմէր աշակերտաց իւրոց զահագին սքանչելիսն , զոր ետես յայրն նյ 'ի սիմէոն ։ Այլ որ մեծն է , յայնմ հետէ սովորութի

կա-

կալաւ սիմէոն , զի բազում անգամ զաւուրս երեսուն և ինն անսուաղ անցուցանէր , և 'ի քառասներորդ աւուր միանգամ ճաշակէր՝ զկնի հաղորդելոյ 'ի խորհրդոյն . և այնպէս աւարտ միոյ քառասնորդի՝ լինէր նմա սկիզբն միւսոյն ։ Եւ զայն կէս մի ոտնակացութ̃ կատարէր , և կէս մի առ հարկի նստելով , կամ 'ի գետին տարածելով . քանզի 'ի սկսանել զքառասնորդն՝ յոտին կայր կանգուն զաւուրս քան անընդհատ , աղօթելով , սաղմոսելով , և յերկնային խորհուրդս ընկղմելով . և յընդմիջել քառասնորդին կըթոտեալ ծնգօք հարկէր նստիլ աւուրս քանի մի ։ Ապա 'ի տկարանալ ողջոյն իսկ անձին յանսուաղութ̃է՝ գետնամած տարածանէր . և այնպէս կատարէր զմնացեալ աւուրս յանդադար աղօթս և յօրհնութ̃իս ա̃յ . քանզի այնպիսի էին կեանք նր̃ , ոչ̃ թէ չլինէր 'ի վերայ երկրի , այլ՝ յերկինս , անմարմնաբար քաղաքավարեալ 'ի մարմնի , և մշտամըռունչ ձայնակցեալ վերին զուարթնոց փառաբանչացն ա̃յ ։

Եւ յետ կալոյ արգելական 'ի խղի անդ եռամեայ ժամանակօք՝ ել 'ի մերձակայ լեառն , և շինեաց անդ այլ բնակարան ընդարձակ , այլ անյարկ բացօթեայ , միայն պարսպեալ որմով իբրև փարախ ոչխարաց , որ կոչիւր ՄԱՆԴՐԱ . ( որպէս սովորութ̃ի էր անուանել և զվանս , ուստի և զվանահարս՝ ԱՐՇԻՄԱՆԴՐԻՏ ). և այնպէս մրցէր անդ զցայգ և զցերեկ ընդ ցրտոյ և ը̃ տօթոյ , ը̃ անձրևոյ և ը̃ արևու ։

Եւ քանզի բազումք գային առ նա, եւ պա-
տրաստել շղթայ երկաթի՝ քսան կանգուն յերկայնութի, զորոյ զմի ծայրն անցոյց 'ի քար մի մեծ անշարժելի, եւ զմիւսն օղսմա-'նեկաւ անցոյց յոտն իւր ձախոյ. ոչ զի թէեւ կամիցի՝ մի կարասցէ արտաքոյ ելանել քան զսահմանն։ Այսու օրինակաւ արգելեալ զանձն 'ի փարախին՝ միշտ զվերինս խորհէր, եւ սակայն յերկրինս վերակնէր կարօտանօք եւ տենչանօք երկնաքաղաքացի լինելոյ. եւ զորս գայինն առ նա՝ յերկրինս անդր ուսուցանէր փութալ ձեպիլ.

Եկն յայցելութի նորին ոմն 'ի պատուակա-նաց՝ մելիտիոս անուն, կարծեցեալ յոմանց եպս անտիոքայ. սա թէպէտեւ զարմացաւ ը̅ խստամբեր քաղաքավարութի սիմէոնի, այլ ոչ հաւանեցաւ ը̅ շղթայն. շատ է ասէ միտք բանաւորի ոտնակապել զմարմինն կա-մօք, ցոր վայր եւ կամք իցեն երթալ կամ չերթալ. Եւ զոյգ ը̅ բանի նր̅ հնազանդե-ցաւ սքանչելին սիմէոն, եւ կոչեալ զդար-բին՝ ետ քակել զշղթայն. բայց զառաջին սահմանն անփոփոխ կալաւ. զի սէրն քի̅ կապեալ էր զնա առաւել Ք̅ զա̅մ անլոյծ կա-պանս։ Այլ տեղի շղթային յոտս նր̅՝ թէ-պէտեւ կաշուով պատեալ, որորեճէր եւ բոյն եղեալ ճճեաց եւ մլկանց. որոց կամաւ թո-ղոյր երանելին կոտել հանապազ զմարմին իւր՝ առանց մերձենալոյ երբէք 'ի նա. եւ յի-շէր անդադար զառաքելականն, եթէ յոր-ժամ մարմինս տկարանայ, հոգիս զօրանայ։

Եւ

Նաեւ տայ նմա Տր զշնորհ հոգելից վիճակաւն. միանգամայն եւ զշնորհս բժշկութեան. որով զհոգիս շահէր գունդագունդ եկեղեցւոյն առ նա, եւ զամ ցաւս նց փարատէր անոճամբն քնի ։ Այս ճանապարհ անապատին ասորւոց իբրեւ քաղաքամէջ պողոտայ երեւէր 'ի բազմութեն երթեւեկելոցն առ նա. իսկ լեառն բնակութե նր քաղաք թուէր մարդաշատ. զի ոչ միայն մերձակայ բնակիչք երկրին ասորւոց, կիլիկեցւոց եւ փիւնիկեցւոց խուռն ընթանային առ նա, այլեւ արաբացիք, իսմայէլացիք, պարսիկք, եւ հայք եւ վիրք։ Թող զարեւելեայսս, այլեւ արեւմտեայք ոչ սակաւ ոկեան գալ առ նա 'ի սպանիոյ, 'ի բրիտանիոյ, 'ի գաղղիոյ եւ յիտալիոյ. քանզի մինչեւ 'ի մեծն հռոմ հնչեաց անուն նր. ուր 'ի տունս տունս, եւ 'ի սրահս եւ 'ի սիւնս գնէին զպատկեր նր, եւ պատուէին իբրեւ նր կենդանւոյն ։

Իսկ որք զայնինն առնուլ զօրհնութի նորա, հազիւ կարօղ լինէին 'ի բազմութե մերձենալ 'ի մաշկեակն՝ զոր արկեալ էր զանձամբ. այլ 'ի համբոյր ձեռաց՝ սակաւուց էր մատչել յընտանեգունից։ Բայց ո՛ ոք եւ էր յեկեղեցն, ո՛չ դառնայր յետս ունայնաձեռն յօրհնութենէ նր. էր որ հաշտութի շահէր ընդ թշնամեաց, եւ էր՝ որ փրկութի 'ի փորձանաց, կմ ազատութի 'ի ցաւոց. եւ որ մեծն էր՝ դարձ լինէր յօքունց յանհաւատից, եւ եռանդն ածպաշտութե հաւատացելոց ամի. Եւ այս ամ առաւել եւս ցուցաւ յետ բարձրա

Նալոյ որոյն 'ի սիւն. յորմէ և զՍխեանչեայդ անուն ընկալաւ:

Սրանգի տեսեալ առն մոյ սրբազանի, զի Թիւ եկեղեցւոյն առ նա եղանց ըստ չափի, և անկարացեալ խուսափել 'ի ձեռաց նոցա կամ ԹաքուՑանել զանձն, խորհեցաւ գէԹ իւիք օրինակաւ անմատչելի լինել նոցա, և հեռանալ յնոցանէ, մանաւանդ Թէ յերկինս մօտենալ ոչ միտօք միայն, այլև մարմնով. վասն որոյ հնարեցաւ զգիւտ սիւնաբնակուԹեան կամ սիւնակեցուԹեան, առ փոքր փոքր վերելակեալ 'ի բարձրուԹիւն ըստ օրինակիս այսմիկ: Զառաջինն եւս կանգնել 'ի մանդրայն, որ 'ի փարախի անդ լեռնում՝ սիւն մի իբրև հինգ կանգնոյն բարձրուԹ. և ելեալ եկաց 'ի վերայ նորա ամս իբր հինգ. (զոր ոմանք եօԹն ասեն, և այլք չորս): Յետ բարձրացոյց զայն, այս է՝ ել 'ի սիւն բարձրագոյն յերկրորդ երկոտասան կանգուն. և եկաց 'ի վերայ նորա զամս երկոտասան: Դարձեալ այլ ևս ամս երկոտասան եկաց յայլ սիւն, որոյ բարձրուԹիւն էր քսան կանգնոյ. ապա և յայլ սիւն երեսուն կանգնաչափ՝ արար ամս չորս. և հուսկ յետոյ յայլ սիւն բարձրագոյն՝ երեսուն և վեց կամ քառասուն կանգնոյ՝ եկաց զայլ ևս ժամանակս իւր մինչև ցմահ՝ ամս վեշտասան. և ըստ այսմ սիւնակեցաց եզև զամս քառասուն և եօԹն:

Արդ՝ որ և է 'ի սեանց առաւել էր 'ի մէջ այսր ընդարձակ փարախի սէջին. ուր էր իշխանուԹիւն արանց՝ մտանել 'ի ներքս քան զպարիսպն. բայց

սիմէոն, բայց յիւրաքանչիւր եօթնեկի հաղորդէր Տր խորհրդոյն. և այն էր սովորական սնունդ նր ՚ի սիւնակեցութեան:

Որդ. մեծաւ մասամբ սիւնակեցութիւն սորին էր ոտնակացութիւն յաղօթս. զի զձեռս ՚ի վեր համբարձեալ, և ը̃ երկինս պշուցեալ կայր յաղօթս իբրև ՚ի զարմացման. և առաւել զաւուրս տօնից այսպէս անցուցանէր. յերեկոյէ ՚ի մտանել արևու սկսանէր լաւութե̃ աղօթել ը̃ արևելս համբարձմամբ ձեռաց, մինչև ծագէր արև ՚ի դէմս նր ը̃ օրինակի մեծին անտոնի. այլ նա նստեալ ՚ի ծունգս, իսկ սա յոտին կանգուն: Օ այս ոտնակացութիւն անհաւատալի՝ սովորութի արար ինքեան երանելին այսպէս. ուր կանխաւ սովորեցեր զաւուրս քսան և ևս աւելի յոտին կալ անընդհատ, յելանելն ՚ի սիւն՝ ետ կապել զանձն ը̃ ուղղորդ գերանի միում պնդանկս, զի թէև կամիցի՝ մի լիցի կարօղ կորանալ կմ նստել. և այնպէս կատարեաց զաւուրս քառասնորդաց յոտին մ̃ հանդերձ աննուաղութե̃: Ապա զօրացեալ յերկնային շնորհաց՝ առանց գերանի իսկ սկսաւ յոտին կալ զաւուրս քառասուն, արձակ և կանգուն, նոյնպէս աննուաղ. ոչ թէ ՚ի մ̃ քարեղէն և անշունչ սեան կանգնեալ իցէ սիւն մարմնեղէն և կենդանի իբրև արձան: Այլ եթէ հրաշալի թուի բանս, չեն ինչ զարմանք. զի ամ̃ գործք սիմէոնի ՚ի վեր էին քան զհրաշս. զարմանալիք՝ քան հետևելիք: Այլ արդարև նոքին իսկ աքանչելի հարք ա-

նա-

նաւապատի հրաշացան ը̅ն նորատեսիլ ճգնութիւ
նր̅ . և յաչս բազմաց ծանր թուեցաւ բանն .
մինչև ժողով մեծ լինել հարց եպիսկոպոսաց
և հովուեալս արանց . որոց խորհուրդ 'ի մէջ
առեալ ը̅ն գրելոյ Եւագրիոսի և այլոց , պատ-
ուիրակս առաքեցին՝ առնել ցսիմէոն . զի՞նչ
է բանդ այդ , զոր դուդ գործես . զի՞արդ
թողեր զճանապարհն՝ զոր կալան և ուսու-
ցին այնչափ դասք ս̅բ հարց միանձանց և
ճգնաւորաց , և ը̅ն օտար շաւիղ համարձա-
կեցար ընթանալ . էջ այտի 'ի վայր , և գնա՛
զճանապարհ հասարակաց ։ Այլ զգուշա-
ցեալ հոգելից հարանց , զի գուցէ յա̅ծայնին
ազդմանէ իցեն ընթացք սիմէոնի , և ին-
քեանք խափանիչ լինիցին գործոյն ա̅յ , պատ-
ուէր ետուն արանցն , զի թէ ը̅ն լսել սիմէո-
նի զպատգամ իւրեանց՝ սիրով հպատակես-
ցի և կամիցի իջանել , հրամայեսցեն նմա
ունել զիւր կարգ . քանզի այդ իսկ բաւա-
կան նշան է առեն , եթէ յա̅յ է այն . զի որոյ
սկիզբն բարի , և կատարածն է բարի . ապա
եթէ դժկամակ լինիցի ը̅ն խրատ մեր , յայտ
արար՝ եթէ զիւրոց կամաց զհետ երթայ ,
և հեռի է 'ի խոնարհութե̅ . յայնժամ բռնի
իջուցէ՛ք զնա , և ածէ՛ք այսր ։

Արդ իբրև չոքան՝ որք առաքեցանն , տեսեալ
նոցա և լուեալ զսքանչելիս ս̅բյն , և զդարձ
անհաւատից և մեղաւորաց , պատկառէին 'ի
սրբութե̅ նր̅ , և չիշխէին բանալ զբերան .
մինչև բռնադատեալ զանձինս՝ ծանուցին սի-
մէոնի զպատգամն ։ Եւ նր̅ ա̅մ զօրութե̅

ըն

ընկալեալ զյանդիմանութի հարցն ՅԺԸ, իսկ
և իսկ խոնարհութե հնազանդ եղև նց․ ոչ
խօսեցաւ շատ կամ սակաւ, այլ գոհացեալ
զայ փառն խրատելոյ զնա 'ի ձեռն հարանց՝
հրամայեաց փութապ կանգնել զսանդուղս,
զի 'ի վայր իջանիցէ ։ Յայնժամ 'ի վերայ բե-
րին պատուիրակքն զերէկդ հրաման հարցն ․
և խնդակից լինելով սմին՝ քաջալերեցին
հաստատուն կալ յածահաճոյ քաղաքավա-
րութե իւրում ․ և ինքեանք դարձան և պատ-
մեցին ժողովոյն զամ զոր լուան և տեսին ․
և եղև ուրախութի յոյժ ամենեցուն ։
Յայնմ հետէ ևս քան զևս մեծացաւ անուն
սբյն սիմէոնի ․ և ոչ գոյր թիւ եկելոցն առ-
նա վս ամ պիտոյից հոգւոյ և մարմնոյ ․ զի
զկոյրս լուսաւորէր աղօթիւք, զկաղս գնա-
ցուցանէր, զբորոտս սրբէր, զանդամալոյծս
առողջացուցանէր, և զամ ցաւս փարատէր ․
զտրտմեալս զուարթացուցանէր, զանյոյս
կանգնէր և ամրացուցանէր 'ի տր ․ և մար-
գարէական ակամբ զխորհուրդս սրտից գու-
շակէր, և զհեռաւոր տեղեաց անցս պատ-
մէր ։ Եւ միոյ միոյ 'ի բժշկելոցն զայս տայր
պատուէր ․ եթէ ոք հարցանիցէ, թէ ո՞ բը-
ժշկեաց զքեզ, դու ասա՛, ած ․ որ և է իսկ
ճշմարիտ ․ զգո՛յշ լեր, մի ասիցես, սիմէոն ․
որ է սուտ ․ այլ թէ ոչ՝ 'ի նոյն ցաւս ըմբռ-
նիցիս ։ Մ՛ի երդնուցուս բնաւ, և մի առնու-
ցուս զահաւոր անունն այ 'ի վր բանից քոյ
սնոտեաց ․ և եթէ հարկէ զքեզ սովորութի քո
անբարի յերդնուլ՝ կամ ճշմարտութե կամ

ստու-

ստութեամբ , երդուէ՛ր յանուն սիմէոնի մեղաւորիս ․ զի փոքր է այն մեղս ․ այլ վտանգ մեծ յանուն Աստուծոյ երդնուլ ։ Բազում և այլ հոգեշահ խրատուք ուսուցանէր զամենեսին առնել զկամս Աստուծոյ , և կեցուցանել զոգիս ։ Իսկ մայրն երանելոյն յետ քսան և եօթն ամաց կորուսանելոյ զցանկալի զաւակ իւր՝ լուեալ զոր առնէր սիմէոն սիւնականն , և 'ի վերայ հասեալ՝ թէ որդին իւր է , եկ գնաց առ նա անպատմելի կարօտով և խնդութեամբ , զի տեսանիցէ ․ և մերձեալ յորմն փարախին՝ յայնմ որ ոչ էր օրէն մտանել կանանց , առաքեաց և ծանոյց սիմէոնի , թէ ահա մայր քո եկեալ է , և կամի զքեզ տեսանել ։ Բայց նորա ծածկեաց զերեսս իւր , և ոչ կամեցաւ տեսանել զմայր իւր ։ Եւ ո՞ կարէ պատմել զաղէտս մօրն ․ որդեա՛կ իմ ասէր , զի՞նչ է՝ եթէ տեսից զքեզ ․ հայր քո մեռաւ 'ի ցաւոց սրտի և յարտասուաց , զոր եհեղ 'ի վերայ քո իբրև կորուսելոյ ․ և ես զի գտի՝ եթէ ոչ տեսից զքեզ , աստէն մեռանիմ ։ Յայնժամ առաքեաց սիմէոն ասել ցնա 'ի ձեռն սպասաւորին իւրոյ ․ թողութի՛ արա ինձ մա՛յր իմ , և մի՛ հարկեցուցաներ տեսանել զիս յայսմ ժամի ․ այլ եթէ իցեմք արժանի՝ 'ի հանդերձեալ կեանս հանդիպեսցուք միմեանց ։ Իսկ մայրն 'ի լուր բանից առաւել բորբոքեցաւ 'ի սէր տեսոյ նորա ։ Եւ նորա դարձեալ առաքեաց ասել ցնա ․ ո՛վ մայր իմ հանդէ՛ր սակաւ մի առ դուրս փարախիս , և նինջեա՛ ․ մինչև տեսցուք զմիմեանս ։ Եւ կինն յուսալից ուրախութեամբ

զուարթ

զուարթացեալ նստաւ համդէպ սեղանն. և եդեալ զգլուխ իւր յորմն փարախին՝ քաղցր 'ի քուն եղև, և աւանդեաց զհոգին 'ի ձեռս այ̃. զի խնդրեալ էր սիմէոնի յայ̃ տալ նմա զերջանիկ փոխումն յդէ. և այ̃ ընկալաւ զհոգի նր̃ 'ի խաղաղութի̃:

Յայնժամ հրամայեաց երանելին սիմէոն բե-րել զմարմին մօր իւրոյ 'ի ներքս 'ի փարախն, և դնել առաջի սեղան. և էջ ինքն 'ի պատի́ թաղմանն նր̃. և յաղօթս կացեալ վր̃ հոգւոյ նր̃՝ ասէ. Տր̃ այ̃ զօրութեց, որ նստիս 'ի վր̃ քերովբէից, և խնամես զարարածս քո, ա-ռաջնորդ մոլորելոց՝ որ առաջնորդեցեր ին̃ խաչին յուսովփու, և 'ի բազում բարձր զօրա-ցուցեր զդաւիթ և զիմ ընտրեալս քո. դու ես կեանք և յարութի̃ մեռելոց, որ յարուցեր զղազարոս 'ի չորեքօրեայ թաղմանէ. ընկալ աղաչեմք և զհոգի աղախնոյ քո 'ի հանգիստ քո: Եւ յասել սիմէոնի զաղօթս զայս՝ շար-ժեցաւ մարմին մօր նր̃, և ժպտեցան երեսք նր̃. զոր տեսեալ ամենեցուն՝ փառաւորեցին զայ̃. և հրամանաւ ծ̃րյն թաղեցին զնա սաղ-մոսիւք և օրհնութբ̃ առաջի սեղանն՝ վր̃ տե-սանելոյ միշտ զգերեզման մօրն, և յիշելոյ զհոգի նր̃:

Ընդ աւուրսն Ը̃ այնոսիկ տեսեն որսորդաց եղն մի, իբրև չկարէին ըմբռնել զնա, երդ-ուեան եղին յանուն սբ̃յն սիմէոնի՝ չառնել խնչ նմա վնաս (4). և նոյնժամայն դադարեաց անասունն 'ի տեղւոջն. զոր կալեալ զենին որսորդքն և կերան, ոչինչ փոյթ արարեալ վր̃

վսն երդմանն . և զեռ ևս կերակուրն 'ի բերանս նր էր , Թափեցան ատամունք նր առհասարակ , կմ ընդ այլոց՝ կապեցան բերանք նոցա և համրացան ։ Յայնժամ 'ի զղջումն եկեալ յայժ՝ ընթացան առ երանելին սիմէոն , և լային զչարիս անձանց իւրեանց . և նա գթացեալ՝ աղօթս արար 'ի վր նց , և ազատեաց 'ի պատուհասէն . և այնպէս դարձան յետս՝ փառաւոր առնելով զած ։

Դարձեալ յայլում նուագի ոմն յիսմայէլացւոց , որ 'ի ձեռն սրբյն սիմէոնի հաւատացեալ էր 'ի քս , ուխտ եդ անձին իւրում՝ վկայ կոչելով զանուն տռն , չուտել երբէք 'ի կեանս իւր զմիս . և յանցանել ժամանակաց՝ եթէ առ մոռացութե , և եթէ առ որկորամոլութե ետ զենուլ հաւ թռչուն , և սկսաւ ուտել ։ Իսկ ահա միսն իջեալ 'ի ստամոքս նր՝ իսկ և իսկ քարացաւ , և յանհնարինս նեղէր զայրն ։ Յայնժամ 'ի միտս եկեալ առն՝ դիմեաց առ հոգևոր բժիշկն իւր առ սիմէոն , և խոստովան եղև զուխտազանցութն իւր . և նրն խնդրեաց յայ զթողութիւն վր նր , և ազատեաց զնա 'ի ցաւոց անտի ։ Իսկ 'ի հաստատութե սքանչելեաց մնաց 'ի կուրծս առն քարեղէն գոյացութի դիզացեալ 'ի մէջ ոսկերաց կողից . զոր բազումք տեսին առ կենդանութբ կամ յետ մահու նորա , և սքանչացան , տես թէոդորետոս ժամանակակից ։

Դէպ եղև կնոջ միում գիշերային ծարաւիլ , և ըմպել ջուր 'ի մթան . և ընդ ջրոյն գնաց

'ի

'ի փոր նր̃ ձագ օձի, և սնեալ աճեաց անդ. յորմէ յոյժ չարչարեալ լինէր կինն, և շրջէր առ բժիշկս բազումս, այլ ոչ ոք կարաց օգնել նմա. ապա առեալ տարան զնա հաւատով առ նշխարս սիմէոնի, և պաղատեցին նմ̃ զկինս նր̃ : Իսկ նա հրաման ետ արկանել ըն̃ բերան նր̃ սակաւ մի ջուր և հող. և յաղօթս եկաց վր̃ նր̃ : Յայնժամ տագնապեալ օձին 'ի զօրութենէ տն̃՝ յերկիր ընկէց զկինն, և ել ընդ բերան նր̃. և էր երկայնութիւն նր̃ ահագին յոյժ՝ իբր չորս կանգուն, ասէ ամենայն աշակերտ սբյն. և դիմեալ 'ի սիւնն կոյս՝ անդէն սատակեցաւ. Իսկ կինն առողջացեալ գոհանայր զԱյ և զսբյն. և ամենեքին՝ որք տեսինն, օրհնէին զՏէր մեծաձայն :

Յայս վայր նշխարս սիմէոն սիւնակեաց էր 'ի վր̃ կարճ սեանց. և յայնմ հետէ բարձրացուցին հրամանաւ նր̃ զսիւնն նորա զվերջին՝ որ 'ի վերջնումն փարախի, իբրև 'ի քառասուն կանգուն. և օր քան զօր երթալով երթայր և հնչէր համբաւ նորա ըն̃ ամ̃ կողմն. և զի անհաւատալի թուէին ամենեցուն կեանք նր̃ և գործքն նմ̃, ընթանային տեսանել անձամբ և ստուգել. առաւելանքս այլազգիքն՝ հագարացիք և արաբացիք. յորոց և բազումք դարձան առ Տէր քարոզութ̃բ սբյն :

Իսկ մարդատեաց բանսարկուն սատանայ մախացեալ ըն̃ երանելին, և ինչ ոչ կարացեալ գամագիւտ լինել 'ի նմա, կերպարանեաց զանձն ոչ միայն 'ի հրեշտակ լուսոյ, այլ և ոպ̃ Տէր փառաց նստեալ 'ի վր̃ քրովբէա-

տե-

տեսիլ կառաց. և եկեալ առ սիմէոն 'ի ժամ
ուքնութեն աղօթից գիշերոյ՝ ասէ, մատիր և
յարեաց 'ի կառս յայսոսիկ, ով ծառայ հա-
ւատարիմ, և ընկալ զպսակ քո։ Իսկ երանե-
լին սիմէոն զառաջինն պակուցեալ յահեղ
տեսլենէ անտի՝ համարեցաւ, եթէ Տէր կո-
չէ զնա, և կամէր հնազանդիլ խոնարհութբ.
այլ 'ի կնքել զանձն իւր նշանաւ խաչի, և 'ի
վեր առնուլ զոտս, զի դիցէ 'ի վր կառացն,
նոյնժամայն ծանեաւ զխարդախութի չարին.
և իսկ և իսկ յինքն ամփոփեալ զոտս իւր՝
կարդաց առ Տր։

Տեսեալ չարին, եթէ յայտնեցան պատրանք
իւր, առ կատաղութեն եհար զբարձս ոտից
նորին ուժգին. և անդէն եղև աներևոյթ
յաչաց նորա։ Արդ՝ ուր ողջացեալ էր ոտն
նորին յառաջին վիրաց չղթայիցն, այս հար-
ուած դիւին 'ի սրունս նորա թողացուցեալ
կամծքն որոյ՝ եղև նորին նոր առիթ ճգնութեն
անբուժելի. քանզի խոց կարեվէր մնաց մի
յոտից նորա, և հարեալ կեղով՝ որդնալից
եղև. մինչ զի յայնմ հետէ հարկ եղև նմա
միով ևեթ ոտամբ կալ յոտնակացութեան՝
ատեպ յենլով 'ի պատաշգամբ սեանն. և այն
տևեաց ամս ոչ սակաւ մինչև 'ի վախճան
նորին։ Այլ որ զարմանալին է, զի երբ որ-
դունք եռացեալք բազմութբ 'ի գետին անկ-
կանէին, տայր բառնալ և դնել 'ի տեղի
իւր. մինչև ասել անտոնի բանիցս պատմո-
ղի, * Այսուհետև ես նուաստս ոչինչ այլ
„ գործէի գործ, բայց ժողովել զանկեալսն, և

„ տա

,, տանել դնել՝ ուստի անկանին . իսկ ս՟րն
,, ասէր ցնոսա . կերայք՝ ուստի եւ ձեզ ո՞ր
,, ուտել || :

Օ այս հարուստ յաներեւութից 'ի հասարակաց Թշնամւոյն լեալ՝ ոչ գիտելով ամբոխին, համարէին յերկար ստնակացութէ պատմառեալ . և ոչ այնմ գրեցին ոմանք 'ի մատենագրաց : Բայց զայսպիսի վէրս խղխայթելոյ հարկեցաւ երանելին ցուցանել երբեմն ումեմն սարկաւագի՝ առն իմաստնոյ և առաքինւոյ . որոյ եկեալ 'ի հեռաստանէ , և մտեալ 'ի փարախ ս՟րյն՝ իշխեաց ձայնել առ նա , և ասել . աստ ինձ աղաչեմ , մա՞րդ իցես դու , եթէ այլ ինչ բնութի անմարմին՝ կերպարանեալ 'ի նմանութի մարդոյ : Ընդ այս ծանրացասումն եղեն՝ որք անդէն կային . իսկ երանելւոյն սիմէոնի հանդարտեցուցեալ զնա՝ ասէ հեզութ՟բ ցսարկաւագն . առ ի՞նչ հարցանես ցիս զայդ : Եւ նա ասէ . քանզի լսեմ զքէն յամենեցուն բերանոյ՝ անսուաղ և անքուն անցուցանել զաւուրս . և զի մա՞րդ հնար է մարդոյ կեալ առանց կերակրոյ և քնոյ : Յայնժամ հրամայեա եա ս՟րն դնել սանդուղս , և կոչեաց զնա գալ առ ինքն 'ի վեր . և ի բերև եւ առ նա , եցոյց նմա նախ զձեռս իւր՝ շօշափել և տեսանել , եթէ մարդոյ է . նոյնպէս և 'ի լանջս եւ հասուցանել զձեռն 'ի ներքոյ մաշկեղէն հանդերձի . և զկնի ասէ . հայեաց և յոտս իմ , և տեսցես՝ զի մարմին է ապականացու , և այն՝ չարաչարելից և որդնալից : Բայց եւ տես սարկաւագն

զքստմենելի զայն վէրս, զահի հարաւ ընդ համբերութե̃ սբյն. և երկրպագեն նմա՝ էջ խոնարհութբ̃. և երթեալ պատմեաց թէոդորետոսի եպսի՝ ըս̃ գրելոյ նր̃ ։

Ապա առ երանելին սիմէոն և ոմն յերևելի անապատաւորաց, և կացեալ առաջի սրան՝ խնդրեաց օրհնութի 'ի սբյն. իսկ նր̃ յանճանէ մեծարեն զնա՝ ողջունեաց զնա աւելով. ողջամբ եկիր ա՛յրդ ա̃յ թէոդոս ։ Ապա 'ի զարմանալ նորա ը̃ ճանաչել զանուն իւր՝ հրաւիրեաց զնա սիմէոն 'ի վեր առ ինքն. և ողջագուրեալ զնա սիրով՝ ասէ. ո՛վ թէոդոս մտերի՛մ սիրելի, ցնծութբ̃ ընթացի՛ր զճանապարհս քո, և 'ի տ̃նէ ուղղեսցին գնացք քո. քանզի ասեմ քեզ. զի 'ի մեծ չափ ունիս հասանել, և լինել հայր բազմաց, դարձուցանելով զբազումս յունայնութեց ծի 'ի միակեցական վարս. որ և եղև իսկ. այն է սբ̃ թէոդոս աբբայն տօնելի 'ի յունվարի. 10.

ըս̃ յունաց ։

Ապա և ոսկեղայ ոմն պատանի ը̃ հօր իւրում հոգևորի 'ի տես սբյն՝ դանիէլ անուն. և խնդրեալ ընկալաւ հրաման եղանելոյ 'ի սիւնն. և երանելին սիմէոն հայեցաւ ընդ նա, և ասէ. քաջալերեա՛ց և զօրացի՛ր որդեա՛կ դանիէլ, զի բազում նեղութիք մնան քեզ վասն հասարակաց տ̃ն. այլ ուրա՛խ լեր, զի շնորհօք նր̃ զօրացեալ յաղթեսցես թշնամւոյն, և մեծի մասին հասցես երանութե̃ ։ Զայս ասացեալ՝ եդ զձեռն 'ի վր̃ գլխոյ նր̃, և աղօթս արարեալ արձակեաց. և յայնմ

հետէ այնպիսի ընտանութիւն եղեւ 'ի մէջ նոցա, մինչեւ 'ի գնալ երբեմն զանխելի յուխտ յեհէմ; եհաս առ նա սքանչելեօք նորին սիմէոնի 'ի կեր-պարանս ալեւորի, եւ արգել զնա յուղւոյն. քանզի վտանգ աւազակաց կայր 'ի վերայ ճա-նապարհի. եւ խրատ ետ նմա գնալ 'ի բիւ-զանդիա. եւ միւսանգամ երեւել նմա՝ զնոյն պատուիրէր. եւ նա լուաւ նմա։ Իսկ յետ մահուան նորին դարձեալ 'ի ձեռն տեսլեան յոր-դորեալ 'ի նմանէ՝ եղեւ սիւնակեաց իբրեւ զնա, եւ գտաւ ոմն եղիսէ նմանող եղբայրի. այն է որ դանիէլ սիւնակեացն տօնելի առ յոյնս 'ի դեկտեմբերի 11։

Լուաւ զհամբաւ երանելւոյն սիմէոնի մեծ ամիրայն տաճկաց, այն՝ որ իբրեւ թագաւոր ոմն էր երեւելի 'ի մէջ նախարարացն արա-բացւոց նախ քան զելս ամիրապետաց. (վասն եւ 'ի գիրս յունաց կոչի փասիլիսկոս սարակի-նոսաց, այս է արքայիկ կամ թագաւոր փոք-րիկ. եւ յոմանց վրիպակաւ բասիլիսկոս ար-քայ կոչի.) եւ եկն հաւատով 'ի տեսանել զայրն այ. մատեաւ առ սիւնն, եւ խնդրէր օրհնութիւն 'ի նորին. եւ նա սկսաւ խօսել առ նա բանս խրատու։ Իսկ եղեւ 'ի ժամու խօսակ-ցութեան անկաւ 'ի վերուստ ոտից նորին որդն մի. իսկ ամիրայն ոչ գիտելով՝ թէ զի՞նչ իցէ այն, փութանակի 'ի վեր եառ զայն 'ի գետնոյ, եւ եդ 'ի վերայ լանջաց եւ աչաց իւ-րոց՝ իբրեւ մասն անկեալ 'ի հանդերձից նորին. եւ պահեաց յանփն իւր ուրախութեամբ։ Ապա իբրեւ ողջոյն տուեալ նորին՝ սկսաւ երանել

'ի

'ի դուրս 'ի փարախէն, ձայնեաց երանելին սիմէոն զկնի նր̄, և ասէ. իշխանն պատուական մատի՛ր այսր, և 'ի բաց ընկեա՛ զբեռն՝ զոր բարձեր, զի որդն է զազրոտի՝ անկեալ 'ի ժահահոտ մարմնոյ մեղաւորիս. և ընդէ՞ր է քեզ շաղախել զձեռսդ դարշ ճճեաւդ : Դարձաւ ամիրայն, և ասէ. Թէպէտև որդն իցէ, օրհնութիւն է ինձ այդ, և ոչ դարձուցից յետս : Եւ իբրև եբաց այրն զձեռն իւր, գտաւ որդն 'ի ձեռին նր̄ փոխեալ 'ի մարգարիտ մեծ և պատուական. զոր տեսեալ ամիրային՝ փառաւոր արար զա̄ծ և զծառայ նր̄ զսիմէոն. և առեալ տարաւ 'ի տուն իւր ուրախութե̄բ իբրև զգանձ մեծ :

Եւ էր կին ամիրային այնորիկ, կամ այլոյ ուրումն յամիրայիցն այլազգեաց՝ ամուլ. եկն և նա առ սիմէոն, և խնդրէր 'ի նմանէ աղաչել զա̄ծ վ̄ն իւր, զի տացէ նմա զաւակ. և իբրև յայժ թախանձեաց, ասէ ցնա այրն ա̄յ. գնա՛ 'ի տուն քո, և տ̄ր կատարեսցէ զոր բարին է : Եւ ետ նմա տ̄ր դուստր մի. բայց անխօս, և անկարօղ 'ի գնացս ոտից մինչև 'ի հնգամեայ ժամանակ. յորում ժամանակի իբրև բերին զաղջիկն յառս ս̄բյն, և աղաչէին առնել ողորմութիւն մանկան տղայոյ, ասէ սիմէոն. համբերեցէք տ̄ն, և տ̄ր ինքնին այց արասցէ ձեզ : Եւ յետ եօթն աւուրց մինչդեռ յարուցեալ գնային տրտմութե̄, զի չեղև ինչ օգուտ մանկանն, յանկարծակի հայեցաւ աղջիկն 'ի սիւնն կոյս, գոչեաց և ասէ. փա՛ռք քեզ ա̄ծ ա̄յն սիմէոնի.

և յայնմ հետէ բա̀ցաւ լեզու. նր̄, և գնացք ոտից: Սոյնպէս և այլք յայլազգեաց գտին պէսպէս նպաստս ’ի սրբյն. և թողեալ ըզ-կուռս՝ դարձան առ ք̄ս: Յորս երևելի էր նաաման զօրավար հագարացւոց. որ ծ̄ դրե-լոյ եւագրիոսի՝ զոսկիաձոյլ արձան կռոցն աստղկան կամ ափրոդիտեայ հալեաց հրով,
և բաշխեաց աղքատաց:

’Ի միում նուագի՝ յորժամ եկեալ էր յող-ջոյն սրբյն սիմէոնի թէոդորետոս եպս կիւ-րիոյ ( որ մին է ’ի գրչաց վարուց նորա առ-կենդանութ̄ն), կային անդ երեք խումբք հագարացւոց, որք բանիւ՜ սրբյն ’ի հաւատս եկեալ՝ կամէին մկրտիլ. վ̄ոյ և երանելին սիմէոն նմին իսկ թէոդորետոսի յանձն ա-րար՝ տալ նց̄ զփրկական կնիքն քահանայա-կան օրհնութ̄բ. յայնժամ զեղան նք̄ ’ի վ̄ր թէոդորետոսի խուռն խուժանօք՝ զկրեարս կոխոտելով, զի այր քան զընկեր յառաջ ըն-կալցին զմկրտութի կմ̄ զօրհնութի ’ի նմա-նէ. ոմանք զմօրուա՜ց նորա բուռն հարկա-նէին, այլք զհանդերձից, և այսր անդր ձգձգէին. և թերևս յօշոտէին զեպս̄ն տա-րապայման եռացմամբ, թէ չէր սաստեալ նց̄ ’ի վերուստ սր̄ն սիմէոն մեծաձայն գոչ-մամբ. յորմէ պատկառեալ նց̄՝ հանդարտե-ցին, և ուսան կարգօք և օրինօք շարժիլ յն̄ծայինս. զի բանք սիմէոնի ո՛չ անկանէին
առաջի ուրուք ’ի գետին:

Դարձեալ եկին երբեմն երկու ջոկք յիս-մայելացւոց փնտռ առնուլ զօրհնութի ’ի սրբյն սի-

սիմէոնէ, և տանել առ ամբրայս իւրեանց. և զի իւրաքանչիւր զիւր իշխանն մեծարէր, աղմուկ մեծ յարուցին առաջի սեան նորին՝ կամելով, զի նախ իւրումն իշխանի քան միւսումն տացի օրհնութի՛ւն. և արդարև լինէր արհամարհելութի՛ւն 'ի տեղւոյն՝ եթէ չէր ցածուցեալ զնոսա ազդու խրատ և սաստ նորին, հանդերձ յորդորանօք թէոդորետոսի. որ և զանձնէն պատմէ, թէ հազեշահ բանիւք սիմէոնի փարատեցաւ յինէն խորհուրդ իմն տատամնեցուցիչ և բազմայոյզ ։

Նմա և արքայն պարսից (վռամ կմ յազկերտ), և թագուհին՝ վս համբաւոյ նորին սիմէոնի. և տեղեկացեալք սրբութե՛ 'ի ձեռն դեսպանացյունաց՝ եառուն բերել զօրհնութիւն առ 'ի նմանէ, ցմ զձէթ օրհնեալ 'ի նմին. որով օծանէին հիւանդք 'ի դուռն արքունի, և բժշկէին ։

Սա էր յԹին խաւրացւոց աւազակապետ ոմն անտիոքոս ագոնատոս (ցմ անծունկ) կոչեցեալ. որ 'ի պաշարել իւրում 'ի պանդոկի միում 'ի հարիւր յիսուն և վեց զօրականաց՝ աշտանակեալ 'ի նժոյգ երիվար ձեղքեաց զգունդն նմ, և արծուօրէն խոյացեալ՝ անկաւ 'ի փարախ նորին սիմէոնի. և բուռն հարեալ զսեանէ նր՝ աղաղակէր 'ի վեր, ապրեցո զանձն իմ զկորուսեալ՝ ծառայ քոյ ։ Ասէ սիմէոն. ո՞ ես դու, և զի՞նչ խնդրես ։ Նա ասէ. ես եմ նշանաւորն այն գլուխ աւազակաց. արդ այսր եղէ ապաստան, զի կեցցես զանձն իմ վս քո ։ Ասէ ցնա երանելին.

կարօ՞ղ ես 'ի զղջումն գալ տառապեալս ցաւով 'ի վերայ մեղացդ։ Ասէ աւազակապետն. և ես նմին իրի աստ եկեալ եմ. զայս ասէր, և հեղոյր արտասուս բազում։ Հասին զկնի զինուորքն. և բողոք բարձեալ ասէին ցխունակեացն. ոչ է արժան հայր սբ ընդունել քեզ զապիրատս զայս. թող զդա լուծանել զպատիժ չարեաց իւրոց։ Պատասխանի ետ սրբազանն. ես որդեակք զդա ոչ կոչեցի այսր. այլ այն՝ որ գիտակն է սրտի դորա և գործոյն՝ արասցէ ողորմութիւն ընդ նմա. զի ես ոչ կարող եմ հալածել զդա 'ի բաց. գիտացէք և դուք, զի ապաշխարողացն է արքայութիւն երկնից. գիտէք, զի և ընդ տն մերոյ յն քն երկու աւազակք խաչեցան. յորոց մին ապաշխարութբ ժառանգորդ եղև երկնից թագաւորութե, և միւսն անապաշխար ընկալաւ զիւր արժանսն։ Արդ եթէ իցէ ոք, որ կարող իցէ հակառակ կալ այնմ՝ որ զսա այսր առաքեաց, եկեսցէ և 'ի բաց կորզեսցէ. զայս ասացեալ՝ արձակեաց ըզզինուորսն։

Իբրև նոքա գնացին, ասէ աւազակապետն ցսբն. յիս տր իմ, գնալ պատրաստեալ եմ ես։ Սբն ասէ. և ուր. միթէ միւսանգամ 'ի չար գործս կամիս դառնալ։ Ոչ ասէ. քաւ, մի եղիցի այդ հայր. այլ կոչէ զիս տր քո. և տարածեալ զձեռս իւր յերկինս՝ զայս ևեթ ասօթէր. տր յն քն որդի այ ընկալ զհոգի իմ (ոպ զաջակողմեան աւազակին). և լայր հեծեծանօք ժամս իբրև երկուս. մին

մինչև յարտասուս շարժել զերանելին զոփ-միջոն և զամենեսին որ անդէն կային. և ապա խոնարհեալ զգլուխ իւր 'ի սիւնն՝ աւանդեաց զհոգին 'ի ձեռս հրեշտակաց Այ. զոր բար-ձեալ թաղեցին առ դուրս փարախին:

Յեկին անդրէն զինուորքն՝ որպէս թէ բռնի յափշտակել զայրն, և տանել 'ի մահ. և իբ-րև ոչ գտին, կարծեցին՝ եթէ սիմէոն եւս թաքուցանել զնա. և ասեն. չէ՛ արժան պաշտպանել առն այնպիսւոյ, որ անարժան է կենաց. զի և զքաղաքս և զգաւառս յա-րոյց ընդդէմ իւր: Իսկ Տրն սիմէոն ասէ ցնո. Եղբարք, այն՝ որ այսր եկած զաւազակա-պետն, նոյն և զերկուս յիւրոց զօրականաց զօրագոյնս քան զձեզ առաքեաց, և ետ տա-նել զնա առ իւր. զի Տն իւրում պիտոյ էր իբրև անօթ պիտանի. և ես ոչ կարէի զդէմ ունել այնպիսի ահագին սպասաւորաց Թա-գաւորին երկնաւորի: Յայնժամ 'ի միտ ա-ռին զփախուստն նր յԱյ, և երթեալ պատ-մեցին զօրավարին իւրեանց և քաղաքապետ-ին. և որք լուանն, փառս ետուն Այ, որ զայս աւազակ մասնակից արար երանեալ ա-ւազակին:

Յաւուրսն յայնոսիկ պակասեաց ջուր յերկ-րին յայնմիկ. և բնակիչք կողմանցն պա-քել 'ի ծարաւոյ՝ դիմեցին առ սբն սիմէոն. իսկ նա լուեալ յաղօթս եկաց զաւուրս եօթն. և ահա յաւուրն եօթներորդի յիններորդ-ժամու բղխեաց ջուր յորդառատ յարևելից կողմանէ փարախի սբյն. և բրեալ մարդ-

 կանն

կան զտեղւոյն՝ գտին փապար մեծ իբրեւ ագ-
բերական . զոր բաժանեցին յեօթն վտակս .
ուստի ընուլին պէտք ամենեցուն ։

Եկեալ երբեմն բազմութեան օրհնիլ ՚ի սրբյն՝
գտին զնա յափշտակեալ արտաքոյ իւր . յայն
ժամ եկեալ առ նա սպասաւորն հանդերձ բուր-
մամբ խնկոց . և տեսեալ զնա ՚ի զարմացման՝
ասէ մեծաձայն յունկն նր . ծառայդ տյ ,
ամբոխ բազում սպասեալ մնայ օրհնութեան
քում . արդ հրամայեա և արձակեա զնս ։
Իբրեւ ետես թէ չտայ պճնի , յետ բազումս
աշխատելոյ սկսաւ կոծել ՚ի վր նր իբրեւ ՚ի
վր մեռելոյ . Նոյնպս և ժողովուրդն կականս
բարձեալ լային , զի զրկեցաք ասեն ՚ի սրբյն
տյ վս մեղաց մերոց ։ Իսկ սրբյն յետ սակաւ
ժամու յինքն եկեալ՝ ձայնեաց առ բազմու-
թիւն , և ասէ . Թողութի արարէք եղբարք ,
զի նաւ մեծ ՚ի ծովու վտանգեալ կայր ՚ի ժա-
մուս յայսմիկ . յորում էին ոգիք իբրեւ երեք-
հարիւր . և առ հասարակ զանուն իմ կար-
դային յօգնութի . և իմ տեսեալ զողորմ
վիճակ նց՝ դիմեցի աղօթիւք առ տր , և եր-
թեալ հոգւով ՚ի ծովանդր՝ ձեռն ետու նց ,
և ազատեցի զնս . ուր դուք յանդորրու կայիք
աստանօր . այլ տր տացէ և ձեզ զհոգւոյ ան-
դորրութի՝ հասանել խաղաղութբ ՚ի նաւա-
հանգիստն երկնից ։ Եւ ապա օրհնեաց զնս ,
և արձակեաց ։

Տեսեալ երանելւոյն երբեմն գաւազան ան-
կեալ յերկնից՝ պատմեաց ժողովրդեան զցա-
սումն հանդերձեալ . որ և եղեւ իսկ . քանզի
այն-

այնչափ Թրթուր յաճախեաց 'ի կողմանս
երկրին ասորւոց , մինչև ծախել զա͞մ գաւառ-
րս . այլ սիմէոն աղօթիւք և քարոզութե͞ն
ապաշխարութե͞ն փութով անցոյց 'ի նոցանէ
զպատուհասն ։ Դարձեալ ետես գաւազանս
երկու . յորոց մին անկաւ ͞է արևելս , և միւսն
͞է հիւսիս կո͞մ ͞է արևմուտս . և գուշակեաց
զյառնել պատերազմաց պարսից և սկիւթա-
ցւոց ͞ը դէմ քրիստոնէից՝ յորդորեաց զամե-
նեսին յապաշխարութի ։

Սաղմօք յօգնութի եհաս երանելին սիմէոն
և եկեղեցեացն ա͞յ . քանզի և յառաջ քան
զելանելն 'ի սիւն՝ անձամբ խօսելով ͞է ե-
պիսկոպոսաց , և յետոյ միջնորդու͞թ այլոց ,
զբազում հակառակութիս ցածոյց . և զյով-
հան անտիոքացին զգժտեալն ͞է սէ͞յն կիւր-
ղի՝ 'ի հաշտութի ած՝ ͞ը աղաչանաց թէոդո-
սի կայսեր փոքու . և զնոյն ինքն զինքնա-
կալն հաւանեցոյց յետս դարձուցանել ըզ-
հրաման իւր՝ որով թոյլ տուեալ էր հրէից
ունել յանտիոք ժողովարան հանդիսապէս ։
Նոյնպէս և յաւուրս խռովութեց՝ որ զկնի
չորրորդ ժողովոյն , գրեաց երանելին սիմէոն
պենի թղթոյ լևոնի կայսեր , ո͞չ և առ բա-
սիլիոս պատրիարք անտիոքայ , հաստատե-
լով զսահման ժողովոյն լինել միաձայն ընդ
երիցն [illegible] . և առ եւդոկիա թագու-
հի՝ որ զեւտիքեայն ունէր կողմն , գրեաց պա-
տասխանի [illegible] . զգո͞յշ լեր ասէ ան-
ձին քում , զի սատանայ նախանձեալ ͞է ա-
ռաքինութիս քո՝ կամի խարբալել զքեզ իբրև

զցո-

պչորեան, թելադրելով ձեռն տալ մարդոց անխրատուաց եւ պառակտողաց զեկեղեցի ա̄յ։ Յերկրորդ ամի կայսերութեան Լեւոնի առաջնոյ եղեւ սասանումն երկրի ահագին. եւ յեր-կրիլ առ ժամանակ մի՝ գունդագունդ դի-մէին մարդիկն առ սիւնակեացն սիմէոն, ցածուցանել ՚ի նոցանէ զբարկութիւն ա̄յ. քանզի բազում շէնք կործանեցան, ոմն եւ բազում ոգիք մեռան. եւ այնպէս սաստիկ էր շարժումն, զի եւ սիւն սիմէոնի հանդերձ սեամբն տատանէր իբրեւ տերեւ ծառոց բա-խելոյ ՚ի հողմոյ։ Որ եւ արտասուհակցորդ լեալ ը̄ բազմութեան՝ յապաշխարութիւն կրթէր զնոսա, յանդիմանելով զանզգջութիւն մարդկան. տեսէք ասէ, զի լցիք զդաւթեան կշտամ-բութիւն յանձինս ձեր. ամենեքեան խոտորե-ցան, ՚ի միասին անպիտանացան. ոչ ոք է՝ որ առնէ զբարի, եւ չէ ոք մինչեւ ՚ի մի։ Դէտ կացոյց զիս ա̄ծ ՚ի դիտանոցիս՝ քարոզել ձեզ զապաշխարութիւն կենաց. եւ ոչ լուէք բանից իմոց, այլ հարեալ կայք զագահութե̄ եւ զա-պիրատութե̄. անօրէնութիւնք ձեր եւ գարշու-թիւնք յաճախեցին. լաւ է ինձ այսուհետեւ խօսել ը̄ ա̄ծ միայն՝ քան առ ազգ անհաւան։ Զերեսս խնդրեք զա̄յ, յորժամ վտանգ ինչ ձեզ հասանէ. ապա թէ ոչ՝ իսպառ մոռա-նայք զա̄ծ. վ՜այ եւ աղօթք ձեր ո՛չ լինին ընդ-ունելի. եւ ո՛չ եթէ այլ ոք յաղօթս կայցէ վ̄ս ձեր, լսելի լինիցի։

Զայս ասացեալ՝ լռութ̄ե աղօթել սկսա-ւ սիմէոն. եւ ահա անդէն ուժգին եւս սասա-

նու-

նութիւն լինէր, մինչև գոչել ամենեցուն, օգնեա՛ մեզ տ՟ր ա՟յ ։ Իսկ նա հրամայեաց վերադոչել նո՟ց միաբան յերկինս . տէր ողորմեա՛ ։ Եւ զկնի սակաւուց դադարեաց երկիրն . և նորին յետ միւսանգամ լռիկ աղօթելոյն՝ դարձաւ և ասէ ցամբոխն . գիտասջի՛ք եղբարք, զի յա՟մ բազմութեան՝ միոյ ուրուք ևեթ աղօթք ելին առաջի ա՟յ . և ձայնեալ յանուանէ կոչեաց զոմն 'ի ժողովրդենէն՝ մերձենալ առ սիւնն . և ասէ ցնա . հաւատա՛ ինձ եղբայր, զի եցոյց ինձ տ՟ր՝ զի քո միայն աղօթք եղեն լսելի . այլ ասա՛ ինձ, զի՞նչ բարի գործեալ է քո ։ Իսկ այրն պարզ սրտիւ և պատկառ դիմօք ասէ . Թո՛ղ հա՛յր, զի ես մարդ մեղաւոր եմ ։ Եւ իբրև ստիպեցաւ, ասէ . ես այր շինական եմ, և սովորութիւն կալայ յերիս բաժանել զաւուրն վարձս՝ որ 'ի հողագործութէ . զմին տամ աղքատաց, զերկրորդն 'ի հարկս արքունի, և զերրորդն ծախեմ 'ի պէտս տան իմոյ . զայս կարգ պահեցի անխափան մինչև ցայժմ . այլ ինչ ոչ գիտեմ . և ոչ ումեք չարիս խորհիմ, այլ զանձն իմ դատեմ առաջի ա՟յ ։ Զայս լուեալ ամբոխին՝ այր զարմանք ելանէին ողջագուրել զընտրեալն ա՟յ, զոր ա՟ծ ինքնին յայտնեաց . և շինեցան յոյժ 'ի նմանէ . և գոհանային զա՟յ և զծառայէն նո՟ր զսիմէոնէ վասն ա՟մ իրացն եղելոց ։

Յուլիանոս ո՟մն չար ծառայ արդակուրայ իշխանին՝ զօրագլխի անտիոքացւոց, զչարեալ է բարեհամբաւութե՟ն նորա, և մոլեգնեալ

'ի

'ի դիմէն՝ ասէ ցՏր իւր․ Թո՛յլ տուր ինձ, և երթայց 'ի վայր քարշեցից զայրն զայն 'ի սեանէ անտի, և գան հարից չարաչար՝ ոտս և կամիմ․ զի խաբեբայ և մոլորեցուցիչ է նա, որ կուտէ զամբոխն 'ի գլուխ իւր։ Նչկն եդ սանդուղս, և փութացաւ 'ի սիւնն 'ի վեր ելանել․ այլ իբրև բարձրացաւ ընդ քանի մի աստիճանս՝ սահեալ անկանէր սանդուղքն․ իսկ ինքն մնաց յօդս 'ի կախ՝ իբր չորս կանգնաւ բարձր յերկրէ․ և որք տեսինն՝ զահի հարան․ զի և գիտէին իսկ ոչ զպատճառս իրացն։ Յետ պահու միոյ անկաւ յուլիանոս 'ի գետին, և եւս քան զեւս զայրագնեցաւ Ըդէմ Տրն․ յայնժամ լարեաց զաղեղն, և կամէր նետաձիգ լինել 'ի Տրն սիմէոն․ այլ անդէն վաղվաղակի կարկամեցան ձեռք նր̃ և ոտք․ և անկաւ ահ 'ի վր̃ ամենեցուն․ և մնաց այրն զա̃մ աւուրս իւր պոտագրոս, և քիռագրոս, ու ոտնացաւ և ձեռնացաւ։

Մեծ եւս պատուհաս ընկալաւ վակատոս իշխանն, որ կամէր յափշտակել զգիւղօրէս հօրն գելասիոսի․ և եկեալ խնդրէր 'ի Տրյն սիմէոնէ օրհնութի վս յաջողութե ճանապարհի իւրոյ՝ առանց յայտնելոյ, թէ յի՞նչ պէտս կամի գնալ յարքունի դուռն։ Իսկ Տրն սիմէոն յանդիմանեաց զծածուկս սրտի նր̃, և ասաց երթալ դարձուցանել զանիրաւ յափշտակութիւն․ միայն թէ հասցես ասէ 'ի տեղի քո․ որ ոչն կարաց հասանել, այլ մեռաւ 'ի ճանապարհի։

Յետ բազում և այլ հրաշալի գործոց մերձե-

ցան

ցան աւուրբք փոխման սքանչելւոյն սրբոյն Սիմէոնի .
զոր այսպէս նկարագրէ աշակերտ նորա ան-
տոն . * Անտոնիոսս ( ասէ ) տեսի զնա եղ-
,, բարք հինգ աւուրբք յառաջ քան զփոխումն
,, նր̃՝ իբրև 'ի քուն , 'ի զգեստս պայծառս ,
,, և դէմք նր̃ աճեղահրաշ . մինչև անկարա
,, նամ պատմել զկերպարանս նր̃ : Եւ երա
,, ցաւ յինէն միտք իմ , և ոչ կարացի բարբա
,, ռել ինչ բան առ երկիւղի . մինչև զար
,, թեաւ նք հայրն մեր . և ապա հայեցայ և
,, տեսի ,, զի ճաշակէր ինչ՝ զոր ոչ գիտէի .
,, նուագեաց և զսաղմոս , որ անկաւ 'ի մտաց
,, իմոց , բաց 'ի վերջաձայնէն , ամէն : Ուր
,, եսս զարհուրեալ կայի 'ի տեսիլ դիմաց
,, նորա . զի փայլէին երեսք նորա ոպ̃ զարե-
,, գակն ||:

Նա եղև 'ի գալ ժողովել բազմութե̃ն ըս̃ սո-
վորութե̃ն , և 'ի սպասել ծունր դնելով՝ զի
օրհնեսցին 'ի նմին , ոչ երևէր նմ̃ ոպ̃ յերեկն
և յեռանդն . և ասէին , եթէ 'ի զարմացման
է երանելին . * Նա իմ տեսեալ զայն՝ ել
առ նա 'ի վեր յաւուրն երկրորդի , և հայե-
ցեալ տեսի զերեսս նորա արփիափայլ , ոպ̃ և
յայլում պահու՝ յորժամ խօսէր ը̃ իս : Նայց
իբրև չետ ինձ պխնի , զառաջինն 'ի կարծիս
անկայ՝ եթէ փոխեալ իցէ . և կամէի ստու-
գել զիրան . այլ պատկառանքն և երկիւղն
յերեսաց առն ա̃յ յետս զիս նահանջէր :
Նպա համարձակեալ ասեմ ցնա . հայր , զի՞
է՝ զի ը̃ իս ոչ խօսիս . բազումք են՝ որ մնան
օրհնութե̃ն քում . քանզի այս երրորդ օր է՝
զի

զի զուրկ թողեր զնոս յողջունէ քումմէ . ո՞չ խօսիս ընդ իս հայր : Յայնժամ ձգեն զձեռն՝ շօշափեցի զմօրուս նր . և զննեալ զմարմինն՝ գտի թուլացեալ . և անդէն 'ի միտ առի զաւ ա̄ծ փոխումն նր : Ապա ամփոփեալ զհանդերձն՝ համբուրեցի զոտս նր . և աՀա բավանդակ մարմինն բուրէր զհոտ խնկոց անուշից , մինչև զմայլիլ ինձ ընդ այն : Այլ իբրև կացի առ նմա պահ մի , շարժեցաւ մարմին նորա ողջոյն՝ սեամբն հանդերձ . և լուայ զձայն՝ որ ասէր ցիս . ամէն , ամէն : Այլ ես առ աՀին զայս և եթ ասացի . օրհնեա՛ զիս հայր , յիշեա՛ զիս , և ո՞ր առա զիս ո՞ր ննջմամբդ քո :

Այլ յորժամ իջի , ոչ ումեք 'ի վերայ հանի ըղբանն , զի մի՛ աղմուկ լինիցի . այլ 'ի ձեռն հաւատարիմ մարդոյ ազգ. արարի եպսին անտիոքացւոց , ( որում անուն էր մարտիրոս , ) և արդավուրայ իշխանի ( որդւոյ ասպարայ որդւոյ արդավուրայ ) : Այլ եկն հայրապետն անտիոքայ հանդերձ այլովք վեց եպսօք , և իշխանն արդավուր վեց հազար արամբք , զի մի՛ յափշտակեսցեն զնա բնակիչք երկրին . ոմ̄ և եղեալ էր նց 'ի մտի : Արդ՝ կախեցան փեղկք արծաթիք մինչև 'ի վանդակս սեանն . և եղանեն երեք եպսունք 'ի վեր , և հանեն զգդեստս նր . և տեսեալ սաղմոս երկիս՝ 'ի վայր իջուցանեն զնա : Յայնժամ ապա ծանեաւ ժողովուրդն ամ̄ , եթէ փոխձանեալ է նա . և եղև խուռն խուժել ամ̄ բազմութե̄ , մինչև չերևիլ լերին յամբոխէ անտի , հան-

դերձ

դերձ թաւրմամբ խնկոց և ջահիւք ։ Եւ հըն-չեաց ձայն ողբոց արանց և կանանց, զի և լեառն ողջոյն ողբակից թուէր լինել նմա ։ և ոչ գոյր թիւ թաւշնոց անապատի ժողովելոց 'ի փարախ անդր ։

Արդ իբրև իջուցին զնա 'ի վայր, և պատ-րաստէին զյուղարկաւորութիւն թաղմանն, թէպէտ և այն չորրորդ օր էր 'ի փոխմանն նորա, այլ այնպէս վայելուչ և յարդարեալ կայր մարմին նորա, որպէս էրն յորժամ ննջեաց ։ Եւ էր տեսանել զերեսս նորա որպէս վարդ գե-ղեցիկ ծաղկեալ ։ իսկ հերքն և մօրուսն սպի-տակացեալ ձիւնափայլ մաքրութեամբ ։ Ձեռն էարկ հայրապետն անտխրաքայլ առնուլ մազս քանի մի 'ի մօրուացն ։ և նոյնժամայն գոսա-ցաւ ձեռն նորա ։ Եւ ասէ ցնա ։ օրհնեա՛լդ Աստուծոյ ողջ ես, և ոչինչ վնաս գտաւ 'ի քեզ, և ո՛չ 'ի հանդերձս քո՝ զօրութեամբն Աստուծոյ ։ Եւ անդէն հաստատեցաւ ձեռն նորա յառողջութիւն ։ և իսկ և իսկ եդ զնա 'ի դագաղն Ս ։

Ապա ասէ բարձեալ տանէին զնա դագա-ղաւ 'ի վերայ կառաց՝ սաղմոսիւք և օրհնու-թեամբ, հանդերձ կականմամբ ամենայն բազմութեան ։ և եղև 'ի հասանել նոցա 'ի տեղի մի մեռով կա-չեցեալ՝ իբրև հինգ մղոնաւ հեռի յանտիո-քայ, զտեղի առին ջորիք կառաց՝ որք բար-ձեալ ունէին զնա ։ և ը զարմանալ ամենե-ցուն՝ թէ զի՞ է, զի ոչ խաղան ջորիքն յա-ռաջ, փակեաց այր մի 'ի գերեզմանաց՝ որ վա գործոց իւրոց անարժանութեան ըմբռնեալ էր յայսոյն պղծոյ, և գոչէր մեծաձայն, ա-ղըր-

ղորմեա՛ ինձ ո՛վ Տր սիմէոն. և ընդ մերձենալ նորա 'ի կառս Տրյն՝ առ ժամայն բժշկեցաւ և զգաստացաւ. և չորիքն սկսան յառաջել յընթացս. զոր տեսեալ բազմութեն՝ որք քաջ ճանաչէին զդիւահարն և զգործս նր, օրհնեցին զած մեծաձայն, մինչև հնչել վայրացն 'ի ձայնէ նց. այլ առաւել ձայնիւ ցնծութե գոչէր այրն՝ զհետ ընթանալով կառացն, այսօր քև ազատեցայ ծառայդ ծյ, զի դու ապրեցուցեր զանձն իմ:

Այլ եւ ամ քաղաքն անտիոքացւոց ընդ առաջ Տրյն մեծաւ հանդիսիւ. քանզի առ հասարակ զգեցեալ էին հանդերձս սպիտակս, և լապտերք լուցեալք և մոմեղէնք 'ի ձեռս նց. և երգս 'ի բերան առեալ նուագէին, և ասէին. ահա գայ հովիւն մեր բերելով ընդ իւր զգանձն երկնային. և բերեալ հանգուցին զնա փառօք յեկեղեցւոջ՝ որ կոչիւր կասիանու: Իսկ զկնի աւուրց երեանից իշխանն և զօրավարն արևելից արդաւոր ետ փոխել զնա յաւագ եկեղեցին անտիոքացւոց: Այլ ապա ընդ յայտնութեն ծյ շինեցաւ առանձին տաճար յանուն Տրյն յանտիոք՝ արժանի Տր և փառաւոր նշխարաց նորա, և անդ ած փոխեցին զնա շքով մեծաւ: Բազումք բազում ինչս մատուցանէին հայրապետի քաղաքին, մասնաւորել նոցա 'ի նշխարաց Տրյն յօրհնութի. այլ ոչ իշխեաց նա տալ և ոչինչ՝ վն երդմանն, զոր արարեալ էր: Իսկ այրն՝ յորմէ ել դևն, մենակեաց վարս ընտրեալ՝ պաշտէր զՏրն զամ աւուրս կենաց իւրոց. և

եղև նա անօթ ընտրեալ ։ Սա արար սբն սի-մէոն քաղուած նշանս սքանչելեաց զկնի մա-հուն առաւել քան 'ի կենդանութեան , ըստ հաւատոց նց՝ որք դիմէին առ նա յամ ազգաց ։ Որոյն ուխտատեղի եղև և փարախ նըյն հանդերձ սեամբն . յորում վայրի շինեցաւ այլ մատուռն . և ոչ յառաջն՝ նոյնպէս և զկնի չկայր իշխանութի կանանց 'ի ներքս մտանել . մինչև պատուհասիլ և կնոջ միում, որ առնացի ձևով փորձեաց միջամուխ լի-նել . զի յետս յետս վարեալ 'ի սեմոց 'ի դուրս՝ եհան զօգի . Թող զի 'ի կենդանութեան նըյն այլ կին մի եկն և նստաւ արտաքոյ 'ի ձև առնացի . և նըյն իմացեալ զխորհուրդս նր՝ ետ նմա օրհնութի 'ի հեռաստանէ , և 'ի բաց արձակեաց ։

Արդ եղև վախճան նըյն 'ի տարեմտի յու-նաց՝ 'ի սկզբան սեպտեմբեր ամսոյ , որ ըստ ասորւոց իլուլ , յաւուր ուրբաթու , 'ի չոր-րորդ ամի կայսերութեան լևոնի յաջորդին մար-կիանոսի , յամի տն իբր 460 , 'ի հասակի՝ ոչ կարծի եօթանասուն ամաց . ըստ ոմանց՝ և ևս աւելի . զի ստոյգն ոչ նշանակի 'ի գրչաց վարուց նորա . միայն սիւնակեցութի նր յեր-կուս փարախս ասի լինել քառասուն և եօթն ամ . և տմ ամք ձգնութեան յիսուն և վեց . զի իբրու զամս տասն 'ի վանս և 'ի սենեակս հաշուեն , և զայլսն 'ի վր այլևայլ սեանց ։(5) Լուեալ լևոնի կայսեր , եթէ քաղուած սքան-չելիք լինին 'ի տապանէ սըյն , գրեաց հրո-վարտակ առ անտիոքացիս՝ պատուէր տր-

ճեալ բերել զնորա մարմինն 'ի թագաւորեալ քաղաքն 'ի Կոստանդինուպօլիս ։ Բայց նշխարք ոչ իւիք յանձն առին․ այլ աղերսանօք հաւանեցուցին զկայսրն, զի մի՛ զրկեսցէ զքաղաք իւրեանց յայնպիսի պատուական գանձէ, որ է ասեն պահապան մեր յամենայն արկածից, և պարիսպ և ամրութիւն յերեսաց թշնամեաց ։ Յետ ժամանակաց թէպէտև մասունք ինչ մանունք սփռեցան 'ի զանազան տեղիս, այլ ամբողջ մարմինն կայր տակաւին յանտիոք մինչև ցյաւուրս մօրիկ կայսեր․ յորում ժամանակի երկիրեպագ նշխարաց սրբոյն սիմէոնի եւագրիոս պատմիչ արժանահաւատ, որ գրէ զարմացմամբ, թէ տակաւին հերք սրբոյն միացեալ էին գլխոյ կային այնպէս թարմ որպէս կենդանւոյ․ և մորթ ճակատուն թէպէտև կնճռեալ, այլ անապական էր մնացեալ․ որպէս և բազումք յատամանց 'ի տեղիս իւրեանց․ անդ պահիւր ասէ և երկաթի շղթայ սրբոյն ։ Յաւելու գրել, թէ յաւուր յիշատակի սրբոյն գնացի փափաքանօք յուխտ և 'ի փարախ նորա որ 'ի գագաթան լերին, երեք հարիւր ասպարիզաւ հեռի յանտիոք քաղաքէ․ իսկ զառ 'ի վայրութիւն լերին տարածեալ 'ի քսան ասպարէզս ։ Մատուռն կամ տաճարն էր շինեալ խաչաձև չորեքկուսի, սրահիւք պատեալ 'ի չորից կողմանց՝ սիւնազարդ և հոյակապ շինուածով․ իսկ 'ի միջավայրի 'ի բացօթեայ գաւթի կանգնեալ կայր սիւնն քառասուն կանգնեան, ուր երկնաքաղաքացի կեանս վարեաց հրեշտակն 'ի մարմնի սուրբն

սի-

սիմէոնն ․ և սրահքն ունէին վանդակապատ պատուհանս 'ի վերուստ՝ որք հայէին 'ի գաւ- ւիթն ։

Այս ահա ՟Է ահեկէ սեան նորին 'ի միում 'ի պատուհանաց անտի տեսի և ես ինքնին ( ասէ Եւագրիոս ) ՟Է այլ բազմութիւն ժողո- վելոցն առ սեամբ , աստղ մի նշուլագեղ ան- սովոր մեծութեան ցոլացեալ ընդ վանդակս , և ճառագայթեալ յորմն հանդիպակաց ․ և այն ոչ միանգամ կամ երկիցս և երիցս , այլ բազում անգամ ․ սահեալ սահեալ անհետա- ցեալ , և անդրէն 'ի վեր երևեալ ․ և այս ասէ են աւանդեալ բնակչաց տեղւոյն՝ տե- սանի միայն յաւուր տօնի առն այն (6) ։ Բայց այս չէ ինչ ․ մեծ ևս է այն , զոր ասէ՝ թէ լը- ծայ 'ի հաւատարիմ մարդոց , թէ անդա- նօր տեսեալ է նոյ̃ երբեմն զնորին երևեալ իւ- րով կատարեալ կերպարանօք , և այսր անդր թռուցեալ , մօրուածաւ և կնգուղ 'ի գը- լուխ , որպ̃ էր նոր սովորութիւն ։ Զայս և ա- ռաւել քան զսոյն պատմեն և այլ մատենա- գիրք դարուց 'ի դարս յաղագս սքանչելեաց նորին սիմէոնի մեծի ։ Այս և այլ սիմէոն սիւ- նակեաց երկրորդ ․ զորմէ լիցի բան 'ի կար- գի նոցա յիշատակելեաց ՟Ը յայսմաւուրաց ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Սյախեկին և վաւերական գրեցք վարուց սըյն սի- մէոնի մեծի՝ եղեն երկոքեան ակնատեսս վկայք , թէո- դորետոս եպս կիւրոյ 'ի կողմանս անտիոքայ՝ 'ի փի-

ըոթեռն գիրս իւր առ կենդանութեամբ սբյն. և անտոն աշակերտ սբյն յետ մահուան Նր. յորոց առաք և մեք, հայելով և յայլ մատենագիրս՝ որք ինչ ինչ 'ի սոցանէ, և ինչ ինչ այլուստ հաւաքեցին, զր եւագրիոս, մետափրաստէս, և այլք ոչ սակաւք: Քաղուած բանից անտոնի է և այն՝ որ գրի 'ի հարանց վարս համառօտագոյն, և 'ի յայսմաւուրս փոքր մի ճարձակագոյն. ուր և նա ինքն հաւաքօղն յիշատակէ 'ի վերջոյ զբուն աղբիւրն, ասելով. * անտոն աշակերտն երանելւոյն սիմէոնի և նորին սպասաւորն գրեաց զԱծահաճոյ վարս նորա ||:

Բոլլանդ յովհաննէս՝ որ ուրոյն ուրոյն 'ի մէջ բերէ զամ պատմագրաց զբանս զսբյն սիմէոնէ, զերկու օրինակս յառաջ ածէ պատմութեան անտոնի. մին յունարէն և լատիներէն՝ չափաւոր մեծութբ. որում մեք զհետ գնացաք յամի. և միւսն սոսկ լատիներէն՝ հին թարգմանութե ճարձակագոյն, երկայնեալ յաւելուածովք և 'ի բանից այլոց պատմագրաց. որ ոչն է ասելի պարզապէս գործ անտոնի, այլ՝ գործ թարգմանչի հաւաքողի 'ի զանազանից. զր է և ճարձակ հաւաքումն մետափրաստեսի. թէպէտև յամենայնին մի և նոյն վարք է ըս ամ հանգամանաց, բայց 'ի քանի մի դիպուածոց՝ զորս այս ոք կամ այն ոք եւեթ գրէ. այլ գրեալքն 'ի մէնջ են առաւել ըս առաջնոց աղբերաց. վսյ և ոչ կարօտին քննութեան:

Զգիտեմ որպիսի սովորութեամբ մտեալ է 'ի տօնացոյցս և 'ի ճաշոցս և յայլ գիրս մեր, զի անուանս սիմէոն սիւնակեաց՝ որ 'ի սեռականն ունէր լինել, սիմէոնի սիւնակեցի, կրկին ևս հոլովմամբ հասարակօրէն գրի՝ սիմէոնի սիւնակեցւոյն կմ սիւնակեցոյն: Գեղեցիկ որոշեալ է 'ի մեզ 'ի վր սբյն սիմէոնի՝ սիւնակեացդ անուն փոխանակ յունականիս Στυλίτης. որ թարգմանի սիւնական, ծագեալ 'ի բառէս στῦλος կմ στύλη, որ ստուգաբանի ջոյարան, և անխտիր թարգմանի 'ի մեզ Արձան, և Սիւն, և Կոթող (կանգնեալ 'ի վր շիրմաց)· ուր բուն սիւն կոչեցեալն ըս հայումս՝ նաև 'ի յոյնն նմանաձայն հնչմամբ κίων ասի: Զայս յայն սակս նշանակեցի, զի իմացցիս՝ թէ 'ի մեզ սիւնակեացդ անուն սեպհականեալ է սբյն սիմէոնի և հետևողաց Նր. իսկ սիւնականն կմ ըս յունաց ըսդիլիդիս՝ ասի և զայլոց առաջնոց բնակելոց 'ի բարձր քարայրս կմ յանձաւս սեպացեալս և անմատոյցս. ոճ կային և 'ի հայս ոմանք յայսպիսի ճգնաւո-

ւորաց յաւուրս սր̃ Լուսաւորչին և սրբյն Մեսրոպայ . զորս ագաթանգեղոս Քարանձաւամուտս կոչէ , և կորիւն՝ Անձաւամուտս . իսկ յունական օրինակն ագաթանգեղոսի կմ̃ Մետափրաստես անուանէ զնոսին Ըսգիւրգեա , թ̃ Սիւնականս . զորոյ զզանազանութիւն անգիտացեալ ստիլտինգայ բոլլանդեան՝ սկսանի վայրապար սազատանել զագաթանգեղոս , որպէս թէ սուտանկեացս յօդեալ իցէ յաւուրս Զ̃ զսիմէոն .

(2) Ոչ սակաւ ժամանակս՝ խորհրդով եդաք մտ̃ պարանին Է̃ մէջ կատարելոյ . զի անուն գնէ ամ մի . ուր վրէ, պակաս գրչաց առ Թէոդորետոսի՝ յորմէ և առ Մետափրաստեսի գրի , աւուրս տասն . գուցէ փոխ գրելոյ ամիս տասն : Որպէս և 'ի յիշել անուանի՝ թէ սիմէոն բաշխեր աղքատաց զօրընդօրէ կերակուրն , թէպէտև ուղիղ թարգմանեալ է 'ի լատինն , փէտամոււս , թ̃ օրական , բայց հատուածէա 'ի հարանց վարս ընթերցեալ փեճինաս՝ որ է ութային , համեալ է նոր իմաստ՝ գնելով 'ի լուսանցս այսպ̃ . * օրըօրէ հաղորդի || . որ է օտար 'ի պատմութենէն՝ առէ և բոլլանդ :

(3) Բասոս կամ պասոս՝ որ յօրինակս ինչ գրի պլասոս կմ̃ վլասոս . Ծ̃ անուանն և Ծ̃ գործոյն՝ թէպէտև ոչ Ծ̃ ժամիին , նոյնանայ Է̃ այնմ , որ յիշի 'ի հայերէն վարս հարանց . Գլ. Ճ̃ . Երես . 206 . կոչեցեալ հայր պիլոսիայ վանից և քահանայ . որոյ կամեցեալ տարապայման նախանձաւորութ̃ խրատել զեղբարս՝ խրատեցաւ 'ի հօրէն պիմենէ :

(4) Այսպէս բարուք բացատրութ̃ ընթեռնումք 'ի Հ . զերգուածս որսորդացն յանուն սբյն . զորով զանցեալ՝ պատժեցան իրաւամբք . ուր յայժմու յն . և լտ . օրինակս անուանի պակասին բառք ինչ , և մնայ պատիժն անպատճառ . քանզի սոսկ պէս ասի , թէ 'ի տալ զանուն սբյն՝ եկաց եղն , և որսորդքն զենին և կերան . և առ ժամայն պատժեցան : Վս̃յ և Մետափրաստես հաւկաւորի հայթհայթել պայս պատճառ . քանզի՝ ասէ ,
* ութընկալն սիմէոն գթութ̃ իւրով մարգասիրապէս
„ պարգևեաց նմ̃ զեղն զայն . իսկ նք̃ անգթութի մեծ
„ ցուցել՝ չարաչար վարեցան պարգևօքն . և ինքեանց
„ ձեռօք իշխեցին անողորմաբար զենուլ զնա || : Զոր անբաւական ասեալ բոլլանդայ՝ յաւելու և ինքն կրկնել զայլեայլ պատճառս , յասելն . * Զերևի՝ թէ յո-
„ րման իցէ ծանրութիւն յանցանացս , եթէ ոչ գուցէ
„ կամ այլոյ ուրուք էր եղն այն՝ պահեալ 'ի մէջ գա-



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբուհւոյն Փեբրոնեայ կուսին։

Հ. Յ. Ա. յունիս. 25։ Ճառընտիր Ը. էջ. ՋԷ = ՂԷա։ Բոլլանդեանն բաժնեալքն. 'ի Է հատ. յունիսի. երես. 14 = 35։ (1)



ՓԵԲՐՈՆԻԱ ԿՈՅՍ և վկայուհի, չքնաղ հոգւով և մարմնով, հարսն մաքուր անախտ փեսային, էր ժամանակակից և վիճակակից նոյն Հռիփսիմեայ կուսի, և բազմօք համանմանն ընթացից կենաց և նահատակութեան նորին, ըստ գեղեցիկ և պարզ վկայաբանութեան՝ զոր շարագրեաց Թումայիս կուսանն՝ հոգևոր սնուցիչ նորուն Փեբրոնեայ, օրինակ զայս։

'Ի ժամանակս Թգ̃րութե Դիոկղետիանոսի կայսեր, (որ էր զի 'ի Հռովմ նստէր յարևմուտս, և էր զի 'ի Նիկոմիդիա բիւթանացւոց (2) յարևելս,) Անթիմոս ոմն եպարքոս նր̃ անկեալ դնէր 'ի հեծանողութե. սա կոչեաց առ ինքն զեղբայր իւր՝ որում անուն էր Սեղինոս կմ̃ Սիզուհիանոս, և ասէ ցնա. Ես աւասիկ 'ի մարդկայինս կեցաց աստի վճարեալ եմ. զխնամմաքս զորդի իմ 'ի ձեռս

քո Թողում. և՝ որպէս խօսեցաք դմա զդուստր պռոսփորայ (կամ պորփիրայ) 'ի սինկղիտոսացն դասէ, փութացիր յետ իմոյ վախճանիս զհարսանիս դոցա կատարել, և լինել որդւոյ իմում 'ի տեղի հօր. զայսոսիկ հրաման տուեալ՝ յետ երից աւուրց անթիմոսն մեռանէր: (3)

Իսկ դիոկղետիանոս կոչեալ առ ինքն զլիւսիմաքոս՝ յաւաջիկայութեան հօրեղբօր նորա, ասէ ցնա. Այս, երիտասարդ դու, յիշելով զսէր հօր քո, խորհեցայ յետ վախճանի նորա յաթոռ նորա հանել զքեզ. այլ համբաւ իմն եհաս 'ի լսելիս իմ, որպէս թէ ուրախ լինիս դու ընդ կրօնս քրիստոնէից, և վասն այնորիկ յապաղել կամեցայ զիրսդ: Արդ այժմիկ խորհիմ առաքել զքեզ յարևելս, որպէս զի լուծցես զկրօնս քրիստոնէից. և յորժամ դարձցիս առ մեզ, 'ի հայրենի աթոռն հանից զքեզ. որպէս զի վարեսցես զեպարքութիդ: Զայս լուեալ պատանեկոյն՝ որ էր ամաց իբրև քսանից, ոչ իշխեաց տալ պատասխանի: Իսկ սեղինոս հօրեղբայր նորա անկեալ յոտս թագաւորին՝ ասէ. աղաչեմ զքեզ, ներեա՛ սակաւ ինչ աւուրս, զի կատարեսցից զհարսանիս դորա ընդ հօրն կտակի: Ասէ թագաւորն. երթիջիք նախ յարևելս, և զքրիստոնէից լուծջիք զկարգն. և յորժամ դարձջիք, արժան է և ինձ փոյթ յանձին ունել վասն հարսանեաց լիւսիմաքոսի: Զայս լուեալ նորա 'ի թագաւորէն՝ ոչ իշխեցին դիմախօսել. այնուհետև զճանապարհորդուն յարևելս առնէին զօրօք բազմօք.

և

և էր առեալ լիւսիմաքոսի Ը իւր զքեռորդին
իւր պռիմոս ( կմ՟ պռիմոն ) կոմս , և եդեալ
զնա 'ի վ՟ր զօրաց : Այս 'ի ժամանել իւրեանց
յարևելս 'ի գաւառն պաղամուրացւոց , ուր
էր քաղաքն պաղմիւրա մօտ 'ի սահմանս եփ-
րատայ` առ երի ասորւոց և միջագետաց ,
զօրս միանգամ ըմբռնէին` որք զանձինս քրիս-
տոնեայս խոստովանէին , զոմանս հրոյ տայ-
ին , և զոմանս սրով կոտորէին . քանզի անօ-
րէնն սեղինոս 'ի սրտէ կամակատար էր քնա-
մարտ արքային դիոկղետիանոսի , և զմարմինս
սպանելոցն շանց կերակուր տայր ընկենուլ .
վ՟ոյ թաղումն երկիւղ և դողումն ունէր զկող-
մանս արևելից յերեսաց առն խստի և չարի :
Իսկ լիւսիմաքոս բարեսէր պատանի կոչեաց
'ի գիշերի միում առանձինն զկոմսն պռիմոս ,
և ասէ ցնա . դու գիտես , զի հայրն իմ հե-
թանոս վախճանեցաւ . սակայն մայրն իմ
քրիստոնեայ էր , և փոյթ յանձին ունէր` զի
արասցէ զիս քրիստոնեայ . այլ վ՟ն ահի թա-
գաւորին և իմոյ հօրն` զայս առնել ոչ իշ-
խեաց : Այս արդ ունիմ զիմ մօրն պատուէր`
մի զոք 'ի քրիստոնէից ծախել , այլ` բարե-
կամ և ս քնի հարկաւորէր զիս լինել անդուլ
խրատուք : Այս ահա տեսանեմ ես , զի որ 'ի
բուռն անկանին քրիստոնեայք , անողորմ
ծախին 'ի ժանտէն սեղինոսէ . և արդ կա-
միմ , զի որ ըմբռնեալ լինին քրիստոնեայք ,
լռելեայն արձակեսցին անպատուհաս :
Ունկնդիր եղև նմա պռիմոս , և ոչ ևս տայր
զոք ըմբռնել . նա և 'ի վանորեայսն զեկու-

ցա

ցանէր, զի փախիցեն, և մի անկցին 'ի ձեռս սեղինոսի ։ Արդ 'ի շրջիւնս զկողմամբք միջագետաց՝ ուր ոչ սակաւ քրիստոնեայք կային, խորհեցին հաստատել 'ի քաղաք մի, որ մերձ յասորեստան է ըն իշխանութեան հռովմայեցւոց ։ զոր վկայագիրն ըս այլևայլ օրինակաց կոչէ՝ սաքայ կամ սիքայ, և կամ նիսեքի՝ ընդ մէջ հռոմոց և պարսից ։ այն է՝ ըս սատուգագոյն ընթերցուածոյ՝ մծբին քաղաք երևելի 'ի միջագետս հայոց [4] ։ որոյ առաջնորդ իսկ էր 'ի ժամանակին որբ. հայրապետն յակոբ՝ զգօնն կոչեցեալ ։

Իսր 'ի քաղաքին յայնմիկ վանք մի կուսանաց, յորում բնակեալ էին բազմութիւնք ձգնաւորաց իբրև յիսուն ։ Սոցա առաջնորդ կարգեալ էր այդ մայր վանից՝ սարկաւագուհին բրիոնա կամ բրիւյենէ, աշակերտեալ պղատանիս անուն կուսի՝ որ յառաջ քան զնա եղեալ էր սարկաւագուհի, և նորին կարգաւն վարէին 'ի վանսն անդ ։ քանզի այս կանոն էր պղատոնիդայ, զի յաւուր ուրբաթու ոչ տայր թոյլ գործել ինչ, այլ ամենեցուն ժողովիլ յեկեղեցին յաղօթս ։ և յորժամ զկանոնն կատարէին սաղմոսերգութե, զամային գիրսն առեալ սարկաւագուհւոյն՝ ընթեռնոյր յականջս քերցն մինչև յերրորդ ժամն ։ իսկ յերրորդ ժամէ և անդր տայր 'ի ձեռս բրիոնեայ զգիրսն, և նա ընթեռնոյր մինչև յերեկոյն ։ և յորժամ բրիոնա եղև սարկաւագուհի, ունէր և նոքին զնոյն կարգ ։ և երկրորդ նր էր թովմայիս՝ պատմօղ բանիցս ։

Սա

Այլ էին 'ի ժամանակին յայնմիկ 'ի մէջ կղզ-
ւոյս երկու աղջկունք՝ մնեալ 'ի տղայ տիոց
Է ձեռամբ բրիոնեայ ․ անուն միոյն պրոկղա՝
ամաց քսան և հնգից ․ և երկրորդին փեբրո-
նիա՝ քսան ամաց (5) ․ և էր փեբրոնիա դու-
ստր եղբօր բրիոնեայ մայրպետի ․ և ինքն
գեղեցիկ յոյժ երեսօք և բարձր հասակաւ ․
ոպ̄ զի չէր հնար գտանել յայլում զայնպի-
սի նկարագրութի և զչափ հասակի ։ Արդ
բազում աշխատութի յանձին ունէր բրիոնեա
'ի վր̄ փեբրոնեայ սանոյ իւրոյ , ոպ̄ երանե-
լին գայխանէ 'ի վր̄ հոլոփեռնեայ , թէ որ-
պէս կարասցէ ապրեցուցանել զնա ․ զի մի
'ի պատճառս գեղոյ նր̄ վտանգ ինչ հասցէ
նմա և այլոց ․ սմին իրի առ̄ քերցն յերեկոյէ
յերեկոյ տայր ճաշակել ․ իսկ փեբրոնեայ
հրամայէր զերկաւս աւուրս պահել , և ապա
ճաշակել ․ նաև իւր իսկ տեսեալ զայնպիսի
կազմութի մարմնոյ իւրոյ՝ ոչ հաց և ոչ ջուր
յագ ընդունէր ։ Բայց բաղդրանակ մի եւս
կազմել՝ այն է մահճակալ իբրև նստարան
(6) , երեք կանգուն յերկայնութի , և թզաւ
և կիսով 'ի լայնութի ․ յորոյ վերայ 'ի ժամ
քնոյն զմարմինն իւր հանգուցանէր ․ էր զի
և 'ի վր̄ մերկ գետնոյ տարածանէր ։
Այլ 'ի յարուցանել զիւ՛ն 'ի վր̄ նորա ցնորս
գիշերայինս , յառնէր փութանակի յաղօթս ,
և բազում արտասուօք խնդրէր 'ի տ̄նէ վա-
նել 'ի բաց զփորձանս չարին ․ և վաղվաղակի
բացեալ զգիրս՝ յա̄ծաշունչ տառից ընթերց-
ուածս կրթէր ․ վս̄ զի յոյժ ուսումնասէր
եղեալ

եղեալ էր 'ի մանկութէ, վասն որոյ և բազմիմաստ. մինչև զարմանալ բրիոնայ և ամենեցուն ընդ այնպիսի ուսումնասիրութեան նորա։ Նոյ յոր ժամ յաւուր ուրբաթու 'ի միասին ժողովէին յաղօթանոցն, հրամայէր բրիոնա փեբրոնեայ ընթեռնուլ զաստուածեղէն գիրս յականջս քերցն (7). և քանզի կանայք մեծազգիք ժողովէին յեկեղեցին յաւուր ուրբաթու 'ի լսել հոգևոր վարդապետութեան, հրամայէր բրիոնա վարագոյր ձգել՝ յորժամ ընթեռնոյր փեբրոնիա, զի մի՛ տեսցի յումեքէ կամ տեսցէ զոք. իսկ զառն մարդոյ զձև բնաւ ոչ գիտաց փեբրոնիա՝ թէ որպէս իցէ. զի 'ի կարի տղայութենէ փակեցաւ 'ի վանս։

Տարածեալ լինէր այնուհետև վարդապետութիւն նորա 'ի քաղաքին, այլ և չքնաղութիւն նորա և հեզ և խոնարհ քաղաքավարութիւն։ Եւ էր 'ի քաղաքի անդ տիկին ոմն պատուական՝ երիա անուն, կին լեալ ուրումն 'ի սինկղիտիկոսաց կամ եպարքոսի, և յետ վեց ամսոց՝ 'ի մեռանիլ առն այրի մնացեալ, և եկեալ առանձնացեալ 'ի տան ծնողաց իւրոց. ծանօթ էր և քրիստոնէութեան. թէպէտև ինքն էր հեթանոս, չև եկեալ 'ի մկրտութիւն։ Նորա լուեալ սորա զբարեհամբաւութիւն սրբոյ կուսին փեբրոնեայ՝ առ ծայրին ցանկութեան տոչորէր, թէ որպէս կարասցէ տեսանել զնա, և խօսել ընդ նմա 'ի շահ հոգւոյ իւրոյ։

Յարուցեալ այնուհետև գայր 'ի վանս անդր, և ասէ ցդռնապանն. ազդ արա մօր իմ բրիոնեայ սարկաւագուհւոյ. և նորա լուեալ՝ եկն

ընդ-

Ը̅ առաջի նորա : Իսկ տեսեալ Երիայ զԲրիոնա՝
անկեալ երկիրպագանէր նմա , և ասէր .
Երդմնեցուցանեմ զքեզ յա̅ծ՝ որ արար զեր-
կինս և զերկիր , մի արհամարհեր զիս իբրև
զհեթանոս պիղծ և անօ̅ , որ մինչև ցայժմ
խաղալիկ դիւաց և ՚ի կռապաշտութեան էի .
մի զրկեր զիս ՚ի վ̃դպութենէն և ՚ի տեսլենէն
Ս̃բյն փեբրոնեայ . փրկեցէք զիս յաստի ընդ-
ունայնութենէս , և ՚ի պղծութենէ կռապաշտու-
թենէս . քանզի հարկաւորեն զիս ծնօղքն իմ
երկրորդ անգամ ամուսնանալ ը̅ հեթանոս-
սի . բաւական է ինձ առաջին ժամանակն
անգիտութեան : Զայս ասէր , և արտասուօք
թանայր զոտս բրիոնեայ , և ՚ի բազում գութ
և ՚ի վշտակցութի̃ ածէր զնա :
Ասէ բրիոնա . գիտէ ա̅ծ , տիկին իմ, զի եր-
կեմեան էր՝ յորժամ ընկալայ ՚ի ձեռս իմ
զփեբրոնիա . և ունի իննևտասն ամ՝ ոչ զառն
մարդոյ պատկեր տեսեալ , և ոչ զկնոջ աշ-
խարհականի ձև գիտացեալ . և ոչ դայեակ
նորա անգամ կարօղ եղև տեսանել զերեսս
նորա մինչև ցայսօր , թէպէտև բազում ան-
գամ արտասուօք խնդրեաց յինէն . զի ոչ
կամեցայ զիջանել նմա : Իսկ արդ վ̅ս փա-
փաքմանդ քո՝ զոր ունիս առ ա̅ծ և առ նա ,
մուծից զքեզ առ նա՝ զգեցեալ զգեստ ճգնա-
ղական ո̃մ զիս : Արդ առեալ բրիոնայ զե-
րիա՝ եմոյծ ձևով կուսի առ փեբրոնիա . և
տեսեալ փեբրոնիայ զկրօնաւորական ձևն՝
անկաւ յոտս նորա համբուրելով . կարծէր՝
թէ ՚ի նոյն ձևոյ իցէ օտար ոք կուսան . և
ող-

ողջոյն տուեալ միմեանց՝ Հրամայեաց բրիռ-
նա երկոցունց նստել, և զգիրսն ընթեռ-
նուլ սէջն Փերրոնեայ։

Եւ այնչափ 'ի զղջումն եկեալ լինէր Երիա 'ի վարդապետութէ Փերրոնեայ, որ ոչ ձանձրանայր 'ի լսելոյ, և ոչ աշխատէր ինչ 'ի տքնութէ գիշերոյն. մինչ զի զցայգն ողջոյն անքուն հսկեցին երկոքեանն. և ժամ յատակն սրսկեալ լինէր յարտասուացն Երիայի։ Իսկ յորժամ առաւօտ լինէր, հազիւ հաւանեցուցանէ բրիոնա զԵրիա մեկնիլ յաղօթարանէ անտի, և գնալ 'ի տուն իւր։ Եւ նորա ողջոյն տուեալ՝ իջանէր լալով յեկեղեցւոյ անտի. և երթեալ առ ծնօղսն իւր՝ հաւանեցուցանէր զնոսա հրաժարել 'ի հայրենի աւանդութեցն, և դառնալ յԱծ ճշմարիտ։ Իսկ դքն Փերրոնիա հարցանէր ցԹումայիս յերկիրորդն սարկաւագուհւոյն, և ասէր. ասա ինձ տիկին իմ մայր, ո՞վ էր օտար քոյրն այն՝ որ այնպէս զեղոյր արտասուօք. որպէս թէ ոչ երբէք լուեալ իցէ նր զԱծային գիրս։ Ասէ Թումայիս. ո՞չ գիտացեր, թէ ո՞վ էր. Փերրոնիա ասէ. ուստի՞ գիտեի, զի որպէս օտար քոյր տեսի զնա։ Իսկ Թումայիս ասէ ցնա. այդ Երիայ կին սենկղիտիկէ էր, կին եպարքոսի։ Ասէ Փերրոնիա. ընդէ՞ր խաբելով մոլորեցուցիք զիս ձեւովն՝ զոր արկեալ էր զիւրև. ես տգիտութ իբրև ընդ քեռ խօսեցայ ընդ նմա։ Ասէ Թումայիս. մեծ տիկինն մեր հրամայեաց այսպէս լինել, և այսպիսի պատմուճանաւ մտանել նմա առ քեզ։

Յա

Յաւուրսն յայնոսիկ եղև հիւանդանալ փե-բրոնեայ մերձ 'ի մահ, և անկեալ դնէր 'ի վ՞ր բազրոնակի իւրոյ. իսկ երիայ եկեալ 'ի տեսանել՝ ոչ մեկնէր 'ի նմանէ, մինչև փարատեցաւ 'ի նմանէ հիւանդութիւն. այլ չև էր ստացեալ զկատարեալ առողջութի։

Յետ այսորիկ եղև համբաւ 'ի քաղաքին, եթէ սեղինոս և լիւսիմաքոս հանդերձեալ են գալ այսր, զի տանջեսցեն զքրիստո-նեայսն. այնուհետև որ 'ի քղքին էին քրիս-տոնեայք՝ փախեան, Յակոբ և եկեղեցա-կանք և վանականք. և թողին զիւրաքանչիւր տեղիս. ուստի և եպս քաղաքին փախուցեալ թաքչէր։ Յայնժամ իմացեալ զիրսն՝ քերց, որ 'ի վանքն էին, մատեան առ բրիէնա սարկա-ւագուհին, և ասեն ցնա. զի՞նչ գործես-ցուք, քանզի վայրենի գազանքն այն ժամա-նեցին 'ի քաղաքս մեր, և ամենեքեան փա-խեան յաղագս սպառնալեաց բռնաւորին։ Ասէ բրիէնա. զի՞նչ կամիք՝ զի արարից ձեզ։ Ասեն ցնա. հրամայեա, զի փախիցուք սա-կաւ ժամանակս. զի ապրեցուսցուք զան-ձինս մեր։ Ասէ բրիէնա. չև զպատերազմ տեսեալ՝ փախչի՞լ խորհիք. չև 'ի մարտ մը-տեալ՝ պարտեցայք. մի՛ որդեակք իմ. հաս-տատուն կացցուք վ՞ր Նր՝ որ վ՞ր մեր մեռաւ. ընդ զի և ընդ նմին կեցցուք։ Եւ զայս իբրև լուան քորքն, լռեալ դադարեցին։

Իսկ 'ի վաղիւն մի ոմն 'ի քերցն՝ որում անուն էր եթերիա, ասէ. գիտեմ ես, զի վ՞ր փե-բրոնեայ՝ որ հիւանդ ևս է, ոչ թողու մեզ ելա-

ելանել աստի 'ի մեծ տիկինն մեր. քանզի կամի
զամենեսեան վ՟ս նո՟ր կորուսանել. բայց ես
մտից և խօսեցայց վ՟ս ձեր՝ որ ինչ պա՛րտ է:
Սպա լուեալ ոմանց զայս՝ հաւատացին բա-
նիցն եթերեայ. իսկ ոմանք ընդդէմ կային՝
առգտանելով զմտածութի՟ն նո՟ր: Այլ 'ի լինել
հակառակութե՟ն ոչ սակաւ ժամու՝ ապա միա-
բանեալ ամենեցուն՝ մատեան առ սարկա-
ւագուհին, տեսանել՝ թէ զի՞նչ խորհես-
ցի: Այլ 'ի մտանելն նո՟ց առ նա՝ ծանուցեալ
նո՟ր զխորհուրդս եթերեայ, ասէ. զի՞նչ կա-
միս քո՛յր եթերիա: Այլ նա ասէ. եկայք առ
քեզ, զի հրամայեսցես մեզ փախչել և թաք-
չել. քանզի ո՛չ եթէ լաւագոյն եմք մեք քան
զժառանգաւորս եկեղեցւոյ և զնոյն ինքն
զե՟պն. պա՛րտ է քեզ և զայս առնել զմտաւ,
եթէ են 'ի մեզ նորահաստատ աղջկունք. գու-
ցէ յափշտակեալ 'ի զօրացն՝ անկցին 'ի փոր-
ձութի՟ ապականութե՟, և զվարձս ճգնութե՟ն
կորուսանեն. կամ տանջանաց ոչ կարելով
համբերել՝ լինիցին պաշտօնեայք դիւաց.
արդ եթէ կամեսցիս ապրեցուցանել զմեզ,
առցուք ընդ մեզ և զտիկինն փեբրոնիա, և
գնասցուք աստի:

Զայս լուեալ փեբրոնեայ՝ ասէ. կենդանի
է ք՟ն՝ որում ես հարսնացայ, և զոգին իմ
աւանդեցի. ո՛չ ելից 'ի վանաց աստի, այլ
աստէն մեռայց, և թաղեցայց 'ի սմին տեղ-
ւոջս: Այլ սարկաւագուհին բրիոնա ասէ ցե-
թերիա. դու գիտես՝ զոր արարեր կմ՟ա-
նիցես, անպարտ եմ ես. նոյնպէս և առ

ամ քարոն ասէ . իւրաքանչիւր զիւր օգուտն տեսցէ, և ընտրեսցէ զոր հաճոյ թուի յաչս իւր : Յայնժամ ամ քարքն հրաժարեալք 'ի բրիոննեայ և 'ի փեբրոննեայ՝ բազում ողբովք բաղխէին զկուրծս իւրեանց . և այնպէս ելեալ անտի գնացին :

Իսկ պրոկղա՝ որ էր սննդակից փեբրոննեայ, երթեալ առ մահիճս նր, և անկեալ զպարանոցաւ նր՝ գոչելով ասէր . աղօթս արա վս իմ տիկին իմ և քոյր : Իսկ նա կալեալ զձեռանէ նր՝ ոչ տայր նմա թոյլ ելանել . և ասէր ցնա . երկի՛ր յոյժ տիկին իմ պրոկղիա, և դու մնա՛ առ մեզ . զի դեռ ևս հիւանդ եմ . գուցէ պատահեսցէ ինձ մահ . և ոչ ոք է՝ որ 'ի գերեզմանն մուծանէ զիս . զի և չէ իսկ բաւական առ այն՝ տիկինն մեծ . ա՛ղէ կա՛ց մնա, զի դու յուղարկեսցես զիս : Ասէ ցնա պրոկղա . հրամայեցեր քոյր իմ, ոչ թողից զքեզ : Այլ իբրև երեկոյ եղև, ելեալ պրոկղայ արտաքս՝ աներևոյթ եղև . քանզի ահ բռնաւորին պատեալ էր զամենեքումբք : Յայնժամ տեսեալ սարկաւագուհւոյն բրիոննեայ զմերկութիւն վանիցն՝ եմուտ յաղօթանոցն, և ընկեցեալ զինքն 'ի գետին՝ դառնապէս կական բարձեալ ողբայր : Իսկ թոմայիս՝ որ երկրորդն էր բրիոննեայ, մերձ 'ի նա նստէր և աղաչէր, հանդարտեա՛ տիկին մայր իմ, զի կարող է ած ըն փորձութենէ և զելսն առաջ հատուցանել, զի համբերել կարասցուք . ո՛վ հաւատաց 'ի տր, և յամօթ եղև : Իսկ բրիոննա ասէ . այո՛ տիկին իմ թումայիս,

մայիս, գիտեմ՝ զի այդ այդպէս է. բայց ո՞ւր Թաքուցից զփեբրոնիա (որ մնաց միայնակ), կամ որպէ՞ս աչօք տեսից զդա՝ յորժամ՝ ՚ի բարբարոսացն ըմբռնեսցի: Թումայիս ասէ. մոռացար զառ յինէն առացեալն. այն՝ որ կարօղն է ՚ի մեռելոց յարուցանել, նոյն ինքն զփեբրոնիա զօրացուսցէ և ապրեցուսցէ. և արդ ա՛ղէ երթիցո՛ւք առ նա, և սրտապնդեսցուք ՚ի մահիճս հիւանդութեան նր.

Իսկ իբրև եկին երկոքեանն մերձ ՚ի բաղբանն՝ յորոյ վ՞ր անկեալ դնէր փեբրոնիա, սկսաւ բրոնիա լալ դառնապէս. և եդեալ զերեսս իւր ՚ի վ՞ր ծնգաց նր՝ զեղոյր արտասուօք: Իսկ փեբրոնիայ հայեցեալ ՚ի Թումայիս՝ ասէ. աղաչեմ զքեզ մա՛յր իմ, վասն է՞ր է այդպէս լալումն մեծի տիկնոջդ իմու, զորոյ և զողբումն յաղօթարանէ անտի լսէի: Ապա և ինքն Թումայիս յարտասուս հարեալ՝ ասէր. որդեա՛կ իմ փեբրոնիա, վ՞ն քո հեծէ և ողբայ տիկինս մեր. վ՞ն զի հանդերձեալ են գալ չարիք ՚ի բռնաւորաց անտի. զի Թերևս մատաղադոյն ես դու. և զո՛ւարթատեսիլ. յաղագս այդորիկ տառապի և ողբայ:

Ասէ նմն փեբրոնիա. աղաչեմ զձեզ, աղօ՛թս արարէ՛ք ՚ի վ՞ր աղախնոյ ձերոյ. քանզի կարօղ է ա՛ծ հայել ՚ի խոնարհութ՞ն իմ, և զօրացուցանել զիս, և շնորհել ինձ համբերութ՞ն, որպէս և ամ ծառայից իւրոց՝ որք սիրեցին զնա ճշմարտութ՞բ: Ասէ Թումայիս. դուստր իմ փեբրոնէա, ահաւասիկ ժամանակ

նակ մրցմանց և նահատակութեան հասեալ է . և ըմբռնեսցուք մեք 'ի զօրաց անտի . գիտեմ, զի զմեզ իբրև զանցեալս ժամանակօք արագ ծախեն բռնաւորքն . իսկ քեզ խնամ տանին, զի նորահասակ ես և գեղեցիկ տեսլեամբ : Արդ՝ եթէ դէպ լիցի մեզ ըմբռնիլ, և յանկարծ փաղաքշելի բանիւք աղաչեն ըզքեզ, մի՛ հաւանեսցիս նոցա . քանզի չի՛ք պատուականագոյն քան զկուսութիւն . որոյ բազում են վարձք, և մեծամեծ հատուցմունք . վասն զի անմահ է փեսայն կուսութեան, և անմահութիւն պարգևէ՝ որք նմայն հաւանին . արդ փութա՛ զնա տեսանել : Օ այս լուեալ փեբրոնեայ՝ ես քան զես հաստատէր ընդդէմ սատանայի . վասն որոյ պատասխանի տուեալ ասէ ցԹումայիս . բարւոք առնես, զի զօրացուցանես զիս զաղախին քո . բայց ես եթէ յօժար էի փախչիլ 'ի մրցմանց նահատակութեան, ընդ քերցն էի փախուցեալ, և յանքոյթ տեղի թաքուցեալ . այլ զի նմա փափաքեմ, որում զօդիս յանձն արարի, զնա փութամ գտանել, և առ նա իսկ անձկացեալ եմ . միայն թէ արժանի զիս իւր ցուցցէ՝ վասն անուան նորա ձգնել և մեռանել :

Օ այս լուեալ բրիոնայ՝ սկսաւ ասել և նա . տեսանես որդեակ իմ, թէ ո՞րպէս եկիր զհետ վշտութեան իմոյ . յիշեա՛, զի և այլոց վշտակից եղեր դու . յիշեա՛, թէ ո՞րպէս ընկալայ ըզքեզ 'ի դայեկէն 'ի ձեռս իմ . զի երկու ամք էին քո . և ցայժմ այր ոչ ետես զպատկեր քո . և մինչև ցայժմ պահեցի զքեզ ոբ, ո՞վ

և դու քեզէն քաջ գիտես ։ Իսկ այժմ զի՞նչ արարից քեզ որդեա՛կ իմ ․ արդ մի՛ ընդ վայր հարկանէր զծերութիւն բրինայ մօր քոյ , և մի՛ 'ի դերև հանէր զվաստակս հոգևոր ծնողի քո ։ Յո՜րժ լիցին քեզ առաջին նահատակքն , որք մեծապէս փառօք վկայեցին , և զպսակն յաղթութեան ընկալան յերկնաւոր հանդիսադրէն , ո՛չ եթէ արք միայն , այլև կանայք և աղջկունք ։ Յո՜րժ լիցին քեզ քորքն երկոքին Լիբէ և Լևոնիս , որք մարտիրոսացան արիաբար , Լիբէ սրով գլխատեալ , և Լևոնիս հրով ծախեալ ։ Յո՜րժ լիցի քեզ և Եւտրոպիա , երկոտասանամեայ օրիորդ ընդ մօր իւրում նահատակեալ ․ այն՝ է որոյ քաջութիւն և համբերութիւն դու ինքնին միշտ զարմանայիր ․ զի 'ի հրամայել դատաւորին նետահարել զնա առանց կապանաց , որպէս զի զանգիտեալ փախիցէ , իբրև լուաւ 'ի մօրէն՝ ասել , որդեա՛կ իմ Եւտրոպիա մի՛ լիցի քեզ փախչել , կապեաց ինքնին զձեռն իւր յետս ( է ծառ մի ) , և ոչ փախեաւ ․ այլ հարեալ 'ի նետէ՝ անկաւ 'ի գետին , և անդէն աւանդեաց զոգին ․ և ոչ էանց զպատուիրանաւ մօր իւրոյ ։ Արդ՝ սա , զորոյ զառաքինութիւն դու ինքնին գովէիր զարմանալեօք , տղայ էր անուսումն և տխմար ․ իսկ դու և այլոց եղեր վրդպ (8) ։ Զայս ամ․ խօսելով նոցա և աւելի քան զայսոսիկ՝ անցուցանէին և զայն

ևս գիշեր յաղօթսն այ ։

Իսկ 'ի վաղիւ՜ն իբրև առաւօտն լինէր , խռովութիւն և շշուկ և աղաղակ 'ի քաղաքին ընդոյր՝

'ի

՚ի մտանելն սեղանոյն և լուսիմաքրոյն . և զբազում քրիստոնէայս ըմբռնեալ զօրացն՝ ՚ի բանտ արկանէին , և ՚ի կապանս մտանէ-լին . և ոմանք ՚ի հեթանոսացն մատուցեալք առ սեղանս՝ զեկուցին մեծ վանացն այնորիկ : Իսկ նա լուեալ՝ առաքէ զօրականս մեծաւ փութով . յայնժամ զօրաց պատեալ զվանքն՝ առին ՚ի ձեռս տապարս և սուսերս , և հեր-ձուին զդրունս վանացն . և ՚ի ներքս մտեալ՝ բուռն հարին և կալան զբրիանա . իսկ ոմանք անդէն սպանանել կամէին զնա սրով : Այլ տեսեալ միւն փետրոնեայ զեկեալ հասեալ բարկութիւն , ընկէց զինքն ՚ի գետինն ՚ի բազ-մանակէ առնոր յառս զօրացն , և ասէ . երդ-մնեցուցանեմ զձեզ յանձն երկնի և երկրի . զիս յառաջ սպանէք , զի մի տեսից զմահ

աբիկնոց իմոյ .

Յայնժամ հասեալ ՚ի տեղին կոմսն պուպլիմոս առաքեալ ՚ի լուսիմաքրոյ յօգնութիւն կուսա-նաց , և տեսեալ զիրան՝ զայրացաւ ՚ի վերայ զօ-րացն . հրամայեաց նոցա արտաքս ելանել ՚ի վանացն , և ասէ ցբրիանա . ո՞ւր են՝ որ ըմբռ-նեալ են զքեզ : Բրիանա ասէ . մեծ ահիւ-ձեր ամենեքեան թողին և փախեան : Նա ասէ պուպլիմոս . երանի թէ և դուք էիք փախու-ցեալ . ասեմ ձեզ , ահա ունիք ներումն յի-նէն . ելէք և փախիք : Զայս իբրև ասաց , առեալ զզօրս իւր՝ ել ՚ի վանացն . ոչ պահա-պանս կացոյց , և ոչ խռովեցոյց զնա . այլ դարձաւ յապարանս լուսիմաքրոյ : Հարցա-նէր զնա լուսիմաքրոս , եթէ ճշմարիտ իցէն՝

զոր լուեալ էր մեր վն վանացն հաւատաւո-
րաց։ Սա նա ասէ. այո տմ իրաց. ապա էառ
զնա առանձինն, և պատմեաց նմա, թէ ճշ-
մարտութբ չոգայ 'ի վանսն. և ոչ զոք գտի,
քանզի փախուցեալ էին. բայց երկու պառա-
ւունք մնացեալ էին. և մի նորահասակ աղ-
ջիկ. այլ չքնաղ իրս ունիմ պատմել քեզ
տր իմ. քանզի տեսի աղջիկ մի, զի յորմէ
հետէ ծնեալ եմ, մինչև ցայժմ ոչ է իմ տե-
սեալ այնպիսի գեղ պատկերի. գիտեմ ածքն,
զի լոկ միայն տեսի զնա, զի անկեալ դնէր
'ի վր բաղդրանի միոյ, և զարհուրեցաւ սիրտ
իմ. ես զայս միայն ասեմ, զի բաց յաղքա-
տութենէն՝ արժանի է նա տեառն իմում կնութե.
և թէ չառնու յանձն, յայնժամ մեռցի.
իսկ զպառաւունսն՝ զինչ և կամիս, արա-
ցես։

Ասէ լիւսիմաքոս. ես պատուէր ունիմ 'ի
մօրէ իմմէ՝ չհեղուլ զարիւն քրիստոնէից,
այլ առաւել սէր առ նս ցուցանել. և զիարդ
մարթացայց նենգութիւն գործել ընդ քրիստո-
նեայսն. ոչ այդպէս տէր իմ, այլ աղաչեմ,
հանցես զնս 'ի վանացն, և ապրեցուսցես.
ոպ զի մի՛ անկցին 'ի ձեռս անողորմ հօրեղբօր
իմոյ սեղլինոսի։ Իսկ մի ոմն 'ի չար զօրացն
ընթացեալ առ սեղլինոս՝ ասէ. գտաք 'ի վանս
զոմն նորահասակ աղջիկ՝ յոյժ ահագին գե-
ղեցկութբ. զոր ապրեցոյց 'ի ձեռաց մերոց
կոմսն պռիմոս, և վն նր խօսի ընդ լիւսիմա-
քոսի։ Զայս լուեալ սեղլինոս՝ լի եղև բար-
կութբ, և առաքեաց 'ի վանսն պահապանս,

զի

զի մի՛ փախիցեն. և հրամայեաց քարոզել 'ի քաղաքին՝ եթէ վաղիւ՛ հրապարակաւ դատաստան է մ'ն կուսին՝ որ 'ի վանսն : Եւ եղե ամ բազմութե, և ժողովեցին արք և կանայք 'ի տեսանել զփեբրոնիա, և զնահատակութիւն նր :

Իբրև առաւօտն ծագէր, եկեալ հասին զօրականք 'ի վանսն, և մտեալ 'ի ներքս՝ ձեռն արկին և ձգեցին զփեբրոնիա 'ի բաղդրանէ անտի, և կապեցին զնա շղթայիւք. և արկեալ անուր երկաթի 'ի պարանոց նր փութային հանել զնա 'ի վանիցն : Իսկ բրիոնա և թումայիս պնդագոյնս կալեալ զձեռացն փեբրոնեայ՝ գոչէին դառնապէս, և աղաչէին զզօրականսն՝ ներել փոքր մի, զի խօսեսցին ընդ փեբրոնեայ. և դարձեալ աղաչելով ասէին, զի և ինքեանք երթիցեն ընդ նմա 'ի նահատակութի, զի մի՛ յորժամ միայն երթիցէ, զարհուրեալ երկիցէ : Ասեն զօրականքն. չհրամայեաց մեզ իշխանն զայլ ոք տանել բաց յաղջկանէս. արդ 'ի կարճոյ ներեմք ձեզ խօսել ընդ դմա. զի առեալ տարցուք փութանակի :

Սկսան ախուհեաւ բրիոնա և թումայիս հաստատել զփեբրոնիա. և ասէր բրիոնա. որդեակ փեբրոնէ, ահաւասիկ ելանես 'ի նահատակութի. տես, զի երկնաւոր փեսայն հանդիսատես է [illegible], և հրեշտակային զօրքն [illegible] ունին զքո յաղթութե պսակն. [illegible], զի մի՛ տարափեցիս 'ի տանջանացն, զի մի՛ [illegible] այսպն պատուականայի.

մի՛ ողորմեսցիս այս մարմնոյս՝ որ լուծանե-
լոց է. և արդ աւասիկ կամ ես 'ի վանս ող-
ջալով, մինչև լուա՛յց համբաւ ինչ զքէն,
այլ իցէ՞ թէ բարի, և ո՛չ խոտան. իսկ ո՞ տայր
ինձ աւետիք, եթէ փեբրոնիա մատնեաց
զինքն 'ի տանջանս, և կամ թէ փեբրոնիա
կատարեցաւ 'ի քս ։

Իսկ սրբն փեբրոնիա լցեալ հոգւով սրբով՝ ասէ.
հաւատամ յած, մա՛յր իմ, զի ոչ ո՛չ երբէք
անցի զպատուիրանաւ քով, և ո՛չ այժմ ինչ
անցանեմ. այլ տեսցեն ժողովուրդք և զար-
մասցին ը գործս իմ, և երանեսցեն ծերու-
թե՛ն բրիոնայ, և ասասցեն, եթէ արդարև
սա՛ է ձեռատունկ բրիոնայ մեծի. քանզի
ցուցից քեզ 'ի տկար մարմնի զոգի զօրութե.
արդ թո՛ղ, զի երթայց ։ Յայնժամ ասէ ցնա
և թումայիս. կենդանի՛ է տր որդեա՛կ իմ,
զի և ես զգեցեալ զգեստ Ցականի՝ ելից և
տեսից զնահատակութի քո ։ Փեբրոնիա ասէ.
աղաչեմ զքեզ մա՛յր իմ, տո՛ւր օրհնութիւն
ելից իմոյ. և արարէ՛ք ինձ աղօթս, և թո-
ղէ՛ք զիս երթալ ։ Իսկ բրիոնայ ձգեալ զձեռս
իւր յերկինս՝ գոչելով ասէր. տր իմ յս քս,
որ երևեցար աղախնոյ քում թեկղի 'ի կեր-
պարանս առաքելոյն պօղոսի, յայտնեսջի՛ր
և տառապելոյս այսմիկ ։ Զայս ասացեալ՝
արձակեաց զնա ։ (9)

Յայնժամ զինուորքն առեալ զփեբրոնիա՝
ելին 'ի վանիցն. իսկ թումայիս զգեցեալ
զգեստ Ցական, այս է 'ի ձև Ցիկ կանանց՝
երթայր զկնի 'ի տեսարանն (10) ։ Լուեալ և

երիայ

երիայ սինկղիտիկէ տիկնոջ՝ թէ փեբրոնիա
հաւատաւոր յատեան ածաւ, յարուցեալ
գոչէր 'ի ձայն մեծ. մինչեւ հիանալ ծնողաց
իւրոց, եւ հարցանել՝ թէ զի՞նչ դիպեցաւ
քեզ: Ասէ ցնոսա. զքոյրն իմ զփեբրոնիա յա-
տեան մատուցին՝ դատափետ առնել զվար-
ժապետն իմ իբրեւ զքրիստոնեայ: Եւ բա-
զում սփոփանս ընկալեալ 'ի ծնողացն, զի
դադարեսցէ յողբալոյն, նա եւս առաւել
աղաչէր ասելով. թողէք զիս, զի լացից
'ի վերայ քեռն իմոյ. զայս ասելով նորա՝
եւ զծնողսն յորդորէր յարտասուս. եւ հաւա-
նեցուցանէր զնոսա՝ թոյլ տալ նմա, զի երթի-
ցէ 'ի տեսարանն. եւ երթեալ երիայ՝ անդ
գտանէր եւ զթումայիս. եւ ծանուցեալ զիր-
եարս՝ արտասուօք թանային:
Եւ լինէր ժողով բազում յոյժ. եւ յառաջեալ
նստան իբրեւ իշխանք եւ դատաւորք՝ սեղինոս
եւ լիւսիմաքոս. եւ հրամայեցին ածել զփեբ-
րոնիա. եւ նա մտանէր յատեանն իբրեւ որոջ
անարատ՝ ձեռօք կապելովք, եւ անուր ծանր
'ի պարանոցի. զոր տեսեալ ամբոխին՝ յար-
տասուս ցնդէին. եւ լինէր կականումն մեծ:
Արդ իբրեւ ածաւ նք կոյսն 'ի մէջ, հրամայ-
եաց իշխանն սեղինոս լռել ամբոխին, եւ
ասէ ցլիւսիմաքոս. տո՛ւր հարցումն դմա, եւ
ընկա՛լ պ͠նի 'ի նմանէ: Յայնժամ ասէ լիւ-
սիմաքոս ցփեբրոնիա. ասա՛ ինձ աղջիկ,
որո՞յ բախտի ես. ծառա՞յ ես, եթէ ազատ:
Եւ նա ասէ. աղախին եմ: Ասէ լիւսիմա-
քոս. ո՞յր աղախին կոչիս: Փեբրոնիա ասէ.
ք͠ի:

քնի ։ Լուսիմաքոս ասէ ․ զի՞նչ անուն է քո ։ Փեբրոնիա ասէ ․ խոնարհ քրիստոնեայ ։ Ասէ Լուսիմաքոս ․ զանուն քո կամիմ ուսանել ։ Ասէ դ̅րն ․ ասացի , թէ քրիստոնեայ խոնարհ ․ իսկ եթէ զմարմնաւոր անուն իմ կամիս ուսանել, Փեբրոնիա կոչեաց զիս տիկինն իմ ։

Յայնժամ իշխանն լռեցոյց զԼուսիմաքոս, և ինքն սկսաւ հարցափորձել, և ասէ ․ գիտեն տէրքն՝ Փեբրոնիա, զի ոչ կամէի հարցանել զքեզ, այլ իսկ և իսկ մահու մատնել ․ բայց տեսեալ զհեզութիւն քո հանդերձ գեղեցկութ̅եդ և երևելի յօրինուածովդ , որով պարտեցաւ մեծ զայրացումն՝ զոր ունէի ՚ի վերայ քո , այսուհետև հայրաբար խօսիմ քեզ զագուտն ։ Նոյն արդ լո՛ւր ինձ դո՛ւստր իմ ․ գիտեն տէրքն , զի բազում ընչից և ստացուածոց տ̅էր կացուցից զքեզ ․ խօսեալ էր իմ կինն իմոյ Լուսիմաքոսի , բայց սակայն լուծից զվճիռ հաստատութեանն՝ զոր եդ ե̅ դատերն պրոսփորայ , և ե̅ քեզ հաստատեցից զդաշինսն ․ և եղիցիս դու կին Լուսիմաքոսի , զոր այժմ տեսանես զսա նստեալ ընդ աջմէ ․ և սա ինքն գեղեցիկ է գեղեցկութ̅ իբրև զքեզդ ․ և արդ լո՛ւր ինձ , և արարից զքեզ փառաւոր ՚ի վ̅ր երկրի ։ Նոյ մի ինչ զքեզ զարհուրեցուսցէ , թէ աղքատ ես ․ քանզի կին իմ ոչ ունի դուստր և ոչ որդի (11) ․ վ̅յ այս ինչ յայտնի լիցի քեզ , զի զ̅մ ինչս իմ քեզ շնորհեցից , և զայն առեալ՝ փոխանակ վարձանաց տացես Լուսիմաքոսի ․ և ես եղէց ձեզ հայր ․

հայր. և երանեսցեն ձեզ ա՟մ կանայք: Յայն-ժամ բերկրեսցի և Դիոկղէտիանոս մեծա-յաղթ թագաւորն մեր, և պարգևեսցէ ձեզ բազում բարութիւնս. քանզի և խոստացաւ իսկ հանել 'ի մեծագոյն պատուի՛ իշխանութ՟ զԼիւսիմաքոս փեսայ քո, և եպարքոս կացու-ցանել: Ահա զա՟մ ինչ լուար. տո՛ւր ինձ պ՟խնի՝ որ ծ՟ոցն հաճոյ է, և զիմ սիրտս ու-րախ առնել. իսկ եթէ անհաւան գտցիս խրա-տուց իմոց, գիտեն ծ՟քն, զի ոչ կարես կեալ մինչև ցերիս ժամն:

Այս պ՟խնի ե՟տ կոյսն Փեբրոնիա, և ասէ. ո՛վ դատաւոր, առագաստ ունիմ ես յերկինս անձեռագործ, որոյ հարսանիքն ոչ անցանէ. իսկ վարձանք թագաւորականք՝ զողջոյն իսկ զերկնից թագաւորութիւն. և փեսայ ունիմ անմահ, վ՟ոյ և ք՟ի մահականացուի զուգիլ ո՛չ կամիմ. արդ ո՛վ դատաւոր մի՛ ինչ աշխատ լինիր, զի ո՛չ փաղաքշելովդ օգտիս ինչ, և ո՛չ սպառնալեօքդ երկեցուցանես զիս:

Զայս լուեալ դատաւորն՝ բարկացաւ, և հրամայեաց պատառել զզգեստ նորա, և ցնցոտեան արկանել, և ի խայտառակութ՟ առաջի ամենեցուն կացուցանել. որպ՟ զի ամե-նեցուն տեսեալ ասէ զանարգանս դորա՝ եղ-կելի քան զա՟մ ոք զդա համարեսցին, և ան-ձամբ յանձնէ ամաչեսցէ. փոխանակ զի ինքն կամեցաւ անկանել յերևելի փառացն՝ զոր ես խոստացայ նմա: Այլ զինուորացն 'ի վ՟ր դիմեալ՝ 'ի նմին ժամու ծուէնս ծուէնս պա-տառէին զզգեստիկ նորա. և ցնցոտեան ինչ գտեալ՝

զատեալ՝ զայն՝ աւիրգած Հարկն զմիջոցն, և մերկ առաջի ամենեցուն կացուցանէին :
Յայնժամ ասէ Իշխանն . զի՞նչ ասես Փեբրոնիա , տեսանե՞ս , յորպիսի բարութեանց զրկեցար , և յորպիսի անարգութեանց հասեր :
Ետ պատասխանի Փեբրոնիա , և ասէ . Թէպէտև զ՟մ զգեստ իմ մերկացուցեր , ոչինչ նշաւակութի համարիմ ինձ . վ՟ս զի մի է արարիչ արուաց և իգաց . և ես ոչ 'ի հանդերձից ունիմ մերկանալ միայն , այլ և հրոյ և սրոյ և տանջանաց ակն ունիմ . և իցէ՞ թէ արժանի եղէց չարչարիլ վ՟ս նորա , որ վ՟ս իմ չարչարեցաւ :

Սեղինոս ասէ . անամօթ և չ՟ր անպատուհասութե արժանի , գիտեմ զի զուարձացեալ ես 'ի գեղեցկութի մարմնոյ քո , և ոչ ամօթ ինչ համարիս զմերկութի մարմնոյդ առաջի ամբոխին : Եւ ասէ երանելին . գիտէ ք՟ս , զի ոչ հայեցայ և տեսի զգեղ և զպատկեր առն մինչև ցայսօր . իսկ այժմ մինչ 'ի ձեռս քո մատնեցայ , անամօթ դատայ : Բայց ասա՛ ինձ ով յիմար և անզգամ դատաւոր , յորում պխական մրցարանին միթէ հանդերձ զգեցեալ իջանեն 'ի մարտն , զի դիւրաւ ըմբռնեսցին . ո՞չ ապաքէն մերկ կատարեն զպատերազմն , մինչև յաղթեն . իսկ ես՝ որ հրոյ և տանջանաց ակն ունիմ , զիա՞րդ հանդերձի՛ւ իջանեմ յայսպիսի մարտ . ո՞չ ապաքէն մերկ ընդունիմ զհարուածս մարմնոյս . մինչև յաղթեցից հօրն քում սատանայի , արհամարհելով զտանջանս քո :

Եւ պա

Ապա հրաման տայր սեղլինոս պրկել զնա 'ի չորից կողմանց 'ի չորս ցիցս կից քարինս, և 'ի ներքոյ նր ջահ հրոյ մատուցանել, և դալար բրօք զկողս նր հարկանել չորից դահճաց: Իսկ այնչափ տանջեցին զնա, զի անձրևք արեան յերկոցունց կողմանցն յերկիր հոսէին. և ներքին կողմն խորովեալ լինէր 'ի սաստկութե հրոյն. քանզի ձիթով արծարծէին զհուրն: Իբրև այնպէս յերկար տանջէին զնա կոյսն դատաւորն, միաբան գոչեալ ամբոխին՝ աղաչէին զդատաւորն ասելով. ո՜վ մարդասէր դատաւոր խնայեա 'ի մանկահասս աղջիկդ, խնայեա. և ցածկալ հրամայեա տանջել, թէպէտ և ոչ հաւանի հրամանի քում:

Իսկ բռնաւորն ևս խստագոյն հրամայէր տանջել. այլ իբրև ետես զմարմին կուսին պատառ պատառ արիւնաթաթախ յերկիր անկեալ, յայնժամ հրաման ետ դահճացն դադարել 'ի տանջելոյ զնա. քանզի կարծէր վախճանել 'ի կենացն. և դահիճքն գլխովին համարելով զնա մեռեալ՝ ընկեցին զնա 'ի հրոյ 'ի դուրս: Իսկ Թումայիս տեսեալ զայնպիսի աղէտս ձգնութեան փեբրոնեայ՝ ներգևելով վհատէր, և անկանէր առ ոտս Բրիայ տիկնոջն: Զայն իբրև ետես Բրիա, ձայն արկեալ գոչէր ասելով. վա՜յ ինձ տիկին իմ փեբրոնիա, վա՜յ ինձ հոգևոր ուսուցիչ իմ. քանզի յայսմ հետէ զրկեալ գտանիմ 'ի հոգևոր վճպուէդ. և ո՛չ 'ի քոյոյդ միայն, այլ և 'ի Թումայիսայն (12). քանզի և նա վհատեալ 'ի քոյոց տանջանացդ՝ անկեալ դնի

մերձ

մերձ 'ի վախճան ։ Իբրև լուաւ փեբրոնիա զձայն երիցս տիկնոջն, աղաչէր զզինուորսն բերել սակաւ մի ջուր, և հարկանել ընդ երեսս իւր՝ 'ի տեղւոջն, ուր անկեալ կայր իբրև անշնչացեալ 'ի հարուածոցն. իսկ նոքա կատարէին զխնդիրսն. և այնպէս զօրացեալ ոգի առնոյր. և աղաչէր զզինուորսն՝ ցուցանել նմա զերիս ։

Իսկ դատաւորն ոչ ներեաց բանից փեբրոնեայ, այլ հրամայեաց յարուցանել զնա յոտն, և բերել զառաջեաւ, զի պախնի տացէ նմ։ Ասէ դատաւորն. զի՞նչ ասես փեբրոնիա, որպէս թուեցաւ քեզ առաջին մըրցումն պատերազմիդ ։ Ասէ նմն. ուսար և 'ի միտ առեր յառաջին իսկ պատերազմիս, եթէ անպարտելի եմ, և զտանջանս քո արհամարհեցի ։ Զայս լուեալ բռնաւորին՝ հրամայեաց զփեբրոնիա զփայտէ կախել, և երկաթի քերչաւ զկողս նր քերել. և հուր սաստիկ 'ի ներքոյ նր մատուցանել. մինչև ոսկերք նր լուցեալ այրեցին ։ Իսկ դահճացն առեալ զքերիչսն, որ և սանտերք կոչին ; այնպէս ուժգին քերեցին, մինչև առաւել քան զառաջինն պատառ պատառ հատեալ յերկիր ընկենուին զմարմինս նր. և իսկոյն զհուրն բերեալ մատուցանէին 'ի կողսն ։

Իսկ նմն փեբրոնիա ամբարձ զաչս իւր յերկինս, և ասէ. Եկ տր ինձ յօգնութի՛ 'ի ժամուս յայսմիկ ։ Զայս ասացեալ՝ լռեաց. քանզի յանհնարինն տանջանց լինէր 'ի սաստկութէ հրոյն ։ Յայն ողորմ տեսիլ քաղաքումք

զար

զարհուրեցան, և 'ի բաց փախեան 'ի տեսարանէն, ստգտանելով զանհամբոյր և զանողորմ բարս անօրէն իշխանին. և այլք աղաղակէին 'ի բաց առնուլ զհուրն. մինչև լռեաւ իշխանն բանից նոցա :

Իսկ մինչդեռ կայր կախեալ զփայտէ սբ. կոյսն, դարձեալ հարցանէր զնա բռնաւորն. իբրև ոչինչ կարէր տալ պխնի, ապա հրամայեաց իջուցանել, և կապել զցցոյ միոյ. և հրամայէ կոչել բժիշկ, և ասէ ցնա. անիծեալ և թշուառական պիղծս այս ոչ կամեցաւ յատենի տալ ինձ պխնի. վն այդորիկ հատցի լեզու դորա, և անկցի 'ի հուր : Իսկ սբ. կոյսն իւրովի իսկ հանեալ մատուցանէր զլեզուն, և աղաչէր զբժիշկն՝ զի արագ հատցէ : Իսկ հիպասպիստէս բժիշկն (13), իբրև մերձեցաւ առ նա 'ի հատանել զլեզուն, ամ բազմութն երդմնեցուցանէին զնա 'ի փրկութի ածոցն՝ մի առնել զայն : Յայնժամ երկիցս նզովեալն և ամենապիղծն սեղինոս հրամայեաց տատամնախիլ առնել. և բժիշկն զգործիսն 'ի ձեռն առեալ՝ սկսաւ խլել զատամունս նր, և թափել 'ի գետին : Իբրև խլեաց եօթնևտասն ատամն, և սաստիկ հոսումն արեանն յերկիր իջանէր 'ի բերանոյն, ապա հրամայէր բռնաւորն, զի դադարեսցի բժիշկն 'ի խլելոյն : Իսկ քանզի նքողեալ նուաղէր սրն յարեան հոսմանէն, զայն տեսեալ բժշկին՝ դեղ մատուցանէր 'ի դադարեցուցանել զարիւնն :

Սկսաւ հարցանել սեղինոս ցսբ. կոյսն. գո՛նեա այժմ հաւանեա՛ ինձ, և խոստովանեա՛ զածսն :

զանձանս ։ Ասէ սուրբն փեբրոնիա . Նզովեալ լի-ջիր երեքթշուառեան և անիծեալ ծեր դու և դիք քո ընդ քեզ . զի խափանեաց զոտս իմ ՚ի ճանապարհաց իմոց՝ ոչ տաս ինձ երթալ առ փեսայն իմ . փութա՛ հա՛ն զիս յաղցաւոր մարմնոյ աստի . քանզի միայն ինձ այն՝ որ հա-ճեալն է Քս իս ։ Ասէ սեղինոս . փոքր մի եւս և սրով և հրով ծախեմ զմարմինդ քո . քանզի գիտեմ , զի դեռ զոյժ մանկութեն և զհամարձակութիւն անամօթութեն ունիս ։ Իսկ սուրբն փեբրոնիա ոչ կարացեալ տալ պնի ՚ի սաստիկ տանջանացն՝ եւս քան զեւս ՚ի մեծ ցասումն ածէր զդատաւորն ։

Յայնժամ հրաման ետ անօրէնն բժշկին , և ասէ . զանամօթիդ զստինսն հատեսցէ ՚ի գե-տին ընկեսջի՛ր ։ Եւ այն ինչ բժիշկն առեալ զսուրն՝ կամէր մերձենալ ՚ի սբ աղջիկն , ան-դէն վաղվաղակի ամ բազմութիւն սկսաւ ա-ղաչել զբռնաւորն , և ասել . ո՛վ դատաւոր ներեա՛ տղայ աղջկանդ , և մի՛ ածեր ՚ի վր դորա այնպիսի հարուածս ։ Իսկ դատաւորն ցասուցեալ ՚ի վր բժշկին՝ ասէ . կորեա՛ ա-րագ ո՛վ թշուառական , և ՚ի սիրոյ ամծոցն օտար ։ Իբրև սկսաւ կտրել զմի ՚ի ստեանցն , գոչեաց սբ աղջիկն յերկինս ՚ի վեր , և ա-սէ . տէ՛ր իմ Յս , տե՛ս զհակառակութիւն բռնաւ-թեանս այսորիկ , որպէս զի եկեսցէ օգն իմ առ քեզ . և այլ ոչ եւս բարբառեցաւ ։ Եւ իբրև հատան երկոքեան ստինքն և արկան ՚ի գե-տին , հրամայեաց անօրէնն հուր մատուցա-նել ՚ի լանջս նր . և ՚ի բաղում ժամս բորբո-

քելոյ զՀուրն՝ խորովեալ լինէր որովայն նր՟ առ Հասարակ : Զայն տեսեալ որոց անդն կային, յոլովք 'ի բաց գնացին 'ի տեսարանէն, ասելով . Նզովեա՛լ լիցի դիոկղետիանոս և ա՟ծք նր՟ :

Իսկ Թումայիս և Երիա առաքեցին 'ի վանսն առ բրիոնա՝ պատմել որ ինչ անցք անցին ը՟ փեբրոնիա . և Հասեալ Համբաւաբեր աղջկան 'ի վանսն՝ գոչեաց արտասուօք, և ասէ ցսարկաւագուհին . յաղագս այսորիկ առաքեաց զիս տիկինն իմ Երիա և Թումայիս, աղաչել զորբութիդ քո, ոպ՟ զի մի՛ լքցին ձեռք քո 'ի տարածելոյ ը՟ երկինս առ ա՟ծ . զի մեծ չարչարանք եկին 'ի վ՟ր դստերն քո փեբրոնիայի : Իսկ նր՟ ընկալեալ զայնպիսի աւետիս՝ կարդաց առ ա՟ծ, և ասէ . տ՟ր ա՟ծ ժամանեա՛ յօգնականութի՟ աղախնոյ քում փեբրոնեայ : Եւ անկեալ 'ի գետին՝ ողբալով ասէր . բրա՛ բրա՛ փեբրոնիա, ո՞ւր ես . (իսկ բրա՛ կ՟մ պրա՛ յասորի լեզու նշանակէ որդեակ իմ, կ՟մ գրատորէ՛կ իմ, յորմէ և կոչականդ պրէ՛ ռամկօրէն) : Եւ անդրէն տարածեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ . տ՟ր ա՟ծ իմ յ՟ս ք՟ս, նայեա՛ և տե՛ս զտառապանս և զնեղութիւն աղախնոյ քո փեբրոնեայ, և արա՛գ ժամանեա յօգնականութի՟ . և ա՛յց արա 'ի նեղութե՟ անձին նր՟ . ոպ՟ զի տեսից զկատարումն նր՟, և զՀամադասիլն 'ի դասս ս՟բց քոց վկայիցն տ՟ր :

Իսկ դատաւորն Հրամայեաց լուծանել զփեբրոնիա 'ի դժնդակ կախաղանից ցցոյն . և նա ը՟ լուծանիլն՝ 'ի բազում տկարութե՟ ու-

ժոյն. անկաւ 'ի վերայ երեսաց երկրի, զի ոչ եւս կարէր յոտին կալ: Նաւ սկսան շշըն-ջել Ը միմեանս իշխանաւորք վ՟ն անգթութե՟ իշխանին: Յայնժամ ասէ կոմսն պուփմնո ցլիւսիմաքոս. ընդէ՞ր է կորուսա աղջկանս այս: Նա ասէ լիւսիմաքոս. Թողացո՛ ինձ Տ՟ր իմ պուփմնոս, զի վ՟ն բազմաց փրկութե՟ աշ-խարհի դա. Թերեւս և վ՟ն իմ իսկ գլխոյն. ա՟պ և ես լսէի բազում անգամ 'ի մօրէն իմ-մէ բանս այսպիսիս վ՟ն անպարտելի նահա-տակութե՟ քրիստոնէից: Ոչ ապաքէն և իմ կամք էր կեցուցանել զդա. այլ միթէ յիմ ձե՟ռս էր ապրեցուցանել կամ արձակել. այլ Թո՛ղ զդա մրցել, զի 'ի բազմաց փրկութիւն ջանայ:

Յայնմ վայրի յառաջ կացեալ տիկին Երիս՝ ասէ ցդատաւորն. ո՞վ տարապացեալդ 'ի մարդ-կային բնութենէ. ո՞չ շատացար տանջիւն չար-չարանօքդ՝ որով տանջեցեր զաղայ աղջիկս զայս. կամ ո՞չ յիշեցեր զմայր քո, և զհայր ծնունդ քո. ո՞չ ապաքէն կաթնաբուղխ ան-փամօքս այսորիկ ծնար, և այնպէս 'ի չափ հասեր, և մինչև յայսպիսի չարագործութի՟ս եկիր: Իսկ ես զարմացեալ եմ, զի ոչինչ կա-րաց ածել զքեզ 'ի զղջումն՝ ա՛ անողորմ և անգութ. և արդ մի՛ խնայեսցէ 'ի քեզ երկ-նաւոր Թագաւորն, որպէս դու ոչ խնայեցեր տառապելոյս այսմիկ:

Յայնժամ բռնաւորն լի ցասմամբ յարձա-կէր 'ի վերայ երիայ տիկնոջ, և հրամայէր իջուցանել զնա յատեանն. իսկ նա մեծաւ

խըն

խնդութբ փութացան իջանել 'ի տեսարանն՝ տեսանել այսպէս․ ամ Փեբրոնիայի ընկալ և զխս զՀեթանոսս և զտառապեալս ՚ի Փեբրոնիայի ։ Յայնժամ բարեկամք սեղինոսի ասեն ցնա․ մի՛ լիցի երկայնամտեանս․ դուցէ բազումք մարտիրոսասցին․ և առ հասարակ 'ի կործանում մատնի քաղաքս և գաւառս․ և բռնաւորն արգել զիջումն նորա․ այլ 'ի ձայն մեծ աղաղակէր ընդդէմ նորա, և ասէր․ լուր ինձ սրիկա, կենդանի են ամենքն, զի բազում չարչարանաց լինիս առիթ Փեբրոնեայ ։

Զայս առաջնեալ՝ հրամայէր անօրէնն հատանել տապարաւ զմիոյ կուսին զերկուս ձեռսն, և զաջոյ ոտն․ և դահիճքն արարին ըստ հրամանի նը ։ Ապա 'ի դնել զոտն աջոյ 'ի մէջ կոճեղ, և 'ի հարկանել տապարաւ, ոչ կարաց դահիճն միով կտրել երկու հարուածս հատանել․ և եղև դոչիւն աղաղակի 'ի բազմութե ըստ ողորմ տեսիլն․ մինչև յերերողութիւն 'ի բաց կտրեաց ։ Իսկ ապա սրբն բռնանդակ մարտիրոսն 'ի դողումն եղեալ, այն ինչ մերձ էր 'ի պակասիլ, ջանայր դնել և զմնացեալ ոտն 'ի վերայ կոճեղ, և աղաչէր զդահիճն անխնայ կոծել, որ զի 'ի բաց հատցէն և զայն․ Իսկ բռնաւորն տեսեալ զյօժարութիւն նորա՝ դազանացեալ շարժէր զգլուխն, և ասէր․ տեսէք զյամառութիւն դորա․ ապա ըստ հրամանի ասէ ցդահիճն․ կտրեա 'ի բաց և զաջ հեռասկ ոտն նը․ և այնպէս մնաց երանելի կոյսն տառապեալ 'ի ձեռաց և յոտից․

Յայնժամ յարուցեալ Լիւսիմաքոս՝ ասէ ցՍե-
ղինոս. զի՞նչ ևս կամիս անցուցանել ընդ տա-
ռապեալդ ընդ այդ. ահա ժամէ ճաշոյ: Սե-
ղինոս ասէ. կենդանի՛ են ածքն, ո՛չ թողից
զնա կենդանի. այլ աստէն մնացից, մինչև
մճարեսցէ զոգին: Իսկ զկնի պահու հարցա-
նէր անօրէնն ցսպասաւորսն. եթէ տակա-
ւին կենդանի՞ իցէ ասէ՝ երիցս թշուառա-
կանն այն: Իսկ նք ասեն. այո՛ տր, շունչ նր
'ի նմա է: Յայնժամ հրամայեաց բառնալ
զգլուխ սբյն. և զինուորացն կալեալ զգի-
սոյ գլխոյ նր, և եդեալ զսուրն 'ի վերայ փո-
ղիցն՝ իբրև զոչխար այնպէս փողոտեցին. և
այսու օրինակաւ կատարեցաւ 'ի քս որոյն
անարատ և կոյսն մաքուր սբն փեբրոնիա՝
բազմաչարչար և բազմայաղթ նահատակ:
Իսկ իշխանքն գնացին 'ի ճաշս իւրեանց.
բայց Լիւսիմաքոս երթայր արտասուելով:
Իսկ բազմութիւն յարձակեալ 'ի վրն՝ կամէին
յափշտակել զմարմինն սբյ վկային. այլ ոչ ե-
ղեն ձեռնհաս 'ի ժամուն. քզի Լիւսիմաքոս
հրաման տուեալ էր զօրացն պահել զգու-
շութբ զմարմինն: Իսկ գնացեալ Լիւսիմա-
քոսի յապարանս՝ ո՛չ եկեր և ո՛չ էարբ 'ի տրտ-
մութենէն. այլ փակեալ զանձն 'ի սենեակ մի՝
ողբայր զբարձումն փեբրոնեայ: Իմացեալ
զայն սեղինոսի՝ և ո՛չ նա էառ կերակուր յա-
ռաւել դառնութենէ ոգւոյ իւրոյ. այլ յարու-
ցեալ ճեմառնոյր 'ի գաւթի ապարանիցն.
և 'ի նմին ժամու՝ մինչդեռ ճեմելով զգնայր,
հայեցեալ յերկինս՝ մեծ ինչ և սքանչելի
ինչ

ինչ նշան տեսանէր, և բազում ժամս պշուցեալ՝ 'ի հիացման՝ յայլոց խելս լինէր. և ոմ զցուլ ցնորեալ՝ 'ի խայտալ իւրում բախեաց ուժգին զգլուխ իւր 'ի սիւն մի, և հերձաւ գագաթն նր. և այնպէս անկեալ յերկիր՝ ձայն արկեալ գոչէր, մինչև եհան զդառնացեալ ոգին ։

Բազում խռովութիւն և աղաղակ եղև 'ի ժամուն յայնմիկ ։ Լուեալ լիւսիմաքոսի ըզձայն ամբոխին՝ 'ի դուրս վազեաց, և հարցանէր՝ թէ զի՞նչ իցէ այն. և նքա պատմեցին զոր ինչ եղեն ։ Լիւսիմաքոս իբրև լուաւ, 'ի բազում ժամս շարժեալ զգլուխն՝ կայր հիացեալ. և ասէ ցայնոսիկ՝ որ շուրջն կային. մեծ է ած քրիստոնէից, և օրհնեալ է ած փեբրոնեայ. խնդրեաց ած զվրէժ անպարտ արեանն հեղլոյ. և հրամայեաց բառնալ թաղել զանօրէն զսեղինոս ։

Յետ այսորիկ կոչեաց զկոմսն պռոխմոս, և ասէ ցնա լիւսիմաքոս. երդմնեցուցանեմ զքեզ 'ի ճշմարիտ ած քրիստոնէից. հրամայեա՛ առնել տապանակ յանփուտ փայտից վս մարմնոյն փեբրոնեայ, և առաքեա՛ յամ կողմանս քաղաքս, զի որ կամիցին գալ քրիստոնեայք 'ի թաղումն կուսին, աներկիւղ իցեն՝ մանաւանդ յետ մեռանելոյ հօրեղբօրն իմոյ ։ Այլ դու վերակացու լինիջիր, և տո՛ւր բառնալ զմարմինն փեբրոնեայ, և տանել՝ 'ի վանս իւր. զի մի՛ 'ի բազմութենէ ռք յափշտակեսցէ ինչ 'ի նք մարմնոյն, կամ տատանի յատամանցն. նաև անձք անասուն

մի՛ լռեցուցէ զսբ. արիւն նր, որ հեղեալն է վն քի. այլ եթէ հնար է, և զհող երկրին քերեալ տարցես 'ի վանսն ըն նբ. նշխարսն : Իսկ արար պտրիմոս կոմսն զամ ըն հրամանին լուսիմաքոսի. և հրամայեաց զօրացն բառնալ զմարմին նբյն. իսկ ինքն կոմսն առեալ զգլուխ նբյն և զձեռսն և զոտսն, և զոր միանգամ հատեալ էր 'ի նբ. մարմնոյն, յիւր պատուական քղամիդն ժողովէր՝ տանել անձամբ 'ի վանսն : Յայնմ վայրի ընթանայր բազմութիւն 'ի տեղի վկայութեն. և պատեալ զկոմսիւն՝ այր զարամբ եղանէին, զի կորզել ինչ կարասցեն 'ի հատեալ անդամոց նբյն. մինչև 'ի մեծ նեղութեն եղեալ կոմսն՝ սաստիւք սուսերամերկ զինուորաց ահ արկանէր ամենեցուն, և այնպէս հազիւ զերծանէր 'ի բռնութէ ամբոխին : Իսկ 'ի մուծանել զնբ. մարմինն և զնշխարսն 'ի վանս՝ ոչ զոք թողին 'ի ներքս մտանել, բայց ըզթումայիս և զերիա. և էր ժողովեալ բազմութի յոյժ առ դրանն. յորոց վն պահապանս կարգեն պտրիմոսի՝ դարձաւ ինքն առ լուսիմաքոս :

Իսկ իբրև տեսանէր սարկաւագուհին՝ այն է մեծ տիկինն բրիոնա, պատառ պատառ հատեալ զմարմին նբյն, 'ի վհատութի թմբրութե անկեալ դնէր անշունչ 'ի բազում ժամս. ապա յինքն եկեալ՝ անկանէր 'ի վն նշխարաց նբյն, և ասէր լալագին. վա՜յ ինձ որդեա՛կ իմ փեբրոնիա, զի այսօր վճարեցար 'ի տեսլենէ մօր քո բրիոնեայ. արդ ո՞վ ըն-

թերց-

Թերցցի զԱծաշունչ գիրս յականջս քերց քոց ։ ո՞ր ձեռք շօշափեսցեն զգիրս՝ զորս դու շօշափէիր ։ և զայս ասելով ողբայր ՚ի վերայ փեբրոնիայի ։

Ի նմին ժամու հասին քորքն՝ որ եղեալ էին ՚ի վանացն հանդերձ եթերիայիւ ։ և անկեալ ՚ի վերայ մարմնոյն փեբրոնեայ՝ ողբային անմխիթար, և համբուրէին երկրպագութեամբ անյագաբար ։ Երանի՛ տային նմա, և զանձինս աւաղէին ։ Ընդ որս ձայնակցեալ և երիայ՝ ասէր ։ Թո՛ղ համբուրեցից զոտս քո՝ որ կոխեցին զգլուխ օձին ։ համբուրեցից զվէրս մարմնոյ քո՝ որով բժշկեցան վէրք հոգւոյս ։ պսակեցից ծաղկեղէն պսակօք զքո գլուխդ, որով պսակեցեր զկանանց ազգս բարւոք կանհատակութեամբդ ։

Նոյն իբրև գայր մերձենայր իններորդ ժամ աւուրն, ասէ բրիենա մայրապետն ։ փեբրոնիա, ահա ժամ աղօթից է, ե՞կ կացցուք յաղօթս որդեակ իմ ։ Եւ սկսաւ ասել ի խաչնիւք այսպէս հրաման տալ փեբրոնիայի ։ բրա՛ բրա՛ բրա՛, եա՛լթի տէլիօթա՛ կո՛ւմի տա՛լիթա ։ որ է, ո՛վ որդեակ իմ, ո՞ւր ես ։ արի՛ աղջի՛կ դու, արի՛ ե՛կ ։ Յայնժամ ասէ և թեմղամնեայ ։ որդեակ իմ փեբրոնիա, ո՛չ երբեք անցեր զպատուիրանաւ մեծի տիկնոջդ իմոյ ։ այժմ ե՞ր ոչ տաս պատասխանի ։

Զայսոսիկ ասելին, և բազում արտասուս հեղուին մինչև ՚ի տարաժամիլ աւուրն ։ Յետ այսորիկ լուացեալ յարենէ զնորա մարմինն՝ եդին ՚ի վերայ բազրոնի միոյ ։ և պատեալ յօ-

ըրինէին. զհատեալ անդամսն յիւրաքանչիւր տեղիս առընթեր մարմնոյն ։ Ապա հրամայեաց սարկաւագունհին բանալ զդուրս վանացն, զի մտցէ բազմութիւն. և տեսեալ ամենեցուն զերջանիկ նահատակն սքանչելի՝ փառաւոր առնէին զնա. և կանայք մեծամեծք ողբային զմերժումն ՚ի վճպուէն նորին ։ Հասին անդր և ոմանք ՚ի նոցա հարանց, և բազումք ՚ի միայնակեցաց. և տքնութիւն անցուցանէին զամ գիշերն՝ հանդերձ եպսաւն, որ այն ինքն է նոյն յակոբ մծբնայ հայրապետ ։

Նաև լուսիմաքոս կոչեաց զկոմսն պրիմոս, և ասէ ցնա. ես տէր իմ պրիմէ՝ զհայրենի մոլորութիւն թողում, և հրաժարիմ յամ ընչից և ՚ի պատուոյս. և անկանիմ առաջի քո, և հաւատամ ՚ի նա ։ Ասէ պրիմոս. և ես տէր իմ նոյնպէս կամիմ. նզովեալ դիոկղետիանոս և թգրութիւն նր. մերձենամ առ քո, և հաւատամ ՚ի նա ։ Այս ասացեալ՝ ելին յապարանից, և եկին ՚ի վանսն, և խառնեցան ընդ ժողովեալսն ։

Մինչև առաւօտ լինէր, բերին զպատրաստեալ տապանն նորա, և յերևելի տեղւոջ եդեալ՝ հանդուցին անդ զպատուական մարմինն հանդերձ հատեալ անդամօքն յարմարելովք. իսկ զատամունսն՝ զոր թափեցին, դնէին ՚ի վերայ լանջացն. և ժողովուրդն խուղս և խունկս բերէին և լնուին ՚ի տապանն, մինչև ծածկիլ մարմնոյ նորին ։ Նայետ պատուէլոյ զերանելին երկրպագութ

և

և պաշտամամբք աղօթից և օրհնութեանց , յայնժամ մատուցեալ եպսն՝ աղաչէր զբազմութիւնն , զի թոյլ տացեն նմա փակել զտապան սբյն , և հանգուցանել ՚ի վայելուչ դիրս յաղօթարանի անդ վանացն ։ Յայնմ վայրի եղև աղմուկ մեծ և հակառակութիւն ՚ի ժողովրդեանն , որք ստիպէին՝ զի բաց մնասցէ տապանն , և մի՛ փակեսցի ։ Բազմօք խրատ ետ նց եպսն , նոյնպէս և կրօնաւորք և ժառանգաւորք՝ հանգուցանել զսբ նշխարսն . բայց ո՛չ հաւանէր ամբոխն ։ Ապա յարուցեալ բրիոնայ , և կացեալ ՚ի բարձր տեղւոջ՝ ասէ ցամբոխն . աղաչեմ զձեզ տեարք իմ և եղբարք , թողէք ցանկալի զաւակին իմում փեբրոնեայ երթալ հանգչել ՚ի սբ տեղւոջ իւրում . և թոյլ ետուն . և այնպէս յետ բազում արտասուաց և աղօթից հանգուցին զսբ նշխարսն ՚ի պատշաճաւոր տեղւոջ . և ամենեքին փառաւոր առնէին զած ։

Բազումք ՚ի հեթանոսաց հաւատացին և մկրտեցան ՚ի քս . մկրտեցաւ և լիւսիմաքոս և կոմսն պռիմոս . և հրաժարեալք յշէ՝ գնացին զհետ մարկիւղոսի , որ էր գլուխ ամն վանականացն . որ և մարգելլոս արշիմանդրիտ ասի , այն իսկ է նա ինքն սբն մարուգէ բարեկամ սբյն յակոբայ հայրապետի . և ընտրեցին զճգնողական վարս միակեցաւն մինչև ՚ի մահ . մկրտեցան և բազումք ՚ի զօրականաց՝ հաւատացեալ ՚ի քս . սոյնպէս և տիկին երիա հանդերձ ընտանեօքն հաւատացեալ մկրտեցաւ ՚ի տր ։

Յայն

քո։ Խօսել սկսաւ եպ̃սն ընդ բրիոնայ, և ասէ. լո՛ւր ինձ քո՛յր իմ. 'ի փառս և 'ի գովեստ ն̃ք վկայիս շինեցի զյարկն ն̃յ. այս վեց ամ է, յորմէ հետէ աշխատեցայ շինել. մի՛ տաներ զիս անպտուղ։ Պխնի եւ բրիոնա, և ասէ. եթէ կամք ն̃յ մարտիրոսուհւոյն այդ եղև, ես ո՞վ եմ՝ որ կարեմ արգելուլ. արդ մտեալ առէք և երթայք խաղաղութ̃բ։ Յայնժամ մտին եպսքն 'ի տեղին՝ ուր կային նշխարքն, և սկսան զտօնորական աղօթսն մատուցանել։

Իսկ երիայ 'ի վ̃ր հասեալ՝ թէ կամին բառնալ զտապան ն̃յն, աշխարէր ձայնիւ՛ ասելով. վա՛յ մեզ, զի մեծ օրհնութիւն բառնի այսօր 'ի վանացս. վա՛յ մեզ, զի սուգ և որբութի̃ն տիրէ մեզ այսօր. վա՛յ մեզ, զի մեք մեղէն կորուսանեմք զմարգարիտն մեր։ Նոյն բողոք բարձեալ առ բրիոնայ՝ ասէր. զի՞ գործես մա՛յր, զի զրկես զիս 'ի քեռանէ իմմէ. վ̃ն ն̃ր թողի զաշ̃մ, և ը̃ն քո ձեռամբ պատսպարեցայ։ Տեսեալ բրիոնեայ զերիա այնպէս՝ դարձաւ և ասէ ցնա. զի՞ վշտագնիս որդեա՛կ երիա. եթէ հաճոյ թուի՛ տառապի նորա երթալ, երթայ. ապաթէ ոչ՝ չելանէ աստի։ Նոյն արդարև եղև ը̃ս բանի սարկաւագուհւոյն։

Քանզի իբրև կատարեցին եպսունք զաղօթս, և յետ ասելոյ ամենեցուն զամէնն՝ մերձեցան առ տապան ն̃յն, և կամէին շարժել զայն, վաղվաղակի ձայն սաստիկ որոտման յանգնդոց լինէր. և բազմութե̃ն յերկիւ

աւ

անկեալ յահէ անտի՝ կարդային առ Ած . Դարձեալ եպքն մերձեցան 'ի տապան սբյն . և միւսանգամ շարժումն մեծ լինէր . մինչև կարծել՝ թէ պատառեսցի երկիրն , կմ կործանեսցի քաղաքն ամ . և յայնժամ գիտացին եպքն , եթէ ոչ կամի սբ վկայն մեկնիլ 'ի վանիցն : Ասեն ժտուք ցբրիոնա . որովհետև ոչ կամի վկայն մեկնիլ 'ի վանից , զմի 'ի հատեալ անդամոց դորա տացես մեզ . և զայն առեալ տարցուք : Իսկ բրիոնայ բացեալ բանալեօք զտապանն՝ տեսանէր , զի իբրև ճառագայթք արևու փայլէին 'ի սբ նշխարացն . յայնժամ մեծաւ երկիւղիւ ձգեալ զձեռնն՝ բուռն հարկանէր զհատեալ ձեռանէ սբյն , կամելով զայն տալ եպսին . և նոյն ժամայն կալեալ եղև ձեռն նր 'ի տապանակին : Սկսաւ խօսել բրիոնա հանդերձ արտասուօք . աղաչեմ զքեզ որդեակ իմ փեբրոնիա , մի բարկանար 'ի վր մօր քո . յիշեա զաշխատութիւն իմ , և մի անարգեր զծերութիւն մօր քո : Ապա թողեալ զձեռն սբյն 'ի տապանակի՝ 'ի վեր եառ զձեռնն իւր յինքն ամբողջ . և միւսանգամ համարձակեալ արտասուօք ասէր . տուր մեզ զօրհնութիւն , և մի արտմեցուցաներ զիս տիկին փեբրոնէ : Իսկ միւսեալ զձեռն՝ եառ անաշխատ ատամն մի . և զայն ետ եպսին , և վաղվաղակի կափոյց զտապանն :

Եւ եպսացն առեալ զսբ զայն նշխար , և եդեալ յոսկի շարի ( այս է յոսկեղէն տփի ), հանդերձ ուրախութբ դարձան 'ի քաղաքն .

և

և բազմութիւն առաջի երթային սաղմոսիւք և օրհնութեամբ՝ մոմեղինօք և խնկօք. և յոր- ժամ հասին 'ի վկայարանն, ելեալ եպիսկոպոսն 'ի բարձր տեղի աստիճանաց բեմին՝ նշանակեցին ժողովրդեան զխորհուրդն: Ի նմին ժամու որք միանգամ գտան կոյրք, կամ կաղք, կամ ցաւագարք կամ այսահարք՝ բժշկեցան: Այլ իբրև յայտնի եղև ամենեցուն այս, ընթանային երիտասարդք ընդ ամ կողմն, և բարձեալ բերէին 'ի մի տուոց զախտաժէտս, և զայլոն՝ զորս պատագարակօք, և զորս գրաստուք. և առհասարակ բժշկէին յամ ցաւոց: Այլ ցորչափ ոչ դադարեցին 'ի բերելոյ զհիւանդս զօրն զայն ողջոյն, ոչ թողացուցանէր ժողովուրդն 'ի բաց տանել և ամփոփել զնշխար սրբոյն փերբրոնեայ. մինչև յետ բժշկելոյ բոլորիցն՝ միաբան օրհնեցին և փառաւորեցին զած (16). և ամփոփեցին անդ յեկեղեցւոջ զպատուական նշխար սրբոյն 'ի նմին իսկ աւուր, որ. որ ինն էր ամսեանն յունիսի. և այնպէս առհասարակ լցեալք 'ի բարութէ՝ զոր արար ած 'ի ձեռն սրբոյն, դարձան ուրախութեամբ 'ի տունս իւրեանց:

Իսկ բրիոնա սարկաւագուհին կեցեալ այլ ևս ամս երկու զկնի նահատակութեան տաճարի սրբոյն փերբրոնեայ, և զամ գեղեցիկ կարգաւորեալ՝ ննջեաց 'ի խաղաղութէ: Այլ եւ թումայիս (ասէ գրիչն վկայաբանութեանս) զկնի ննջման բրիոնեայ ընկալեալ զնորին սարկաւագութիւն՝ հարդեալ 'ի մայրութիւն ուխտին. և նմին հասու լինելով 'ի սկզբանէ անտի՝

որ

ցեալ կարեաք յիշատակարանն յաւելուք 'ի յաւելուածն.
զոր հաստատէ և հին Թարգմանն լատին:

(17) 'Ի ժամագիրս յունաց բիւզանդացւոց ասի, թէ յիշատակ սրբուհւոյն փեբրոնեայ կատարի 'ի վկայարանի յովհաննու մկրտչի' 'ի տեղին օքսէա կոչեցեալ. և ցուցանի' թէ կային անդ և նշխարք ինչ կուսին. բայց քանզի չորեքտասան մատուռնք կամ վկայարանք կային սբյ մկրտչին 'ի կոստանդնուպօլիս և յարուարձանս նր, ոչ է մարթ գիտել' թէ որ 'ի նոցանէ իցէ տեղիս այս: Մծբին քաղաք' որ յետ մեկնելոյ անտի Թգրաց հայոց, անկեալ էր 'ի ձեռս հռովմայեցւոց, զկնի անկանելոյ յուլիանոսի 'ի պարսս' 'ի պատճառս հաշտութե եղելոյ Է̃ ն̃ն առ յովիանոսիւ, մնաց 'ի ձեռս պարսից 'ի չբրդ դարէ և անդր. և յայնմ հետէ' երևի, թէ քրիստոնեայք բերին անտի 'ի մասն բաժնի յունաց և յԾն հռովմայեցւոց Է̃ այլ նշխարս սբց և զնշխարս սբյն փեբրոնեայ: Եւ Է̃ այսմ ասի, թէ 'ի վաղ ժամանակաց բերեալ եղև մարմին սբյն փեբրոնեայ, կմ բազուկն, կամ ձեռն նր դաստակաւ, եթէ 'ի միջագետաց, և եթէ 'ի կոստանդինուպօլսոյ' 'ի տաւն քաղաք կաղաբրիոյ յապուլիա իտալիոյ, վսյ մինչև ցայժմ տաւնացիք պաշտպան քաղաքի իւրեանց ճանաչեն զսրբուհին փեբրոնիա զմեծ վկայուհին:

Զայսմանէ զայս ինչ տեղեկութիւն տուեալ է բոլլանդեանց բանագէտ ոմն սեղբեստրոս աւոսա. * 'Ի մէջ
,, այլոց պաշտպանաց քաղաքին տաւնացւոց է սբն փե-
,, բրոնիա կոյս և վկայուհի. զորոյ զտօնախմբութե կա-
,, տարէ քաղաքն այն ողջոյն հանդերձ վիճակաւ իւրով
,, 'ի ԺԵ յունիսի' կրկին կոչեցեալ ծիսիւ և ութօրէ-
,, իւք. ոչ թէ յայնմ իսկ աւուր բերեալ իցէ անդր
,, մարմինն (որ է օր կատարման սբյն, կամ նաւակա-
,, տեաց եկեղեցւոյն մծբնայ): Այլ քանզի 'ի կարի
,, վաղ ժմկաց լեալ է այդ, չեղև հնար յարքեպսական
,, եկեղեցւոջ այդր քաղաքի գտանել զտեղին, ուր սբ
,, գանձն այն ծածկեալ կայցէ: Համբաւն այս է, թէ
,, 'ի պատճառս պատերազմաց Թաքուցաւ. և արտա-
,, քոյ տապանին պահեցաւ միայն մի բազուկն սրբու-
,, հւոյն' յարծաթի տուփ, որ և պահի յաւանդատան:
,, Արժանի գիտութե այն է, զի պատուական նշխարս
,, այս մինչև ցարդ տեսանի իւրով մորթով պատեալ'
,, հանդերձ եղնգամբք 'ի ծայրս մատանց, թէպէտև
,, առ փոքր մի խանձողեալ 'ի հրոյ. ըստ որում և 'ի

,, վարս

ցերկինս՝ ասէր ․ ՚ի քեզ Տէր յուսացայ , մի՛ ամաչեցից , և մի՛ կարօտ առնէր զիս ՚ի յուսոյ իմմէ ․ զի վ՞ս քո յանձն առնում զցաւս և զհարուածս , զի քաղցրացուցիր և ողորմեցիր ինձ ։ Եւ այնչափ տանջեցին զնա , մինչև արիւնն իջեալ ընդ պատառուածս մարմնոյն

թանայր զփայտրան ։

Իսկ ոմն ՚ի խորհրդակցաց բռնաւորին ասէ ․ ո՛վ Մարիանէ հաւատոյ յՔ՞ս , և գտցես պարգևս քան զթ՞մ հաւատակակիցսն քո ․ ողորմեա՛ ՚ի վ՞ր ծաղկահասակ մանկութեդ ․ աւա՛ղ ․ խայտառակութեդ , զի մերկ տանջիս , և գեղ քո ապականեալ է ․ ո՞հ որ կամիս զանձինդ կորուստ ։ Նոյնպէս և այլք յամբոխէն արք և կանայք աղաղէին զնա , և խրատէին հաւանել կամաց նպարքաւին ․ Իսկ երանելին Մարիանէ պատասխանեաց նոցա , և ասէ ․ ո՛վ չար խորհրդակիցք սատանայի՝ զի՞ բարբառիք զայդպիսի բանս ․ անմիտք ո՞չ իմանայք , զի Տ՞ր օգնական է իմ ․ զի թէպէտև մարմին իմ մահկանացու տանջի , այլ հոգի իմ ընդ իմաստուն կուսանսն դասակցի ․ հաւատացի յՔ՞ս կենդանին՝ որ կարող է փրկել զայնոսիկ՝ որ կարդան առ նա , և բանայ նմ՞ դուռն կենաց ․ վ՞յ ո՛չ հաւանիմ ձեզ , և ո՛չ երկիրպագանեմ ա՞ծոց ձերոց խլից և անզգայից ։ Եւ դու անօրէն դատաւոր գիտեա՛ , զի ո՛չ հաւանիմ հօրն քում սատանայի ․ զի թէպէտև մարմին իմ տանջի , այլ զհոգի իմ փրկէ Ք՞ս ՚ի ձեռաց քոց ․ և դու օտարացեալդ յԱ՞յ մատնիս ՚ի խորս դժոխոց ։

Ապա

Ապա հրաման տայր բռնաւորն մատուցանել զնա 'ի կախաղան քերանաց. և հանեալ զնա 'ի փայտ՝ քերէին երկաթի քերչօք կամ ժանեօք և ճանկաւօք երկաթեօք, կապեալ տառապանօք զլանջացն՝ որպէս կախեալ 'ի տեսանոցն։ Բայց առաքինի նահատակն յերկինս նայեցեալ՝ կարդայր առ փրկիչն, և ասէր. Քրիստոս յոյս իմ տո՛ւր ինձ կենդանութիւն, և հաստատեա՛ զիս 'ի սրբութեան քում. զի եկեսցեն աղօթք իմ առաջի քո յերկինս. և առաքեա՛ զհոգիդ քո Տէր յօգնականութիւն ինձ, զի Տէր պահեսցէ զկուսութիւն իմ. և մի՛ տասցէ թշնամիս, թէ յաղթեցի նմա. և տո՛ւր հանգիստ ամենեցուն՝ որ յուսան 'ի քեզ։ Իսկ անողորմ դահիճքն այնպէս տանջէին զնա, մինչև չժուժել տեսողաց. և ինքն իսկ դատաւորն ծածկէր զերեսս իւր առ չկարելոյ հայել 'ի նա. ապա ասէ ցնա. փոխանակ զի անսլուր եղեր ինձ, և ոչ ողորմեցար քեզ, յայդ հասեր ողորմ տեսիլ. և արդ լո՛ւր ինձ աղջի՛կ դու, և երկիրպագ դիցն իմոց. ապա թէ ոչ՝ սրով մաշեմ զմարմինս քո առաջի ամենեցուն, որ տեսանեն զաղէտս քո։ Ասէ վկայուհին. ո՛վ վատ արանց, դու թէ մարմնոյ իմոյ խնամ տանիս, հոգւոյ իմ ոչ ապրի. զի թէ ոչ տանջեսցայց, ոչ պսակեսցայց։

Այնուհետև հրամայեաց բռնաւորն բառնալ զտանջանսն, և տանել 'ի բանտ. և իբրև տարան արգելլին զնա 'ի խաւարչտին տեղւոջ յեօթներորդ ժամու աւուրն, կնքեալ կուսին զանձն իւր նշանաւ Տէր խաչին՝ համբարձ

բարձ

բարձ. զաչս իւր յերկինս, և ասէ. Ո՜ Տէր՝ որ կամեցար առնել մեզ զիրաւունս առանց մեղանաց, և յերեսաց քոց սարսեն ամ̃ եղականքս. ո՛վ Տ̃ր՝ անյուսից յոյս, և յուսացելոց օգնական, նայեա՛ց առ իս և ողորմեա՛ ինձ, զի միայնոր և աղքատ եմ ես. մի՛ թողուր զիս Տ̃ր Ա̃ծ իմ, այլ ցո՛յց ինձ զթշնամին իմ դէմ յանդիման, զի խօսեցայց ը̃ն նմա. և դու Տ̃ր դատաւոր կենդանեաց և մեռելոց դա՛տ արա ը̃ն իս և ընդ սատանայ. զի վիրօք իմովք յոյժ վշտացեալ եմ ես. մի՛ բարկանար ինձ, զի զանձն իմ քեզ ընծայեցի:

Այս մինչդեռ զայսոսիկ և առաւել քան զսասին խօսէր նա ը̃ն Ա̃յ, յանկարծակի շարժեցաւ երկիր, և եկն սատանայ 'ի կերպարանս վիշապի՝ եւ ել յանկեանէ բանտին. և էին պատատեալ 'ի պարանոց վիշապին բազմութիւնք օձից՝ 'ի նշանակ դիւա՛ց արբանեկաց սատանայի. և յաչացն և 'ի բերանոյն կայծակունք հրոյ թափէին՝ 'ի ցոյց փառասիրութեանց չարին. և այնպէս ահագին ահեղեամբ և դառնահոտ չնչմամբ դիմեաց 'ի վ̃ր սրբուհւոյ կուսին Մարինեայ: Ընդ այն տեսիլ քստմնելի զահի հարաւ կոյսն. և առեալ փոքր փայտեայ խաչ՝ դիմեաց աղօթիւք առ Ա̃ծ: Ապա 'ի բանալ վիշապին զբերանն՝ որպէս թէ կլանել զնա, խաչափայտն որ 'ի ձեռին իւրում էր՝ պատառեաց զորովայն վիշապին. և կոյսն մնաց անվնասելի 'ի թշնամւոյն. Յայնժամ փայլիւ ծագեաց լոյս մեծ 'ի բանտին, և երեւեցաւ Սբ հոգին 'ի նմանութիւն աղաւնոյ. և

նորա

Նստեալ 'ի պատուհան բանտին՝ ասէ . քա-
ջալերեա՛ց մնո՛րիանէ , և դի՛ր զոտն քո 'ի վ̄ր
պարանոցի վիշապիդ . զի խոստովան լինիցի
քեզ զա̄մ չարիս իւր :

Յայնժամ զօրացեալ սրբուհւոյն 'ի Տր̄ հոգ-
ւոյն՝ եդ զոտն իւր 'ի վ̄ր պարանոցի թշնամ-
ւոյն , և ասէ . ո՞ չար և թշուառական՝ երդ-
մնեցուցանեմ զքեզ 'ի զօրութի Տր̄ հոգւոյն ,
զի ասասցես , ո՞վ ես դու , և զի՞նչ գործք
քո : Իսկ նա ասէ . ես եմ դիւա՛ց գլխաւորն
բելիար . և զի արար ա̄ծ զմեզ 'ի հրեշտակ
լուսոյ , և բարձրագոյն փառօք մեծարեաց
զմեզ՝ անմահութե̄ և անկարիք , և անձնիշ-
խան ձոխութե̄ 'ի կամս ապաստան արար
զմեզ : Իսկ իմ հպարտացեալ ը̄դդէմ արար-
չին՝ խորհեցայ արգելուլ զփառս նր̄ , և ինձ
սեպհականել զայն . և նա սաստեալ ընկէց
զիս 'ի բարձանց երկնից 'ի խորս անդնդոց .
և ամենեքեան՝ որք կամաց իմոց հաւանեալ
էին յերկնից զօրացն , ընդ իս անկան 'ի բար-
ձանց , և դևք անուանեցան 'ի մարդկանէ :
Բայց յետ անկման մեր ստեղծ արարիչն ըզ-
մարդն հող յերկրէ , և եդ զնա 'ի դրախտին
փափկութե̄ . և խոստացաւ ծննդօքն ադա-
մայ և կնոջն եւայի լնուլ զտեղի անկելոցս
հրեշտակաց 'ի յերկնից . և այն մեզ ծանր
թուեցաւ քան զանկանելն մեր 'ի փառաց
մերոց : Սոյ մաքառեալ ը̄ ադամայ կնաւն
իւրով՝ հանաք զնա յա̄յ աչացն , և զրկեցաք
յանմահական վայելչացն . խաբէութե̄ մերով
մատնեցաք զնա մահու , և զհրաւիրեալն յան-

մահականին լոյս՝ զրաւեցաք հողոյ ։ Նստու և զառաջին ծնունդ նոր ստանանել, զեղ-բայրն՝ եղբօրն իւրոյ ․ և յայնմ օրէ ևս քան զևս յորդորեցաք զմարդիկ 'ի չարիս գործել․ և զարիւն ընդ արիւն խառնել ․ մինչև բարկա-ցաւ ած, և ջուրցն հեղեղաւ կորոյս զամ ։ Իսկ յետ այնորիկ մոլորեցուցաք զմարդիկ 'ի կռոցն երկրպագութիւն ․ և յամ ժամանակի յամ չարիս ես եմ առաջնորդ, որ տամ ստա-նանել, պոռնկել, գողանալ, անիրաւել, չարախօսել, և զամ անօրէնութիւնս գործել․ և ոչ գոյ չար՝ որ առանց իմ կամացս արդիւ-նանայ ։

Իսկ իբրև պատմեաց սատանայ յակամայ կամս զամ չարիս իւր մի ըստ միոջէ, ապա ասէ ցկոյսն ․ ո՛ւր և յիշեսցի անուն քո Մարիանէ, անդ ո՛չ մերձեցայց ․ միայն թուլացո՛ զոտն քո 'ի պարանոցէս, և արձակեա՛ զիս, զի յոյժ տագնապեցայ ։ Իսկ 'ի կնքել Մարիանեայ վերստին զնշան խաչին, պատառեցաւ եր-կիր, և անդնդաստոյգ կորեաւ չարն ։ Յայնմ ժմի ականատես և ականջալուր ասէ լինել ընդ պատուհան բանտին Թէոտիմոս կմ դե-մոս ոմն, որ եղև առաջին գրիչ վարուց Մա-րիանեայ կուսին ․ յորմէ առեալ ոմանց՝ կու-տակեցին 'ի վր պէսպէս բանս տխմարականս և օտարս 'ի ճշմարտութենէ ․ ընդ որում ունիմք նշանակել 'ի ծանօթութիւնս ․ յայժմուս 'ի կարգ անդր պատմութեան դարձցուք ։

Ի վաղիւ անդր եկեալ հանին զնա կոյսն 'ի բանտէն, և ածին առաջի բռնաւորին ․ որոյ

տեսեալ զնա ողջանդամ՝ զապամանայր, և միւսանգամ հրապուրէր զնա գալ 'ի պաշտօն կռոց, և լինել տիկնաց տիկին. բայց գտեալ զնա անփոփոխելի, հրամայեաց գարձեալ քերել, և ջահիւք այրել և խորովել զմարմին ն͞ր. այլ յաղօթել կուսին՝ կապեցան ձեռք դահճացն, որք տանջէին զնա: Ասէ դատաւորն. լուր ինձ մարիանէ, և երկիրպագ ա͞ծոց իմոց՝ որք խնայեն 'ի քեզ: Ան ասէ. ոչ երկիրպագից խլից և անխօսից, այլ միայն ա͞յ իմոյ ճշմարտի, որ պահեացն զիս և պահեսցէ. վ͞ս զի կնքեաց ա͞ծ զհոգի և զմարմին իմ որպէս զմարգարիտ 'ի պահեստի սքանչելի փառօք իւրովք:

Յայնժամ հրամայեաց բռնաւորն սան մի լնուլ ջրով, և ջեռուցանել հրով յոյժ. և կապել զոտս և զձեռս ն͞ր, և հեղձուցանել յեռանդն ջրոյն. և սպասաւորքն արարին՝ ըստ հրամայեացն ն͞ց: Բայց 'ի դիմել կուսին աղօթիւք առ տ͞ր, զի ջուրն այն լիցի ինքեան 'ի մկրտութի, եղև շարժու͞մն մեծ, և երևեցաւ յերկնից աղաւնի՝ ունելով պտուղ ձիթենեւոյ 'ի բերանի իւրում. յայնժամ լուծան կապանք ն͞ր, և ել 'ի ջրոյն փառաւորելով զա͞ծ. և եկն ձայն՝ որ ասէր. եկ մարիանէ, և հանգի՛ր յարքայութին ք͞ի. զի անապական և անթառամ պսակին արժանի եղեր. երանի՛ է քեզ՝ որ զկուսութիւն քո ամբողջ պահեցեր: 'Ի տեսիլ ահագին նշանացս հաւատացին յա͞ծ բազմութիւնք յոյժ յարանց և 'ի կանանց, ոգիք իբրև հազարք:

Ընդ

Ընդ որ սրտմտեալ եպարքոսին՝ հրաման ետ
զօրաց իւրոց զամենեսին սրոյ ճարակ տալ .
ը՟ նոսին և զծըն Մարիանէ ետ տանել ար-
տաքոյ քաղաքին և գլխատել ։ Իսկ 'ի ժամ
կատարմանն խնդրեաց վկայուհին քՏի , զի
ամ՟ որ միանգամ յիշէ զանուն նր՟ յամ՟ նեղու-
թեանս հոգւոյ և մարմնոյ , և՛ դիմէ առ տր՟
հաւատով, հասցէ նմա օգնութի 'ի բարձանց .
և ած երկնային բարբառով խոստացաւ լնուլ
զփափագս նր՟ առաւել քան զոր խնդրեացն ։
Իսկ այնպէս կատարեցաւ մեծայաղթ վկայն
քի կոյսն Մարիանէ բարի խոստովանութբ՟ 'ի
քՏ , մկրտեալ արեամբ իւրով՝ հանդերձ
բազմութբ՟ պսակելոցն ը՟ նմա ։ Իսկ մեծա-
ցաւ յոյժ անուն կուսին, և տարածեցաւ ընդ
ամ՟ տիեզերս . և նշխարք նր՟ սփռեցան մին-
չև յարևմուտս . և շինեցան բազում վկայա-
րանք և տաճարք և վանորայք յանուն նր՟ . և
է երագահաս օգնական ամենեցուն՝ որք ա-
պաւինին 'ի բարեխօսութի նր՟ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ ։

(1) Սրբոյն կուսին՝ որ էր ի մեզ Մարիանէ, և էր յունաց Մարինէ, փոքր մի տարբերութբ՟ կոչի առ լատինս Մա-րինա . որում պէսպէս հատուածական պատմութեան առ յայնմանէ բազմանգեան, յորինակ քերթելով զզանազան ան-ձինս՝ որք այլեւայլ անուամբ կոչին 'ի զանազան տեղիս . զի ասէ՝ պարթենոր (...), որ թարգմանի ծի-րանի, ընդ անուամբ յատուկ կոչէր մարգրիտ՝ որ է թագաւոր . արտասանել զաշակերտ իւր զմիւրատանեան կուսեալ մեծափառութեան մի յատակախօսութենէ . զայեղա-

թուղթովին մերժելի գտանեցաւ, և կամ ուղղագրելի։ Զայսմանէ երկար խօսի տառանօր այնիրոս. և զհամ օրինակս լատին վկայագրաց Է վայր հարկանէ. ուր և ըղձանականս երբե ազգերս նոցին. զնոյն և մեզ մնայ տալ զերկուց օրինակաց Ճառընտրաց մերոց, և զոսկեփորիկ անուանեալ գրեանց. բայց ոչ եթէ 'ի պատճառս քանի մի բառից մուծելոց 'ի տգիտաց՝ զբովանդակ պատմութիւն սուտ, այլ Է հակառակն՝ ը միաբանութե լաւագոյն օրինակաց կալ մնալ յանստգիւտ մասին պատմութե. կը ը վկայելոյ նորին այնիրոսի. * Հաստատէ
« Տիլլէմոն. յիշատ. եկեղ. հատ. Ե. եր. 797. 'ի ծան",
« թէ խոր տեսեալ իցէ զայն վարս, որոյ սկիզբն է, "Ցէփ
« լուսաւորանաց և յորում Է փն մերոյ յոր քնի", Է անուանմամբ Թէո-
„ սիմոսի երբե ականատես վկայի. և յաւելու թէ թերևս
„ զեղեցիկ բանք պարունակին 'ի նմա, ոճն վսեմ, մե-
„ ծավայելուչ, և ը բաւականին զերապանծ. ուր պա-
„ կասի մեծ մասն ծաղկական աքանչելեաց զանելոց առ
„ սուրբոսի. բայց տակաւին կայ մնայ անդ երևումն
„ սատանայի ||։ Որպէս և նա ինքն այնիրոս ապագրէ
զտանելի օրինակ մի նոյն վարուց՝ ը իւրումն կարծեաց, ասելով յանանուն վկայագրէ ումեմնէ. * Համոյ Թովմե-
„ ցաւ մեզ (ասէ) 'ի տեղ ընծայել զայս օրինակ վարուց
„ քան զայլսն, ոչ ուր թէ տեղի լաւ և ընտիր իցէ, զի
„ մ՛ ոք երբէք անկնունիցի այգմ յինչ և իցէ օրինակաց
„ վկայաբանութե սորա, այլ զի նուազ է յոռութին և
„ անհաւանականութին... Որպէս և իցէ, տանելի
„ են՝ զորս պատմէ զերևմանէ վէշապին, քան զոր կանն
„ առ պետրոսի նատաղեան, առ մամբրիտիոսի, լիպա-
„ մանոսի, սուրիոսի, և առ նախանշանակեալ օրինա-
„ կագիրս ||։ Միայն թէ ասէ՝ և սա ճառօրէն և ներբողաբար խօսի, Հ ծէշդ պատմաբանօրէն. * այլ ա-
„ ցուք նմա յայսմ մասին զներումն ||։ Այլ խաբի
իմաստունն այնիրոս, ներելով ուր չէր պարտ ներել, և ներելով մն խօսելոյն ը քմաց իւրոց. մն զի անանուն հեղինակն իւր թողեալ զընթացս պատմութե և զձև խօսից, որ միօրինակ պահին ըստ գոյացութե առ համ վկայագիրս, ինքն ստեղծանէ նոր կարգ և նորանոր խօսակցութիս. որ է գործ անհաւատարմութե՝ եղծիչ ստուգութե պատմութեց. զի ոչ եթէ համոյականն ունկան՝ է բան ճշմարիտ 'ի պատմականս, այլ միաձայնութի պատմագրաց. և ահա զոր մեքս գրեցաք ը մասին 'ի ճառընտրաց և ը մասին 'ի յայսմաւուրաց՝ վկայեալ է

յամենեցունց, եթէ հաճոյ թուեսցի Պլինիոսի, և եթէ ոչ. բայց ես անտարակոյս եմ, զի հաճոյ թուէր և նմա մերս հաւաքումն քան զայլոցն. միայն թէ չկամիցի խո-պա ժխտել զերևումն վիշապին, որ է երևելի մասն վարուց սբյն Մարինեայ ըստ ոմ մատենագրաց:

Ասէ Պլինիոս. գիտեմ, զի նշանակ կուսիս է վիշապաց առ ոտն կոխեալ ՚ի նմանէ. զոր եթէ խորհրդաբար նկարեալ համարեցիս՝ իբրև զի բազմահնար մեքենայից դիւին յաղթեաց զօրութեամբ խաչին, բարւոք է ասէ. ապա եթէ Փիզիգապէս առնուցուս, լինի ասէ կեղծիք՝ համագոյն վիշապի սբյն Գէորգեայ:

Այլ որ ասելի է. ուրանամ զհանգիտութիւն. Նախ՝ զի վիշապն սբյն Գէորգեայ ոչ գտանի յամ վկայաբանս, այլ յոմանս միայն. որպէս ասացեալ ՚ի ծանօթութեանս վարուց նր. արդ՝ ուր տարաձայնին պատմիչք, յայնժամ դիւրին է ընդունել զմի կողմն՝ յորում ընտիր օրինակագիրք միաբանին, և զմիւս կողմն հերքել: Երկրորդ՝ զի վիշապն Գէորգեան իրական օձ առագնի ՚ի պատմողաց. որ յորժամ անհեթեթ օրինակաւ նկարագրի՝ արտաքոյ բնութեան օձից, կամ որ և է դժուարալուր ոճով, մարթի դիւրաւ զնա սուտ գրել. իսկ վիշապն Մարինեան էր օձ նմանութեամբ, և ոչ իրական. զի սատանայ կերպարանեալ ՚ի նմանութիւն օձի. որում ոչ միայն հնար է, այլև ա՛նկ իսկ է արտաքոյ բնութեան օձից խօսել և գործել. որպէս արար ՚ի դրախտին: Մինչ զի եթէ դնէաք և ըստ ոմանց (թէպէտև մեզ չէ ընդունելի, զի չէք ՚ի յայսմաւուրս մեր այն պարագայ), որպէս թէ կլեալ իցէ վիշապն զկոյսն, և ապա պատառեալ զօրութեամբ խաչին. ոչ էր արտաքոյ կարգի յոյժ. զի թէ իրական վիշապ կէտն եկուլ զՅովնան, և անվնաս եհան ՚ի դուրս յետ երից աւուրց, զի՞նչ մեծ է՝ եթէ Մարինէ հարևանցի իբրև ՚ի տեսլեան մտցէ ՚ի փոր երևութացեալ վիշապ օձի, և ելցէ անվնաս՝ պատառելով զայն նշանաւ սբյ խաչին: Երրորդ՝ խորհրդաբար կոխել զգլուխ աներևոյթ վիշապին ոչ է սեպհական այսմ կամ այնմ ՚ի սբց, այլ՝ ամենեցուն առհասարակ. ապա զի՞ է, զի միայն Մարինեայ սեպհականէ զայն Պլինիոս. յայտ է թէ գոյ և արժան և հիմն պատմական:

Զայսոսիկ ասացաք, զի մի՛ ՚ի մերժել զստութիւնս՝ լինիցիմք մերժօղ և ստուգութեան պատմութեանց. որպէս և յընդունելն զստոյգս՝ չպարտիմք հաւանել և ստութեանց. զի զի՞նչ միաբանութիւն է սուտ ընդ ճշմարտի, կամ մոլորութեան

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Անթիմոսի եպիսկոպոսին Նիկոմիդեայ ։

Հ . Յ . սեպտ . 3 ։ Լ . ապր . 27 ։ Ճառընտ . Ա . ԺԲ=ԺԵ ։ Ըստ Պոլլանդեանն հնէաբանիրս 'ի Գ հատ . ապր . էջ . 482=486 ։ և եւս 60=63 ։ Նիկեփ . պատմ . եկեղ . Է . 6 . և 13 ։ Մետափր . առ Սուր ։(1)

ԾԱՂԿԵԱԼՆ ԸՍՏ ԿՈՉ-մանն անուանն արդեամբք կատարեալ առաքինութեան Անթիմոս հայրապետ երանելին՝ էր 'ի Նիկոմիդեայ քաղաքացւոց , անդստին 'ի մանկութենէ կրթեալ 'ի հրահանգս աստուածպաշտութեան , փայլեալ յամենայն բարեգործութիւնս , ճգնաւոր , աղօթասէր , հեզ և խոնարհ , և ամենայնիւ օրինակ բարւոյ ամենեցուն ։ Որ և արժանապէս ընտրեցաւ 'ի կարգ քահանայութեան , ոչ անձամբ զհետ ընթացեալ պատուոյ , այլ 'ի նմանէ ըմբռնեալ յակամայ կամս ։ Նա և եղև յետ վախճանելոյ Կիւրղոսի եպիսկոպոսին Նիկոմիդացւոց , ( այն՝ որ հայր հոգևոր եղև սրբոյն դոմնայի , ) ժողովուրդն ամենայն միաբան հաւանութեամբ խնդրէր ինքեանց եպիսկոպոս զԱնթիմոս . և Աստուած իսկ հաստատեաց զընտրութիւն նոցա երևելի սքանչելեօք . զի 'ի կալ բազմութեան

թէ յաղօթս յեկեղեցւոջ՝ ծագեաց յանկար-
ծակի լոյս մեծ, և եղև բարբառ յերկնից,
զի ընտրեալն անթիմոս լիցի եպիսկոպոս.
և այնպէս ցնծութբ̃ և օրհնութբ̃ բազմե-
ցուցին զնա յաթոռ հայրապետութե յամի
տն̃ իբր 293:

Եւ այնուհետև 'ի գործ արկեալ երանելւոյն
զհովուական պաշտօնն ամ̃ փութով պնդու-
թե՝ ածաբան վրդպութբ̃ իւրով զբազումս
լուսաւորէր յանհաւատից, և ածէր 'ի հաւ-
ատս քի̃. և զբովանդակ հօտ իւր գեղե-
ցիկ յանձանձէր՝ հանդերձ օրինակաւ վարուց
սրբութե. յորմէ եռանդն բարեպաշտութե
ևս քան զևս ծաւալէր յամ̃ սահմանս բիւ-
թանացւոց. մինչև բազմաց արժանի լինել
պսակի նահատակութե:

Քանզի յամի փրկութե մերոյ 302. յարեաւ
հալածումն սաստիկ հրամանաւ դիոկղետիա-
նոսի և մաքսիմիանոսի ընդ ամ̃ տ̃, սկիզբն
լեալ 'ի քաղաքէն նիկոմիդացւոց. ուր և կա-
տարեցան երկու բիւրք միանգամայն, և այլ
ևս քաջ քաջ նահատակք բազում յոյժ, որք
էին սնեալ վրդպութբ̃ սրբոյն անթիմոսի: Յայն-
ժամ տիրապէս հանդիսացաւ առաքելական
ոգի հայրապետին. էր զոր բանիւ, և էր
զոր գրով հաստատէր 'ի հաւատս. մինչև
անկանիլ թղթոցն նր̃ 'ի ձեռս հալածչաց. որք
տարեալ մատուցին զայն առաջի կայսերն
մաքսիմիանոսի՝ որ նստէր 'ի նիկոմիդիա:

Սա թէպէտև յառաջագոյն լսելով լուեալ
էր զփութոյ բարեպաշտութե անթիմոսի,

այլ

այլ 'ի տեսանել զյորդորական գիրս նց՝ իւ-
րեւ զհուր բորբոքեցաւ ընդդէմ նոցայն . և տեղե-
կացեալ՝ եթէ 'ի գիւղն սեմանէ քարոզէ ըղ-
բանն, առաքեաց 'ի վյ նր հեծեալս քսան
մի՝ ունել զնա և ածել առ ինքն : Այլ եր-
թեալ արանցն՝ հանդիպեցին երկոցին, և նմին
իսկ հարցանենն՝ թէ ո՞ւր իցէ անթիմոս գլուխ
քահանայիցն քրիստոնէից : Իսկ երանելին
հիւրընկալեալ զնս մարդասիրութբ 'ի բնա-
կութ իւր՝ եդ առաջի նց հաց և բակլայ յըն-
թրիս . և զոր ինչ 'ի ձեռին ունէր՝ նոքիմբք
մեծարեալ զարսն, այսպէս ծանոյց նց, թէ ես
ինքն եմ անթիմոսն՝ զոր խնդրէք . Յայս
լուեալ նց՝ մեծապէս պատկառեցան յառա-
քինութէն երանելւոյն . և ոչ համարձակեալ
ձեռս արկանել 'ի նա՝ խորհուրդ ետուն նմ
պահել զանձն, և ազատել 'ի ձեռաց մաքսի-
միանոսի . մեք ասեն տանիմք համբաւ, թէ
բազմօք խնդրեցաք զնա, և ոչ գտաք :
Իսկ երանելին չէառ յանձն խօսել նց սուտ
'ի պատճառս իւր, քանզի և ինքն իսկ ծա-
ռայի էր նահատակութե . վոյ յարուցեալ
գնայր ընդ նս զուարթագին, զինեալ հաւա-
տով և աղօթիւք իբրև գեղեցիկ զինուոր քրի
մտանել 'ի նահատակամարտն, որ առաջի կայր
Այլ զճանապարհայն խօսելով առ նս բանս
հոգեյորդորս՝ լուսաւոր և ածիմաստ վրդպու-
թբ իւրով ձգեաց զնս յուղական աւետարա-
նին . վոյ իբրև հասին 'ի գետ մի, խնդրեցին
'ի նմանէ արքն ընդունել զլուսաւորութին 'ի
լուացումն մեղաց, և յորդորումն շնորհաց հոգն

երկ

երկնաւորին ։ Այնոր եղեւ ձեռն 'ի վր՟ նց՟ տ՟նա-
գրեաց զնա, նոյնպ՟ եւ զջուրն. եւ իջեալ նոքօք
հանդերձ՝ մկրտեաց զնա յանուն հօր եւ որդւոյ
եւ հոգւոյն սրբոյ ։ Այլ յետ կատարման խոր-
հրդոյն՝ օրհնեաց զնա, եւ հանդերձ նոքօք
փառաբանութիւն վերառաքեալ 'ի բարձունս՝
յուղի անկաւ երթալ 'ի քաղաքն, խօսելով
բանս կենաց առ նորոգ հաւատացեալսն. եւ
հաստատէր զնոսա 'ի հաւատս զգուշութե՟,
յանձն առնելով զնա տ՟ն, եւ բանի շնորհացն՝
յոր հաւատացին ։

Այլ 'ի մտանելն նոցա ընդ դուռն քաղաքին՝
լուեալ չարախօսքն զգալուստ ս՟բյն անթիմո-
սի. եւ գնացեալ ը՟ այգն ը՟ առաւօտանալ
աւուրն՝ մինչդեռ նստէր յատենական բեմ-
բին բռնաւորն մաքսիմիանոս, ծանուցին
նմա՝ թէ եկն այրն այն, որում 'ի խնդիր է
ինքնակալութիդ քո ։ Յայնժամ հրամայեաց
թագաւորն բերել զս՟բն առաջի բեմին իւրոյ
յատեան դատաստանի. եւ ս՟բն ո՟չ արարեալ
զկնիքն ք՟ի 'ի դէմս իւր՝ այնպէս եկն հա-
մարձակապէս մերձ 'ի բեմբն արքայական,
առ ինքեան ունելով զձեռս իւր իբրեւ զկա-
պեալ, եւ խոնարհ զերեսն. այլ զմիտսն առ
ա՟ծ ուղերձեալ յերկինս, ուստի ակն ունէր
օգնականութե՟ ։

Իսկ թագաւորն կամելով ահ արկանել ան-
թիմոսի՝ պատրաստեալ էր յատենի անդ ա-
նօթս տանջանաց. եւ ը՟ կոչել զնա զառա-
ջինն 'ի ներքս՝ լի ցասմամբ սպառնալեաց
ասէ ցնա. դու ես անթիմոսն այն՝ մոլորու-
թե

թէ կուսակից, խոտորեալ զկնի նազովրաց-
ւոյն, և վ̃շպ խաբէութե՛ որսեալ պատրանօք
զպարզամիտս յամբոխէն, և թշնամանադիր
օ̃ծոց մերոց: Յայնժամ երանելին զուգա-
պէս ծիծաղելով ը̃ն գործարանս տանջանաց
և ը̃ն բանս բռնաւորին՝ ասէ. Ո՞չ մարտիրէ
գիտես ով թագաւոր, զի չէին ինձ կամք
տալ քեզ առ այդ պինին. այլ Ք̃զի ա̃ծային
առաքեալ ուսուցանէ մեզ պատրաստ գոլ ՚ի
պինդաստատութե ա̃մի՝ որ հարցանէ, վ̃ն այ-
նորիկ և ես վստա՛հ եմ ՚ի ա̃ր՝ պինին ունել
՚ի պատրաստի, ը̃ս խոստմանն արարչին՝ որ ա-
սէ, մի՛ հոգայցէք, և մի՛ զմտաւ ածիցէք՝
թէ զի՛նչ խօսիցիք. զի ես տաց ձեզ բերան
և իմաստութիւն, որում ոչ կարիցեն կալ հա-
կառակ կամ տալ պինին ա̃մ հակառակորդք
ձեր. զի ո՛չ եթէ դուք էք՝ որ խօսիցիքն, այլ
հոգին հօր ձերոյ՝ որ խօսիցի ՚ի ձեզ: Ո՛յ
լո՛ւր ինձ ով թագաւոր, զի սակս տանջա-
նացդ՝ որով սպառնաս ինձ, ո՛չ երկեայց ՚ի
քէն. քանզի ունիմ ա̃ծ յերկինս, որ արար
զա̃մ. որ և ասաց մարգարէի՛ն, թէ ա̃ծք՝
որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն
յերեսաց իմոց. զորս խուլս և կոյրս կոչեմ,
և պղծութե աւերածոյ անուանեմ. և ո՛չ
երբէք զն̃ո ա̃ծս խոստովանեցայց:
Մաքսիմիանոս ասէ. գիտեմ, զի այժմ ոչ
կամիս անուանել և զոհել ա̃ծոցն, այլ յոր-
ժամ տեսանիցես զմարմինդ քո մաշեալ և
յօշ յօշ կտրատեալ, յայնժամ զգաստասցիս
և ունկնդիր լինիցիս բանից իմոց: Պինին եւս
անե

անխթիմաս · եւ՝ կանխաւ կարեկից լինէի ձե-րումդ անգիտութե՝ վր ածմ անուանելոյ զոչ-ինչան · այլ այժմ մեծ եւս ախմարութի գտա-նեմ, զի կարծեք եւ զիս յետս ձգել յայ իմ-ումս ճշմարտէ ահի՛ տանջանաց · զայդ այնո-ցիկ է առնել, որոց թուլացեալ իցեն ոգիք 'ի սիրոյն այ, եւ քաղցր թուի նց վայելք կենցաղոյս · իսկ ինձ՝ որ զաղցաւոր կեանս բանտ գիտեմ, եւ զելս 'ի սմանէ առ ածն իմ՝ անպատում երանութի, ամ տանջանք քո եւ պատուհաս ախորժելի են քան զամ հեշտալիս ։

Զայս իբրեւ լուաւ թագաւորն 'ի բերանոյ առաքինի նահատակին, լի եղեւ բարկութբ · եւ հրաման ետ սպասաւորաց ջաղջել զպա-րանոց նր քարամբք ։ Իսկ սրն առ ոչինչ հա-մարեցաւ զցաւս · եւ կամելով իմն առաւելա-գոյն տանջանաց լինել արժանի՝ բացեալ ըզ-բերան իւր սկսաւ աներկիւղ յանդիմանել զանօրէնն զմաքսիմիանոս, եւ ասէ · հարկա-նելո՞ց է զքեզ ած ով գազան չարագոյն՝ առ-բանեակ սատանայի, եւ նմանեալ եղբօրն քում հերովդէի, որ զնորին գործն ընձեռե-ցեր ։ Ոչ թէ ոչ գիտես, զի 'ի ձեռն քարա-կոծկոծ լինելոյս ետուր ինձ համարձակութի, նմանօղ լինելով նախավկային ստեփաննո-սի, որ զբազմութի քարանցն ոչ զծաղիկս վարդից ժողովէր · զի եւ ես 'ի ձեռն զարկ-ուածոցս այս քարանց ծնխացեալ լցայց ա-նուշահոտութբ, 'ի բաց լքանելով զժահա-հոտութի դիւաց ·

Դար

Դարձեալ ասէ ցնա Մաքսիմիանոս. հաւա-
նեա՛ ինձ այսուհետեւ, և զոհեա՛ դիցն. ա-
պա թէ ոչ՝ ես առաւել ցասմամբ չարչարե-
ցես զիս 'ի վ(ր)այ քո, և զայրացմամբ վարեցայց
ը(նդ) քեզ սաստկագոյն քան զառաջինն: Ա.ն-
թիմոս ասէ. արա՛ զոր առնելոցդ ես վաղ-
վաղակի, և մի՛ յապաղեր, ողջ զիա՛րդ գրգռէ
զքեզ սկզբնաչարն սատանայ, որ 'ի քէն ոչ
է սուտ գայլես հեռի: Յայնժամ բարկացաւ
թագաւորն, և հրամայեաց 'ի յօգս ոտից նո(րա)
հրացեալ երկաթս ագուցանել, կա(մ) շամփուրս
անցուցանել ը(նդ) պճղունս նո(րա):

Իսկ երանելւոյն Անթիմոս զձեռս և զաչս յեր-
կինս ամբարձեալ՝ սկսաւ աղօթել այսպէս.
Ա.ծ կենդանի յա՛մի յո՛ քո, լոյս նախայա-
ւիտենան՝ ծագեալ յհ(օ)ր. ապաւինութիւն փրկա-
րար ամենեցուն՝ որոց զյոյս խուրեանց եդեալ
է 'ի քեզ. խաղաղական նաւահանգիստ նա-
ւակոծելոց՝ որք ծփեալն են 'ի ծովու մեղաց
պատրանօք յաւիտենից այսորիկ. որ նմաց քոց
առաքելոց 'ի ձեռն համբերութեան պարգեւե-
ցեր զշնորհս հոգւոյն ս(ր)բ(ո)յ: Առ քեզ կար-
դամք, որ յամենայնի հասեալ ես 'ի թիկունս քո-
յով անհասանելի և անպարտելի զօրութ(եամ)բ.
և այժմ ես սատանօր կատաղ անմիջելի մար-
ձաւոր, և զմեմ իսկ լնուս ամենաքաջական
զօրութեամբ քո: Տո՛ւր ինձ համբերութիւն,
զի յաղթեցից բռնաւորն բռնաւորին. զի
դու ես տէր մեր միայն, որ ծանուցեր զմեծութ
քո մեր տիեզերաց, և դու զմեզ յանգոյութէ
'ի գոյութ ածեալ յօրինեցեր. և ասա յաղ-
թու

Թուլթի երկիւղածաց յանուանէ քումմէ , ք̃ո խոստմանս քո՝ ասելով , ահա ետու ձեզ իշխանութի կոխել զօձս և զկարիճս և զա̃մ զօրութիւս թշնամւոյն · Եւ զայս ասելով՝ զուարթերես զինքն մ̃մ առաքելոցն ցուցանէր , ամենեքին առ ոչինչ համարեալ զտանջանս բանաւորին :

Յայնժամ դառնացեալ մաքսիմիանոսի՝ հրամայեր դահճաց սուր խեցիւ կմ̃ խորտակել անօթս բրտի տարածանել 'ի գետին 'ի ներքոյ կողից ն̃ցն , և 'ի վերուստ մահակօք վայրենեօք կամ փշոտ գաւազանօք հարկանել : Եւ յայնպիսի տանջանս չարչարանաց տակաւին ուրախութ̃բ բարբառէր երանելին , և ասէր · Ո՛հ գոհանամ զքէն՝ Թագաւոր յաւիտենից · զի զգեցուցեր ինձ զօրութի 'ի պատերազմի , զյաղթուցեալսն 'ի վ̃ր իմ ներքոյ իմ արարեր · զի մանրեցից զնա ոտ̃ք փոշի առաջի հողմոյ , և որպէս կաւ գռեհաց կոխեցից զնոսա :

Ասէ բանաւորն · ո՛վ երից թշուառական , ո՞չ զգաս տանջանացդ · և զիա՞րդ զայդպիսիս բարբառիս : Ո՛չն ասէ · ամենաթշուառդու ես՝ թշնամի թագաւորին երկնաւորի , որ ոչ դադարես 'ի թիւրելոյ զճանապարհս տ̃յ զուղիղս · և ոչ գիտես թէ որչափ և մարտընչիս , լուծեալ պարտեսցիս առ յինէն մարտակցաւն իմով տ̃է յի̃ւ ք̃սի̃ւ զի ես եւս քան ես զօրացեալ լինիմ շնորհիւ նր̃ որ յիս · վ̃ոյ և ոչ զգամ զտանջանս :

Հրամանս ետ ամպարիշտն մաքսիմիանոս հրա-

 ցաւ-

ցուցանել և կօշիկս պղնձիս, և արկանել յոտս նորա։ Իսկ ծառայն այ անթիմոս համբարձեալ զաչս իւր յերկինս՝ ետես զամենահրաշ նշոյլ իմն սքանչելի, զի հովանի լինէր նմա. և գայր ձայն յերկնից, զի ասէր. զօրացի՛ր և քաջ լեր, զի ես ընդ քեզ եմ. և մեծասցին վարձք քո յոյժ անթառամ պսակօք։ Արբեցաւ և ձեռն կարկառեալ 'ի դնել ըզպսակ 'ի գլուխ նորա. մինչև յառաւել ուրախութիւն սրբոյն առաւել ևս զուարթանալ դիմաց նորա։

Ընդ որ յիմարեալ բռնաւորին՝ սկսաւ անարգել զնորին իբրև զմոգ և աշխեցուցիչ. և հարցանէր զպատճառս այնպիսի զուարթութեն 'ի տանջանս։ Իսկ նահատակն Քի ասէ ցնա. ով անհանճար և տմարդի, զիա՞րդ չառնաս 'ի միտ զմեծամեծսն այ, որ ակն յանդիման ցուցանէ զզօրութիւն ձեռին իւրոյ. և նա ինքն է՝ որ ունի դատել զքեզ և զամ գործակիցս քո յաւուր միում. այլ ես ցնծացայց յամ փրկիչ իմ, որ այժմէն տայ ինձ զառհաւատչեայ յաւիտենից ուրախութեն. և ծիծաղեցայց 'ի վլն անմտութե ձերոյ։

Յայնժամ լցեալ մաքսիմիանոսի մոլեգին ցասմամբ՝ պատուեաց զթշուառական պատմուճանն. և կրճտելով զատամունսն՝ հրամայեաց կապել զնորին յանիւ մի, և 'ի հոլովելն՝ բոցով ջահից խարովել զմարմինն որջոյն։ Իսկ նորին անթիմոս ասէր. ով թագաւոր՝ սրտամտիս, և զատամունսդ կրճտես, զի լցցի բանն մարգարէին՝ որ ասէ, թէ զատա-

մունս իւր կրճտեցէ և հալեցի, և ցանկու-
թե՟ն մեղաւորաց կորիցէ ․ և պատառելով
զարքունի պատմուճանդ՝ զթագաւորութե՟ քո
պատառումն ցուցեր ․ զի և ո՛չ յայժմուս
ընդերկար վայելեցես ․ և՚ի հանդերձեալն
դառն պատուհաս կրեսցես յերկնից արքա-
յէն ․ զի ոչ խնայեցեր ՚ի ծառայս ն՟ր ։

Իսկ եղև յորժամ կապեցին դահիճքն զս՟րբն
յանիւն, և ջահ ՚ի ձեռս մատեան բոցակի-
զել զնա ըստ խիզախելոյ և բռնաւորին առ-
նոսա, սկսաւ աղօթել երանելին և ասել․
Փրկիչ բարերարութ և ամենազօր, որ իջեալ
առ երիս մանկունսն ՚ի հնոցի հրոյն՝ փրկե-
ցեր զն՟ս, և զանօրէն քաղդէացիսն հրոյ ա-
ւանդեցեր վ՟ս անհաւատութե՟ իւրեանց ․ այս-
պէս ցո՛յց և այժմ զնշան սքանչելեաց քոց ՚ի
մէջ անօրէն կռապաշտիցս, և դարձո՛ զտապ
հրոյս ՚ի պաշտօնեայս նորա ․ զի ծանիցեն և
հաւատասցեն, զի դու ես պաշտպան իմ տ՟ր՝
որ փրկես զյուսացեալսն ՚ի քեզ ։ Իսկ յասել
ն՟ր զայս՝ դարձան բոցք ջահիցն առ պաշտօ-
նեայս անօրինին այրելով զն՟ս չարաչար կիզ-
մամբ ․ և դադարեաց յանկարծակի անիւն ․
և զինուորքն զգետնի զարկան ․

Զայն տեսեալ թագաւորին՝ համբարձ ըզ-
գեղարդն իւր ՚ի վ՟ր զինուորացն, զի սպան-
ցէ զն՟ս ․ ո՛վ չարք ասէ և վատթարք ՚ի պաշ-
տօնեայսն իմ, և արհամարհք ՚ի զինուորա-
կան կարգին, ընդէ՞ր ստուգանեցիք պատուի-
րանաց իմոց ։ Իսկ ոչ իմանայր ապշեալն ըզ-
վերին զօրութիւն՝ յորմէ հարան ․ ո՞չ և նոքա
յետ

յետ պահու միոյ յարուցեալ՝ ’ի բաց ընկե-
ցին զջահսն ’ի ձեռաց իւրեանց, և ամէ՛ն
ցԹագաւորն. Ո՛վ արքայ քաջ, զՃշմարիտն
ասեմք քեզ. զի տեսաք մեք արս երիս ահա-
ւոր տեսլեամբ ’ի հանդերձս լուսաւորս, որք
ամէ՛ն սաստիկ բարկուԹ՟բ. զի՞ կայ ձեր և
վկայից քոց. Թո՛յլ տուք ծառայից քոց ո՟յ
անԹիմոսի, զի դա ինքնին յաղԹօղ լիցի ’ի
վ՟ր բռնաւորիդ. քանզի ’ի բաց լքեալ Թո-
ղուդա զառԺամկեայ կեանս՝ փափաքօղ լեալ
կենդանոյն յաւիտենից. և որչափ պաշտօնեայքդ
չարուԷ պատրաստէք դմա տանջանս, ան-
ձանց վնաս գործէք, և ոչ կարէք ստանանել
արդարոյն. զի անդուստ ’ի վերուստ պսակք
առաքինուԷ վկայիդ ո՟յ պատրաստեալ են։
Ո՟յ ո՛վ Թագաւոր ոչ համարձակիմք առնել
զհրամայեալսն ’ի քումմէ ինքնակալուԷդ.
քանզի բոց հրոյս տօչորեալ հարկանէ զե-
րեսս մեր. և շարք մարմնոց մերոց հատեալ
լինին, և ուղեղք գլխոց մերոց խոցոտեալք,
և հոգիք մեր արտաքս ելանեն ’ի մարմնոյս.
և ոչ համբերեմք տանջանացս՝ զոր կրեմք
յաներևակի։ Իսկ այրս այս կրէ և ոչինչ.
զի դու տեսանես զնա ’ի վ՟ր անւ՛ոցն ձգեԼ.
այլ մեք տեսանեմք՝ հանդերձ երեք արամբք
լուսազգեստիւք յաղԹազգեացս եղեալ՝ ոչ և
մի ինչ զգալով ’ի խոշտանգանս տանջանաց.
այլ սակայն և վ՟ր քո հրամանն պինեւոյ ընկալ-
լաւ ’ի վերուստ, զի պատուհասեսցիս դու։
Իւ ծանուցեալ արքայի, եԹէ Ճշմարիտ են
ասացեԼքն ’ի զինուորացն՝ հրամայեաց զո՟քն

իջուցանել 'ի գեղարանաց անուշոյն ։ Զհայն-
ժամ արձակեալ երանելոյն Անթիմոսի , և
ամբարձեալ զաչս իւր յերկինս՝ ետես զփառս
փրկարարին իւրոյ . վ̄յ տարածեալ զ̄ռ
ձեռս՝ գոհանայր յանդիման ամենեցուն ,
ասելով . Տ̄ր երկնի և երկրի , որ 'ի ձեռն
անբաւ գթութե քո առաքեցեր զմիածին
որդիդ լուսատու լինել մ̄ր . զի նովաւ ծա-
նեաք զքո անճառ մ̄ծութիւնդ . և զատեալք
յանգիտութե՝ ընկալաք զգիտութի՜ն 'ի ձեռն
ներգործութե հոգւոյն ս̄րբոյ , օտարացեալք
քն̄ի 'ի խաբէութե պաշտամանց կռամոլ
հեթանոսութե . և այժմ գոհանամ զքէն
Տ̄ր , զի վ̄ս մեծի ողորմութե քո խոնարհեցար
առ իս 'ի թեթևացուցանել զխստութի տան-
ջանաց իմոց . զի յա̄մն փառաւոր լիցի անուն
քո 'ի մէջ հեթանոսաց ։

Եւ բռնաւորն մաքսիմիանոս անօրէն զա-
ռածանէր 'ի խորհուրդս չարութե իւրոյ՝
ասելով առ ծառայսն քո . մինչև յե՞րբ ոչ
դադարես 'ի խօսելոյ առասպելաբանութիս ,
կարծելով շատախօսութեա՞դ ապրել 'ի ձեռաց
իմոց . հաւանեալ արդ զոհեա՛ դ̄ծոցն . ապա
եթէ ոչ՝ սրոյ մատնեցից զքեզ ։ Իսկ ս̄րբն ս̄յ
յաղագս սրոյ լուեալ՝ խնդալից եղև , և ասէ.
Թո՛ղ զքեզ 'ի ձեռն սրոյ սպառնալեաց զար-
հուրեցուցանել զիս . այլ ես կա՛մ առաւել
ցանկամ վաղվաղակի ելանել 'ի մարմնա-
ցու մարմնոյ աստի , և մտանել առ Ա̄ծ՝ առ
որ անձկացեալն եմ , և միասին ժառանգութե
գտանել յարքայութե արդարոց ։ Ա̄ո զի գի-
տեմ ,

տեմ, զի նա է՝ որ զօրացուցանէ զիս հաւատա-
նել զկնի առաջնոցն. և երկրորդումըն ըիւ-
րոջն երթալ յանդիման լինել հանդիսադ-
րին ամենեցուն. զի և ես նովաւ պարծեցայց
համարձակութբ̃ առելով. ահաւասիկ ես և
մանկունք իմ, զոր ետ ինձ ած̃. զի էին նք̃
'ի հօտէ իմմէ. և զորս կարծէիր դու 'ի կե-
նաց կարձել, նք̃ ճշմարիտ կենացն եղեն
ժառանգորդ յերկնային փառսն :

Յայնժամ առէ թագաւորն. չե՞մ ինչ անտե-
ղեակ, զի քրիստոնէիցդ ազգ փառաց և պատ-
ուո՞յ էք ցանկացեալք. և ծարաւի էք մահու,
զի խնդրոյդ ձերում վաղվաղակի հասանի-
ցէք. այլ դու մի ակնունիցիս այդմ, փութա-
նակի կարծելով զերծանիլ 'ի ձեռաց իմոց,
և վաղվաղակի վճիռ ընունել մահու 'ի ծե-
րութե քում. զի նախ այլ ևս խիստ և անո-
ղորմ հարուածովք խոշտանգեցից զքեզ, և
ապա 'ի լուսոյ կենաց զրկեցից, որում ան-
ձամբ զանձն քո անարժան կացուցեր :

Պատասխանի ետ ծերն Անթիմոս, և ասէ. իբրու
զանգիտելով քո 'ի մահուանէ՝ յորմէ ես ինչ
ոչ երկեայ, խոստանաս, և ոչ եթէ սպառ-
նաս ինձ զայդպիսիդ. հա՛պա արա՛ վաղվա-
ղակի զոր ինչ և կամիս՝ օտարացեալդ յայ̃.
քանզի որչափ ես համբերութիւն տանիմ 'ի
տանջանս, այնչափ յաճախապէս ած̃ փառա-
ւորեալ լինի. որ և ինձ տացէ համբերութի
վն̃ յուսոյն իմոյ՝ որ առ նայն է. այլ դու ոչ
ես ձողոպրելոց 'ի դատաստանացն այ̃ այր-
մամբ գեհեննոյն :

Ասէ ցնա Մաքսիմիանոս․ արդ՝ արդեօք ոչ կարիցեմք ձգել այսուհետև զքեզ առ պատշաճն, իշխանութ՟ն ունելով ՚ի վ՟ր քո՝ դատել կենօք և մահու ։ Եւ Տ՟րն ասաց․ ոչ ունէիր դու իշխանութի՟ ՚ի վ՟ր իմ և ոչ մի, եթէ ոչ ա՟ծ ներեալ էր․ զի ցուցցէ քեզ, թէ որպիսի նահատակութ՟բ հաւատարիմ ծառայք նորա յաղթեսցեն քեզ, և բանսարկուի՟ն՝ որ զգեցեալ է զքեզ՝ ունել գործակից ՚ի կամս չարութե՟ իւրոյ ։ Յայնժամ զամօթի հարեալ թագաւորին՝ հրաման ետ հանել զս՟րբն ՚ի՟յ յերեսաց իւրոց, և տանել դնել ՚ի բանտ մահապարտաց, և զոտս ն՟ր պնդել ոտնաւոր երկաթիւք, և արկանել անուր ՚ի պարանոց ն՟ր, և զգուշութ՟բ պահել ։

Եւ յարուցեալ երթայր առաքինի զինուորն ք՟սի ՚ի բանտն մեծաւ ուրախութ՟բ՝ աղօթելով այսպ՟ս․ Ո՜վ Ք՟ս նախայաւիտեան ծնունդ հօր, որ զա՟մ յոչէից ՚ի գոյութի՟ ածեր․ և հայրենի կամօք յերկնից իջեալ՝ առեր մարմին ՚ի ս՟րբ կուսէն մարիամայ․ և ՚ի ձեռն նորին մարմնոյն զգեցման ա՟ծային ներգործութ՟բն ցուցեր արուեստս և նշանս սքանչելեաց քոց․ և զգրեալն ա՟մ ՚ի տառս մարգարէիցն լցեալ կատարեցեր, խաչեալ կամաւորաբար, և խաչակցեն զիմ զմեղս․ յարուցեալ երեքօրեայ ա՟ծային իշխանութ՟բ՝ և մեզ յոյս յարութե՟ պարգևեցեր վ՟ս բազում բարեգթութե՟ քո, ոչ անտես առնելով կենդանացուցանել յանմահութիւն զմեղօք մահացեալս ։ Եւ այժմ ո՟ր բարերար ցոյց

զմար-

զմարդասիրութիւն քո 'ի ժամուս յառաջ քան զմտանելն իմ 'ի բանտ՝ լուսով սքանչելեաց քոց. և տուր ինձ ծաւալել զլուսաւոր բանս վկայութե 'ի խաւարային բանտի, լուսաւորել զանդամոր ըմբռնեալսն 'ի խաւարէ անգիտութե. զի խաւարն 'ի քէն ոչ խաւարեսցի, և գիշերն որպէս տիւ լուսաւոր եղիցի՝ հնազանդելով քոյոց հրամանաց ։

Արդ յորժամ ըմբռնեալ տանէին զերանելին սպասաւորք բռնաւորին կապեալ երկաթեղէն կապանօք, յանկարծակի լուծան շղթայք նորին, և լոյս ահաւոր ճառագայթեալ տեսաւ զնովաւ. զորոյ և զհրեշտակակերպ դէմս տեսանելով զինուորացն՝ յերկիւր անկանէին, և ոչ կարէին հայել 'ի նա ։ Այլ սրբն այ̃ Անթիմոս յարուցանէր զնոսա՝ ասելով. արիք կատարեցէք զհրամայեալսն ձեզ 'ի բռնաւորէն. և նոքա յարուցեալ զհետ նորա երթային ահիւ մեծաւ 'ի հեռաստանէ՝ դիտելով զնա մինչև 'ի դուռն բանտին ։

Իսկ իբրև եմուտ սրբն Անթիմոս 'ի բանտն, ասէ. Տէր այ̃ արարիչ և հաստատիչ ամ̃ եղանութեց՝ հայր տն̃ մերոյ յի̃ քի̃, գոհանամ զքէն, զի արժանի արարեր զանարժանութիւ իմ 'ի բանտս արկանիլ մահապարտաց՝ ըստ նմանութե ամլորդւոյն երանեալ կալապետին յովհաննու մկրտչին քրի̃ քո. զի և ես համդերձ նովաւ 'ի ձեռն շնորհաց քոց համարձակութբ և աչալրջութբ թերևս կացեալ ընդ նոքա և ընդ սիրելիս անուան քո՝ յաւիտեան փառս քեզ մատուցից և միածնի քո և ամե-

նաւթ հոգւոյդ ։

Այլ սկսաւ նոր հայրապետն քարոզել զբանն կենաց՝ ամենեցուն, որ էին նմա արգելեալք էին 'ի նմին բանտի. վշտպէր և ուսուցանէր զնոսա կարգ բարեպաշտութեն, և հաստատէր զմիտս նց 'ի քնական հաւատս և 'ի համբերութին նց, ասելով՝ թէ 'ի ձեռն բազում նեղութեց պարտ է մեզ մտանել յարքայութին այ ։ Այլ նք առ ոտս նր անկանէին, և արտասուհագոչ բարբառով աղաչէին ասելով. Ծառայ այ բարձրելոյ, դու 'ի դիտաղութե քում հանդիպիս բարւոյ մասին՝ որում ցանկացեալն էիր 'ի վաղուց հետէ. զի զընթացս քո բարիս կատարեցեր՝ զհաւատոն պահեր. իսկ մեք դեռևս յաղցաւոր կեանս կամք՝ անգիտացեալք զկատարածն. վյ աղաչեմ վն մեր զայր, զի արժանի արասցէ և զմեզ քում մասին երանութեն, տալով մեզ կանխաւ զկնիք հոգւոյն նյ, որով կարասցուք հետևել զկնի քո ։ Յայնժամ տեսեալ նյն զյօժարութի կապելոցն՝ մկրտեաց զնս 'ի ջուր որբուն, և զօրացոյց զամենեսին 'ի հաւատս և 'ի սէրն քի ։

Իբրև լու եղև այս ամ յականջս Մաքսիմիանոսի, երկեաւ, զի թէ այլ ևս յերկարեսցէ զդատաստան նր, գուցէ և այլք բազումք երթիցեն զկնի վշպութե նորին. վյ ետ անդրէն կոչել զնա զառաջեաւ, և յորդոր մատուցանէր զոհել դիցն, և ես կայուցից զքեզ առէ գերադոյն քհնայ ամոց իմոց. զի փառաւորեսցիս առաջի ամենեցուն ։ Պնի

եա

ետ Տէր հայրապետոն, և ասէ. Ես ինքն նախ քան զքո զանարժան խոստմունս՝ Ճշմարիտ քահանայ Աստուծոյ եմ, և պաշտօնեայ առաջին և մեծ հովուապետին և քահանայապետին Քրիստոսի. որ ոչ միայն կցորդ եղև մարմնոյ իմում, մինչև առ ի յաղագս իմ խոնարհեալ, այն՝ որ անենիւթական էր աստուածեղէն բնութեամբն անհասականաւ, այլ և զանձն իւր գլխովին պատարագեաց վասն հօտի իւրոյ, և 'ի խաչ բարձրացեալ՝ յանձն էառ զմահ, և երեքօրեայ յարեաւ. և դարձեալ յերկինս վերացաւ, զիս ևս միանգամայն առ ինքն ձգելով՝ որ 'ի ստորինս էի վայրանկեալ յաղագս անհնազանդութեան: Որում եմ ես քահանայ, և նմա հաստատեալ է իմ 'ի մտի պատարագել զանձն իմ. մինչև ձենձերեսցի զոհն իմ 'ի հաճոյս բարեսէր կամաց նորա. այլ գիտացն լինել պաշտօնատար կամ զոհել չառնում երբէք յանձն. որ է գործ արժանի ողբոց, և կորուստ հոգւոց. յոր մատնեալ է քո անձամբ զանձն, և որք 'ի նոյն մոլորութեան կայցեն:

Զայնժամ հրամանս տայր բռնաւորն գրել վճիռ մահու ընդդէմ նորին, և պատրաստ լինել դահճաց տանել 'ի գլխատել զնա: Իսկ երանելւոյն լցեալ ուրախութեամբ՝ գոհանայր զԱստուծոյ յատենին, և զմնացեալսն 'ի հաւատացելոց յանձն առնէր 'ի խնամս մարդասիրին, ասելով: Տէր Տէր և նոյն կատարել զընթացս իւրեանց 'ի բարին քո բարեսէր կամաց քոց, հաստատելով 'ի հաւատս ճշմարտութեան՝ յոր

կո-

կոչեցեր. և զա՟մ մեքենաւոր հնարս չարին և զպատրանս ն՟ր խորտակեա, և նկուն արա առաջի սոցա քոյին ամենակարօղ զօրութ՟դ. զի մի՛ գողացեալ օձտեացէ վարատելով 'ի ն՟ց հօտէ քումմէ: Տակաւին զծառայքս քո զնոր ընծայեալքս՝ քեզ յանձն առնեմ, որ կարօղդ ես պարգևել զշնորհս քո, ո՟վ և երկուց բիւրուցն պարգևեցեր զառ 'ի քեզ խոստովանութ՟ն. զի այնպէս անմոռաց զանուն քո տ՟ր և զմիածնի քո յանձինս իւրեանց պահեսցեն հաւատովդ քո ն՟ց: Տ՟ր յո՟ քո ա՟ծ մեր գոհանամք զքո մարդասիրութ՟դ, որ եկիր 'ի խնդիր մեզ կորուսելոցս, և փրկեցեր զմեզ 'ի դիւ՟ապաշտ մոլորութ՟է, և ետուր յաղթութ՟ի ը՟դէմ աներևոյթ թշնամւոյն. և արդ մեք զի՞նչ կարասցուք հատուցանել քում ա՟ծութ՟դ, բայց զանձինս մեր ընծայեմք 'ի հոտ անուշից պատարագ ը՟ունելի:

Այս յասել ն՟ցյն զբանս աղօթիցս, թագաւորն գրգռեալ յառաւել կատարութ՟ի՝ մեծաւ ցասմամբ շտապ արկանէր 'ի վ՟ր դահճապետին և դահճացն, տանել զնա 'ի տեղի կառափելոյն, և սուսերաւ հատանել զպարանոց ն՟ր, վ՟սն տուեալ վ՟ն ն՟ր զրով՝ օրինակ զայս. Զանթիմոս վ՟դպ քրիստոննէից, և մոլորեցուցիչ բիւթանացւոց նահանգիս, մանաւանդ նիկոմիդացւոց մայրաքաղաքիս, վ՟ն ընտրելոյ ն՟ր զանօտի պաշտօն դալիլեացւոցն, և հաճոյանալոյ թողուլ զկեանս, և ցանկանալոյ մահու, որով հրամայէ ինքնակալութ՟ս մեր բառնալ 'ի կենացս.

նացս ։ Իսկ զինուորացն և դահճապետին ընկալեալ զայսպիսի դատակնիք՝ փութացուցանէին զսբն տանել 'ի տեղի սպանմանն ։ Այլ իբրև եհաս 'ի տեղին , աղաչէր երանելին զդահճապետն զինուորօքն հանդերձ , զի թողացուսցեն նմա սակաւիկ մի յաղօթս կալ . և թոյլ ետուն նմա ։ Յայնժամ տարածեաց զսբ ձեռս իւր յերկինս , և սկսաւ այսպէս աղօթել . Տր Այ հայր Տն մերոյ Յի Քի , չեմ բաւական գոհանալոյ զառատ մարդասիրութէդ քումմէ , որ կոչեցեր զանարժանութիս իմ 'ի կարգ և 'ի պատիւ եպսութե , և սրբեցեր զիս տաճար հոգւոյդ սբյ , անսարատ և անբիծ պահելով զկուսութի սրբութե իմոյ . և ետուր ինձ վիճակ առաքելական զքաղաքս զայս , և շուրջ զորքօք զբնակեալսն 'ի սմա . և ես իմովս տկարութբ ըստ զօրութե շնորհաց քոց ուղիղ համառօտեցի նդ զվարդապետութի կենսաբեր Տր աւետարանին ։ Արդ որք հաւատացեալս են յանուն քո Տր , Տր պահեա զնոսա 'ի պատրանաց չարին , և խառնեա 'ի հրեշտակաց երամն՝ 'ի գաս երկնաւոր բանակացն , առնուլ զպսակն լուսոյ ընդ իմ սբս քո . և զհոգի իմ ընկալ 'ի հոտ անուշից պատարագ ընդունելի առաջի փառաց ածութեանդ քո յարկսն արդարոց յերկինս գրելոց ։

Այս կատարեալ զաղօթս իւր , և ասացեալ զամէնն , յայնժամ ասէ ցդահճիճսն . արարէք և կատարեցէք զհրամայեալն ձեզ 'ի թագաւորէն . և այսպէս կատարեցաւ սրով Տր

հայ-

ժամանակի · այլ զի օրինակ մեր պատուականն՝ է պակասաւոր յոյժ, առ հնութեն մատենին պատառոտեալ և կցկտուր մնացեալ, հարկ եղև մեզ յայլմէ յունական օրինակէ փարբեզու՝ զոր յառաջ բերէ հենշքեններս, բովանդակել զկարգ պատմութեն, և 'ի սակս սակս պատմառաց զբանս ճառընտրին՝ որք զորբագան մատունս հաւաքելով զմիացուցանելս թերթից վերծանելեաց ամբողջ իմաստիւք, հայելով միանգամայն և յօրինակն Մետափրաստեսի լեզուաճանեան կմ ռուբինեանն 'ի թարգմաննեալն 'ի յոյն մատենից Վատիկանեան գրատանն Հռովմայ : Զայս եղեալ՝ ոչ ինչ կարեւոր համարիմք ծանուցանել զտարբերութիւնս որոյ կմ ընթերցուածոյ այլևայլ օրինակաց, որք միաձայնեն յիմաստս բանից և յէութե պատմութեան :



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Իրանոսի եպսին Սիրմիոյ :

Հ . Յ . օգոստ . 23 : Լ . մարտ . 25 : Ռամկընտր .
Ա . յէ = յդ : Ըստ Ռուլեանդեան . 'ի Է . հոկտ . մարտի .
էջ . 555 = 557 . հա հ 23 : (1)

ԵՐԿՐՈՐԴ ԱՅՍ ԻՐԱնոս կմ երենիոս՝ եպս սիրմեայ քաղաքի պաննոնիացւոց, անուանակիր և հետևող սորին երանոյն կմ իրենեոսի հետևողի առաքելոցն, էր 'ի ժամանակս սորին անթիմոսի, և 'ի նոյն ամս նահատակեալ, ը որոյ և զուգապէս կատարի 'ի միենջ տօն սը յայսմ վայրի : Ըստքան

քանզի պանծալի վկայաբանութեն սբ̃յս՝ որ-
չափ համառօտ, նոյնչափ և գեղեցիկ յօրի-
նուածով գրեալ՝ ի ժամակից գրչէ՝ վսեմ կան-
խաբանութբ̃, և դիւանական արձանագրու-
թբ̃, միօրինակ գտանի՝ ի հին մատեանս յու-
նաց և հռովմայեցւոց և՝ ի ձառընտիրս մեր,
զնոյն զայն անյեղլի առաջի դնեմք, ունե-
լով բանին այսպէս ։

Յորժամ բարք բարիք՝ ածպաշտութբ̃ կըր-
թեալ, և լաւագունիցն ցանկացեալ, ընդ-
այնմ և զերկիւղն ա̃յ առնուցու, յայնժամ
միանգամայն զա̃մ ինչ՝ որ յՇխս է, արհա-
մարհեալ, ՝ի խոստացելոց բարեաց վայել-
չութիւն փութայ. զի զայն ինչ՝ զոր լուաւ,
հաւատովք հաստատեալ իբրև առընթերա-
կից ցանկացաւ, նմին վաղվաղակի ակնա-
տես եղեալ և ընկալեալ՝ փառաւորեսցէ զա̃ծ ։
Որ եղև առ երանելեաւն երենիոսիւ եպսիւ
սերմեայ քաղաքի. որ վ̃ն անզուգական հե-
զութե իւրոյ, և ածեղէն երկիւղածութեն,
մինչ դեռ ևս մանկագոյն էր, արժանի եղև
աթոռոյ եպսութե ։

Իսկ ՝ի հասանել հալածանացն՝ որ առ դէոկ-
ղետիանոսիւ թագաւորաւ, ոչ որպէս այլք
ոմանք իբրև պատիւ ինչ զիւրն համարեալ,
և հաշեալ մաշեալ երկրաւոր իրօք (առ եր-
կիւղի կորուսանելոյ զպատիւն և զկեանս
միանգամայն), տրտմութբ̃ աղաւաղեցոյց
ինչ զառաջիկայ ուրախութիւն, այլ՝ անյաղթ
և անվեհեր յօժարութբ̃ վարելով, յառա-
ջիկայն նկրտելով, և զառ ՝ի յետոյն մոռա-
նա-

նալով, փութայր 'ի նպատակս վերին կոչմանն ։

Ոչ անգի ոչ լուծին զհաստատութի խորհրդոց նո խիստ իշխանին մեքենայք. ոչ թշնամանք ազգի ազգի, որ զչարչարանս նշանակէին. ոչ յորձանք գետոյ, ոչ վազք քարանձաւաց. ոչ սպառնալիք զանազան տանջանաց. այլ և որքան ինչ ցաւեցուցանելն սովոր է, արանց նեղասրտութի, մանկանց արտասուք զոտիւքն փարելով, կնոջ կականալի բարբառք և երեք տխուրք. ծանօթից սուգ 'ի վ̃ր որդւոց մատաղ հասակի, ընտանեաց հեծութի, և բարեկամաց աղէխարշութին՝ 'ի վ̃ր այնպիսի հասակի, որ յորդորէ 'ի լալումն և յողբումն, այլ՝ ոչ և ասացաքն, ոչ յաղթեցաւ նա յայսմ ամ̃է, այլ՝ լաւագունացն ցանկութ̃ն ըմբռնեալ, և զերկիւղ դատաստանացն առաջի աչացն եդեալ, զարհուրեալ յոյժ 'ի ձայնէ տն՝ զոր ասէր, եթէ ոք ուրանայ զիս առաջի մարդկան, ուրացայց և ես զնա առաջի հօր իմոյ՝ որ յերկինս է, զա̃մ ինչ արհամարհէր, և ուրախութ̃բ փութայր յառաջիկայ յոյսն ։

Ածեալ այնուհետև առաջի պրոքոսի դատաւորին, որ յայնժամ զիշխանութին ունէր պանոնեայ (այն է պաննոնիա, ռամկօրէն մաճառստան), և հարցեալ՝ եթէ կամիցի՞ս զոհել. պնդէր եւ. երանելին երենիոս և ասէ. այլ և ոչ կեալ կամիմ ը̃ ձեզ ։ Յայնժամ արկին զնա 'ի բանտ. և արարեալ անդ աւուրս բազումս 'ի տանջանս և 'ի կապանս,

և

և 'ի մէջ գիշերին նստեալ դատաւորն յատե-
նի ( Թերևս զի մի խռովութիւն լինիցի 'ի ժո-
ղովրդեանն նր ) , դարձեալ ածաւ առաջի ե-
րանելի վկային երենիոս ։ Նա և բազում տան-
ջանաց համբերեալ . և հարցեալ՝ եթէ զի՞նչ
ոչ զոհես . Պատասխանի ետ դքն . վն զի ած ունիմ,
զոր 'ի մատաղ հասակէն ուսայ պաշտել . և
ոչ կարեմ երկրպագել անուանեալ ածոցն
ձերոց ։

Պրոբոս դատաւոր ասէ . շահեա՛ զմահ ( զը-
նելով զկեանս քո , ) շատասցեալ և թշնամա-
նօք նեղութեանց՝ որոց համբերեցեր ։ Իրե-
նիոս ասէ . շահիմ յետ սակաւ միոյ զմահ ,
յորժամ 'ի ձեռն մահուդ՝ որ 'ի քէն , առից
զյաւիտենական կեանսն՝ որ յայ ։ Պրոբոս
ասէ . ունի՞ս կին , կամ որդիս . սբն ասէ . ոչ ։
Պրոբոս ասէ . ունի՞ս ծնօղս . և նա ասէ . ոչ ։
Այլ զայս ասէր երանելին երենիոս , զմտաւ
ածեալ զպատուիրանսն տն՝ որ ասէ . որ սիրէ
զհայր կամ զմայր կամ զեղբարս կամ զկին կամ
զորդիս առաւել քան զիս , չէ՛ ինձ արժանի .
Ու որ հայեցեալ երանելւոյն , յերկինս այնու-
հետև էր գլխովին խորհրդով կրօնաւորեալ
և քաղաքավարեալ . և զամ մարդկեղէն իրս
թողեալ , ոչ զոք աւելի քան զՏր՝ գիտել և
ունել խոստովանէր ։

Դարձեալ ասէ ցնա դատաւորն . գիտեմ
ես , եթէ որդիք կան քո . զոհեա վն նց զա-
հեա՛ ։ Պատասխանի ետ դքն և ասէ . որդիք իմ զած
ունին իւրեանց օգնական , որպէս և ես . որ կա-
րող է կեցուցանել զնս . այլ դու զհրամայ-
եալսն

ետալըն քեզ արա՛յ։ Արկադիոս ասէ. խրատ տամ քեզ պատանի՛ դու, զոհեա՛. զի մի՛ ազգի ազգի տանջանօք սպանից զքեզ։ Արսենիոս ասաց. Ես ոչ զոհեմ. զոր ինչ կամիս՝ արա՛. և գիտասցես՝ եթէ զօրութն Քի քաջութ համբերեմ ամի։

Արկադիոս դատաւոր զվճիռ մահու ետ ՚ի վր, և ասէ. մթ զի ոչ կամիս հաւանել թգրական հրամանաց, այնր աղագաւ ըստ հրամանի ինքնակալացն ՚ի գետ ընկեսջիր։ Արսենիոս ասէ. Ես ազգի ազգի տանջանաց՝ զոր սպառնայիր, ակն ունէի. և այլ ևս ինչ մեծ լինել ինձ. և եթէ կամիցիս զիս սրով սպանանել, մոյ աղաչեմ զքեզ՝ և զայն հրամայեա. զի գիտասցես, եթէ քրիստոնեայք զմահ արհամարհեն վս հաւատոյն, որ յանձ սովորեցաք։ Եւ բարկացեալ դատաւորն վս համարձակութե սրբյն Արսենիոսի՝ հրամայեաց սրով սպանանել զնա, և ապա գետընկեց առնել։ Իսկ որն իբրև երկրորդ յաղթութե նահատակ եղեալ, կմ որպ երկրորդ բրաբիոնի ընկալուչ, ասէ. շնորհ ունիմ այ, որ բազում համբերութ մահու զպայծառագոյն պսակն շնորհեաց ինձ։

Եւ իբրև եկն ՚ի կամուրջն՝ որ կոչի արտեմիս, մերկացեալ զհանդերձն, և ձգեալ զձեռն յերկինս՝ յաղօթս եկաց այսպէս. Տէր, բացցին երկինք, և ընկալցին զոգի ծառայի քո, որ վս ժողովրդեան քո, և կաթողիկէ եկեղեցւոյ, և ամ լրութե որ ՚ի քեզ հաւատացելոց, որ իմ յանձն զայս չար-

եմ, և զք̃ո պաշտեմ. և մ̃նք ցանկամ մե-
ռանիլ. մ̃ն այնորիկ երազ և ստուեր համա-
րիմ զմ̃մ փառս և զպատիւս քո՝ զոր ինձ խոս-
տանաս : Յայնժամ բռնաւորն զայրացեալ
ը̃ համարձակութ̃ե կուսին՝ հրամայեաց չա-
րաչար ապտակել զնա. իսկ երանելին երմա-
նիա զուարթութ̃ը պխնի առնէր, թէ ոչինչ
կարէ մեկնել զիս 'ի սիրոյն ք̃ի :

Յայնմ վայրի հայեցեալ ետես որբուհին
զմ̃ր 'ի կերպարանս պետրոնիոսի քահանայ-
ապետին, որ քաջալերէր զնա առանց ահի
մատչել 'ի չարչարանս. և պատմէր զոր ինչ
լինելոցն էր. յ̃մ զազատիլն նորա 'ի տանջա-
նացն, և զյաղթութ̃ին տրայիանոսի՝ զոր գոր-
ծելոց էր ընդդէմ պարսից : Նաև տրայիանոս
յորժամ ետես զերանելի կոյսն, զի ոչ պար-
տեցաւ 'ի խոստմանցն, և արհամարհեաց ըզ-
տանջանսն, աքանչացաւ ը̃ անդրդուելի միտս
ն̃ր. և լուեալ 'ի նմանէ բազում բանս իմաս-
տութ̃ե՝ առաւել քան զոր կարծէր և գիտէր
'ի համբաւոյ, հաճեցաւ յոյժ ը̃ նա. մինչ զի
առաւել 'ի շնորհս երմ̃նեայ անկաւ 'ի սիրտ
ն̃ր գութ 'ի մ̃ր քրիստոնէից փոքր մի. և հրա-
մայէր այնուհետև ոչ ևս հալածել զքրիս-
տոնեայսն, բայց եթէ գտցի ոք յանցաւոր
յերս արքունի, կ̃մ ը̃դդէմ կայցէ ասէ տ̃րու-
թ̃ես մերում :

Նաև ոչ այսչափ միայն, այլ և կարևոր համա-
րելով ունել առ իւր զայնպիսի կին հանճա-
րեղ՝ ակսաւ յորդոր լինել արքունական եր-
մ̃նեայ, զի յօժարեսցի գալ զկնի իւր 'ի
պալատ.

պարաս · և խոստանայր մայրագիր առնել զնա, եթէ հաւանեցուսցէ իմաստութբ իւրով 'ի հնազանդութի ինքնակալութե նր զազգան, որոց ընդդէմ զինեալն էր : Իսկ նա վկայն քնի պնդեալ ասէ · չէ ինչ օգուտ քեզ ով Թագաւոր ճանապարհակցութիս իմ, եթէ ոչ ընդունիցիս զբարեպաշտութն բանս իմ, որ յաղագս ճանապարհին հաւատոյն է · բայց զայս ասեմ քեզ, եթէ ճշմարիտն ած արարիչն արարածոց՝ զոր եսն պաշտեմ, յաղագս անոխակալ մարդասիրութե իւրոյ՝ նա պատերազմի զպատերազմ քո, և վանէ զթշնամիս քո առաջի երեսաց քոց · և դարձուցանէ զքեզ փառօք և յաղթութբ · զի 'ի նմանէ է յաջողութի և յաղթութի :

Յայնժամ հրամայեաց տրայիանոս հանդերձս մեծագինս պարգևել երմինեայ փոխանակ յաղթութեն, զոր մարգարէացաւ նմա երանելի կոյսն · բայց նա ոչ էառ յանձն, այլ բաւական է ինձ ասէ՝ զոր ունիմն, հանդերձ մեծագունին · քանզի զքս զգեցեալ եմ · վն այնորիկ չկարօտանամ զարդու ապականացու հանդերձից : Եւ այսպէս արձակեցաւ երմինեա 'ի տեղի իւր · ուր ասպնջական լինէր հաւատացելոց, և սփոփէր զամենեսեան և զօրացուցանէր ընդ հոգւոյ և ընդ մարմնոյ · և էր տեսանել անդանօր աներկիւղ համարձակութբ պաշտել ամենեցուն զքս և փառաւորել մինչև 'ի վախճան տրայիանոսի :

Իսկ Թագաւորն գնացեալ 'ի պատերազմ

ընդ մարգարէութեան որոյն յաղթեաց պարթից և մարաց, ապ յետոյ և գթաց. և ուրախութբ և յաղթութբ մեծաւ դարձ արարեալ՝ մարդասիրագոյն զինքն առ քրիստոնեայսն ցուցանէր. մինչև մեռաւ յետ քանի մի ամաց՝ մինչդեռ էր 'ի սեղինուտ կիլիկեցւոց յամի տն 117. Սա թագաւորեաց փոխանակ նր ադրիանոս 'ի կողմանս անտիոքայ ասորւոց. և 'ի նմին իսկ ամի՝ մինչչև էր դարձեալ 'ի հռովմ, յարոյց հալածանս 'ի վր եկեղեցւոյն քի. քանզի ըստ հրաման նմ ուրեք 'ի վր քրիստոնէից՝ զոհել կմ մեռանել։ Սա եկեալ յեփեսոս՝ իբրև լուաւ վն սրբուհւոյն երմոնեայ, առաքեաց զինուորս՝ կոչել զնա քաղցրութբ. և թէ ոչ հնազանդեսցի, բռնի ածել զնա առաջի իւր։

Իսկ զինուորացն բազում հոգաբարձութբ խնդիր արարեալ՝ ոչ գտին. ապա ժամանեցին 'ի գեօղ մի՝ որ մերձ էր 'ի քաղաքն եփեսոս իբրև տասն ասպարիսաւ. և տեսանեն զերանելին՝ զի մտանէր անդ քարոզել զբանն կենաց. և քանզի ոչ ծանեան զնա, ողջոյն տուեալ նմա հարցանէին, թէ իցէ՞ անդ աղջիկ կատարեալ հասակաւ երմոնիա անուն՝ հաւատովք քրիստոնեայ, որ և պէսպէս հիւանդութեանց բժշկութիւն առնէ։ Իսկ նա ընդ առաջնոյ օրինակին տարեալ զնս առ իւր, և տուեալ ջուր 'ի լուացումն ոտից նոցա՝ եդ առաջի նոցա սեղան, և ուրախ արար զնս զանազան խորտկօք։

Յետ այսորիկ ծանուցանէր զանձն, եթէ

նա ինքն է՝ զոր խնդրեմն . և զինուորացն լուեալ զայս՝ տրտմեցան յոյժ . և ոչ կամէին կատարել զհրամանս թագաւորին . վն̃ զի պատկառէին 'ի յօտարսխրութենէն՝ զոր եցոյց նմ̃ : Իսկ երանելին բռնադատէր զնս̃՝ գնալ ը̃ նս̃ , երկուցեալ՝ մի՛ գուցէ չար ինչ անցա_նիցէ ը̃ նս̃ . մանաւանդ թէ ցանկայր իսկ , զի յաղագս քն̃ի արբցէ զբաժակ մարտիրո_սական արեանն : Ու իբրև հաւանեցոյց զնս̃, առեալ տարան զնա և կացուցին առաջի Թա_գաւորին :

Իբրև ետես զնա կայսրն Ադրիանոս , ասէ ցնա . ասա՛ նախ առ ջի՛կ դու պատուեալ զանուն քո և զբախտ և զթիւ ամաց քոց և զազգ քո . և եթէ որո՞վ զօրութ̃բ հպարտա_ցեալ ես , և նախատելով աղարտես և նզովես զա̃ծս մեր , և զիմ բարեպաշտութիս թշնա_մանես և անարգես . և զորս մտանեն և ե_լանեն 'ի քաղաքէս՝ հիւրընկալես և հնա_զանդես , զի յանյաղթելի ա̃ծոցն 'ի բաց կաց_ցեն . և 'ի խաչելոյն պաշտօն զամենեսեան յորդորես :

Իսկ երանելի վկայուհին քն̃ի պ̃խնի ետ առ_նա , և ասէ . եթէ զանուն իմ խնդրես ո՛վ Թագաւոր , երմոնիա կոչիմ . և քրիստոնէա_կան կրօնիւք սնեալ՝ բժշկեմ զախտս և զհի_ւանդութիս շնորհօքն քն̃ի . և Թիւ ամաց իմոց կատարեալ է , զոր քն̃ն իմ գիտէ . և զօրութ̃բ քն̃ի եմ զօրացեալ , որ է ա̃ծ ճշմա_րիտ՝ արարիչ երկնի և երկրի և որ 'ի նս̃ ա_րարածք են . և ո՛չ եթէ զա̃ծս իմն նզովեմ ,

այլ՝ զդիմաց ակարութիւն յանդիմանեմ․ քան-
զի չե՛ն ա՟ծք, այլ՝ ձեռագործք մարդկան և
դևք․ և զմարդիկ՝ զորս ՚ի նո՟ց մոլորութենէն
խաբեցեն, ազատեմ, և ճշմարտին ա՟յ մերձ
կացուցանեմ։ Նաև ազգ իմ և հայրենիք և
փառք և մեծութիւն քո՛ է, որում և ՚ի մանկու-
թէ իմմէ նմա ընծայեցայ։

Երբ և լուաւ թագաւորն զայս ա՟մ յերանել-
ւոյն, լի եղև բարկութե՟բ, մ՟ն զի կարծէր
խոցեցաւ ե՟ւ ուղիղ համառօտեալ պ՟տնիս նո՟ր․
և հրամայեաց զա՟ծ ծառայն բերան նո՟ր հարկա-
նել անխնայ։ Նա և նա առ ոչինչ համարեցաւ
զապտակուածն ծնօտիցն և զջախջախումն բե-
րանոյն, այլ ևս առաւել պատրաստագոյն
էր ՚ի փառաբանութի՟ ա՟յ։ Նա յորժամ ետես
թագաւորն, եթէ առ ոչինչ գրեաց զտանջան-
ջանսն, խորամանկութե՟բ իւրով ՚ի միւս կողմն
շրջեալ զբանն՝ խնչս բազումս և հանդերձս
մեծագինս առաջի դնէր․ և հանդերձ այսու
ևս տիկին առնել զնա հռովմայեցւոց տ՟րու-
թեն խոստանայր՝ իբրև կին իմաստուն և
կատարեալ․ միայն թէ երկրպագանիցէ
ա՟ծոցն։

Իսկ ս՟րբյն այսպն արարեալ զամենայն առաջի
եղեալսն նմա ՚ի թագաւորէն՝ զայս պատասխանի
առնէր․ յայտնի՛ լիցի քեզ ո՛վ թագաւոր,
թէ՝ և ո՛չ բոլոր իսկ ա՟մ թ՟գրութիւնք տիեզե-
րաց, այլ և ո՛չ ազգի ազգի տանջանք կարեն
մեկնել զիս ՚ի սիրոյն ք՟սի․ այլ եթէ կամիս
հանել զմիտս իմ, ընկալ զիս խորհրդակից
քեզ․ որ ոչ միայն զայս թ՟գրութիւն հաստա-
տուն

տուն առնեմ քեզ, այլ և զերկնաւոր մեծու-
թիւն աւանդեմ քեզ. միայն ծանիր զճշմա-
րիտն ած՝ որ ետ քեզ զթգաւորութիւնդ, և 'ի
բաց լեր 'ի սնոտի կռոցդ :

Զայնժամ բռնաւորն իբրև գիտաց՝ թէ ոչ-
ինչ օգտեն 'ի նա խորամանկութիւք իւր, ետ
հրաման լուծանել զկապեալս նր, և սաստիկ
հարկանել զներբանս ոտից նր. և այնչափ
հարին, մինչև առուք արեանց սնոտի բղխ-
խէին (5) : Ապա ետ հրաման աւազան
պղնձի առնել, և լնուլ զայն հալեալ կա-
պարով. և նաւթ և ծծումբ արկանել 'ի
ներքս, զի առաւել ևս բորբոքեսցի. և հրա-
մայեաց արկանել 'ի նա զերանելին մկայն
քսի : Այլ սբ կայր կնքեալ զինքն նշանաւ
սբ խաչին, ուրախութ մեծաւ օրհնելով
զած՝ եմուտ յաւազանն բորբոքեալ հրոյն.
ուր և զքանչելիք իմն եղեն. քանզի ոչ իբրև
'ի հուր, այլ ոպ յառագաստի այնպէս պա-
րէր և օրհնէր զած : Իսկ բռնաւորն իբրև
ետես՝ եթէ ոչ այրեաց հուրն զերանելին,
ևս առաւել հրամայէր բորբոքել, կարծե-
լով զոչացուցանել ինչ ունել աւազանին :

Տեսեալ նորա զկարութիւն հոգւոյ նր և զխե-
լագարութիւն մտացն առ զքանչելիս ամենա-
զօրն այ, գոչէր առ նա ասելով. ով հպարտ
և ամբարտաւան թգաւոր, զի՞ այդքան դիմա-
կան մոլորութբ արբեալ ես, և ոչ զգաս զը-
զօրութիւն ամենազօրին այ. որ զհուրս զայս՝
զոր տեսանես, ցօղ լինել առնէ : Իսկ թագա-
ւորն ոչ հաւատայր տեսութեան, մինչև կա-

մեցաւ և ձեռօքն իսկ իմանալ զճշմարիտն . վոյ եկեալ մերձ յաւազանն՝ զաջոյ ձեռանն կամէր 'ի ներքս արկանել . և մինչև կարի քաջ մօտեալ էր , առժամայն լուծաւ ձեռն նր̄ 'ի հրոյ անտի . և սկսաւ աղաչել զերանելին , զի արտաքս ելեալ բժշկեսցէ զինքն , խոստանալով հաւատալ յա̄ծ նր̄ . Իսկ ս̄բն թէպէտև գիտէր զանդառնալի միտս նորա, սակայն հայեցեալ 'ի մարդասիրութիւն քր̄ի՝ կատարէր զխնդիրս նր̄ :

Իսկ Թագաւորն թէպէտև առ ժամն քաղցրութբ̄ լսէր կուսին , բայց 'ի նոյն ամպարշտութն իւր կացեալ՝ յետ սակաւ աւուրց հրամայեաց վերստին ածել զերանելին զառաջեաւ , և ստիպէր զոհել կռոցն : Ասէ երանելին Երմոնիա՝ այպանելով զբազմա̄ծութն նորա . քանի՞ ա̄ծս ունիս , և ո՞ւմ 'ի նոցանէ հրամայես զոհել : Իսկ նա կարծէր՝ եթէ ստուգապէս վ̄ն զոհելոյ բազմութե̄ ա̄ծոցն հարցանէ . և սկսաւ թուել զանուանս ա̄մ դիւաբնակ կռոցն . ասէ . արամազդ , և կռոնոս , աթինա , արէս , մինա ( կմ̄ լուսին ) , ապողոն , պոսիդոն , արտեմիս , ափրոդիտէ . և այլ ևս բազում անուանս հիւսէր դիւաց՝ յիմարաբանութբ̄ :

Իսկ Երմոնիա լցեալն ա̄ծային իմաստութբ̄ ասէ . ո՜վ որքան ամբոխիւք ելից զսիրտս ձեր սատանայ . զի թողեալ զա̄ծ ճշմարիտ՝ զմինն և զմիայն հզօրն , բազմութե̄ դիւաց երկիր պագանէք . արդ ասա՛ , եթէ որո՞ց խնդրուածոց հասեր յաղագս երկրպագութե̄ բազմա̄ծոցդ

ծնողացդ քոց . այլ գիտեմ, եթէ ոչ ունիս առնել ինչ . վն զի անշունչք են , որ ոչ անձանց օգնել կարեն , և ոչ այլոց ։ Իսկ ես մի ած պաշտեմ յերիս անձնաւորութիւս միով բնութե և ածութե և զօրութե . և զոր ինչ խնդրեմ, վաղվաղակի կատարէ . որպէս և դու յինքնին քաջ իմացար 'ի փորձոյ անտի զզօրութե ամենազօրին ։

Յայնժամ եւս առաւել բորբոքեալ սրտմտութե թագաւորն՝ հրաման ետ տապակ հրացուցանել, և անդ արկանել զերանելին ։ Իսկ սրբուհին իբրև ետես զտապակն 'ի հրոյ կերպարանս եղեալ, ամբարձ զաչս իւր 'ի յերկինս, և կարդայր յօգնականութե զամենակարօղ զօրութիւն . զի ցուցցէ զսքանչելիս իւր , որպէս և յառաջին նուագին ։ Եւ կնքեալ զամ զգայարանսն նշանաւ խաչին՝ տարածեաց զինքն 'ի վր հրացեալ տապակին . և վաղվաղակի տապակն զովացաւ . և բոց հրոյն՝ որ 'ի ներքոյ նր էր , այսր անդր ցողացեալ՝ զբազումս 'ի շրջակայ հեթանոսաց կիզեալ ապականէր . ուստի և բռնաւորն զարհուրեալ 'ի սքանչելեացն՝ սակաւ մի զիջաւ 'ի հպարտութենէն . և հրամայեաց հանել զնն 'ի տապակէն , և պահել 'ի դիպահոջ ։ Բայց զի ոչ կամեցաւ ընունել յինքն զլոյս ածգիտութեն , յետ սակաւ ժամանակաց դարձեալ հրաման ետ ածել զերանելի կոյսն առաջի իւր՝ յատեանն , ուր հաստատեալ կային բազմութիւնք դիւական պատկերաց . և առէ ցնն . ահա ածք մարգասէրք՝ զոր

եսն

եսն պաշտեմ, տե՛ս թէ որչափ բարեմտութիւն · ցուցանեն առ քեզ · որոց դու ապերախտ գտանիս, և ո՛չ գոհես նմա: Մաւ երանելին, զիա՞րդ գոհեցից անչունչ պատկերացդ, որք ոչինչ տան պատասխանի՝ որոց յաղօթս կան առաջի դոցա: Եւ կացեալ առընթեր պատկերացն երանելի վկայն կարդայր առ Ած, այսպէս ասելով · Տր Ած զօրութեանց՝ որ յա՛մ դարս ցուցանես զսքանչելիս քո · դու 'ի քաղանէ զամբարտաւանութի մարդկանն խափանեցեր բարձանմամբ լեզուա՛ցն, և զբարձրութի խորհուրդս նց՝ որ յաշտարակին, քակտեցեր · դու զամբարտաւանն զփարաւոն՝ որ ոչ ծանեաւ զզօրութի սքանչելեաց քոց, ընկղմեցեր, և զժողովուրդն քո ազատեցեր 'ի նմանէ · դու 'ի ձեռն յեսուա՛յ ընտրելոյն քո զպարիսպն երիքովի իբրև զջուր հեղեր 'ի ձայն յոբելեան փողոյն, և զժողովուրդն քո առանց զինական պատերազմի 'ի ներքս ածեր · դու նոյն Տէր և այժմ ցո՛յց զզօրութի Ածութեդ քո կործանմամբ կռոցս այսոցիկ · զի ծանիցեն ամենեքեան, եթէ դու միայն ես Ած, և չի՛ք այլ ոք:

Եւ մինչդեռ աղօթքն 'ի շրթունսն էին, յանկարծակի անկեալ կուռքն առհասարակ կործանեցան, և եղեն իբրև զփոշի · և նր վկայն գոհանայր զԱյ՝ որ այնպէս սքանչելագործէ առ ծառայս իւր: Ապա դարձաւ առ բռնաւորն, և ասէ · տո՛ւր ձեռն Ածոցդ քո, և կանգնեսցե՛ս զդոսա · քանզի ահաւասիկ անձայն եղեն, և հեղեալ մանրեցան առաջի

քո : Իսկ Թագաւորն մեծացեալ ոգւով 'ի լուսոյ ա̃ծեղէն սքանչելեացն՝ ոչ եւս 'ի միտ զմեծամեծսն ա̃յ . այլ փաղփաղուկն եւ մեծի. 'ի վ̃ր երմենեայ՝ որով պատանանել, հեղնելով այսպէս . Թերևս արդեօք առէ և 'ի սորայ կարիցէ կախարդութ̃ն ապրել . և եւ զնա 'ի ձեռս երկուց քաջ զինուորաց , որոց անուանք էին Թէոդուղոս և Թէոտիմոս . զի հանցեն զնա արտաքոյ քաղաքին եփեսացւոց , և անդ հատցեն զգլուխ նր̃ :

Եւ եղև յորժամ Թէոդուղոս վերացուցեալ զսուրն՝ կամէր հարկանել զերանելին , փաղփաղուկն չորացաւ ձեռն նր̃ . յայնժամ միւս զինուորն Թէոտիմոս՝ որ և տիմոթէոս , ծառը արարեալ զընկերն՝ յանկարծադէպս լինչ համարելով զվրիպելն նր̃ , ինքն առձապաքեաց փաղփաղուկն , և հաներ զսուրն՝ յարձակեցաւ 'ի վ̃ր կուսին . և նոյն ժամայն ցամաքեցաւ և նր̃ ձեռն հաւասար ընկերին :

Ապա անկեալ երկոցունց զինուորացն 'ի վ̃ր երեսաց իւրեանց՝ աղաչէին զնա վկայն , և խնդրէին զթողութ̃ն 'ի նմանէ և զբժշկութ̃ն անդամոց իւրեանց , խոստովան լինելով թէ հաւատամք 'ի քո ա̃ծն . զի նա միայն է ճըշմարիտ արարիչ երկնի և երկրի :

Իսկ սբ̃ն իբրև ստուգեաց զճշմարտութիւն հաւատոց նց̃ 'ի նոցին բերանոց , միանգամայն և հոգւովն որով ծանեաւ զխորս սրտից նոցա՝ թէ ճշմարիտ են , յաղօթս եկաց առ ա̃ծ . և 'ի կնքել զնոսա նշանաւ սբ̃ խաչին՝ առժամայն առողջացան ցամաքեալ ձեռք նց̃ :

Սատանոր գեղեցիկ 'ի վ՟ր ածէ հին վկայա-
գիրն. Արդ զայս այսպէս սքանչելագործել
ս՟յ, զի և նախ քան զհանդերձեալ փառսն՝
աստէն փառաւորեաց զՆ՟քս իւր, և անմար-
տընչելի սատանայի մեքենայիցն ցուցցէ. զի
Թէ նա 'ի ձեռն պատրանաց իւրոց մահկա-
նացու արար զմարդն և մեղաց գործօնեայ,
ցուցանել կամեցաւ Տ՟ր՝ թէ որք արհամար-
հեն զնա, աստէն իսկ անմահանան և հա-
ւասար հրեշտակաց լինին. և դարձեալ՝ զի
յայտնի արասցէ զզօրութի իւր առաջի հպար-
տացեալ Թագաւորին, որ զսքանչելիսն ս՟յ
կախարդութի վարկանէր, ք՟ն զապրել կու-
սին 'ի հալեալ կապարոյն և 'ի հրացեալ տա-
պակէն, և ասէր՝ եթէ զսուր ոչ կարէ բթել.
կամեցաւ ցուցանել, թէ՝ և սուր ոչ կարէ
գործել զնա, մինչև հրամանն առնու յա-
րարչէն. միանգամայն զի և զբազմաց փըր-
կութի շահեսցի սքանչելեօքն՝ զոր ցուցանէ
առ Ն՟քս իւր:

Իսկ քանզի երանելի կոյսն՝ Թէպէտև սքան-
չելեացն ս՟յ շտեմարան եղև, և բազմաց՝
հաւատոց պատճառ, սակայն միշտ ըղձայր
երթալ առ փեսայն երկնաւոր, յաղօթս ե-
կաց առ Ա՟ծ՝ այսպէս ասելով. Ով Տ՟ր իմ Տ՟ր,
դու գիտես զխորհուրդս անձին իմոյ, որ
միշտ փափագեմ տեսանել զքեզ զճշմարիտ
բաղձալիդ իմ և Տ՟մ ս՟րց. արդ առաքեա ըզ-
հրեշտակ քո, և ընկալ զոգի իմ խաղաղութ՟բ:
Իսկ ի՟ց ասել նո՟ր զայս՝ երևեցաւ հրեշտակ ս՟յ
'ի կերպարանս լուսոյ. և նոյնժամայն ա-
ւանե

ւանդեաց կոյսն զմաքուր հոգին 'ի ձեռս այ, եւ գրեցելումն՝ թէ հոգիք արդարոց 'ի ձեռին այ են ։

Իսկ արք երկիւղածք՝ որ բնակեալ էին յեփեսոս, առեալ զկկայական մարմին կուսին Երմոնեայ՝ տարան 'ի ներքս 'ի քաղաքն ․ և եւ արժանի սրբութե նր տապանակ արարեալ՝ եդին յարժանաւոր տեղւոջ ։ Առ նմին եդին և զերկու զինուորսն, որք հաւատացին 'ի կատարման նորա ․ քանզի և նք կատարեցան հրամանաւ բռնաւորին՝ պսակաւորեալք 'ի քս 'ի ձեռն Ճշմարիտ հաւատոյն (6) ։ Այլ ամ եւ ամէ ժողովեալք ամ քրիստոնեայքն՝ որք էին յեփեսոս, զօր յիշատակի սրբուհւոյն Երմոնեայ տօնէին յաւուր կատարման նորին, որ օր չորս էր, կիրակէ սեպտեմբերի ամսոյ, 'ի փառս և 'ի գովութի հօր և որդւոյ և հոգւոյն սրբոյ՝ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

Յաւելու ժամագիրք յունաց 'ի դեկտ ․ 2 ․ թէ նա կոյսն միւռոպէ (որոյ յիշատակ լինի 'ի յայսմաւուրս մեր ․ մայ ․ 15 ․ և առ այլս ․ յուլ ․ 13 ․) Յաւուրս դեկոսի կայսեր՝ սոէպ երթայր 'ի գերեզման սրբուհւոյն Երմոնեայ դստեր նորին փիլիպպոսի առաքելոյ յեփեսոս ․ և ընկալեալ 'ի գերեզմանէ նր (ոսկ և յայլոց նորա) զմիւռոն, որ զիւղ անուշահոտ ծորեալ, անխնախանձ բաշխէր ամենեցուն ․ ուստի եղև կոչիլ նմա միւռոպէ ։

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ:

(1) Որ 'ի մեզ գրի Երմոն կմ Երմոնիմ, Երմոնիա կամ Երմոնիիմ, Ը յունաց է Էրմոնի, և Ը լատին՝ Հերմոնէ: Իսկ քոյր նր Իտաբիւրիա՝ 'ի յունաց կոչի Իտաբիւրիա կամ Իտաբիւրէ. որ 'ի Հ. վրիպակաւ գրի տիա կմ Իտաբիա: Արդ ոչ 'ի բազմաց սբց, նոյնպէս և 'ի սբյն Երմոնեայ կուռի վկայաբանութե գեղեցիկ պարծի ճառընտիրն մեր, որ անթերի մեզ զայն ընձեռեաց՝ բաց 'ի քանի մի բառից և 'ի տողից առ հնութե մատենին մաշելոց կմ պակասելոց 'ի պատառմանէ. ուր առ յոյնս չէն կարացեալ գտանել բովանդակեանք զամբողջ վկայաբանութիւն. Թէպէտ զբառաբլեան յայսմաւուրս նշ և զժամագիրս, յորս կայ քաղուած նոյն պատմութե. ոչ և 'ի յայսմաւուրս մեր: Այլ և յաճախնէս սովորինգ բովանդակեան ոչինչ այլ առնէ յայսմ վայրի, բայց զքաղուածոյն ներ խօսել. այլ լաւ ևս առնէր՝ եթէ իսպառ լռէր. զի ոչ եթէ պայծառացուցանէ զմթութիւն համառօտութեն, այլ զպայծառութիւն նսեմացուցանէ, և զճշմարտութիւն խաթարէ: Իսկ զի նա խօսեցաւ առանց հիման, ցո առանց վկայաբանութե՝ Ը կամի, մեզ արժան է հիմամբ խօսել Ը անաչառ ստուգութե:

Բազմաբանութիւն իմաստնոյն սովորինգայ մեր 'ի վայր յեղյեղեալ՝ բովանդակի յայն բան նր, զի ասէ 'ի նախադասութիս. համար. 17. այսպէս. * Վկայաբանութի
" սբյն Երմոնեայ պատմեալ 'ի ժամագիրս յունաց՝ ան
" տարակոյս շաղախեալ է առասպելեօք. Թէպէտև կա
" րէ լինել, թէ ինչ ինչ ճշմարիտ ԻԸ ոսեաս խառն գտա
" նիցին: Այս ասեմ, թէ սրբուհին նախ չարչարեալ իցէ
" առ Տրայիանոսիւ. այլ յետ քանի մի տանջանաց յա
" զատութի թողեալ իցէ 'ի նմանէ. ապա միւսանգամ
" ըմբռնեալ հրամանաւ Ադրիանոսի, և բազում տան
" ջանօք փորձեալ՝ հուսկ յետոյ վախճանեալ իցէ: Այլ
" սակայն այնչափ հրաշալիք յաւելուածովք զգեստաւո
" րի բովանդակ իրն, մինչ զի ոչ ինչ արժանահաւատ
" գտանիցի՝ որ ինչ պատմին յաղագս մարտիրոսութե ||:

Բայց է ահագին վճռոյս. մեծ կրիտիկն (որ այլուր պաշտպան է հրաշից,) առասպելախառն գրէ զայն

պատ

պատմութիւն, որ իցէ սքանչելախառն. ոչ արժանահա-
ւատ համարի զմարտիրոսութիւն, յորում հրաշք լինիցին,
և ուսանի ուսոյ իմաստուն այրն զայսպիսի անձեռնար-
կելի ձեռնարկութ: Մ՛իթ արդեօք յետս ընդդէմ ընթեր-
ցեալ իցէ զբանն նոր, թէ որք հաւատանն 'ի նա՝ մեծա-
մեծս ևս քան զնոյնս գործեսցեն զգործս, և որս հրեայք
զարմանայքն՝ առնել 'ի վերայ քո. զի թէ զայդ ուղիղ
ընթեռնուք, ոչ կարէ 'ի պատճառս հրաշից 'ի բաց հա-
նել զպատմութիւնս այդ, այլ առաւել ճշմարտել. Թող
այլ պատճառս զոյգ առխլափնդ ըստ կանոնաց կրկնակ-
ութիւն. և զի ոչ գտանէ, այլա 'ի զուգ բանայ զմերան-
խաբ (առանց բաւականն անզղեկութ) էզդէմ հրաշալի
պատմութիւն սոյն երամնեայ, որ չէ ինչ էհաս յայլոց սոյց
բաղմաց. և կրկին անխռով, երբ բացարձակ մերժա-
գիր գնէ. * առասպելախառն մեկնաբանութիւն 'ի ժա-
,, մանակաց յուննաց ||. և 'ի յառաջ բերելն զայն՝ ոչ եթէ
ցուցանէ զառասպելախառն լինել, այլ՝ ենթադրէ ը
համբոյս իւր. և միտեալ մերժէ յընթացս բանից ասելով.
* Բայց արդ դիւրաւ ունի առնանել ընթերցողքն,
,, թէ բովանդակ այս պատմութիւն մարտիրոսութ է այն-
,, պիսի, որ կամ առակաւ և կամ ոչինչ արժանահաւատ
,, գտանի ||: Ահա երկրորդեալ և երրորդեալ եղծանեա-
ցութիւն առանց և ոչ միոյ ցուցման. վա որոյ և արժա-
նի նմանօրինակ անզրպարտութեան այսպէս. * բայց արդ
,, դիւրաւ ունի առնանել սրբատեղին և վկայականն, թէ
,, բովանդակ այս խօսակցութիւն առխլափնդայ է այնպի-
,, սի, որ ոչ եթէ առակաւ, այլ բնաւ ինչ ոչ արժանահա-
,, ւատ գտանի ||:

Մինչ իմէք կարեմ արդարացուցանել զայրն, զի ոչ
ունելով 'ի ձեռին զայլ բևոր պատմութիւնն զվկայաբա-
նութիւն մեր՝ կարծեալ է թէ վասն այդոր իցէ. բայց
գիտասցէ՝ զի նոյն է ճշմարտն, որ 'ի վասն և յայլքն.
և որում անհամեմատ մին, երկնչէ թէ և միւսն ան-
համ թուեսցի: Այլ քաղցրացուցանէ զնա, միաբանա-
միայն և լուծանէ զթերահաւատութիւն կարծես առխլափն-
դայ՝ վայելչական մերձաւորութիւն վկայաբանիս մերոյ,
թէ զերանգ լինէր սոյց հրաշալիս ասացանել իբրև ան-
մեան է քաղցրագոյնն առաջնորդն զորութէ անտեղեակ
նոյ: Բայց զղջացեալ երևի առխլափնդ վասն այսպիսի
բանից իւրոց, երբ 'ի վերջ սոյն գեղեցկագոյն սքանչելա-
գործ եղեալ՝ յերկար պնդէ, թէ չէին անհաւատալի սքան-
չելիք՝ որ 'ի վերջ սոյց:

• դաւորին ուղղնութիւն տուր պլանի • և 'ի հարկանելն
• սաղմոս էր 'ի բերան նր • և 'ի լքանիլ դահճաց՝ հրա-
• մայեաց այլոց զինուորաց՝ 'ի ներբանս ոտից նր ճար-
• մանդս արկանել ||:

(6) Միաձայն են Ծ. գրեն և Հ. և Յ. ժմ. թէ յետ հաւատալոյ երկուց դահճաց՝ երբ կամէին այլք սպանանել զկոյսն, նա խաղաղութբ աւանդեաց զհոգին • բայց տարաձայնին 'ի մէնջ, ուր համարին՝ թէ և երկոքին դահիճքն խաղաղութբ ըս նմին օրինակի վախճանեալ լիցին • Քզլ Ծ. ցուցանէ՝ թէ կատարումն նոցա եղև բռնական մահուամբ, թէպէտև ոչ յիշէ, սրով, եթէ հրով էն, ուստի Յ. բս • իմացեալ է սրով • որ է ըունելի • բայց չգիտեմ զիարդ և զերմնէ նոյնօրինակ առդնէ գլխատեալ՝ յասելն • * և 'ի չորանալ ձեռացն դահ-
• ճաց՝ հաւատացին, և են նմա գլխատեցան || • և պատկերն իսկ կուսին նկարի անդ գլխատեալ • որում ոչ ուղ. եդեալ ստիլոինգայ՝ կարծէ, թէ չէք յիշատակ դահճաց 'ի Յ. բս: Այլ որ զարմանալին է, 'ի Յ. ժմ. ուրոյն ևս գրի զերկուց դահճացս, թէ հրով կատարին, փոխ գրելոյ սրով • և 'ի վրդ բերի տաղս • * Թէոտիմոս
• մեռանի են Թէոդուլոսի, պատիւ են նմա ծառայա-
• կան տալով նն || • ուր փակի ստուգաբանութն անուանց երկոցունց • որ կամ յատուկ անուանք էին նց, և կմ 'ի հաւատացելոց այնպէս կոչեցան խորհրդաբար •



Ի V ՄԱՐ-

# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն ՚Եկատերինեայ փիլիսոփայի և կուսի վկային Ք͞սի. որ և Կատարինէ աղեքսանդրացի: (1)

Հ. Մարտ. 27: Յ. Լ. Նոյեմբ. 25: Ճառընտ. Բ. ՇԽԵ = ՇԽԷ: Գ. ՌՂԶ = ՌՂՂ. և Օ. ՀԷ = ՀՂ: Մնացորդ. ամ. ամբ. հայոց. Է. երբն. 624 = 632: Բառարանն յատ. 307. ԼԷ: (2)

ԻՄԱՍՏԱՍԷՐ ԵՒ ՀԱՆճարեղ կոյսն սքանչելի ՚Եկատերինէ, որ և Կատարինէ, (՚ի յունաց էգադերինա կոչեցեալ, և ՚ի հռովմայեցւոց գաթարինա,) էր ՚ի քաղաքին աղեքսանդրու եգիպտացւոց՝ յազգականութ͞է մեծին կոստանդիանոսի, յամս մաքսենտի և մաքսիմինոսի բռնակալ թագաւորաց, հաւատով քրիստոնեայ, և տեսլեամբ գեղեցիկ յոյժ. և անչափ հանճարով և ճարտար մտօք: Նա և բաց յա͞ծային գրոց գիտութ͞է ուսաւ զա͞մ հելլենական գիտութիւն հռետորական և փիլիսոփայական. զորս օրէն էր ուսուցանել ՚ի ճեմարանս աղեքսանդրացւոց՝ ոչ միայն արանց, այլ և կանանց ուշիմ եղելոց մտօք. յորոց միջի անհա-

մն.

մեծանուն յառաջադիմութեամբ փայլեաց ներքսա-ւորնէ, քաղեալ յընդարձակութենէ միտաց իւ-րոց զգիրս Հոմերոսի Հելլէն քերթողի, և Վիրգիլիոսի Հռովմայեցւոյ, որպէս և զմա-տեանս Արիստոտէլի, Պղատոնի, Պիւթա-գորայ, և այլոց իմաստասիրաց և հռետորաց. Եւս և զնախաբժշկացն՝ Ասկղեպիոսի, Հռու-փոսի, Հիպոկրատէսի և Գաղիանոսի. Թո՛ղ զԹուաբանական մակացութիւն և զգիտութիւն եր-կրաչափական, աստեղաբաշխական, և նուա-գարանական. մինչև զամենայն արտաքին գիրս՝ ՚ի բերան ընթեռնուլ. և ՚ի լեզուագիտութեան զարմանալի գտեալ ընդ օրինակին Միհրդա-տայ՝ աւելի քան զերեսուն ազգաց լեզու ու-սաւ, և խօսէր յիւրաքանչիւր բարբառ. ընդ-որ սքանչանային՝ որք տեսանէին զնա, և լսէին ՚ի նմանէ. և համբաւ իմաստութեան նշանաւոր էր ընդ ամենայն ազգս ։

Այլ ՚ի միում աւուր ետես զԹագաւորն Մաք-սենտիոս, կամ Մաքսիմինոս, զի եկեալ էր յԱ-ղեքսանդրիա. և բազում ամբոխիւ ՚ի մեհ-եանս զոհս կռոցն մատուցանէր յաւուր տօնի հեթանոսաց ։ Այլ զի ունէր համարձակութիւն յարքունիս վասն արքունի զարմին և սքանչելի իմաստութեան, ազդմամբ շնորհացն Աստուծոյ ան-վեհեր չոքաւ եմուտ առ Թագաւորն, և սկսաւ իմաստութեան բանիւք ընդդիմանել և յանդիմա-նել զնա վասն պաշտելի զոհից կռոցն. և վկա-յութիւ ետ ՚ի ժամուն յանկաւորս ՚ի մէջ ատենոյն ՚ի դրոց իմաստնոցն Հելլենացւոց վասն աստուածութեան դիցն նոցա. Նոյնպէս և ՚ի մատե-

նից այլոց ազգաց բերեր բանս 'ի նոցին լե-զուս, և թարգմաներ և ցուցաներ՝ թէ սնո-տի են ամենայն պաշտամունք հեթանոսաց. Մին-չև զարմանալ թագաւորին և որոց ընդ նմա յոյժ ընդ սքանչելի բանս իմաստութեան նորա, և ընդ բարբառ բազմազգի լեզուացն:

Իսկ տեսեալ երանելի կուսին զթագաւորն և զամբոխն շրջեցեալ ընդ դէմ իւր, զի ոչ կա-րէին պախնի առնել, սկսաւ անդրէն խօսել պարզ և յստակ բանիւք ցթագաւորն, և աս-ասէ. Ընդէ՞ր ժողովեցեր զբազում ամբոխս, և ունայնութեամբ կորուսանես զնոսա 'ի մոլորու-թեան կռոցն. և արդ թափեա՛ց 'ի մոլորութենէդ, և լո՛ւր ինձ, և ծանի՛ր զնա՝ որ բանիւ հաս-տատեաց զամենայն աշխարհս. զի նա միայն է ճշմարիտ Աստուած, որ առաքեաց զմիածինն իւր յաշխարհս, զի կեցուսցէ զմեզ խաչիւն իւրով. նա է փրկիչ մոլորելոց, և Աստուած յաւիտենական. և նմա միայնոյ փառք յաւիտեանս. ամէն:

Յայնժամ 'ի տարակուսի լեալ թագաւորն՝ տարաւ զնա զկնի իւր յապարանս, կարծե-լով եթէ ողոքանօք դարձուսցէ զնա՝ զոհել կռոցն, և 'ի բաց կալ 'ի Քրիստոսէ. այլ նա ջանայր զթագաւորն աստուածիմաստ բանիւք հաւանեցու-ցանել: Իսկ խորհուրդ արարեալ թագա-ւորին ընդ իւրոցն՝ ետ կոչել հռետորական վարդապետս, զի խօսեսցին ընդ նմա, և յաղթահա-րեսցեն զմիտս նորա 'ի հաւանութիւն դենից հե-թանոսաց: Իսկ ժողովեցան արք յիսուն յի-մաստնոց Յունաց՝ հռետոր և փիլիսոփոս ան-ուամբ մեծարեալք. և յորժամ սկսան խօ-սել

սել առաջի Թէոդորին, որքուհի կոյսն Նեքստաւինէ հրեշտակական օգնականութեամբ զվեհագոյն հռետորական վիպասն զարմացոյց և յամօթ արար, և երևեցոյց զնոսա ադէտս և անիմաստս 'ի ճշմարիտ իմաստութենէ. մինչև յահի լինել փիլիսոփայ վիպասաց, և ոչ իշխել խօսել կամ հարցանել 'ի փիլիսոփայական դրոց ։

Իսկ երանելին Նեքստաւինէ տեսեալ զնոսա 'ի վարանս՝ սկսաւ առաջի ամենեցուն բազմապատիկ վկայութիւնս 'ի նախնի իմաստնոց վասն աստուածութեան կուսոյ, և վասն ճշմարտութեան միոյ միայնոյ այ արարչին երկնի և երկրի. և յաւել 'ի մէջ բերել յարտաքին դրոց նաև բանս իմն գուշակականս յաղագս խորին խորհրդոց ածպաշտութեան. Զի զայն բան ուրումն յառաջնոց, որ 'ի Ճառընտիրս ընծայի յանուն Վիրգիլիոսի. * Յերից միութենէն մինն 'ի մարմնի տեսաւորի. յերից անեղութից ոչ պակասի ॥ ։ Նաև առաւել զբազմապատիկ բանս 'ի դրոցն սիբիլլայից, յորս գտանին մեկն գուշակութիւնք զանօրինական խորհրդոց փրկչին. ուստի զմին յառաջ բերեն Ճառընտիրք օրինակ զայս. * Ո՛վ երիցս երանեալ փայտ,
„ յորում ածայինն տարածի ... քահանայքն
„ զբժիշկն իւրեանց 'ի փայտի խաչեսցեն,
„ և ոչ կարասցեն յաղթել նմա ॥ ։ (3)

Նա յետ արկանելոյ զմիտս փիլիսոփայիցն 'ի ծուփս յաղագս խորութեան իմաստից այսպիսի բանից գտելոց յարտաքին գիրս 'ի կողմն ճշմարտութեան, այնուհետև 'ի վեր եած և այլ

բազում բանս զօրաւորս 'ի Հին և 'ի Նոր կտակարանաց, առաւել 'ի բանից պօղոսի և դաւթի. որովք ուսուցանէր և խրատ տայր հաւտորացն և փիլիսոփայիցն հաւատալ 'ի ք՟ս, և ոչ մնալ 'ի հեթանոսական կուրութեան և 'ի յետին անմտութեան. ծաներո՛ւք ասէ զտ՟ր մեր յ՟ս ք՟ս՝ զփրկիչն տիեզերաց, որ վ՟ս մեր մարմնացաւ, խաչեցաւ, թաղեցաւ, և յարեաւ 'ի մեռելոց, և համբարձաւ յերկինս. և գալոց է դատել զկենդանիս և զմեռեալս: Երբև ետես թագաւորն զիմաստութիւն կարծեցեալ վէպս իւր յաղթահարեալ և անպիտանի մնացեալ առաջի անյաղթ վկային ք՟սի նեքտարինեայ ճշմարիտ իմաստասիրի, բարկացեալ 'ի վ՟ր ն՟ց՝ հրամայեաց հրով այրել զն՟ա 'ի միասին յիսուն այր: Եւ յորժամ տանէին զն՟ա, մինն 'ի նոցանէ խրատէր զայլսն, զի անկցին յոտս ս՟բյ կուսին, և խնդրեսցեն ուսանել զհնարս փրկութեան՝ առեալ յանձինս զգրոշմ ք՟սի: Յայնժամ ասէ ցն՟ա նեքտարինէ. մի՛ երկնչիք, այլ խնդացէ՛ք 'ի տ՟ր. երանի՛ է ձեզ՝ որ խափանեցայք 'ի մոլորութենէ, և ծանեայք զա՟ծ ճշմարիտ. արդ ընկալարո՛ւք զմկրտութիւն հրով, և ուրախասջի՛ք ընդ հրեշտակս: Եւ այնպէս կատարեցան զուարթութ՟բ յիսուն արքն՝ խոստովանելով զտ՟ր յ՟ս ք՟ս. և մազ մի 'ի գլխոյ նոցա ոչ կիզաւ. յայնժամ հաւատացին 'ի ք՟ս և բազումք յամբոխէ անտի. յորոց սակի յիշի Մ՟ ոմանց յանուանէ պորփիւրիոս ստրատելատ երկերիւր զօրականօք հանդերձ:

Իսկ

Իսկ զերանելին նեքտարինէ զանարատ
հարսն քսի հրաման ետ բռնաւորն 'ի տան-
ջանս գանից մաշուցանել . վոյ մերկացու-
ցին 'ի նմանէ զծիրանիսն և զբեհեզսն , և
զոսկի զզարդսն հանին 'ի նմանէ , և թողին
միայն զշապիկն . և 'ի վր այնր հարին զնա
ուժգին արջառաջլօք , կմ ը այլոց խարազա-
նօք՝ որ կոչին կարիճք յաղագս խայթոցացն .
և արկին 'ի բանտ , մինչև նորանոր տանջանս
հնարեսցին վն նորա : Եւ կին մի այրի , որ
երբեմն թագուհի եղեալ էր մագնենտիոսի
արքային , ցանկայր տեսանել զնեքտարինէ ,
և լսել 'ի նմանէ զբանս իմաստութե . վոյ
և պորփիւրոս ստրատելատն տարաւ զթա-
գուհին 'ի գիշերի առ նա . և վրդպութբ նր
հաւատաց թագուհին 'ի քս , և դարձաւ 'ի
տուն իւր . և մկրտեցաւ 'ի հաւատացելոց :
Յետ այսորիկ միւսանգամ տարան զերանե-
լի կոյսն նեքտարինէ յատեան . և նա անփո-
փոխելի հաւատով խոստովանէր և քարոզէր
զքս ած՝ լի իմաստութբ և հոգւով սրբվ . վոյ
հրաման ետ թագաւորն ը խորհրդոյ խուր-
սատադեմայ իշխանի , և կացուցին զկոյսն 'ի
վր մեքենաւոր և սրալից անուոյ՝ հոլովել
և խորտակել զամ մարմինն նր . և 'ի կարդալ
սրբուհւոյն 'ի սրտէ առ ած՝ հրեշտակ տն
իջեալ յերկնից՝ փրկեաց զնա 'ի դժնդակ
մեքենայէն : Յայնժամ երանելի թագու-
հին՝ որ հաւատաց 'ի քս , ընթացեալ համար-
ձակ առ թագաւորն , անգոսնէր , և մեղա-
դրէր նմա յաղագս անողորմ և անագորոյն

և տարեալ եդին 'ի սենեկական լերինն . ուրա-
նօր երևի միայնացեալ կոյսն առժամանակ
մի 'ի սկզբան հալածանաց . ուր և գտան
գիրք նշխարք նր (4) ։ Նախկին գրիչ վարուց
մեծ վկայուհւոյս Ճանաչի աթանաս ոմն յըն-
տանեաց նր . որ էր Ճաշընտրին այսպէս վեր-
ջաբանէ . * Սա աթանաս դպիր ծառայ նր
,, գրեցի զվկայութիւն տիկնոջն իմոյ սբյն
,, նեքտարինեայ , որ կատարեցաւ 'ի քն յս
,, 'ի տր մեր . որում փառք յաւիտեանս .
,, ամէն ։ ։

Սա ինքն սրբն նեքտարինէ կամ կատարինէ
կոյս իմաստասէր՝ իրաւամբք ընտրի 'ի բա-
րեխօս և 'ի պաշտպան ամ դպրոցաց գիտու-
թե և իմաստութե . և խորհրդով նկարի 'ի
պատկերս՝ իբրև այն թէ մատանի էւանի 'ի
մատն իւր 'ի քնէ յսէ անէ մերմէ , ոչ միայն
իբրև զայլս 'ի կուսից կուսութե հարսնացե-
լոց փրկչին , այլ և ոմն իմաստութե պսակեալ
է ամենայն իմաստութե . էր որում և իմաս-
տունն յօրինակ քսի առէ զիմաստութեանէ .
* Սէ զոք սիրէ ած , բայց զայն՝ որ է իմաս-
,, տութե բնակիցէ . . . Զնա սիրեցի և քննե-
,, ցի 'ի մանկութե իմմէ , և խնդրեցի ածել
,, զնա հարսնութե . և եղէ ցանկացող գեղոյ
,, նր . . . և ամենեցունց տրն սիրեաց զնա ։ .
Իմաստ . Է . և Ը .

Ծ · Ր ·-

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Նեքտաւինէ անուն 'ի մեզ՝ կամ առ վայելչութե իմիք հնչման, և կմ՟ ը՟ նախընթաց բառի կապեալ՝ ընկալաւ զյաւելուած տառիդ Ն. ոպ՟ այն՝ որ գրի 'ի Ճառընտիրս, * վկայաբանութիւն նեքտաւինեայ ||. կամ * և անուն կուսին նեքտաւինէ ||, թերևս առանց կրկնութե Ն տառի վերծանելի է. * վկայաբանութիւն եքտաւինեայ ||, և * անուն կուսին եքտաւինէ ||. որով նոյնանայ ը՟ յունականին էքադաւինէ։ Ըստ հակառակն առ լատինս 'ի բաց անկեալ է առաջին տառն Է, և մնացեալ քադաւինէ, կմ՟ քադէաինա. և ը՟ այսմ ասի 'ի մեզ նաև կատարինէ. ոպ՟ է տեսանել 'ի Հ։

Մինչ զի զարմանամք, զի վասնորս այր իմաստուն գտեալ զուղղագոյն ընթերցուած 'ի լատինն եգադարինա համաձայն յունականին՝ վրիպակ կարծէ, գրելով այսպս. * 'ի հին օրինակս գրի եգադարինա. կմ՟ հեգադարի,, նա. որ երևի աղաւաղեալ 'ի ձայնէս ն՟ գաթարինա ||. ոպ՟ թէ ի՟ իցէ յունարէն յօդ իգական. բայց յայտ է թէ յատուկ անուանք անյօդ վարին հասարակօրէն. և յոյնք ոչ երբէք զյատուկ անուն սորին գրեն իգաթարինա, այլ միշտ եգադարինա։ Սխալէ և հեղինակն գաղղիական բառարանի մոռէր, որ ընթեռնու զերկբարբառն է՝ այի, ոպ՟ այիգադարինէ. ոպ՟ թէ սրբուհի կատարինէ, որ են գիւտք օտարաց ձեռնարկողաց ը՟ հաճոյս, և ոչ ը՟ սովորութե բնիկ ազգին։ Ապա եթէ պահմամբ ձայնիս եգադաւինա՝ դժուարին ստուգաբանել. չէ ինչ. զի ստուգաբանուի յատուկ անուանց է բազմադիմի, ոպ՟ ոմն 'ի գոռաաւ ձայնէ հանէ, որ է մաքուր, նբ. և ոմն 'ի ձայնէս էգոտէ. որ է այլ անուն դիցական։

(2) Իսկ վկայաբանութի սորին լաւագոյն և ընտրելագոյն այն է, զոր եգաք միաձայնութբ երից Ճառընտրաց մերոց. որոց ձայնակից լինի տմիճ և Հ. ուր առ այլս թէպէտև նոյն պատմութի է ը՟ գոյացութե, բայց բազմօք Ճոխաբան. գուցէ և ուրեք ուրեք աւելորդաբան. ոպ՟ է տեսանել առ սուրխոսի յանուն մետափրաստեսի. յիշատակէ և զյունական օրինակ այլ՝ լևոն ալլատիոս,

նի յայտ առնէ՝ թէ որ այն իցէ մտաւոր անապակ և յստակ աղբեր, և որ այն հեռացեալ և ծառայացեալ 'ի բազում առուաջս. վասն կասկած բարեպաշտութեայ ոչ անկանի 'ի վե՛րք օրինակիս մերոյ, այլ՝ այլոցն. զորոյ զպայմանս ապացոյց ունիմք և 'ի նոյն իսկ առ 'ի նմանէ յիշատակեալ վկայաբանութեան սրբոյն գէորգեայ՝ որ ասի գրեա̃լ 'ի ծառայէ նորա պատիկրատեայ, և սրբոյն թէոդորոսի՝ որ յաբգարու գայրէ նորա ասի գրեալ. իսկ զի օրինակք այլոց առ մերովքս են սոյն պղնձախառն մետաղք առ ոսկեով զոյով. այսպէս իմն ինձ և յառաջիկայս վկայաբանութեան սրբոյն նեքտարեայ :

Կարէր ոք կասկածել, թէ գուցէ օրինակ ծառընտրաց մերոց իցէ նոյն Է յունականին եղելոյ 'ի ձեռին ալլատիոսի. զի պահէ զնոյն յիշատակարան : Բայց վկայէ կոմբեփիզ, թէ փրոնտոն մակարիոս՝ որ Ը յօրդորելոյ իւրոյ սկսեալ էր թարգմանել զայն օրինակ, ※ ազդ-
„ արար՝ թէ այնչափ գժուարութիւն կրեն տրամախօսու-
„ թիւքն հեղինակի նո՛ր՝ ճշմարտի կմ՛ սատայօգի, մինչ զի
„ թերևս լաւ իցէ ծածկել՝ քան հրատարակել. որ և
„ 'ի մերումս գտանան 'ի դէպ թուեցաւ ||: Իսկ մերս օրինակ անմասն է 'ի տրամախօսութեանց անտի, վասն և 'ի գժուարութեանց. մինչ զի պարծանք են մեզ առ այլովք զմերս հրատարակել քան ծածկել :

Անհարազատ օրինակի հանգիտեալ և բարոնիոս՝ այսպէս դանդաղաւ գիտնորէն. ※ Յոյժ գժուարիմք, զի վկայ-
„ աբանութիւն սորին գերադրուագական վկայութեանց գրեալ
„ է յանստոյգ հեղինակէ՝ որչափ ասելի ճոխաբար.
„ նոյնչափ նուազ հաւատարմութեամբ. քանզի լաւ ևս է
„ 'ի գործս վկայից և այլոց ևս սրբոց պակասիլ բազում
„ բանից, քան կուտակել յոլովագոյն իրաց յամ կող-
„ մանց ստորանելոց: Վս զի լաւագոյն խնամք ընծային
„ եկեղեցական ճշմարտութե լաւութեա̃ իրաց. որք ոչ
„ են այնչափ ստուգեալ, քան եթէ ստայօգ իմն և
„ կեղծ յօրինուածով պատմութե, թէպէտև խուռն ընդ
„ ճշմարիտս: Վս զի յառաջինսն թէպէտև սակաւք ի-
„ ցեն. բայց յեցեալք 'ի ճշմարտութե՝ հանգարտին
„ միտք. և 'ի նոցունց անտի՝ զորս ստուգուա̃ առնու.
„ զայլսն կարող է ոք իմաստասիրել, խորհել, և գրե-
„ թէ աչօք տեսանել, զորս ճշմարտատեսիլ դատաստա-
„ ան հիմնեալ 'ի ճշմարտութե առնէ յանդիման: Իսկ
„ 'ի յետինսն անշուշտ հանգիտալի, զի իմիք՝ թէպէտև
„ գուշակեսցեն՝ ստութեա̃ միանգամ պղտորեալ մտաց
„ ըն-

փառաւորք մեծութեամբ և ազգաւ և վարժիւք ուսմանց
աղեքսանդրացւոց, եւ առաւել զգաստութեամբ զարդա-
րեալք. վա՛յ ոչինչ զարմանս պարտին զարմանալ Թերե-
հաւատք և Ը նեքտաբինէ կոյս փառաւոր՝ մեծութեամբ
և ազգաւ և իմաստութեամբ և զգաստութեամբ. Եւ 'ի դնիլ
այսմ, որ է անտարակուսելի, ոչինչ ըղձմունս յինքեան
բերէ անժխտելի վկայաբանութիւն նեքտաբինեայ:

Օգտէ 'ի հաստատութիւն իրացս, միանգամայն և յոր-
դոր մեծ լինել իմաստուն կանանց և օրիորդաց՝ հաւա-
քումն պատմական զուսումնասէր եղելոց յազգի նց,
զոր քաղէ վոսսիոս գերարդոս 'ի գիրս բանասիրութե.
այն է Գիրք Բ. յղ. Բն. ուրուճեսփեց Ն գիփոնքնեց. Գլ. 2.
ունելով բանին այսպէս. * Որք միանգամ զազգ կա-
,, նանց անյարմարս դատեցան առ ուսումն, վաղու եւս
,, կշտամբեցան յամ փիլիսոփայից.... Անհամար գոդ-
,, ցես կանայք եղեն ուսումնասէրք. զորոց բազում
,, ինչ բերպք 'ի քառեակ գործն յաղագս յոյն և լատին
,, վիպասանից և քերթողաց... Յորոց սակի է արիգ-
,, նոտէ, որ գրեաց զգործս գինիսի բռնաւորի...
,, Եստիէ աղեքսանդրացի գրեաց զքերականութի...
,, Արետէ դուստր արիստիպպոսի կիւրենացւոյ աշա-
,, կերտի սոկրատայ՝ առ ոտս հօր իւրոյ վարժեցաւ ի-
,, մաստիւք... Ըստ ասելոյ եղանիկոսի՝ յորմէ և տա-
,, տիանոսի, տատվաս (կամ հադուշա) կին 'ի պարսս
,, Թագաւորեաց, և նախ զառաջինն ուսոյց զնամակա-
,, գրութիւն: Առ մեծն աղեքսանդրիւ... հիպարքիա
,, քոյր մետրոկղի կիւնիկեան և կին կրատերայ կիւնի-
,, կեան՝ գրեաց զփիլիսոփայական պատճառաց. ոմ և
,, զձեռնարկս և զխնդիրս առ Թէոդորոս... Պամփի-
,, լեայ եպիդաւրեայ առ ներոնիւ ութ գիրք պատմու-
,, թեց 'ի մէջ բերին... Անոճանի է առ աթենէոսի
,, աղչայիս կմ՝ անագաղիս կորկիւրացի բանաստեղծու-
,, հի... Ջերիս հռովմայեցի կանայս այսպէս գրոճա-
,, ռէ կոճինկսիլիանոս. Գիրք. Ա. Գլ. 1." Գրակեանց
, պերճախօսութե մեծապէս սատար եղև՝ ոմ լոճայ.
, կուռնելիա մայրն. որոյ գերիմաստ ասացուած նաև
, յետնոց աւանդեցաւ թղթովք. և դուստրն լելիա
, սի ասի զհայրենի պերճախօսութի յանդիման առ-
, նել 'ի խօսս. և ձառ դստերն կոճինկոսի հորտեն-
, սիոսի ատենաբանեալ է առաջի եռապետաց"...
,, Հերոնիմոս ասեալ 'ի տրանկոճիլոսէ՝ գրէ, թէ կոր-
,, նիփիկէ քոյր կոռնիփիկկիոսի քերթողի գրեաց զպան-

զոր ծանուցաքն, թէ երկարապատում անձով յօրինեալ է այն, և ոչ ունի զխաւերականութիւն ուղիղ համառօտութեան մերոց ճառընտրաց:

(3) Հարցանիցէ ոք հետաքննաբար. ունիմն ինչ արդեօք հին բանք արտաքնոց, և մանաւանդ սիբիլլայից, յորոց մի բան բերէ Ճառընտիրն մեր, և այլք յաւելուած այլս եւս 'ի վր, պարզ աստուածածովք զխորհրդոց գաղտնեաց մր հաւատոյս մերոյ:

Պատասխանեմ. վիրգիլեուսին բանք՝ որչափ ինչ կան մինչև ցայժմ 'ի դիրս նր, թղ ինքեան ոչ հայէին 'ի խորհուրդ երրորդութե, բայց եթէ յարմարական միոջ իմիք, յասել նր յայլ միտս 'ի ծաղկոտաղն, Է.

* Երրեակ քեզ զայս՝ 'ի ձօն արձան,
Նարօտ պատեմ՝ երեքգունեան:
Երիցս յածեմ՝ և ընդ սեղան.
Ըղձօ պատկեր՝ կենդանական:
Զի տարագրոյգ՝ թուեալս այսքան,
բերկրի ԱԾ՝ միանգամայն ||:

Եւ առակայն զոր ինչ բերէ նա ինքն վիրգիլեոս 'ի կումենայ սիբիլլայէ, 'ի ծաղկոտաղն Դ. և յարմարէ իւրում ժամանակի, թղ ինքեան երևին հայել առ քս. թէպէտ և իմքն առ այլ ոք ուղղեացէ զբանն. արժան է լսել և արտածել Է միտս:

* Ահա եհաս՝ մեզ դար վերջին,
կումեան տաղի՝ (սիբիլլային).
Նոր ծնանի՝ մեր շրջանին
կարգ ի 'ի դարուց դարուց կարգին.
Ահա դառնայ՝ և կոյս ինքնին,
արքայութիւնքն կռոնոսին.
ահա նոր զարմ ազգատոհմին,
յերկնից բարձանց առաքելին:
Դու ողջախոհ՝ լուսին տիկին,
լեր աւընթեր՝ այս նորածնին.
մանկան՝ առեմ, առ որով հին՝
ազգ դադարէ՝ տեղ երկաթին:
Եւ Է ոլորտս բոլոր երկրին,
ազգ յարիցէ՝ առոյգ ոսկին.
քոյդ աւասիկ՝ պայծառ արփին,
թագաւորէ՝ քո պանծալին:
Եւ արդ 'ի քում 'ի հիւպատին,
ով պողլեոն, ընկաւանին.

Թէպէտեւ պան արկածացին,
դայր 'ի պայքար ինձ 'ի դասին,
անդէն վկայ լինէր ինքնին,
Թէ պարտուԹի խոստովանիմ։
Արդ սկսիր մատաղածին,
ծաղու ծանօԹ տալ մօր քոյին.
շատ են մօր քո առ ժոյժ սրտին,
ամօք անձուկք՝ 'ի տես նախկին։
Արդ ցոյց տուեալ զգոյց խնդին,
զի և ծնօղք խրատ ուսցին;
Թէ անժպիրք չարժանացին,
և ոչ՝ իսկ ատցանին ||։

Պողիոնն յիշատակեալ 'ի վէրգիլիոսէ՝ նստաւ հիւպատոս երեսուն և եօԹն ամօք յառաջ քան զԾնունդն քՆի. բայց եկաց կենդանի մինչև ցամ ՏՆ 4։ Իսկ ինքն վիրգիլիոս մեռաւ իբր քսան ամօք յառաջ քան զԾնունդ քՆի. վասն ոյ ոչ եհաս խնդրոյն՝ զոր յանգէտս խնդրէր, զտանիլ յաւուրս Նր և գրել զնմանէ։ Զայսոսիկ բանս բերէ և Եւսեբիոս 'ի վարս մեծին կոստանդիանոսի՝ 'ի բերանոյ Նր Ճգնեմ հեԹանոսաց. այլ մեք անցցուք առ սիբիլլայս։

Այս մատենագիրք հեԹանոսաց և քրիստոնէից միաբանին յայսմ, Թէ կային օրիորդք կուսանք՝ զգաստք և աստուածընկալք բնաւորաց 'ի զանազան կողմանս ծի նախ քան զգալուստ քՆի. և Թէ ոմանք 'ի Նչէ ոգւոյն երևելիք իմաստուԹ և ոգւով իմն քերԹողական գուշակեալ. ուստի կոչեցան Սիբիլլա, որ Թարգմանի Ածախոհ. և Թէ յանուն սոցա գտանին գրուածք ինչ զարմանալիք եԹէ 'ի նոցանէ իցեն յօրինեալ, և եԹէ յայլոց յանուն Նց ընծայեալ 'ի հին դարուց. յորս են այնպիսի յայտնի գուշակուԹիւնք զքՆէ, մինչ Թէ յաւետարանէ առեալ իցեն՝ սկսեալ 'ի ծննդենէ փրկչին մինչև 'ի չարչարանս և 'ի յարուԹի և 'ի համբարձումն Նր, հանդերձ երևելի անօրինական գործովք։ Ընդ այս ոչ միայն հեԹանոսք զարմանային, Թէպէտև ոչ քաջ իմանային, այլև քրիստոնեայք. որք եԹէ հաւատս ընծայելով և եԹէ չընծայելով, իրաւունս ունէին բերել անտի վկայուԹիւնս Ճգնեմ հեԹանոսաց. զի 'ի հեԹանոսաց միջի գտանին զայն մարգարէուԹիւնս. վասն Թէպէտև անլուծանելի է խնդիրն ստուգուԹեան սիբիլլեան մատենից, բայց անտարակուսելի է՝ Թէ ոչ միայն նեռաւորինէ կոյսն, այլև ժամանակակիցք Նր կոստանդիանոս Թագաւոր, Լակտանտիոս, և

„ ապաւէնք 'ի մատենագրութեանն հարց, զորս նախնի հարք
„ ստէպ յառաջ բերեն 'ի հաստատութիւն քրիստոնէա-
„ կան կրօնի: Այլ թէ այնոքիկ իցեն հարազատ յօ-
„ րինուածք սիբիլեայից, վէճ մեծ յուզեցաւ 'ի մերումս
„ դարու. ունս զգործս մի սոցին իրաց 'ի լոյս ընծայ-
„ եալս. քանզի մեզ աստանօր չէ է ասել, թէ թէ-
„ պէտև ոտանաւորք սիբիլեայից չիցեն նոյն իրօք հա-
„ րազատք և անվթարք, բայց սակայն զոր միանգամ
„ յառաջ բերեն նախնի հարք, չէ՛ն յօդեալք 'ի քրիս-
տոնէից||:

(4) Ձեր օրինակ բազմաց 'ի սմին մարմինք 'ի սկզբան անյայտ մնացին, և յետ դարուց բազմաց յայտնեցան՝ եթէ՛ գտանիցելոց, և եթէ իւրք յաջողուածով հանդերձ յայտնի նշանակօք անուան իւրեանց, սոյնպէս եղև և գիւտ նշխարաց սրբոյն Նեքտարինեայ՝ որ կարծի, 'ի յաճախել քրիստոնէից յերկիրն պաղեստինու և 'ի լեառն սինէական. ուստի և յետ սակաւ եղեմի յարևմտեայց առաւելապէս ջերմեռանդութիւն նշ̃ առ նոր վկայուհին: Այլ անհնեթեթ է ձեռնարկելն ասել նորաղանդից ոմանց, թէ յետ այնորիկ յարմարեալ իցեն և զպատմութիւն Նեքտարինեայ. ուր յարևելս 'ի սկզբանէ հետէ կայր վկայաբանութիւն նր. որ և թարգմանութիւն մերումս օրինակի 'ի յունականէն երևի լինել յառաջ քան զատուածն եղեմի, կմ̃ զայնու ժամանակաւ 'ի բուն և 'ի հին մատենից յունաց: Իսկ կատարումն տօնին ը̃ ամնացուցից կայր 'ի սկզբանէ հետէ՝ ոչինչ ըհատ յայլոց նախնի սրբց:





# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Մեծ իշխանացն Հայոց՝ Սահակայ և Համազասպայ։

Հ. տար. 8. կամ ահէ. ա։ Ճառընտ. Ա. ող= ողէ։ Աստղէն. Է. 4. և այլք։ (1)



ՓԱՌԱՒՈՐ ԻՇԽԱՆՔՍ մեր Սահակ և Համազասպ եղբարք հարազատք, էին պատուականն նախարարք ազգին Արծրունեաց, և տեարք աշխին Վասպուրականի՝ ընդ եղբօր իւրեանց Մերհուժանայ, որդիք Գադկայ Արծրունւոյ որդւոյ Վահանայ, յաւուրս Եսայեայ կաթուղիկոսի յութերորդ դարու, և 'ի կայսերութեան Կոստանդնի և Երինեայ, և յամիրապետութեան Մուսէի, և եղբօր նորա Հարոնի։ Յորում ժամանակի նեղէին իշխանաց Հայոց 'ի հարստահարութենէ այլազգի ոստիկանաց 'ի բաց վանեցին զնա յաշխէն. և իւրաքանչիւր նախարարք նստէին 'ի սեպհական գաւառս, և պահէին 'ի թշնամեաց։ Իսկ զի մեծ էր 'ի մէջ նոցա նախարարաց Համազասպ արծրունի, նա որպէս մարզպան համարեալ լինէր աշխին. և եղբարք նորա Սահակ և Մերհուժան՝ օգնական նմա. և էին երեքեանն

քեանն իսկ արք անուանիք և քաջք՝ 'ի պատերազմունս. և 'ի կրօնս և 'ի կարգս քրիստոնէութե աներկբայ և անսայթաք. գնային յօրէնս և 'ի պատուիրանս տն անարատք. մանաւանդ երկոքին երանելիքն Համազասպ և Սահակ:

Իսկ սկզբնաչարն սատանայ մախացեալ ընդ պատուական արանցն բարեհամբաւութիւն՝ նախանձ ընդդէմ վառէր նց 'ի սիրտս արքունեկաց իւրոց. քանզի արք ոմանք սուտակապասք քսութիւս զնոցանէ 'ի դուռն ամիրապետին առնէին, և ամբաստան լինէին, թէ երեքին այն եղբարք արծրունիք են պատճառք ապստամբութե հայոց աշխին, և ձեռնտուք 'ի յոյնս:

Ընդ որ սատանիկ զայրացմամբ բորբոքեալ ամիրապետին Մուսէի յորդորեաց զեղբայր իւր զՀարոն, որ և Ահարոն, վրէժ խնդրել 'ի նոցանէ. քանզի նմա իսկ յանձն եղեալ էր հոգ հայոց աշխին. և նա իսկ և իսկ փութանակի յղեաց 'ի հայս ոստիկան զոմն եզիտ անուն, և ընդ նմա զհազարապետն խուզիմայ, զօրու ծանու՝ ահ արկանել յամենեսին, և նուաճել զապստամբսն սպառնալեօք և ողոքանօք. և առնուլ զվրէժ յիշխանացն արծրունեաց՝ կամ յայլազգութիւն դարձուցանելով, և կամ մահու սպառնանելով:

Եկեալ սոցա 'ի հայս՝ խաղաղութբ նուաճեցին զամ իշխանս. ապա փութացաւ հազարապետն յղեաց կոչնականս և զերեցունց արծրունեաց՝ գալ նց առ նա սիրով խաղաղու-

զութ, ոչինչ յայտնելով զոր ինչ խորհեալ էին զնոցանէ չարիս։ Իսկ նք քանզի ոչինչ գիտէին զանձանց իւրեանց խիղճ, ել եւ գնացին աներկիւղ համարձակութ զկնի եկելոց կոչնականացն, Թէպէտեւ 'ի կասկած լինէին 'ի նց խարդախութէն. եւ զվերակացութն տին եւ զգործ իւրեանց տային 'ի ձեռս դաւթի մամիկոնէի։ Իբրեւ ետես զնոսա հազարապետն, ընկալաւ առ ժամն վեր 'ի վերոյ մարդասիրութ. եւ ապա պատճառանօք էանց գնաց 'ի քաղաքն պարտաւ՝ ընդ իւր տանելով զպատուականն նախարարսն արծրունեաց։ Իսկ իբրեւ հասին անդր, զպատրուակեալն մտ նց չարիս յայտնի կացուցանէր, առաջի դնելով նոցա՝ կամ 'ի բաց կալ 'ի հաւատոցն քի, եւ կամ մեռանել խոշտանգանօք. զի զայս խորհեցան այլազգիքն, եթէ ոչ այլազգ է մեզ անկասկածելի մնալ 'ի քաջ արանցս, բայց զի կամ 'ի բաց մերժեսցին 'ի կենաց, եւ կամ դարձցին յերկրպագութէ քի՝ 'ի բաց կալով 'ի հաղորդութէն յունաց։ Իսկ քաջ նախարարքն ընտրեցին զմահ քան զկեանս ուրացութ. մոյ հազարապետն ետ դնել զնս 'ի բանտ կապանօք հանդերձ. եւ յղէր առ նս պատգամս՝ խրատելով յանձն առնուլ զդէն իւր, եւ զկարծեցել խորհուրդսն ապստամբութէ 'ի ձեռն այնր իրի բառնալ 'ի միջոյ, եւ սիրելի լինել ամիրապետին, եւ պարգեւս եւ պատիւս մեծամեծս ընդունել նոցայարքունուստ, եւ եւս 'ի մեծագոյն ձգել զահակալութս, եւ հաւատարիմ լինել 'ի դրան-

ար-

արքունի, և շքեղ և երևելի ը̅ ա̅մ կողմանս տ̅րութ̅ե̅ն տաճկաց․ քանզի և խոստանայր յերկրորդական կեղծաւորեալ հաւատացանել պատի՛ւ ։

Բայց քանզի հիմնացեալ էր 'ի միտս և 'ի խորհուրդս նց̅ հաւատքն ը̅ երրորդութ̅ե̅ն 'ի վ̅ր առաքելական վիմին հաստատոյ, իբրև ըղխաղս մանկտւոյ և զառասպելս պառաւանց զառ 'ի նմանէ խոստմունսն համարէին․ և իբրև զմենքենայ ինչ յամուր պարսպէ 'ի բաց դառնայյին առաքեալքն առ նս̅ արքանեականքն չարին ։ Դարձեալ վերստին սպառնալիս յղէր նց̅ խոշտանգանաց, և կտտամահ տանջանօք զրաւ կենաց նց̅ առնել խոստանայր 'ի ձեռն չարաշշուկ դահճացն․ որք և եկեալ 'ի բանտ անդր՝ ահ արկանէին 'ի գործ դնել զսպառնալիս հազարապետին, և չարաչար սատակել զն̅ս ։

Անըմբերելի գտաւ ահարկութ̅իս 'ի միտս մերհուժանայ օցտելոյ 'ի միաքանուէ եղբարցն, և 'ի թուլամիտ վատասրտութ̅ի վարակելոյ․ մինչ զի և նախ քան զմտանելն 'ի տանջանս՝ ինքնակամ մերկացեալ զհաւատոյն զգեստ՝ զառ 'ի ք̅ս մկրտութ̅ե̅ օծումն, ձախողակի դիմեցմամբ անյապաղ փութով ել գնաց յանդիմանս հազարապետին 'ի տեղի կործանմանն․ յանձն առնայր արագա̅պ թլփատիլ․ և այնպ̅ ել նա արտաքս իբրև զուռն, և ցամաքեցաւ փութա̅պս ք̅ զթզենին՝ որ ոչ պտղաբերեաց տ̅ն իւրում ։ Նա և ելեալ գայր իշխանական ձոխութ̅ե̅՝ երթալ մտանել յԾն վա-

պու

պատուական, տիրեալ փոխանակ եղբարց իւ-
րոց, զորոց գիտէր զհաստատութիւն մտաց նոցա
'ի քս և զկամակար յօժարութիւն 'ի մահ. Զայս
լուեալ դաւթի մոմիկոնեան՝ փութացաւ
վաղվաղակի ընդ առաջ ուրացելոյն, պատա-
հեաց նմա, և եհատ զգլուխ նր. և եբարձ
զնախատինս նր 'ի տանէն արծրունեաց. և
այնպէս յերկոցունց զրկեցաւ կենաց մերհու-
ժան։

Իսկ երեքս երանելիքն համազասպ և սա-
հակ, որք հաստատեալ շնորհօք 'ի սէրն քի՝
միայնին ծառայեալ օգնով հանդերձ նահա-
տակութեան, իբրև լուան զգլորումն եղբօրն իւ-
րեանց, և զապգեցուցին չարերն 'ի մէջ նց, մե-
ծականն ողբովք՝ դառնապէս արտասուօք,
և անհանդուրժելի հառաչմամբ ձայն ողոր-
մելի բարձրացուցանէին 'ի վեր առ յոյսն իւ-
րեանց քս. զի մի գուցէ մերկացեալ լիցին 'ի
նախախնամութենէ պահպանօղ ամենածածուկ
ձեռացն այ, և մի ընկղմեալ 'ի հնարս բան-
սարկուին՝ զունակ եղբօրն թշուառականի՝
ընդ չարագժնեայ ըմբակցեսցին հոգւոց. այլ
զի կացցեն միացեն հաստատուն 'ի հաւատսն
քս, յոր լուսաւորեալ կնքեցան հոգւոյն
սրբով։ Այլ և մտադիւր տանէին կապանաց
բանդին, և տնմ խոշտանգանաց. և խնդրէին
'ի բազումողորմ քէն՝ գտանել պարգևս
հանդերձ մարտիրոսական նահատակութեն.
Իսկ ամենաչարն դարձեալ սատանայ այն քան
զառաջինն զինէր զորբանեակն իւր զհազա-
րապետն Ըդէմօրդն՝ սպառնալեօք և ահաւ-
կու-

կութիւք , և ողոքական խաբէութիւք ․ զի թերևս կարասցէ 'ի վայր կործանել զնա 'ի հրապոյրս պղտորս մահաբերս մոլար մտաց ։ Այլ յանդիմանական միմեանց ատեան գործեալ հրապարակակոյտ ամբոխին , կոչեաց հազարապետն և զայլս ոմանս 'ի նախարարացն հայոց , որք 'ի հանդիպումն նորին եկեալ էին ․ զորս և միջնորդ կալեալ էր առ պատրանս մոլորութեան՝ տալ ցհամազասպ և ցսահակ , թէ զոնէ առ արտաքս կատարեցէք զկամս հազարապետին , պահելով 'ի սրտի զհաւատս քնի ։

Նոյն իսկ վկայքն հերքեալ զնմ հրապոյրս չարին , և ոչինչ զանգիտեալ 'ի մահուանէ , համարձակաձայն դաւանեցին յատենի անդ զճշմարտութիւն քնական հաւատոց , և յայտնապէս է վայր հարին թշնամանօք զդենս մոլորութեան ։ Քանզի քաջայոյս մտաւոր բանազինութեամբ և աւետարանական պատմութեամբքն զառ 'ի քն հաւատոցն մի ած միոյ կարգարանութեամբ , զանօկղ բանական էութիւն բանին առ հայր , և ած ժամանակի անսորէնութեան հանդէս , և զմարմնական երրորդութեան ծննդեան բանութեան՝ աներկբայ համարձակութեամբ առաջի բանաւորին համառօտ եդեալ , անդրդուելի զանձինս 'ի նմին ճշմարտութեան վկայել ին լինել ․ մինչ զարմանալ ամենեցուն ընդ համարձակութիւն նց մեծաւ հիացմամբ ․ Եւ առաւել յորժամ յաւելին անարգել զսուտ քարոզ կրօնս և զպաշտօնէայս մոլորութեան , վս անուանկոչելոց դոցա նց տիեզերակալն առ

'ի

'ի քո հաւատոցն 'ի քարոզութենէ մարգարէիցն և որոց առաքելոցն ուղղափառում վկայից ա̃ծութե̃ն քոյ ։ Որպէս և զխրատատուս չարութե՛ զնախարարսն ըմբերանեցին բանիւ՛ մն . մինչև իսպառ կորանալ նոցա , և յոյժ մտապահ լինել է՛ սպառնալիս տրտմենան աՀարկութեանցն . զոր եդին առաջի նց որքն զառացեալսն կենարար փրկչին , թէ որ զայ- թակղեցուցանէ զմի 'ի փոքրկանցս յայսցա- նէ յիս հաւատացելոց , լաւ էր նմա՝ թէ կա- խեալ էր քար երկան իշոյ զպարանոցէն , և ընկղմեալ 'ի խորս ծովուն . և դարձեալ՝ եթէ վայ մարդոյն , յորմէ ձեռն գայցէ գայթակ- ղութի . լաւ էր մարդոյն այնմիկ , եթէ չէր ծնեալ ։

Իսկ բանաւորն զայրացեալ յոյժ յոյժ՝ առա- ւելապէս տառապանօք վարանէր է՛ արհա- մարհանս առաջնորդին իւրեանց , և է՛ նա- խատինս անուանեալ օրէնսդրին . և յապուշ կրթեալ մտօք , եթէ զինչ խորհեսցի չարու- թի ընդդէմ որցն , անգիտանալ թուէր ։ Այնուհետև ետ հրաման անյապաղ զրաւ- առնել կենաց նց . և դահճացն առեալ առա- նէին զնս 'ի տեղի նահատակութեն ։

Իսկ որցն ձեռն առեալ 'ի գնացս՝ այնպէս սիգաքայլ գնացին ընթանային , որպ որք յառագաստ հարսանեաց հրաւիրեալ կոչին , անտրտում ուրախութ՛ք առ հանդէս մար- տիրոսաց դիմեալք ։ Իսկ մինչգեռ զգնային և երթային միաբան երկոքին հարազատքն , ակսան յորդորել զմիմեանս՝ աներկիւղ հա-

 մար

մարձակութեամբ մատչել 'ի տեղի մարտիրոսա-
սական վկայութեան, և մի՛ ինչ փոյթ յանձին
ունել հող տանել զկենաց Տէր, զկանանց և
զորդւոց. և ասեն առ միմեանս.

Յո՞ւշ լիցին մեզ աւետիք գալստեան յուսոյն
մերոյ Քրիստոսի, զոր ասացն, եթէ ոչ ոք է՝ որ ե-
թող զտուն կամ զկին կամ զորդիս կամ զագա-
րակս հալածանաց հանդերձ վասն իմ, կամ վասն
աւետարանին, եթէ ոչ առնուցու հարիւրա-
պատիկ յաշխարհի յայսմիկ, և 'ի հանդերձելումն՝ որ
գալոցն է՝ զկեանսն յաւիտենական: Յո՞ւշ
լիցին մեզ պետրոսի առ փրկիչն ասացեալքն,
և պնդեալքն 'ի փրկչէն, եթէ դուք՝ որ եկիք
զկնի իմ, 'ի միւսանգամ գալստեան իմում
նստջիք յաթոռս իշխանութեան, զոր հատու-
ցից ձեզ: Յո՞ւշ լիցի մեզ յորդորումն փրկչին.
եթէ ոք կամիցի զկնի իմ գալ, ուրասցի
զանձն, և առցէ զխաչ իւր, և եկեսցէ զկնի
իմ, և՝ եթէ ոք կամեսցի զանձն իւր կեցու-
ցանել, կորուսցէ զնա. և որ կորուսցէ զանձն
իւր, գտցէ զնա: Յո՞ւշ լիցի մեզ և կինն զով-
տայ, որ նայեցաւն 'ի սոդոմ: Յո՞ւշ լիցի մեզ
ապառնալիք և խոստաբանութիւնք փրկչին առ
խոստովանօղս և առ ուրացօղս. մի՛ շլասցուք
երթալ զհետ կոչողին 'ի յաւիտենական հան-
գիստն, առնուլ 'ի մեզ զքաղցր լուծն, և
զթեթև բեռնն: Ո՛չ վայել է աշխատաւոր
մշակի ձեռն զմաճով արկանել, և հայել
յետոյսն. ոչ ոք զինուոր 'ի ձգունս աշխա-
տասիրեալ, և 'ի կարգս զինուորականս որո-
շեալ, պատաղմունս բաջաղմանց զինքեամբ

շուրջ գլիցէ՝ եղծանել զմարտնչելն նր օրի-
նին, եւ յետնեալ գտանիցի 'ի սպասկողին հա-
տուցմանց. մի՛ զարհուրեսցուք յայնցանէ՝ որ
սպանանեն զմարմինն, եւ այլ աւելի ինչ ոչ
կարեն առնել. համբերութբ մերով ստա-
ցուք զոգիս մեր: Հայեսցուք 'ի զօրագլուխն
հաւատոյ եւ 'ի կատարիչն յս. զի որում կալ
մնալն էր խաղաղութի 'ի փառս բնութեան
մծութե իւրոյ, վն մեր մեղաւորացս հնազանդ-
եղեւ մահու խաչի. ապա եւ մեք պարտիմք
վն նորա մեռանել, մանաւանդ թէ վն մեր
իսկ. եւ եթէ արդարն 'ի վերայ անարդարացս
մեռաւ, ապա եւ մեք պարտիմք երթալ զհետ
օրինակի հետոց մահու նր: Մի՛ ամօթ հա-
մարեսցուք վկայ լինել մծութե նորա մահ-
ուանմբս մերով. զի մի՛ եւ քն յամօթ արասցէ
զմեզ, յորժամ գայցէ փառօք հօր իւրոյ եւ
հրեշտակաց սբց. որպ եւ գրեալ է: Նա եւ
բազում օրինակ յորդորմանց մի ըստ միոջէ կար-
դեցին եդին առ միմեանս՝ կալ հաստատուն
'ի հաւատսն քի. բարւոք համարել զմեռա-
նիլն վն սիրոյ նր՝ քան առժամանակօքս յա-
րանալ, եւ արտաքոյ մնալ երկնաքաղաքացի
Ճոխութե փառաց նոյ երկրորդութեն:
Արթայր զգիր նոցա եւ բռնաւորն հանդերձ
նախարարօքն հայոց, եւ այլ բազմամբոխ
դասք 'ի քաղաքէն 'ի տեսիլ նահատակութե
նոցն: Զայն զգիր արձակեալ բռնաւորին՝
առ է. Ընդէ՞ր տարապարտ մեռանիք՝ անուանկն-
դիր իմոյ քաղցրահնչիւն ողոքական բանիցս,
չստացեալ ձեզ լսարան. դարձարուք 'ի յա-

ման

մատուցեալ խմացմանց այսոր սնոտեաց, և կեց-
ջիք ընդ մեզ ։ Սրբքն ասեն ․ լուաք քրի աւե-
տաբեր և կենսածին վրդպուէ, և նմա ծա-
ռայեցուցաք զլսելիս մեր ․ որով սրբեցաւ
առաջին աղտեղութի բանսարկուին ․ մի՛ լի-
ցի լսել մեզ դարձեալ կործանօղ և դառնա-
շունչ ձայնի քո, որ 'ի կորուստ անդիւտ ձգէ
զմեզ ․ պարգևք քո և փայելչք քեզ և նմա-
նեաց քոց եղիցին, և մի՛ մեզ՝ որ հասեալ եմք
'ի վն ճշմարտութեն՝ 'ի ճաշակմանէ հոգւոյն
նրյ կրթարանէ առ 'ի յընտրել զբարի և
զչար ։ Որով մահու հաճոյ թուի քեզ՝ կա-
տարեա՛ զհրամանն արքունի զառ 'ի բան-
սարկուէն ազդեալ ․ մեք պատրա՛ստ եմք 'ի
մեռանել իբրև զոչխարս՝ 'ի սէր վն մեր կա-
խեցելոյն զփայտէ գառինն անմահի, որ
բառնայ զմեղս աշխի ։

Նա և իբրև հասին յասպարէզ նահատակու-
թեն, և դահիճքն սուսերս կազմեին ընդ հրա-
մանի բռնաւորին, յայնժամ սրբքն որ կային
'ի հանդիպոջ մեկուսի յամբոխէն, ծունր
կրկնեալ՝ յորդահոս արտասուօք աղօթս ա-
րարին առ քն, զի հասցէ յօգնականութիւն
իւրեանց զօրացուցանել զնս անվեհեր մտօք
մատչել 'ի տեղի զենմանն բանաւոր սպասու-
րագին ։ Նպա մատեան սպասաւորք չարին
որով 'ի կատարումն նցն ։

Յայնժամ երիցագոյնն համազասպ ասէ ցե-
րանելին սահակ ․ Կրսեր ընդ մարմնոյ հանդի-
պեալ քո իմում եղբայրութեն՝ այժմ անդրա-
նիկ վկայ լինիցիս քան զիս ․ փոքր ինն թուե-
Y 2 ցեալ

ցեալ երբեմն առ իմով իշխանութեամբ՝ արդ առաջին գահանստեամբ լինիջիր՝ առաջին քրդով մարտիրոսական վկայութեամբ. զառաջին նուագն ես ըմպէի 'ի բազմականսն, յորժամ զուարթարար բաժակաւն զմայլեալք ուրախ լինէաք մարմնական խրախճանութեամբ. այժմ դու յառաջ որբացես զբաժակ փրկութեան քսի, և փառաւոր լիցի անուն տն նախ 'ի քում նահատակութեամբ : Իսկ սբն սահակ խրախսամիտ ընկալեալ զայն հրաւէր մեծարանաց՝ իբրև 'ի հրահանգարանէ վարժօղ դաստիարակէ յառաջ եւ արիաբար ըդդէմ սրոյն. և կնքեալ զամ զգայարանսն նշանաւ սբ խաչին՝ խոնարհեցոյց զպարանոցն առաջի սրոյն. և դահճին ձգեալ զսուրն՝ եհատ զգլուխ երանելոյն :

Յայնժամ սբյն համազասպայ համբարձեալ զձեռս իւր յերկինս՝ ասէ. գոհանամ զքէն հայր տն մերոյ յի քի, որ արժանի արարեր զմեզ մեռանել վս անուան քում սբյ, պահելով զյոյսն մեր հաստատուն՝ որ 'ի քեզ. և ուրախ արարեր զմեզ 'ի ձեռն մխիթարիչ հոգւոյդ քո սբյ 'ի մեզ բնակելոյ, տալով արհամարհել զփառս անցաւորս, և զլքանելիս մերկանալով զհին մարդն՝ զգենուլ զնորն, որ է պատկեր որդւոյ քո, որ հրաւիրեաց զմեզ 'ի կոչումն երկնաւոր հարսանեացդ : Փառք քեզ սբ և զուգահաւասար երրորդութի, որ նախաժամանեցուցեր զեղբայրն իմ հանդիսանալ և յաղթել հակառակորդին, և ուրախ արարեր զիս բաժակաւ յոր-

յորդահոս վտակի հեղման արեանն սահակայ, որոյ անունն խնդութիւն թարգմանեալ է։ Լուր տր խնդրուածոց իմոց հեղմամբ արեան ծառայիս քո, որ կամաւորաբար ըղձեռանել յանձն էառ վն փառաւորեալ անուանդ քո մեծի և ահաւորի՝ լինել վկայ կատարեալ քո ճշմարիտ ածութեանդ․ որոյ էութիւն երրորդութեանդ ոչ է բաժանեալ 'ի խոստովանութեան մերում, և անձնաւորութիւն երից դիմաց և մի ածութեանդ ոչ է շփոթեալ 'ի վկայութեան մերում, զի ամպարիշտ խելագարութեան նեղչաց մերոց, յորոց ատանօք կրեմք զվկայական տանջանս։ Նայս է ժամանակն կանխասացութեան քո, զոր ցուցեր խորհրդակցաց ձի, եթէ եկեսցէ ժամանակ, զի որ սպանանիցեն զձեզ՝ համարիցին պաշտօն մատուցանել այ։ Արդ ընկալ տր զքահանական պաշտօն զենմանս մերում 'ի փառս որդւոյ քոյ, և 'ի պատիւ զուգափառ հոգւոյդ նորոգողի զարարածս քո։ Լուր տր պաղատանաց ծառայիս քո, և արժանի՛ արա խառնիլ արեանս իմոյ յարիւն եղբօրն իմոյ, որ հեղաւ վն նր արեան միածնիդ վն մեր հեղլոյ․ զի միաբանեալ վկայական ճգնութբս՝ փառաւորեսցի անունն քո 'ի նահատակութեան մերում․ զի քո է իշխանութիւն և զրութիւն և փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն։

Եւ տեսեալ նքյն՝ եթէ տակաւին դանդաղին դահիճք հատանել զգլուխ իւր (թերևս ակնոտի յուսով առ արկանելոյ նմա արեամբ

եղբօրն ), յաւէտ յերկարել յաղօթս . և դարձեալ համբարձեալ զձեռս իւր յերկինս՝ լի հառաչանօք վտակահեղձ արտասուօք հարուստ մի ժամ աղօթս վասն Տիս և նորուն բնակչաց , և որք զկնի իւրեանց տիրել հանդերձեալ էին , մատուցանէր՝ այսպէս ասելով . Ո՞վ փրկիչ Տի , յերկրի երևելով քո՝ խաղաղութիւն աւետարանեցեր 'ի ձեռն աշակերտաց քոց . մի՛ անտես առներ և այժմ զաղաչանս ծառայիս քո . և դարձուսցես զցասումն քո, և սնուցուսցես զյարձակմունս թշնամեաց , և խաղաղացուսցես զեկեղեցի քո խաղաղութեամբդ՝ որ ոչ անցանէ . զօրավարաց և զօրաց հայաստան Տիս բարեյաղթութեան շնորհս ըդէմ պատերազմողացն շնորհեսցես , և զբնակիչս երկրի դադարեցուսցես 'ի վրդովմանց հողմոց հարաւայնոց յուզմանց , որ խռովէ զմեզ . և զամ պէտս երկրագործաց քոց լցուսցես 'ի բարեխառնութէ օդոց , և 'ի շայեկան անձրևաց , և 'ի բաւականաբուխ աղբերաց ջուրց . և զօրացուսցես զտկարութիւն ժողովրդեան քո բովանդակ ամբք 'ի ձեռն ամենազօր բազկի քո . զի քո է կարողութիւն և զօրութիւն և պատիւ և փառք յաւիտեանս . ամէն : Եւ զայս ասացեալ խոնարհեցոյց երանելին զպարանոցն ծնկօք կրկնելովք . և նոյնժամայն Տն ակնարկելոյ բռնաւորին դահճին ձգել զսուրն՝ եհատ զգլուխ

սբյ վկային համազասպայ :

Որքա այսմիկ կատարեցան պատուական նախարարքս ցանկալի մահուամբ և բարի խոստու

առաքինութե՛ ‚ յիշատակ բարի թողեալ յետ 'ի պարծանս եկեղեցւոյ և 'ի փառս Ա՛յ եւ երրորդութե՛ն ։ Իսկ զմարմինս Ն՛ցն եւ կախեալ բանաւորն զփայտէ իբր 'ի նշաւակ բազմութե՛ . այլ այն իսկ էին պարծանք քրիստոնէից . որք յետոյ հաւանեցուցին զպահապանս , և ամփոփեցին զպատուակա՛ն նշխարս վկայիցն, բարեխօս ունելով զն՛ս առ Ա՛ծ յիշատակաւ փառաւոր հանդիսի նահատակութե՛ն նց ։

Կատարումն պանծալի և երանելի իշխանացս սահակայ և համազասպայ եղև յամի տն 785 կմ 786 . այն է 'ի թուին հայոց մլդ , կամ մլե . յամիրապետութե՛ն մուսէի , և յաթոռակցութե՛ն եղբօր նր հարունի . առ որովք հալածումն մեծ լինել քրիստոնէից վկայէ և թէոփանէս պատմագիր յունաց ։ Նորդ առ վքին փառաւոր վկայութե՛ն երկուց եղբարց արծրունեաց , յորոց երրորդն մերհուժան 'ի բաց օտարեաւ և կորեաւ , 'ի գլուխ ել յայտապատում նախագուշակութե՛ն առն այ Ա՛յն մուշեղի խորենացւոյ 'ի թուղթն իւր առ սահակ արծրունի՝ իբր երեքհարիւր ամօք յառաջ գրեալ . ը՛ որում տեսաք 'ի վարսն նր ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) 'Ի նշանակել մեծ Ճառընտրէ մերմէ հանդերձ այս գրեցելի վկայաբանութե՛ , իւրք իՃիք պարզաբանութե՛ ը մերումս ոճոյ . անուն քաղէլ է և համառօտաւն Հ . Թէրդ զատեփաննոս աստղիկ և զորս զինի , որք հարևանցի եւեթ նշանակեն ։ Այլոց էին Թովմայի արծրունւոյ շատաւ-

անուես զյիշատակութ̃ պանծալի վկայիցս իւրումն սեպ-
հական Ծի. բայց նա յիւրոյ ժամանակի անցս ծնեալ՝
հազիւ զնախընթաց գարու զամիրապետս նշանակէ յան-
ուանէ՝ ասելով. * Զորոյք ժամանակաց սոցա յայլոց
,, գրեալ յառաջագոյն՝ ասելորդ համարեցաք երկրոր-
,, դել ||: Բայց մ̃ր աւուրցն՝ յորս եղև նահատակութ̃
սե̃ցս, զի ՚ի յառաջաբանի Ճառընտրիս մերոյ ասի ը̃հան-
րապէս, թէ * Ընդ ժամանակս թ̃գրութեն Լեւոնի կայ-
,, սեր ( որ յառաջ քան զկոստանդին և զեւփնէ ) ...
,, սատակեցեալ զօրանայր հարստահարութիւն ատենակաց
,, ՚ի վ̃ր քրիստոնէից, յոլովք քան թէ սակաւք եղեն
,, վկայք ՚ի միջագետս ասորւոց և ՚ի կողմանս կապադով-
,, կացւոց և յարաբիա ||. Նոյնպէս և Թէոփանէս
յոյն պատմիչ գրէ ՚ի Ե ամի նորին Լեւոնի կայսեր այս-
պէս. * Մագի իշխան արաբացւոց ... առաքէ զորդի
,, իւր զահարոն ը̃դէմ հռոմոց Ծին ... և զմախեզիա
,, ( ը̃ մեզ խուզիմա ) զնախանձաւորն անուանեալ, որ-
,, ճեալ նմա իշխանութի յինքն աւարկանելոյ զծառայս
,, քրիստոնէից, և աւերելոյ զե̃ր եկեղեցիս ... Եւ ե-
,, կեալ ՚ի յեմէս ... վաղվաղակի սկսաւ անհնարար չար-
,, չարել, ոմ̃ք և ոչ լիւսխոս և ագրիկազայս երբեմն, և
,, զբազմութեան կորոյս ||: Այ̃ և ՚ի Զ ամի կոստանդին և
եռինեայ ասէ. * Յայսմ ամի մովսէս իշխանն արաբաց-
,, ւոց մեռաւ, և կալաւ զիշխանութիւն ահարոն եղբայր
,, նր̃ ը̃ նր̃. որ և բազում չարիս եցոյց քրիստոնէից ||:
Եւ ՚ի հինգեր̃դ ամի նորին ահարոնի պատմէ, թէ զիմորդ-
նահատակեաց նա զթէոփիլոս զօրավար յունաց զայր
քաջ. որոյ յիշատակ լինի ՚ի Հ. և Յ. յունվար. 30: Եւ
եթէ սորայ իցէ ահկի ա. նշանակեալ ՚ի Հ. մ̃ր աւուր
կատարման սե̃ց իշխանացն մերոց սահակայ և համա-
զասպայ, յայնմ ժամանակի անկանի ՚ի յունվարի 7. թէ-
պէտև ը̃ անշարժ տումարի Հ. դնի յապրիլի. 8: Ուր
՚ի Ճ. չիք յիշատակութ̃ աւուր ամսոյ, ոմ̃ք և ոչ տար-
ւոյ, եթէ չիցէ զանցառութ̃ գրչաց. այլ միայն դնի
յաւուրս մուսէի և ահարոնի: Հ. յաւելու զթուական
հայոց. մլ̃է. իսկ ասողիկ դնէ մլ̃գ. բայց թէ յետ մե-
ռանելոյ մուսէի՝ յաւուրս ահարոնի լեալ իցէ, յայն-
ժամ պարտ է դնել մլ̃ե. ոմ̃ք եդաւ ՚ի պատմութեան
հայոց.

՚Ի բառնալ զերկբանութի մ̃ր ամիրապետաց ժամանա-
կին՝ Ճառընտիրն այս զայս կարեւոր տեղեկութի. * Եւ
,, քանզի երկուք ոմանք ( ասէ ) էին ՚ի ժամանակին
,, յայն-

,, յայնմիկ գլխաւորք տաճկաց, մուսի և ահարոն ան-
,, ուանք նց՝ որդիք մահմեդեայ, յերկուս բաժանեալ
,, էին զՏն, զոր էին նուաճեալ ը տրուԹբ իւրեանց.
,, և էր վիճակեալ Տն հայոց ահարոնին ||։

Իսկ զասելն Ճ. * 'ի Ժամէն յայնմիկ էր հաւատացեալ ,, մարզպանուԹիւն համազասպայ 'ի տանէն արծրունեաց. ,, առ սերէր սեպհական տրուԹն վասպուրականի կոչե- ,, ցեալ իշխանուԹն ||, այսպէս հարկիմք իմանալ, Թէ յաւուրս վարարանՉուԹն հայք ինքնին երբև մարզպան ծաննեան զհամազասպ զտէրն վասպուրականի. յորմէ և առԹեցաւ նմա նահապետուԹի. և ոչ զի մարզպան էր կարգեալ 'ի գրանէ. այլ է համազասպ մամիկոնեան՝ որ էր փոքր մի յառաջ քան մարզպան ։

Ո՛չ յիշէ Ճ. յանուանէ և զերկեալ ոստիկանն կմ զհազա- րապետն եղեա, այլ միայն զխուզիմա հազարապետս (որ և յետոյ եղև ոստիկան). բայց յաջնակի խօսելով յայտ առնէ և զերկոսեանն յասելն, Թէ ահարոն * փուԹա- ,, պէս յղեաց առ հազարապետն հայոց զօմն, որոյ ա- ,, նուն ճանապիեր խուզիմայ ||. և Թէ, * երբև եկն 'ի ,, սահմանս հայոց, փուԹացաւ յղեաց կոչնականս զնչէ՝ ,, գալ նց առ նա սերով խաղաղուԹ, ոչինչ յայտնելով ,, զոր ինչ խորհեալ էին զնոցանէ չարիս ||։ Ընդ խու- զիմա գործակալ կոչէ Հ. որ և բուն գործադիր եղև նահապետուԹն սոցա՝ ը ոստիկանուԹբ եղեռայ. որպ յայտ առնէ պատմուԹի Ժամին ։



# ԿԱՏԱՐՈՒՄՆ ՍՐԲՈՅ

## Եօթանասուն և երկու Աշակերտացն քնի ։ (1)

Ն. տպր. 9. էջ անձի Է։ Յ. Ժամանգր. յունվ. 4։ Բոլլանդեանն հողերը. յունվ. 14։ Ռուշեր. Օ. Ճկտ = Ճչտ. 'ի դորոնելեան. և այլք 'ի հարց Լ. 'ի մեկնիչաց ։

ԵՐՋԱՆԻԿ ԴԱՍԻՆ ԵՕթանասուն և երկու աշակերտաց քնի, որ և բոլորական թըւով Եօթանասունք կոչին՝ ը սովորական ընթերցուածոյ յունաց (2), զոր ծակիցք էին առաքելոց երկոտասանից՝ իբր քորեպսունք եպսաց. յորոց և բազումք՝ եթէ ոչ ամենեքին, եպսունք իսկ եղեն, և առ հասարակ առաքեալք ասին և են. քանզի և զսոսա Տրն ինքնին ընտրեաց, և առաքեաց 'ի քարոզութի՝ երկուս երկուս, նախ 'ի սահմանս հրէաստանի, և ապա յետ յարութե իւրոյ՝ ամ տիեզերաց հրաման տուեալ լինել քարոզ աւետարանի 'ի դարձ հեթանոսաց. ոմ և խորհրդական թիւ գնդի նոցա վերին տեսչութե 'ի սոյն կարգեցաւ ։

Քանզի զոր օրինակ երկոտասան առաքեալք էին

էին ըստ թուո՛յ երկոտասան ցեղիցն Իսրայէլի , նոյնպէս և եօթանասուն և երկու աշակերտքն՝ վեց վեց միոյ միոյ յերկոտասանից պաշտօնակից գոլով , զառաջինն զտունն Իսրայէլի տնտեսեցին՝ հանգոյն եօթանասուն և երկու ծերոց ընտրելոց ՚ի Մովսիսէ ընդունելութեամբ հոգւոյն Սրբոյ . որ և նշանակեցաւ երկոտասան աղբերքն յաղիմայ , և եօթանասուն արմաւենեօք : Առաքեալք երկոտասանքն եղեն լուսաւորիչք Ձի բարձր քարոզութեամբ՝ ըստ օրինակի երկոտասան կենդանատեսակաց երկնային զարդուց , նոյնպէս և եօթանասուն և երկուքն սփռեցան ՚ի ներքոյ երկնից ընդ ամենայն ազգս հեթանոսաց , որք ՚ի սկզբանէ անտի բաժանման լեզուա՛ց յեօթանասուն և երկու ազգս տրոհին , ՚ի ժողովել զորդիսն մարդոյ զցրուեալսն ՚ի մի . ընդ որում և առէ հոգեկիր հաւատոյն մեր .
* Եօթանասնեկի երկակի լեզուա՛ց այլա-
,, սեռ ձայնից ՚ի մի տեսակ զուգաշուրթն
,, խօսակցութեան համահաւաքիչք . բաժանե-
,, լոց յոքնակի ազգաց անսասանելի շաղ-
,, կապք սիրոյ . դասք և դասապետք փայլե-
,, լական պարուց . տիեզերաց երկրի դատա-
,, ւորք ‖ :

՚Ի նոյն խորհուրդ՝ և թարգմանութիւն նոգրոց յեբրայականէն ՚ի հելլենականն եղև զառաջինն ՚ի ձեռն եօթանասուն և երկու ծերոց Իսրայէլի , վեց վեց յիւրաքանչիւր ցեղէ ընտրեալ : Աողից և զայլ բազմապատիկ տեսութիւս խորհրդաւոր թուո՛յս հզ , կամ է . որ միշտ ՚ի յարգի էր առ տունն Իսրայէլի՝ վասն զու-

գա

գաթիւ՛ լինելոյ անձանց մտելոյ ըստ ինչ յե-
գիպտոս . զի էին 'ի ժամուն ոգիք հճ . իսկ
յավսեփայ հանդերձ , և երկու որդւովք նր՝

որ եղեն յեգիպտոս , լինին հէ :

Արդ յայտնի է նախ առ ամ նախնի մատե-
նագիրս , և 'ի ստոյգ աւանդս եկեղեցւոյ ,
թէ եօթանասուն և երկու աշակերտքն քի
յետ շրջելոյ քարոզութ 'ի զանազան կող-
մանս Յի՝ մեծամեծ նշանօք և զօրութ հան-
դերձ , ազգի ազգի մահուամբ կատարեցան
վս անուանն տն : Յայտնի է երկրորդ , թէ
ոչ յուդաս մին 'ի դասէ երկոտասանից ան-
կաւ , և ելից զտեղի նր մատաթիաս՝ որ 'ի
թուոյ եօթանասնից . նոյնպէս և 'ի դասէ
եօթանասունն և երկուց աւելի քան զերկուս
և զերիս 'ի բաց անկան , ոչ կարծին լինել՝
նիկողայոս եկն անտիոքացի աղանդապետ ,
փիգեղոս և հերմոգինէս այլափառք , դեմաս
ուրացող , ըստ ոմանց և աղեքսանդրոս դար-
բին . և սակայն այլք յընտրելոց աշակեր-
տաց 'ի տեղի նց մտին . և այնպէս զառ 'ի
քէն սահմանեալ թիւն ամբողջ պահեցին :
Յայտնի է երրորդ , զի ոչ յաւետարանէ և
ոչ 'ի գործոց և 'ի թղթոց առաքելոց ունիմք
աւանդեալ յանուանէ՝ թէ ո՞ ոք էր 'ի թուոյ
եօթանասնից , և զի՞նչ անուն միոյ միոյ 'ի
նոցանէ . վսյ եթէ կայցէ ինչ յաւանդութիս
նախնի հարց և վդպաց , նոքիմբք պարտ է
շատանալ . և այն՝ եթէ միաբան աւանդութ
իջանէ , ստոյգ է համարելի . ապա թէ ոչ՝
անստոյգ կամ վրիպական : Ոյր օրինակ և

եւ

եւսեբի զստոյգս և զանստոյգս անխտիր նշանակէ բանիւն ․ ( պատմ ․ եկեղ ․ ա ․ 12 ․ )

* Առաքելոցն փրկչին մերոյ յաւետարանէ յայտնի են անուանքն նց ամ ումեք ․ իսկ եօթանասունն աշակերտացն երկրորդումն անուանն նց ուրեք չէ յայտ ․ բայց ասի , եթէ բառնաբաս մի 'ի նոցանէ էր ․ զի զնա յականէ յանուանէ 'ի բազում տեղիս յիշէն գործք առաքելոցն , և պօղոս՝ յորժամ գրեաց առ գաղատացիսն ։ Այլ ասի՝ թէ սոսթենէս , այն՝ որ գրեալն է ը պօղոսի 'ի թղթի անդ կորնթացւոց , թէ՝ և նա 'ի նոցանէն էր ։ Նայց ըս ասելոյ պատմութեանցն կղեմենտայ՝ և կեփաս , այն՝ որ ասաց պօղոս վն նր , թէ յորժամ եկն կեփաս յանտիոք , առաջի ամենեցուն յանդիմանեցի զնա , մի յեօթանասնից անտի աշակերտաց ասի լինել՝ անուանակից պետրոսի առաքելոյ ։ Եւ մատաթիա՝ այն որ եմուտ 'ի համար առաքելոցն փոխանակ ը յուդայի , և յուստոս՝ այն որ եկաց ը նմա 'ի վիճակի անդ , ասի՝ թէ յեօթանասնից անտի էին նք ։ Եւ վն թադէոսի ասի , թէ մի 'ի նոցանէն էր նա ․ որ և պատմուի եւս եկն վն նր 'ի ձեռս մեր ․ արդ եղից զնա ․ ( ոչ և դնէ 'ի յաջորդ գլուխն զգալուստ նր առ աբգար ) ։ Նաև աւելի քան զայս եօթանասունս գտանես դու , որք յայտ եղեն՝ զի էին նք աշակերտք փրկչին մերոյ , իբրև 'ի վկայութենէ պօղոսի , զի ասաց , եթէ յետ յարուե փրկչին մերոյ 'ի մեռելոց երևեցաւ նախ կեփայի ( կմ պետրոսի ) , և ապա երկոտասանիցն ․

նոցն . և ապա երևեցաւ և աւելի ք̃ զհինգ-հարիւր եղբարց միանգամայն . . . և ապա ասաց, եթէ երևեցաւ յակոբայ, այն որ մի յայնցանէ է, որ ասին եղբարք փրկչին մերոյ : Այլ քանզի բաց 'ի սոցանէ ը̃ նմանուե̃ երկոտասանից՝ յոլովք ոմանք եղեն առաքեալք, ո̃պ էրն ինքն պօղոս, յաւելու իսկ և ասէ, եթէ ապա երևեցաւ առաքելոցն ամենեցունց || :

Ուր որչափ ստոյգ երևի, թէ յակոբոս եղբայր տ̃ն, և թադէոս առաքեալ հայոց, և այլք էին 'ի թուոյ եօթանասնից, նոյնչափ և անստոյգ՝ թէ սոսթենէս իցէ 'ի նմին կարգէ . զի սա թուի լինել սոսթենէս ժողովրդապետն՝ որ զկնի հաւատաց . ևս առաւել վրիպական կարծիք, թէ կայցէ կեփաս այլ յաշակերտս բաց 'ի պետրոսէ : Այնպէս իմա և զբանից այլոց 'ի մատենագրաց, որ չեն ստուգաբան քան զեւսեբի :

Այլ առաւել քան զ̃մ հանդիսացեալ են երկու օրինակք աւանդից զանուանէ և զկատարմանէ միոյ միոյ եօթանասնից ողջոյն, կէս մի հաւանելի՝ և կէս մի անհաւանելի՝ մի ք̃ զմի : Առաջինն է ը̃ ճառընտրաց՝ առեալ 'ի յունաց, և այն ո̃պ թէ 'ի հռովմայեցւոց, և մակագրեալ յանուն սր̃յն դորոթէոսի եպսին տիւրոսի, որ նահատակեցաւ առ յուլիանոսիւ . և երկրորդն է ը̃ յայսմաւուրաց մերոց՝ քաղեալ 'ի զանազանից . որ թերևս լաւ ևս է քան զառաջինն . ը̃ որում դորոթէոս՝ ի̃բր հետևողութ̃ հիպողիտոսի, ոչ այլ ինչ առնէ,

նէ , բայց զի որչափ ինչ յառաւել անուն գտա-
նէ յաւետարանի և 'ի գործս և 'ի Թուղթս
առաքելոց , մանաւանդ զբազմութիւն ան-
ուանց՝ զորս ողջունէ պօղոս 'ի Թուղթն առ
Հռովմայեցիս , վերածէ 'ի կարգ եօթանասա-
նից . իսկ յայսմաւուրքն Թէպէտև մասամբ
զնոյն անուանս երկրորդէ , բայց ԶԲ մասին
ևս յայլ պատմութեանց հաւաքէ ։ (3)

Երկոտասանն իսկ գտանեմք զայս Ճշմար-
տութի , Թէ անուանքն այնոքիկ են անուանք
աշակերտելոցն Տն և առաքելոց . վԶի ոչ այն-
չափ զեօթանասնից պատմութի ուսանիմք 'ի նա-
ցունց , որչափ զաշակերտելոցն քՏի առ առա-
քելովք . բայց և զայն առոյգ վարկանիմք ,
Թէ ոչ սակաւք 'ի նցէ են 'ի Թուոյ եօթա-
նասնից . վԶ զի յայտ է Թէ առ առաքելովք
առաւել նախապատիւ էին եօթանասունքն
քան զայլ աշակերտեալս . վԶ և անձինք ե-
րևելիք յիշատակեալք 'ի գործս և 'ի Թուղթս
առաքելոց՝ առաւել 'ի դասէ եօթանասնից
ունին լինել . այլ ոչ եթէ ամենեքին ։ Ըս
ԶԲ այսմ ընտրութե յերկուս որոշեմք կարգս
զնմ անուանս ընծայեալս եօթանասնից .
դնելով յայսմ վայրի նախ զառոյգ կարծե-
ցեալս , և ապա զանստոյգ դատեալս . և ա-
ռոց միանգամ առանձին պատմութի կայցէ ,
ոչ գրեմք աստանօր զնոցուն վարս , զի պա-
հին աւուրց առանձին տօնից իւրեանց . իսկ
զայլոց՝ զորոց չունիմք խօսել այլուր , յայսմ
վայրի գրեմք՝ որչափ ինչ պատմական աւանդ
գտանիցի առ զանազանս ։

Ա

Մնացեալք աշակերտաց՝ որք Երուսաղէմի գրին ՚ի Նիկա
Հայօթանանից :

ա. Յակոբոս եղբայր տն կոչեցեալ, կմ տծեղբայր. որ և արդարն յակոբ՝ առաջին եպս եղեւ. զոր ոմանք առաւել յարեւմուտս ՚ի յետին դարս՝ համարեցան լինել մի յերկոտասանից. յակոբ փոքր կոչեցեալ. բայց ոչ Ճառընտիրն ըստ դորոթէոսի և հիպողիտայ կարգէ ՚ի գլուխ եօթանասնից, նոյնպէս և յայսմաւուրքն ՚ի . յասելն ՚ի վերայ նոցա. * Որոց առաջին և մեծ և գլուխ՝ այն յակովբոս եղբայրն տն ||. և ըստ այսմ եդեալ է և ՚ի շարականի նր. * Սա եղև գլուխ առաքելոց սոց (այսինքն եօթանասնից), և կոչեցաւ եղբայր տն ՚ի տանէ դաւթի || :

բ. Մատաթիաս, որ ելից զթիւ երկոտասանն առաքելոցն, ըստ դորոթ". և հիպող" : ՚Ի նոյն ակնարկէ և բանն պետրոսի ՚ի գործս առաքելոց. * Արդ պարտ է յարանցս յայս-
,, ցանէ եկելոցս ընդ մեզ յամ ժամանակի,
,, յորում մուտ և ել առ մեզ տրն յս, սկսեալ
,, ՚ի մկրտութենէն յովհաննու՝ մինչև յօրն, յո-
,, րում վերացաւ ՚ի մէնջ, վկայ յարութեան նր
,, ընդ մեզ լինել միում ՚ի սոցանէ || :

գ. Յովսէփ՝ որում բարսաբայն կոչէին, նոյն և յովսէ կմ յեսոս և կմ յիսուս, որ անուանեցաւն յուստոս, այսինքն արդար, վիճակակից մատաթեայ : Սա ըստ ոմանց եղև եպս ելևթե-

րուպօլսոյ 'ի պաղեստին . և ըստ այլոց եղև երրորդ եպս Երմի զկնի շմաւոնի . մանաւանդ թէ կարծի մին յեղբարց տն յովսէս կոչեցեալ, այն է եղբայր յակոբայ և շմաւոնի և յուդայի : Հ . սատ : Օ . ժմ . յունիս . 30 : Լ . յուլիս . 20 : Սա ը պապիայ առ եւսեբի, քաժակ մահադեղոյ արբեալ՝ անվնաս պահեցաւ տր :

Դ . Թադէոս առաքեալ հայոց, որ և յուդա եղբայր թովմայի առաքելոյ . զոր ոմանք շփոթեն ը յուդայի եղբօր տն, որ և ղեբէոս թադէոս մին յերկոտասանից : Բայց 'ի կարգի եօթանասնից է ը եւսեբի, խորենացւոյն, դորոթէոսի, և այլոց :

Ե . Շմաւոն ազգական քսի՝ երկրորդ եպս Երմի, այն է որդի կղէոփայ եղբօր սբյն յովսեփայ տնծահայր կոչեցելոյ . վնյ և եղբայր յակոբայ արդարոյ և յովսեայ և յուդայի՝ սիմոնն յիշատակեալ յաւետարանի . զոր ոմանք շփոթեն ը սիմոնի կանանացւոյ, որ և շմաւոն նախանձայոյզ մի յերկոտասանից :

Զ . Ստեփաննոս նախասարկաւագ և նախավկայ :

Է . Փիլիպպոս ընկեր նոր՝ աւետարանիչ կոչեցեալ :

Ը . Պրոխորոն կմ պռոքորոն 'ի նմին կարգէ՝ մին յեօթանց սարկաւագաց . որ սսի լեալ եպս նիկոմիդայ քիւթանացւոց . և գործակից և դպիր աւետարանչին յովհաննու յասիա . և ապա նահատակեալ յանտիոք . որոյ

և նշխարք յիշին ՚ի բոնոնիա յեկեղեցւոջ սրբոյն յովհաննու, եթէ չիցեն պրոկղոսի եպիսկոպոսին բոնոնիոյ։ Հռ․ մատ․ Յ․ յուլ․ 28։ Լ․ ապր․ 9։

Թ․ Նիկանովրա կմ՟ նիկանովր մի յեօթանց անտի․ որ ըստ դորոթէոսի կարծիս նահատակեալ ՚ի նոյն հալածանս ընդ սբյն ստեփաննոսի՝ հանդերձ այլ ևս բազմութբ․ և ըստ այլոց ՚ի կիպրոս կատարեցաւ, և անդ թաղեցաւ։ Հռ․ մատ․ Յ․ յուլ․ 28․ և ժմ․ դեկտ․ 28։ Լ․ յունիսի․ 10։

Ժ․ Տիմոթէոս կամ տիմոն՝ մի յեօթանցն․ որ յետոյ ասի շրջեալ ՚ի կորնթոս և ՚ի բերիա․ և եղեալ եպս բոստրայ քաղաքի արաբացւոց կմ՟ ասորւոց․ ուր և մատնութբ հրէից ՚ի հնոց հրոյ արկեալ ՚ի հեթանոսաց, և այնպէս կատարեալ․ այլք ասեն՝ թէ զերծաւ ՚ի հրոյ, և ՚ի խաչի մեռաւ։ Գուցէ այլ իցէ և տիմոնն այն, զորմէ գրեն ոմանք ՚ի վարս բառնաբայ առաքելոյն՝ թէ գտեալ զտիմոն ՚ի կիպրոս տապացեալ ջերմամբ, ընթերցաւ ՚ի վր՟ նր՟ զաւետարանն մատթէի, և կարդաց զանուն յսն․ որով առողջացեալ գնաց զհետ նր՟ ՚ի քարոզութի։ Հռ․ մատ․ և մայիս․ 9։ Յ․ դեկտ․ 30։ Լ․ ապր․ 19։

ԺԱ․ Պարմենաս՝ մի յեօթանց անտի․ որ ըստ ոմանց ասի խաղաղութբ վախճանեալ ՚ի սպաս առաքելութն առաքելոց․ և ըստ այլոց ՚ի հրէից նահատակեալ ՚ի հալածանս՝ որ եղև ՚ի վր՟ ստեփաննոսի․ իսկ ըստ հիպողիտոսայ ասի եպս լինել սոլեաց․ և այլք թէ շրջեցաւ քարոզու-

զութբ. ՚ի փիլիպպէ մակեդոնիոյ և յայլ տե-
ղիս. մինչև կատարեցաւ մարտիրոսութբ:
Ն. ասա: Ձ. մարտ. 2. և Ժմ. յուլ. 28:

Լ. յունիսի. 23:

ժբ. Նիկողայոս եկն անտիոքացի՝ որ ՚ի թւոյ եօթանց, ըստ գործոյթեանս եպս երեկուա-մարացւոց՝ այլափոխեցաւ ըստ սիմոնին մոգի. և ՚ի նմանէ բուսաւ աղանդն նիկողայեցւոց. բայց չէ՛ ստոյգ, արդեօք ինքն նիկողայոս մոլար վարդապետութիւն սերմանեալ իցէ, եթէ ՚ի բանից ինչ նորա աշակերտք նորին հանին և ուսուցին զմոլորութիւն, ասեն քննիչք:

ժգ. Անանիա առաքեալ, որ մկրտեաց զՊօղոս ՚ի դամասկոս, եպս համարեալ դա-մասկացւոց:

ժդ. Արիստարքոս առաքեալ՝ գործակից պօ-ղոսի:

ժե. Մարկոս աւետարանիչ՝ գործակիցն պետրոսի:

ժզ. Ղուկաս աւետարանիչ՝ գործակից պօ-ղոսի:

ժէ. Շիղա գործակից պօղոսի. ընդ որում երուսաղէմէք նոյնասցուցանեն զսիղուանոս, և այլք զատանեն:

ժը. Յուդա ընկեր շիղայի, և մարգարէա-կից նորա յանտիոք. սա և բարսաբա կոչի համբուն յակոբէ կոչ յովսեփայ յուստոսի. վասն կարծի յոմանց մի լինել ՚ի չորից անտի եղ-բարց անուանելոց եղբայր տն. յս են յակո-բոս, սիմոն, յովսէս, յուդա. բայց այլք զսոյն յուդա ասեն մի յերկոտասանից՝ ոչ բա-

կարիովտացին, այլ՝ Թադէոս Ղեբէոսն ։

ԺԹ. Յովհաննէս՝ որ կոչեցաւն Մարկոս, եղբօրորդի բառնաբայ, որին համարեն յաւետարանչէն ։

Ի. Բարդուղիմէոս՝ գործակից փիլիպպոսի առաքելոյն, որ յերկոտասանից, և նահատակակից ։ Զսա ՝ի թիւս եօթանասնից դընեն միայն յայսմաւուրք ⁓. սատ, և ՝ի նոյեմբ. 17. զոր և հաստատեսլ երևի Յ. ՝ի նոյեմբ. 14. ՝ի վարս փիլիպպոսի. ուր և ՝ի տօնեն ը͞ն բառնաբայ ՝ի յունիսի. 11. ուրոյն ՝ի բարթուղիմեայ առաքելոյ՝ որ ՝ի յնս. 30 ։

ԻԱ. Ղազարոս սիրելին և բարեկամն ք͞ի, որ յարոյց զնա ՝ի մեռելոց. ը͞ս ⁓. համարեն յեօթանասնից ։

ԻԲ. Նաթանայէլ՝ որ ՝ի կանայ գալիլեացւոց. որ ը͞ս ⁓. է մի յեօթանասնից. զնոյն ցուցանէ և Յ. ՝ի 22. ապր. բայց ժամագիրք Յ. ՝ի 30. յունիսի. ասէ լինել մի յերկոտասանից՝ նոյն ը͞ն սիմոնի կանանացւոյ ։

ԻԳ. Ղուկիոս, ը͞ս ոմանց ղուկաս, կիւրենացի, յիշատակեալ ՝ի գործս առաքելոց. ԺԳ. 1. և հռովմ. ԺԶ. 21. ասի եպ͞ս լեալ լաւոդիկեայ ասորւոց, և ՝ի բազում տեղիս քարոզեալ զք͞ս ը͞ն ապեղեայ և ը͞ն կղեմայ ։ ⁓. սատ ը͞ս դորոթ ։ Յ. ժմ. ապր. 22 ։ Լ. ապր. 22. և մայ. 6. և սեպտ. 10 ։

ԻԴ. Մանայեն դայեկորդի հերովդի չորրորդապետի, գործակից ղուկիոսի յանտիոք. քարոզեալ զք͞ս հրէից և հեթանոսաց՝ ՝ի նմին կատարեցաւ կմ հանգեաւ ։ ⁓. սատ ։

Լ.

Լ. մայիս. 24:

իե. Ընդ սոսա դասելի էր և մարգարէակից և գործակից նց̃ շմաւոն նիգեր. բայց ոչ գտաք կարգեալ յումեքէ:

իզ. Տիտոս եպս̃ կրետայ՝ գործակից և աշակերտ համարեալ պօղոսի, կարծի անդստին աշակերտեալ քմ̃ի, ը̃ Հ̃. տօն. և ը̃ Յ. ժամագր. յունվր. 5:

իէ. Գայիոս ասպնջական պօղոսի, նոյն համարեալ՝ առ որ և աւետարանիչն յովհաննէս գրեաց գիր. սա եպս̃ լեալ եփեսացւոց յետ տիմոթէի. կմ̃ ըն̃ այլոց 'ի լիւրիկիա կատարեալ է յովհաննու ումեմն: Հ̃. տօն. ըստ դորոթ. և Յ. նոյեմբ. 4:

իը. Ագաբոս մարգարէ յիշատակեալ 'ի գործս առաքելոց. ըն̃ դորոթէոսի դասի 'ի կարգ եօթանասնից. այլ ոչ 'ի յայսմաւուրս:

իթ. Կրեսկէս յիշատակեալ 'ի բ̃ թղթին պօղոսի առ տիմոթէոս, է̃ եօթանասունս դրի 'ի դորոթէոսէ և 'ի յայսմաւուրաց: Առանձին յիշատակ նորա լինի 'ի Յ. յուլ. 30. և Լ. յունիս 27. և դեկտ. 29: Այն՝ որ գրի 'ի մեզ. *կրեսկէս 'ի գաղիա ||, յոյնք և լատինք ընթեռնուն 'ի գաղատիա. ուստի առեալ՝ ոմանք համարին զնա եպս̃ գաղղիացւոց, այլք գաղատացւոց. և կէսք դնեն՝ թէ թէպէտև 'ի գաղղիա եւս գնաց, այլ բնիկ վիճակ նր̃ էր գաղատիա ասիացւոց:

լ. Դեմետրիոս, որ 'ի յայսմաւուրս մեր եւեթ դնի 'ի կարգ եօթանասնից, և սա 'ի հրէից քարկոծեալ, է այն՝ զոր գովէ ս̃րն յովհան-

նէս 'ի Թուղթն առ Գայիոս. * Զդեմե-տրեայ վկայեալ է յամենեցունց և յեկեղեց-ւոյն և 'ի ճշմարտութենէ. և մեք վկայեմք. և դու գիտես, զի ճշմարիտ է մեր վկայու-թիւն ||:

լա. Ա՛ինաս, որ ըստ յայսմաւուրաց ասի քար-կոծեալ 'ի բերիա` որ 'ի Հալապ, կմ' 'ի բիւրի-տոն, վն քարոզելոյ զկուսութի և զպարկեշ-տութի. զոր ոչ գտաք առ այլս, եթէ չիցէ նոյն, զոր այլք զինաս կմ զենոն կոչեն. զոր-մէ տես յերկրորդ կարգի. իե:

լբ. Ախուրղաս 'ի կեսարիա կատարեալ, նոյն-պէս անծանօթ այլոց:

լգ. Ակկիտաս 'ի տաբարիա կմ' 'ի տաբիրա սղոցեալ. նոյնպէս անյիշատակ առ այլս:

լդ. Պաղար երկրորդ` 'ի բերիա նահատա-կեալ. անյիշատակ:

լե. Զաքարիա` այրւոյն որդի, զոր տէրն յա-րոյց 'ի նային քաղաքի, 'ի Հուրինա կմ' 'ի խու-րինա կատարեալ. և այլ զաքարիա ը նմա. անգիտելի այլոց: Մ'իայն առ լատինս 'ի 26. մայիսի լինի յիշատակ * 'ի վիեննա (գաղ-ղիոյ) նոյն զաքարիայ եպսի և վկայի, որ նահատակեցաւ առ տրայիանոսիւ ||:

լզ. Զաքէ կմ զակքէ առաջին և երկրորդ` յանապատն կատարեցան. թերևս մին այն է, զորմէ լինի յիշատակ 'ի Լ. օգոստ. 23. * Յեղմ` նոյն զաքէի եպսի, որ չորրորդ յե-րանելւոյն յակոբայ առաքելոյ հաջորդեաց զեկեղեցին եմացւոց ||. բայց սա էր աշա-կերտ աշակերտաց:

լէ.

ԼԷ. Մնասիա Է սիմէոնի 'ի բիւզանդիոս առ կատարեալ. զոր ոչ յիշեն այլք:

ԼԸ. Եղիշէ յազգաց ամս կատարեալ, Թէպէտ և անծանօթ իցէ առ այլս, բայց անուանի յոյժ առ մեզ՝ իբրև գործակից և աշակերտ նորին Թադէի. զոր ոչ միայն աստ յիշէ յայսմաւուրքս Հ. այլ և ուրոյն գրէ զվկայաբանութիւն նր 'ի սեպտ. 21:

ԼԹ. Դեմաս այլափառ:

Խ. Հերմոգինէս այլափառ: Ոչ երկոսին և ոչ յեօթանասնից գաւէ ասեն լինել Է դորոթէոսի և յայսմաւուրքն. որ և յաւելու 'ի նոսա զաղեքսանդրոս զարբրին. իսկ դորոթէոս յաւելու և զփիգեղոս, գրելով այսպէս. * Փիգեղոս՝ որ զսիմոնինն խորհէր, եպս եփեսոսի եղև: Երմոգինէս, որ և նա մոգ, առաքացոց զեպեղեցաւ եպս... Այլ դեմաս սիրէ զայժմուս յաւիտեան՝ բացամերժեաց զաւետարանական բանն, և 'ի Թեսաղոնիկէ քուրմ կացն եղև: Յաղագս որոյ յովհաննէս առաքեալ գրեաց. առ 'ի մէնջ ելին, այլ ոչ էին 'ի մէնջ ||:

Յանուանց աստի աւելի քան զքառասուն՝ երեսնիւ չափ առաւել հաւանելի դատին լինել 'ի Թուոց եօթանասնից. իսկ մնացեալքն անստոյգ ճանաչին. Եւս առաւել զորս անիմք յիշել յայսմ հետէ յերկրորդ կարգի:

Անուանք աշակերտաց, որ ոչ ուղիղ դնին յանուանց 'ի կարգս եօթանասնից ։

ա. Աղէովպաս ազգակից տն, որ եղբայր յովսեփայ մծահօր, ը եօթանասունս գրի 'ի դորոթէոսէ եւ 'ի հիպողիտայ . եւ կոչի եմաւս եմմի՝ շփոթելով ընդ որդիս նր, որք եղեն եմմի եմաւս, որ յակոբ արդարն, եւ զկնի շմաւոն լթ . յորոց զշմաւոն վերապահաւ կղէովպաս անուանեն ժամագիրք յունաց 'ի յունիսի . 30 ։ Այլ եւ յայսմաւուրք հայոց զկղէովպաս համարի յեօթանասնից . բայց ուղիղ գրէ զպատմութին՝ ասելով . * Աղէապաս եղբայրն յովսեփայ մծահօրն, որ յաւուր աւագ զատկին ետես զքս յեմաւուսայ ճանապարհին, քարոզեաց զքս հրէից, եւ անդէն կատարեցաւ յեհմ‖ ։ Նաեւ լատինք 'ի սեպտ . 25 . ուրոյն կատարեն զյիշատակ նր այսպ . * 'Ի գիւղն եմմաւուս կատարումն երանելւոյն կղէոպայ աշակերտին քսի . զորմէ աւանդեն, թէ 'ի նմին տան՝ ուր պատրաստեաց սեղան տն, վս խոստովանութե նր սպանեալ իցէ 'ի հրէից, եւ փառօք թաղեալ‖ ։

բ . Յովսէփ արեմաթացի, որ զտրն թաղեաց . միայն 'ի ~ . գնի 'ի կարգ հ . ից ։

գ . Նիկոդեմոս գործակից նր՝ նոյնպէս . որոյ մարմին թաղեցաւ զկնի ը նբյն ստեփաննոսի ։

դ . Սիմոն կիւրենացի՝ բարձօղ խաչին քսի . ը նմին եւ երկու որդիք նր ռուփոս եւ աղեքսանդրոս ։

դրոս ։ Զորոց զռուփոս միայն դնէ դորոթէոս ՚ի դաս էից ։ Զայս առնէ աւետարանիչն՝ թէ որդիք սիմոնի անուանիք և երևելիք էին քան զհայր իւրեանց, զի անուամբ որդւոցն ծանօթս տայ զնմանէ, * հայրն աղեքսանդրի և ռուփայ ‖ ասելով, որք թերևս էին ՚ի կարգս աշակերտաց. բայց ինքն սիմոն ոչ էր յայնմ կարգէ. Ը որոյ և ՚ի Ճառընտիրս ուրոյն գրի զկնի պատմութե եօթանասնից այսպէս. * Վկայութի սիմովնի կիւրենացւոյ ։ Տեսեալ սիմովնի զսքանչելիսն՝ որ
,, եղեն ՚ի խաչելութենն քի, հաւատաց գաղտ
,, ՚ի ժողովրդենէն. և ոմն յազգականաց իւ-
,, րոց երթեալ մատնեաց զնա առ հրէայսն
,, և առ քահանայապետսն. և նք կաշառե-
,, ցին զպիղատոս, և խաչեցին զսիմովն վս
,, անուանն քի. և խոցեցին զերկուս կողսն.
,, և հեղաւ յոյժ արիւնն. և աւանդեաց զո-
,, գին բարի խոստովանութբ, ՚ի մարտի.
,, ժ. և է մեզ բարեխօս առ քս ‖ ։ Որ և պարտ է համարել գեղեցիկ վարձ խաչաբարձութե սիմոնի, որ թարգմանի հնազանդ ։

Է. Կեփաս իբրև որիշ ՚ի սկզբն պետրոսէ՝ Ը յիշելոյ եւսեբի, ՚ի համար էից դնի ՚ի դորոթէոսէ, և ՚ի ն̃ ։

Ը. Մարկոս երկրորդ, կմ յովհաննէս երկրորդ՝ նոյնպէս, անորոշակի քաղեալ ՚ի գործոց և ՚ի թղթոց առաքելոց ։ Ը որում և յետագայ անուանք նոյնպէս են հաւաքեալ ։

Թ. Ստաքէոս, որ յիշի ՚ի թղթ. հռ. Ը դորոթ.

,, կից յա̃ծային քաղաքութիւնն զաքանչելին 'ի
,, կանայս զյունիա , զմեռուեալն ծի և մար-
,, տ̃նոյ , և զ'ի ք̃ն միայն կենդանին և զբար-
,, ւոք պաշտօնեայն . . . . զմեհեանս կուոց
,, կործանեցին , և զեկեղեցիս ք̃ի յա̃մ
,, տեղիս շինեցին . . . զայսս պիղծս 'ի մարդ-
,, կանէ հալածեալ , և զախտս անբուժե-
,, լիս բժշկեալ` առ տ̃ր փոխեցան ‖ : Պան ,
ծալի են և բանք առաքելոյն զսոցանէ .
* ողջոյն տաջիք ( ասէ ) անդրոնիկեայ և յու-
նեայ ազգականաց իմոց և գերեկցաց , որք
երևելիքն իսկ են յառաքեալս . որք և յա-
ռաջ իսկ քան զիս եղեն 'ի ք̃ս ‖ :

ժա̃ . Ամպղիաս` սիրելի՛ կոչեցեալ յառաքե-
լոյն , առի եպ̃ս լեալ ոդիսացւոց 'ի մակեդո-
նիա ըստ դորոթ" . և ըռ ^ . 'ի զմիւռին կա-
տարեալ :

ժբ̃ . Ուրբանոս , որ անդ յիշի , ըռ դորոթ"
եղև եպ̃ս մակեդոնացւոց . և ըստ ^ . 'ի
հռովմ կատարեցաւ : Նակ {} . և Ն . 'ի հոկտ.
31 . գրեն , թէ ամպղիաս և ուրբանոս և ստա-
քէս ( կմ̃նարկիսոս ) յայլ և այլ տեղիս նա-
հատակեցան . * Նակ պատուական նշխարք
,, նց̃ յետոյ փոխադրեալք 'ի կոստանդինու-
,, պօլիս , եդան յանուանեալ աղբիւրան ‖ :

ժգ̃ . Ապեղիս , որ կոչի անդ ընտիր 'ի տ̃ր ,
ըռ դորոթ" եղև եպ̃ս հերակղեայ կամ հե-
րակլիոյ :

ժդ̃ . Ապեղէս , զոր զանազանէ դորոթէոս
'ի նախընթացէն . և ասէ լեալ եպ̃ս զմիւռ-
նացւոց նախ քան զպօղիկարպոս . ոմ̃ն և {} . և

Ն :

ծուի նուաստագոյն է և տկարագոյն վիճակ ։
և որչափ քան զլսելութի՝ զտեսութին ստու-
գագոյն ասեմք գոլ, նոյնչափ խոստովանել
է քան զբանն՝ զգործն լինել զօրագոյն . . . . .
Այլ ես այսօր 'ի պատուական տաճար եկեղեցա
նորանելոյն փոկայ հասեալ՝ 'ի տեղւոյն լցեալ
լինիմ յիշատակաւ միանգամայն սասցելոցն
զնմանէ պատմութեանց ոմն . տեսանեմ զպար-
տիզպանն արուեստիւ , զանխարդախն հոգ-
ւով , զտարաւերն , զծովեզերին զկայելչու-
թի , զփչերկրէին զբարերարն , զՔրիստոսի սրբա-
գոյնն , և զփառաւորելոյն քնին զփառաւո-
րագոյնն ։ Վասնզի որ և ամէնայնին համօրէն
քաջազգի մկայից դասակարգութի՝ չարչա-
րանօք զ'ի վ՟ բ չարչարանաց ընծայեցուցանէ
շնորհ , և արեամբ զ'ի վ՟ բ արեան փրկչին
բոլորեցուցեց զփոխարէնն ըստ կատարուն .
բայց 'ի սոսին յայսոսիկ ոչ մի ամենեցուն
փառք, և ոչ միով չափով զուգահաւասար մե-
ծակին վարձք բոլորից . այլ յառաջնոյն և
յերկրորդէն և ոչ նոյն խորշի դասաւորու-
թի ։ Այլ պատճառ այսմ վարկանիմ զյոյժ
անկրիպուէ դատաւորին և զանհակամիտու-
թի . քանզի ակնարկէ և 'ի տանջանացն մե-
ծութի , և 'ի ժուժկալութեն տեւողութի .
և կշռեալ զճգնութին՝ զ նո արժանին վարձս
բաշխէ նահատակաց . . . . Իսկ ընդ այսոսիկ
անցի , զի ցուցից , որպէս այն՝ որ այսօր մեզ
ընծայեաց զհամախմբութեսս առիթ , քան
զընկերս և զմարտակիցս է երևելագոյն .
քանզի այլքն՝ ոչ ամենեքին յամենեցունց
ճա-

ճանաչելն, և ո՛չ քարոզեալ ունելն զքաջալա-
ւութի՛ն։

Օփակաս ոչ ոք է՝ որ անգիտանայ. այլ ո՛չ ճառագայթ արեգական ընդ աչաց ի՛ հարկանի, սոյնպէս և վկայիս այս համբաւն յամենեցուն հնչէ լսելիս. և զի համառօտ ասացից, որք միանգամ զՔս ծանեան ՚ի Քս, նոքին և զհաւատարիմ ծառայն ծանեան. նա եթէ բարւոք թուի, զհաստատակաց ներբողենիս զանց արարեալ՝ զվսեմական վկայիս

անցս ձեզ վկայասիրացդ ճառեցից։

Արդ՝ ընծայեցոյց զայլս ոք՝ զմեծ քրիստոնէից զօրավիգն, զկոչեցելն սինօպ՝ քաղաք հին և ծանօթ . . . իսկ հրահանգ նմին կենաց՝ դրախտի մշակութի և խնամակալութի. զոր և առաջի ուրեք նորուն իսկ դրան քաղաքին ՚ի բերան պարանոցին ստացեալ՝ մշակէր աշխատասիրաբար՝ անձին և կարօտելոց սփոփութի կենաց. բանայր և օտարաց առաւել յօժարութի՛ զփողքը և զչքաւոր առնն. և բնակեալ ՚ի հրապարակի՝ հասարակաց եկելոցն առաջի դնէր զոր ունէր. և նոր էր ղովտ՝ ո՛չ սողոմացւոց, այլ՝ սինոպացւոց։
Իսկ յանցանել ժամանակի . . . յօտարասիրութե՛ շահէր զկենսաւորութի մահու առիթ.

իսկ թէ ուստի՛ և զիա՛րդ, լուարո՛ւք։

Այն ինչ բան մերուս բարեպաշտութե՛ աւետարանեալ լինէր, և ամենայնն քարոզութի առ ամ լսելիս հասանէր, և ծանուցանէր զՔս և զնորին խորհուրդս, խռովեցան հեթանոսք ընդ ամենայնիւ, և թագք և իշխանք

ժա

ժողովեցան 'ի միասին, և մոլորութեան ժողո-
վուրդք բարկանային ը՟ յմ՟ի թգ՟րեն. և խըն-
դրեալ լինէր ա՟մ քրիստոնեայ ո՟պ չարագործ.
մերձաւորն պատժեալ լինէր, և հեռաւորն
խնդրեալ։ Սո՟յ և զփոկաս գլխովին ո՛չ ան-
յայտացոյց յետնութի մերձակին և պարտիզ-
պանութին. այլ և սա իբրև հարազատ ա-
ռաւելապէս ք՟ն պաշտօնեայ ազդեցաւ. և
ահա եկին առ նա՝ ոյք յաղջաւոր և յանցա-
ւոր կենացս հրաման առեալ էին 'ի բաց տա-
նել զնա առանց դատաստանի և պխնա-
տանուէ. քանզի և յանցանքն էր այնպիսի,
զոր համարձակաձայն խոստովան լինէր ա-
ռաքինին, և ո՛չ յումեքէ հարցեալ՝ գործովք
ցուցանէր. և 'ի հետաքօտել ուրուք՝ զուա՛ր-
թամիտ ձայնէր։

Արդ եկեալ արանցն՝ որ նորուն տանջանացն
եղեն սպասաւորք, և մերումս տօնի պատ-
ճառք, ագան առ նմա՝ զոր խնդրէինն. զի
ո՛չ ծանեան, և ո՛չ ծանուցան. այլ 'ի ծածուկ
առ ժամն ունէին զեկաւորութեն պատճառ.
ո՟պ զի կանխաւ ուսեալ յեղելոցն արտաքոյ
քան զքաղաքն, ո՞ իցէ փոկաս, և ո՞ւր բնա-
կիցէ, յանկարծակի 'ի վ՟ր հասեալ ըմբռնեա-
ցեն, ո՟պ եբրայեցիք երբեմն 'ի պարտիզին ը՟
յուդայի զտ՟րն. և էր ծածկեալ 'ի նոցանէ՝
եթէ 'ի մէջ ցանցի զորան ունին, շունք զոչ-
խարն, գայլք զգառն, զաղաւնին թռչունք
յափշտակօղք և մագլաւորք. և ո՟պ մարգա-
րէն ասէ եսայի, մակաղէր ը՟ ընձուց ուլն,
և ը՟ գայլոց գառն ձարակէր, և առիւծք ը՟

որ

որթու կենաց կցորդ լինելին : Իսկ յորժամ՝ ոչ ուրեք է լինել, սեղանն և ընտանութիւնս համարձակել տայր առ միմեանս, հարցանէր 'ի նոցանէ վկայս, եթէ ո՞յք իցեն, և ո՞յր մը 'ի քաղաք անդր հասեալ իցեն : Եւ նոցա 'ի զուարթագին ընդունելութէ և 'ի հիւրասի-րութէ առն պատկառեալ, և մի ումեք զա-սացեալն առել պատուիրել, բացին զգաղտ-նիս իւրեանց, և զհայթհայթանացն յայտնի արարին զբանս, եթէ զփոկաս կամին ունել 'ի տանջել. Նմին իրի աղաչէին և զայս ևս յաւելուլ 'ի հիւրասիրութի անդր՝ աշխա-տակից լինել նմա առ որսալ զխնդրելին :

Ուստի ծառայ նն, և անայլայլելի ոգւով զբանն ընկալեալ, ոչ նուաստ ինչ և ցածագգի կրեաց կմ բարբառեցաւ, և ոչ 'ի վտանգէն զանգիտեալ՝ փախչել խորհեցաւ. և այն զի չառ ունէր և անխափան կարողութի խուսա-փելոյ. զի չև իսկ եր յայտնի՝ եթէ նա է, որ 'ի նոցանէն խնդրի. այլ միմիւ զհակառակն առնէ, հաստատեալ 'ի սրտի՝ արիանալ ա-ռաւել, և ոչ փախչել : Հանգչս յաղաչանս նմ զինչանի. և ես առէ յառաջիկայդ ձեզ ձեռնտ-ու եղէց. քանզի ճանաչեմ զայրն, և հեշ-տեաւ խնդրեալ գտանեմ. և ոչ հեռի ժա-մանակաւ այս լինիցի, այլ 'ի վաղիւ անդր ցուցից և ձեզ. միայն դուք յաղքատին այս յարկ ագերուք :

Զայսօրինակ հաստատուն նմ երաշխաւո-րեալ խոստումն, յերկուս բաժանէ զանձն. յընդունելութի սպանողաց անձին իւրոյ, և

'ի

'ի պատրաստութիւն գերեզմանի ․ և յետ յարու-
դարձելոյ զփոսն և զայլ պէտս թաղմանն , մատուցեալ առ նա 'ի վաղիւն անդր , փու-թով պնդութիւն ձեզ ասէ զփոսս խնդրեցի , և ահա պատրաստական կայ որսն ․ և եթէ հաճոյ թուի՝ ըմբռնեսցի ։ Սա յաւել նոցա խնդալից , և ո՞ւր այրն ․ ոչ հեռի ուրեք ասէ , այլ՝ ընդ ձեզ ․ զի ես ինքնին նա եմ առաջի ձեր ․ արդ յաջողեալ են ձեզ իրքդ ․ կատա-րեցէք զընթացս ճանապարհիդ և զաշխա-տութեդ ։

Ընդարմացան յանձինս արքն , և 'ի լսել անդր պաղեցան , յաղէ և 'ի հացէ պատկա-ռեալք , և 'ի պատուհասէր կոչնոց անտի յաղ-քատութեն անդ ։ Իսկ նա և ոչ քան զևս աղա-չէր համարձակել 'ի բարձումն իւր ('ի կե-նաց) , և ոչ առ փոքր մի անգամ երկուանալ պատուիրէր ․ ասէ ․ ոչ ձեռնինդ ձերոյ է սպա-նութիւն , այլ՝ հրամայողացն ձեռնարկութիւն ․ նոցա , հաւանեցոյց , մատեաւ 'ի կիրս չար-չարանաց ․ և համամամբ գլխոյն պատարագ-եալ հաճոյական մատուցաւ ։

Սիւն և հաստատութիւն ա͞ծայնոցն տիեզերա-կան եկեղեցեաց՝ յայնմ ժամանակէ և այսր զսա ունիմք ո՛ արք ․ և վկայիցն է սա պան-ծացոյնն՝ 'ի կարի լաւսն ունելով զառաջ-նութիւն ․ սա ձգեալ բերէ համաժողով զամե-նեսին յինքեան օթևան , և լի են անցք ճա-նապարհաց յերևսաց ընթանալեաց յիւրա-քանչիւր ՅԷ 'ի տեղին աղօթից ․ Սա է իսկ մեծավայելուչն այն տաճար՝ որում վիճակե-ցաւ

ցաւ ունել զնը Մարմին վկային, վշտացելոց դիւր, հիւանդաց բժշկարան, սովելոց սեղան ։ Սն զի ես առատապէս այժմ դարմանէ փոկա՛ն վախճանել, քան յեգիպտոս յովսէփ 'ի նախնումն . քանզի նա արծաթոյ ըզցորեանն բաշխէր, իսկ սա ձրի շնորհէ կարօտելոց ։ Նոյնպէս ընթանան հոյլք աղքատաց և թափառելոց՝ 'ի սինոպեան պարանոց, ուր 'ի հասարակաց ամբարանոց . այլ անդանօր յիրաւի այսպէս . բայց սակայն եթէ և ուրեք այլուրեք 'ի ձեռն դոյզն նշխարաց իբրու գաղթական ինչ մայրաքաղաքի կացոյց ինքեան վկայն, սքանչելի և այն տեղի՝ և ամ քրիստոնէից ըղձալի, զոր օրինակ սոյն սա մերս նահանգ՝ իջեան է տօնողաց . զի պատուական է առաջի տն մահ սրց իւրոց . և բազում ուրեք բաժանեալ նշխարքն՝ բոլորածաւանք ամ ուրեք երիցս երանելւոյն

պահեն զբարեհամբաւութն ։

Նոյնպէս իսկ և 'ի թագաւորեալ քաղաքի անդ՝ 'ի գլուխն ասեմ իտալիոյ և 'ի դշխոյն ծի, է՛ վկային ընծայաբերուի ամենաժողով և պատիւ, և տաճար հոյակապ գեղեցկաշէն ։ Նա ոչ պակաս հռովմայեցիք զփոկաս պաշտեն՝ քան զպետրոս և զպօղոս . վոյ՝ ուր ուսուցանէ բան, զգլուխն վկային մեծախնամով հանդերձեցին, հակառակ պղծոյն հերովդիադայ կալեալք զխորհուրդ . զի նա արեան ծարաւեալ՝ զարդարոյ խնդրեաց զգլուխ պատուական 'ի նախատինս . իսկ սք 'ի սակս պատուոյ և անձանց օգտի զվկայականն

կամին արժանապէս զգլուխն յինքեանս ձգեցին ։

Իսկ նաւորդք և նաւապետք յամ տեղիս, ոչ որ է եւքսինեանն անցանեն պոնտոս, այլև որք զադրիականն հատանեն, և ընդ եգէականն բերին, և որ միանգամ յովկիանոս նաւեն արևմտեան, և յարևելեան ծոցս ծովուն, զատվորականն ձայն յորդորական՝ որով զնաւուս աշխատութիւն սփոփեն, 'ի նոր բարեհամբաւութիւն փոխարկեն վկայիս, և լեզուք նոցա բովանդակ 'ի նուագել զփոկաս բերին. քանզի և արագ արագ պարզեալ զօգնականութիւն զնշանակս ։ Ա՛ն զի բազում անգամ երևեցաւ, է՛ զի գիշերայն 'ի յառնել մրրկաց զարթուցանել զնաւապետն՝ որ խորդայր առ ղեկաւն, և է՛ զի դարձեալ զապաւանդակս ձգել և առագաստիցն հոգ տանել, և յառաջոյ կողմանէ նախադիտել զծանծաղավայրս ։

Աստի օրէնք եղեն նաւավարաց զփոկաս ունել հացակից. այլ քանզի այժմ անմարմնոյն անմարթ՝ սեղանակցութիւն, ուսարուք՝ թէ որպէս խորհուրդ բարեպաշտասէր իմաստնացաւ յանհնարաւորս. քանզի որ ըստ օրէ զկերակրոյ բաժին ըստ հաւասարաբաշխութեան կերողացն մասնաւորեն վկայիս. և զայն բաժին՝ գնոց գնեալ ոմն 'ի սեղանակցաց՝ զարծաթն 'ի միջի դնէ. և 'ի վաղիւն անդր այլ ոք, և այլ երբեմն այլ. և այս վիճակ գնողութեան շուրջ եկեալ զամենեքումբք՝ տայ որ ըստ օրէ զոմն գնող բաժնի. և յորժամ նաւ-

ւաւ

ւահանգիստն ը̅ւնի զնմ, և 'ի ցամաք հասանեն, բաշխեն զարծաթն կարօտելոց հացի · այս բաժին է փոկասու՝ աղքատաց բարերարութի :

Սքանչանան ը̅ սա և Թագաւորք ը̅ քաջափառն և ը̅ ծառայքն · և պատուհասիրեալ ընծայիւք շքեղազարդեն զականաւոր աղքատին զտաճարն · գուն գործեն և անաւագք զմեծամեծօք գերազանցել : Իսկ ոչ են զարմանք, եթէ հռովմայեցւոց իշխանութե արք պաշտօնասէրք՝ իրաւանց և օրինաց սնդակիցք՝ այսպէս պատուհասիրեն զծառայն քնի, ուր և 'ի բարբարոսս հասին զարմանքն · և համօրէն վայրենագոյն սկիւթացիք, որ յայնկոյս եւքսինեան պոնտոսի բնականան 'ի ցամաքի, մերձաբնակք մէոտիայ լճին և դանայիս գետոյ, և որ բնակեալ են 'ի վօսփորոն, և մինչև 'ի փասիս ձգին գետ, ամենեքին ՚ք ընծայաբեր լինին պարտիզպանի · և ամ սովորութ՚ք և հրահանգօք տարակացք 'ի մէնջ՝ յայս եթէ միաբան գտանին, զվայրենութի բարուցն 'ի ճշմարտութե անտի ընդելացուցեալ :

Մ՚ին իսկ յիշխանացն և Թագաւոր անդանօր՝ զպսակ գլխոյն 'ի բաց առեալ, որ շրջափայլէր ոսկւով և ծաղկամբք քարանց պատուականաց, և զզրահն պատերազմական մերկացեալ զբազմահարուստ ագնիւ սպասուք, (քջի բարձրամիտ և շռայլ է բարբարոսացն սպառազինութի,) առաքեաց զերկաքանչիւրն յընծայ յիշատակաց, ըյ 'ի ձեռն վկայ-

Իւ ին

րին նուիրեալ զնշանակս զօրութեան և փառաց միանգամայն․ քանզի յայտ իսկ է, թէ պսակն՝ թագաւորութեան էր շնորհակալիք, և զրահն՝

պատերազմական քաջութեան ։

Նաև զոր միանգամ արտաքոյ այսոցիկ անդադար բարերարութիւս հանդիպեալս 'ի ձեռն անմիջական տեսլեանց, և բժշկութե̅ ախտացելոց, զիա̅րդ ոք ճառեսցէ արդեօք, ուր անհնար է ը̅ միոյ միոյ յերախտեացն մերձ դնել զբանն ։ Որդ մեք յայսմ վայրի դադարեալ՝ փառս փրկչին մատուսցուք, որ ծառայք հաւատարիմք այնչափ արժանացան շնորհաց, մինչև յա̅մ պետս և 'ի դէպս ըստ առնելոց նշ̅ պարգևաց բարերարել ծառայակցաց․ և զայսոսիկ յետ յաստեացս չուոյ և մեկնելոյ 'ի մարմնոյ․ որոց յիշատակն արդեամբք օր ը̅ օրէ ընթանայ ը̅ քաղաքս և ը̅ գիւղս, յա̅մ տեղիս զբարերարն քարոզելով զա̅ր․ որում վայելէ ա̅մ փառք և իշխանութիւն և մեծվայելչութիւն՝ այժմ և յաւիտեանս

յաւիտենից, ամէն ‖ ։

Այս պատմութիւն է պանծալի, զոր քաղեն և ժամագիրք յունաց և այլք 'ի յետնոց՝ ող̅ փոկասու որիշ եղելոյ յառաջնոյն և յերկրորդ փոկասէ․ այլ ունիմք ասել, թէ՝ և սա նոյն է ը̅ առաջնոյն, ա̅ծ որում մի ձանաչի Յաքարոզ նրն փոկաս սքանչելագործ պոնտացի՝ առասել բարեխօս նաւավարաց․ և շփոթութի̅ անանդից աստերիոս կոչէ զնա պարտեզպան, և փոքր մի այլազգ յարմարէ զօրինակ նահատակութեան, անորոշ թողեալ զժամա-

նակն և զայլ համբաւանս պատմութեան. ապա.
Թէ ոչ՝ հարկ լինէր ասել, թէ այնպէս ար-
տափայլեալ իցէ փոկաս պարտիզպանն քան-
զհայրապետն՝ մինչև ՚ի մոռացօնս արկանել
զնա. զոր չէ՛ մեզ կարծել. զի ամ՟ եկեղեցիք
զփոկաս հայրապետ միայն գիտեն նշանաւոր
և նշանագործ ՚ի պոնտոս:

Նոյնօրինակ ունիմք ասել, թէ գուցէ ո՛չ
է զանազանեալ յերևելւոյն փոկասէ և այն
նշանագործ վկայ, զորմէ տեղեկուն առեալ
արևմտեայց յառորւոց՝ տօնի կի՞ անտիոքա-
ցի զնա կարծեցին, և ուրոյն նշանակեցին ՚ի
վկայագիրս իւրեանց, առաջնորդ ունելով
զմի միայն Ծքն գրիգոր տուրոնեցի ՚ի վեցե-
րորդ դարու. որ ՚ի գիրսն յաղագս փառաց
վկայից. գլ. ղճ. գրէ օրինակ զայս.
* Փոկաս վկայն, և սա իսկըն է նոյն վկայս
(արևելեայս) շարագրեալ՝ հանգչէր ՚ի
սիւրիա (բերեալ ՚ի սինոպէ). որ յետ բա-
զում լլկանաց՝ զոր կրեաց վ՟ն անուա՛ն փրկ-
չին, որպէս և զիա՛րդ յաղթօղ գտաւ ըդ՟էմ
հնոյ օձին՝ հռչակի ՚ի ժողովուրդս մինչև
ցայսօր. մինչ զի եթէ զոք ՚ի տեղիսդ յայսո-
սիկ հարկանիցէ օձ, և թափեսցէ ՚ի նա ըզ-
թոյն իւր, ՟է մերձենալ օձահարին ՚ի դուռն
դաւթին՝ ուր վկայն հանգչէր, զիջանի այ-
տուցն, և թափի զօրուն թունիցն և բժշկի.
Նորոց ումանք՝ ոչ հանդիսացեալ իսկ է, յետ
այտուցեալ գոլոյ յերեսաց հարուածոյ չար-
դազանին, և զկնի ճարակելոյ թունից ընդ
մարմինն ողջայն, ՚ի դուռն մահու հասեալ,
իւ

իբրև բարձան 'ի ձեռն այլոց և եղան 'ի գաւ-
թին , բժշկեցան : Աստի ոչ երբեք մարթ է
թունից սպանանել զոք , եթէ կատարեալ
հաւատով դիմեսցէ 'ի սեամս անդր նոյն տա-
ճարին || : Իւր նշանակի , թէ տաճար և նըշ-
խարք նոյն փոխասայ սքանչելագործի կային
յայլ և այլ տեղիս . այլ ոչ ցուցանի , թէ իցէ
այլ ոք փոխաս . թէպէտև բանիւ՞ նորին տու-
րօնեցւոյ եղեալ կայ ուրոյն 'ի լատին յայս-
մաւուրս 'ի մարտի 5 . փոխասս այս ոմն զա-
նազանեալ յառաջնոյն :

Ո՛չ է մարթ զանազանել և զփոխաս՝ զոր յի-
շեն յոյնք 'ի ժամագիրս իւրեանց 'ի 2 . օ-
գոստ . ԹՆ նաւակատեաց տաճարի սբյն յով-
հաննու աւետարանչի 'ի կոստանդինուպօ-
լիս . զի անդանօր երևի լինել յիշատակ ա-
ռաջնոյն փոխասու , զոր դիտեք 'ի սեպտ . 22 .
կոչեն աշակերտ յովհաննու , ԹՆ որում էր 'ի
ժամանակս առաքելոց և աշակերտաց : Այլ
է փոխաս ոմն նշանակեալ 'ի ժամագիրս յու-
նաց . դեկտ . 18 . նահատակակից երմողեայ՝
բանիւքս այսոքիւք . * Յիշատակ սբց վկայ-
,, իցն փոխայ և երմողեայ՝ սրով կատարե-
,, լոցն : Սա նախ գլխատեցայց ասէ երմիւ-
,, ղոս . ոչ երմիւղէ՝ ասէ փոխաս , այլ՝ փոխաս || :
Այլ և այլ է փոխաս՝ մի յորդւոցն սբց վկայից
տերենտիոսի և նէոնիլայ , ԹՆ ժամագր . յն .
հոկտ . 28 : Այլ ասի լինել փոխաս կամ փո-
կասոս յիշատակեալ առ վկայագիրս սպա-
նիացւոց 'ի յուլիսի . 14 : Այդ եթէ մի իցէ
երևելին փոխաս սքանչելագործ , և եթէ

աւելի քան զմի , աներկբայ հաստանէ բարե-
խօսութիւն սրբոյն՝ որոց հաւատով կարդան զա-
նուն նորա , 'ի փառս փրկչին՝ որ փառաւորէ
զսուրբս իւր , և փառաւորեալ է 'ի նոսա ։

Իսկ ՟Է այսմ առանձին յիշատակ լինի սքան-
չելեաց սրբոյն Փոկասու 'ի Բասիլեան յայսմա-
ւուրս յունաց 'ի յուլիսի . 6 . այսպէս ասե-
լով բանիւն . * Պատմեաց Լեոն մականուա-
նեալն պոնտիանոս ( կամ պոնտացի ) , եթէ
սիսխանոսն այն՝ որ կոչի բոդիվառոս ( ՟թ թաւ-
կմ յաղթանդամ ) , նաւարկեալ ՟Է նաւաստո-
միրդ արքունի՝ ձերբակալ եղև 'ի սարակինո-
սաց . և կապեալ կրկին շղթայիւք՝ փակեցաւ
'ի բանտ ։ Որդ յայսպիսի անձկութեան պա-
րաւանդեալ՝ կարդայր առ ՟Ած , և առ ՟Սբ
վկայն ՟Նր Փոկաս , ասելով . ո՛վ ՟Սբ և փառա-
ւորեալ Փոկաս ողորմեա՛ ինձ , և ազատեա՛
զիս յանձկութէ կապանացս պարաւանդելոց
զինև ։ Իսկ նիրհեալ՝ տեսանէ զսուրբն կացեալ
'ի մէջ ՟Նր 'ի զգեստ երիցու , զի ասէր . արի՛
և մեկնեա՛ 'ի բաց ։ Իսկ զարթուցեալ 'ի քնոյ՝
եգիտ զշղթայսն խորտակեալ , և զանձն արձա-
կեալ , և զբանտն բացեալ . և փախուցեալ զերծաւ
մինչև 'ի տուն իւր . և կատարէր միշտ զյիշա-
տակ ՟Նր գոհութ՟ համդերձ բազմաւ . և փա-
ռաւոր առնէր զ՟Ած՝ զտօնօղն զայնպիսի շը-
նորհս սրբոյ իւրոյ ‖ ։ (1)

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ։

(1) Եթէ ոչ գտնէաք ուրոյն ուրոյն զպատմութիւս աւանդեալս 'ի զանազանից զՄըէյն փոկայ իբրև զզանազանից, երկարապատում լինէաք 'ի կարգի ծանօթութեանց. բայց ոմ կարծեմ, այժմ չկարօտիմք բազում բանից, ուր ընթերցօղք ինքնին տեսին բանիւք նոցին իսկ մատենագրաց՝ թէ ոչ այնչափ փոկաս կայ բազում, որչափ զմիոյ սմին բազմապատիկ է աւանդութիւն։ Եւ ահա զհակառակն տեսանեմք առ կուպերայ բոլլանդեան՝ որ 'ի 14. յուլիսի յերկարեալ զծանօթութիւս, որչափ բազումս աշխատասիրէ 'ի քննութիւն, նոյնչափ և տարանալ մեզ թուէր 'ի ստուգուէ. մանաւանդ 'ի գնելն՝ թէ այլ լիցէ փոկաս անտիոքացի, այլ փոկաս պոնտացի, այլ փոկաս պարտիզպան, են, մինչև վեց և եօթն փոկասս առնել. և ապա երկբայիլ և վիճել. արդեօք առ հասարակ զանազանեալ անձի՞նք իցեն նքա, եթէ ոմանք ընդ ոմանս խառնել. և երանի՞ թէ որոշէր ինչ 'ի տալ մեզ զլոյս. և սակայն նա առաւել զանազանեալս առդնելով՝ կարծէ զերծանիլ 'ի դժուարութեանց. այլ ոչ զերծանի. ոմ յայտ է՝ որոց ակնարկեն 'ի բանս նր։

Հաւան է մեզ այն, զի և ինքն կուպեր վկայէ՝ թէ բարոնիոս նոյնացոյց զանտիոքացին ը պարտիզպանին. ոմ և մեզ երևի նոյն. և թէ տիղեմոնտիոս և այլք միացուցին զպարտիզպանն ը եպսին. ոմ և մեք չկարեմք զանազանել։ Իսկ կուպեր՝ որ կամի զանազանել, պաշարի յերկուց կողմանց իւրովք բանիւք. զի 'ի միոյ կողմանէ այնպէ իրաւամբք, թէ յետ եկեղեցիս հանդիսացեալ է սբն փոկաս եպս սինոպայ. և 'ի միւս կողմանէ հայեցեալ 'ի բանս աստերիոսի՝ որ զպարտիզպանէն խօսի իբրև զմի միայն փոկայ հանդիսացելոյ յետ եկեղեցիս, հարկաւորի ասել՝ թէ բուն հրաշագործն է պարտիզպանն. և սակայն անդրէն զհակառակն վկայէ, թէ բովանդակ ազգ յունաց 'ի սկզբանէ և այսր զփոկաս հայրապետն իմանան անուանմբս փոկաս թաւմադուրղօս, կմ թոլլաօթաւմադուրղօս. այսինքն սքանչելագործ, կմ ծովահրաշագործ։

Ոչինչ օգտէ կուպերայ և ձայնակցութիւն կոմբեֆի-

ղպյ. որ 'ի ծանօթութիս պարտիզպանին գրէ այսպէս.
* Զբաղումս 'ի սքանչելեաց աստանօր յաստերիոսէ ըն-
« ծայեալս փոկասու պարտիզպանի՝ յոյնք 'ի գիրս պաշ-
« տամանց իւրեանց ընծայեն եպսին, զոր յայն սակս
« սքանչելագործ կոչեն, և ոչ նոյնպէս զփոկաս պար-
« տիզպանն. մինչ զի ամիմ հարկ է ասել, թէ աստե-
« րիոս հոմանունութբ պատրեալ իցէ. և այն ինչ հան-
« դիպեալ իցէ նմա, որ ինչ հանդիպեցաւ գրեգորէ
« (ածաբանի) 'ի կիպրիանոսն, 'ի նոյնացուցանել նորա
« զկիպրիանոս կախարդն և զկիպրիանոս եպսն. . . .
« կարէր փոկաս պարտիզպանն այնպէս պայծառանալ
« 'ի գարուն աստերիոսի, և ը նմին այնպէս հռչակա-
« ւոր յիշատակ ունել 'ի պոնտոս, մինչև ազօտացուցա-
« նել զեպսն փոկաս առաջի բազմաց աւխացեալց, և նո-
« րին իսկ աստերիոսի. զոր և յայլս գիտեմք պատա-
« հեալ. որպէս և 'ի մր հայրն մեր դոմինիկոս, և 'ի հա-
« մանուանն նր դոմինիկոս ուխտացի հնագոյն քան զնա՝ 'ի
« ուղիս ուղիս սպանիոյ || : Նոյնպէս ոգւով խօսի և կու-
պիէր :

Բայց թող զենթադրութիւն ցուցանելի, անհանդէպ են և օրինակքն, և առաւել մերոց կարծեաց նպաստաւոր. զի ըստ մեզ և կիպրիանոս ոչ է երկու, այլ մի. որպէս ցուցաք 'ի ծանօթութիս վարուց նր. իսկ դոմինիկոս թէպէտև բազմացեալ իցէ, բայց յայտ է թէ 'ի յայտնել երկրորդին՝ առաջինն լռեաց. զի երկրորդն այն՝ եղև զօրութբ առաջին, մինչ զի ամ որ ճանաչէ զայդ անուն, զմին դոմինիկոս հիմնադիր քարոզչաց իմանայ. և սակայն ՟Է հակառակն՝ թէև դիցուք զերկրորդ ոմն փոկաս պարտիզպան, այլ միշտ առաջինն փոկաս՝ որ էր եպս, այնպէս հանդիսացեալ է, զի զնա միայն գիտեն ամ եկեղեցիք մինչև ցայժմ. և սակաւք են՝ որ գիտիցեն թէ կայցէ և այլ ոք փոկաս անուամբ նր :

Եթէ կամիցին քննիչք գտնել և զայլ ոք փոկաս արևմտեան, որոյ նշխարքն լեալ իցեն 'ի հռովմ կմ 'ի գաղղիա, և չփոյթութբ անուան համարեալ նոյն ընդ արևելեան սբյ, այդմ ոչ հակառակիմք. այլ ունիմք վկայ և զպայամաւուրս մեր, որ ասէ զփոկաս ոմն եպս լեալ 'ի հռովմ քաղաքի. բայց և այդ անստոյգ մեզ թուի : Զարմանամք, զի և զնշխարացն և զատաճարէն հռովմայ յիշատակելոց յաստերիոսէ այսպէս երկուճանոք խօսի կոմբեֆիզ. * Զարմանք են (ասէ), զի փոկասու այնչափ
« հռչ-

․ հաղորդաւոր յիշատակին 'ի Հռովմ առ ժամանակօք Ա_
․ նաստասի՝ յետոյ այնպէս աղօտացեալ իցէ, մինչև ե_
․ րևիլ՝ թէ ընաւ իսկ լեալ իցէ ոչ: Եւ արդարև չէղև
․ երբէք մարթ գտանել զայսր տաճարի զհնացուածս և
․ զանուն 'ի մէջ արքայական յիշատակարանաց Նոր Հռով_
․ մայ՝ որք կան 'ի լոյս ընծայեալ․ այլ և ոչ այն, թէ
․ ուր պահի ոք զգլուխն այն 'ի քաղաքին ||: Բայց ընդ
հակառակն գրէ կուպեր բոլլանդեան, թէ * Պանկի_
․ րոլոս 'ի ծածկեալ գանձս մեծին Հռովմայ․ Երես․ 367․
․ ասէ, թէ մարմին սրբոյն փոկասու պահի 'ի Հռովմ յե_
․ կեղեցւոջ սրբոյն մարկեղոսի․ և թէ՝ զայն անդանօր
․ այց արարեալ եաես կղեմէս Ը․ յամի 1594 ․․․․ Եւ
․ դոյր իսկ սակաւքն 'ի Հռովմ եկեղեցի սրբոյն փոկասու
․ 'ի ժամանակս գրիգորի Է ||, որ նստաւ յամի․ 1073:
Ըստ այսմ ունիմք ասել, թէ նաև նշխարք ո՛ր և է սրբոյն
փոկասու տարեալք 'ի գաղղիա՝ գուցէ 'ի Հռովմայ բե_
րեալ իցեն անդր․ ուր և կային 'ի ԺԹ․ դարու․ քանզի
գրեալ է 'ի կոնդակին ինոկենտեոսի չորրորդի Հռով_
մայ հայրապետի, զոր բերէ և կուպեր, այսպէս․ * Ին_
․ նովկենտիոս ․․․ աբբայի և միաբանից ուխտին սրբոյն
․ պետրոսի արտաքոյ դրան վեննայու (գաղղիացւոց) ․․․
․ Արդ որովհետև՝ այդ փոյթ կալջիք զեկուցանել մեզ,
․ սիրելի որդեակք մեր՝ հուպան սրբոյն ապրիլեայ, և
․ վիլլերմիս տաճարի երկոտասան առաքելոց՝ երեցունք
․ կարդինալք, ԶԲ հարցանելոյ մերոյ յայս արարին մեզ
․ զմարմին երանելւոյն փոկասու երբեմն վկայի և քա_
․ հանայապետի, որ ամփոփեալն էր 'ի վանս ձեր, ցան_
․ կանալով մեր՝ զի 'ի վանս ձեր լինիցի յաճախութիւն
․ արժանաւոր յարգութեան 'ի պատիւ նորին սրբոյ, ամե_
․ նեցուն սուրբ դասակէս զձայնեցելոց և խոստովանողաց՝ որ
․ միանգամ մեծարանօք այց առնիցեն ձերում մենաս_
․ տանի 'ի տարեդարձ աւուր յայտնութեան նախաճաշակէլ
․ սրբոյդ, ապաւինեալք 'ի մարդասիրութեան ամենակալին
․ այ, և յիշխանութեան երանելի առաքելոցն պետրոսի և
․ պօղոսի, Խ աւուրս թողացուցանեմք զթասարաբար
․ յապաշխարութեանց եդելոց 'ի վերայ նց: Տուեալ 'ի լուգ_
․ դոն 'ի Ժ կաղանդեց ապրիլի 'ի Է ամի քհնյապետութեան
․ մերոյ ||․ այն է յամի տն․ 1250:
Արդ եթէ զպոնտացւոյն փոկասէ հայրապետէ իցեն
բանքս, և եթէ զայլմէ անուանակից եպիսկ յարեմուտս,
'ի դէպ դան կրկին անուանց փոկաս անուանելոց 'ի Հյ․
սմայս․ 22․ և յուլ․ 23․ այլ տարժանելի դարձ է որս_

չէր, թէ արդեօք մի՛ միան իցէ սբն փոխան յիշատակելոյ յայն երկուս տեղիս, եթէ երկու. զոր թողումք այլոց իմաստասիրել՝ հայելով 'ի նմանութին և յաննմանութին առաջին և երկրորդ վարուց, զոր եդաք։

Միայն զայս խոստովանիմք և այդ ասեմք բանաւորաց, զի եթէ յստակ ասասցեմք զվկայաբանութիւն Ճառընտրաց յաղագս փոխանու հայրապետին սիոնայ հանդերձ նախընթաց պատմութ. ծննդեան և ննջեան նր, ոչ ինչ գանդաղեմք վճռել՝ թէ սխալին Հ. և Յ. 'ի բաժանել զմի փոխան յերկուս. բայց ասասցեմք, զի խառնակութիւն բանից Ճառընտրաց յայսմ մասին՝ հարկեցուցեալ է զյօրինօղս յայսմաւուրաց յերկուս զատանել զփոխան։ Զայս ցաւ մեր անգիտացեալ կուսակրոյ՝ ցաւի ինքն, թէ * ոչինչ գործս գիտեմք զվկայիս մերոյ „ յառաջ քան զեպիսկոպոսութիւն ||. վս զի պակասի յայժմու յունական և 'ի լատին օրինակս առաջին մասն վկայաբանութեան Ճառընտրաց, յն ծնունդ և սնունդ սրբյն. և միայն երկրորդ մասն գտանի՝ որ է նահատակութիւն. և զայսու միայն յածի քննութիւն կուսակրոյ սովորական սապատանօք վս երկայնաբան ոճոյն և այլ.քանի մի թերութեանց, մինչև Է երկբայական գրել զպատմութիւն ամբողջն. և զի՞նչ ունէր ասել, եթէ և զառաջին մասն տեսանէր, որ այնչափ տարբեր գտանի յառաջնոյն, մինչև յայսմաւուրք յունաց և հայոց այլ և այլ սբյ են համարեալ վարս զերկին մասունս մի և նոյն վարուց, քաղելով զերկոսեանն յերկուս զանազան տեղիս։

Խառնակութիւն Ճառընտրաց՝ է առաւել քան երկուց գլխոց. Նախ՝ առաջին մասն պատմութե, յն ծնունդ և սնունդ սբյն փոխանու՝ այնպէս մանրամասն և կարգաւորեալ համդամանօք է յօրինեալ, ոչ թէ յետին դարուց սովորութեց իցէ յանկարծ, սկսեալ յութերեայ մկրտութէ մինչև յորոշեալ ամս սարկաւագութե, քահանայութե և եպսութե, առանց նշանակելոյ՝ թէ մ ոք յառաջնոց աւանդեաց զայսոսիկ. և միթէ գիր ոք այնպէս մանրապատում գրէր վարուց առ առաքելովք, առ որովք ենթադրի ծնեալ փոխան, և նահատակեալ։ Բայց եդեալ՝ թէ երիցունք եկեղեցւոյն սիոնայ կմ պոնտացւոց, որք ցուցանեն զինքեանս գրիչ յաջորդ վկայաբանութե, իբրև յականատեսից առեալ և գրեալ իցեն նաև զմանկութիւն նր, ոչ գրեցաւ և մանկութե սբյն պղեկարապետ ժամանակակցի նր, առակաւին չերևի այնչափ միաբանել երկրորդ մասն Է առաջնոյն. զի

զի երկրորդն սկսանի իբրև նոր թուղթ շըջաբերական, և այն այլով ոճով՝ առաւել վսեմագունիւ։

Երկրորդ՝ զի թէպէտև գրիչն առաջին մասին ոչ ցուցանէ զանձն ժամակից լինել. այլ գրիչք երկրորդին ամ իրք հաստատեն 'ի սկզբան, յընթացս և 'ի կատարածի, թէ են ժամանակակից և ականատես, բայց համարմունթի գրութեն միօրինակ պակաս երևի յառաջնումն և յերկրորդումն։ Յառաջնումն, զի գրէ՝ թէ սքն փոկաս յաղօթել անդ վն ազատութն նաւուն վտանգելոյ 'ի պոնտոս, բայց յայլոց բանից ասացեալ իցէ և զայս. * Ոչ և 'ի ձեռն սքյն գրիգորի սքանչելագործի
„ զծովն ցամաքեցուցեր, և արարեր խաղաղութի երկուց
„ եղբարց բարբարոսաց. զերկիրն վիճակաւ տուեալ
„ առաւել քան զառաջինն շահիւք մեծարեալ 'ի փառս
„ և 'ի պատիւ քեզ ||։ Արդ քանզի գրիգոր սքանչելագործ յետոյ էր բազմօք քան զփոկաս, ապա կամ գրիչն և կմ օրինակագիրն անգէտ հնութե՝ յարմարեալ է զայս բան եղծիչ պատմութե և ժամագրութե։

Եւ յերկրորդումն, զի վկայաբանս կմ օրինակօղ նր ոչ միայն զանսակս ինչ տանջանաց և զայլ ինչ գործս՝ յայլոց վկայաբանութեց երևի 'ի փոխ առեալ, այլև որ մեծն է՝ զմեծ մասն առեւնախօսութե օրինակեալ է 'ի վկայաբանութէ սքյն եւղոմպէոսի. մանաւանդ զեղանակ կործանելոյ նր զկուռս. այլ տեսանէ՝ որ բաղդատէ զերկոսեանն. որում ոչ են ուշ եդեալ այլք 'ի քննչաց. ապա թէ ոչ՝ բաւական էր այս և եթ եղծանել զվկայաբանութիւն փոկասեան, և չկայր կարօտութի այլոց բանից՝ զորս կրկնէ կուպեր այլովքն հանդերձ։ Եւ անհնար այսպիսի խառնակութի գրչաց կմ օրինակագրաց յետս կասեցոյց զմեզ 'ի հետևելոյ ձեռընտրաց յայսմ մասին. նմին իրի Ը յայսմաւուրացն բաժանման՝ որք թերևս 'ի լաւագոյն օրինակէ են առեալ, կարճատելով և կարկատելով բերաք զբանս ձեռընտրաց. և այնպէս խառն Ը ծանօթութե գրեցաք զվարս ընծայեալս սքյն փոկասու. զի առ այժմ չգտաք զայլ ճանապարհ, և ոչ աւելի ինչ նպաստ ընկալաք յիմաստուն քննողաց։

ՎԿԱՑ.



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբյն Իրանոսի Հետեւողի առաքելոցն : (1)

Հ. Պատրեր. Պր. երես ձխԴ = ձխԷ : Յ. օգոստ. 23 : Լ. յունիս. 28 : Նոյեմբ. պատմ. եկեղ. Է. 4 = 26. եա : Պորփիւր. տաճարաց. պատմ. գաղղ. ա. 27 : Սուլլամիրեանն բանբերքն. հատ. Է. յունիսի. էջ. 335 = 349. և յանուարի. հատ. Է. յունիսի. մասն. ա. էջ. 264 = 271 :



ԱՌԱՔԵԼԱՆՄԱՆ նս հայրապետեան Իրանոս, որ և Երենէոս կմ Իրինէոս, փառք և պարծանք արեւելեան և արեւմտեան եկեղեցեաց, էր հայրենեօք ՚ի փոքրն Ասիոյ ՚ի կողմանց զմիւռնոյ, ծնեալ յամի նն իբր 120. և աշակերտեալ ՚ի մանկութենէ առ ոտս սրբյն պօղիկարպոսի զմիւռնոյ հայրապետի՝ աշակերտի սրբյն յովհաննու աւետարանչի : Նա զի էր մանուկ մտավարժ և լի ոգւով, շտեմարանէր յաման միտս և ՚ի ծոցս սրտի իւրոյ զամ զոր լսէր ՚ի պօղիկարպոսէ յաղագս գալստեան փրկչին յս և փրկական անօրէնութեանց նր, և քարոզութն առաքելոց և աշակերտաց. մինգամայն ներհուն գտեալ ՚ի գիրս հին և նոր կտակարանաց՝ գան-

զանձարան լինէր մ̃ծ այլին տառից և առա-
քելական աւանդից, և տիրապէս հետևող
առաքելոց, և հարազատ յաջորդ աշակեր-
տաց նց̃. մինչ զի և զկնի հարուստ մի ամսոց
'ի վիճել ը̃ հերետիկոսս՝ 'ի մէջ առնոյր ըզ-
քանս պօղիկարպոսի անմոռաց ամբարեալս
յինքեան. ը̃ որում յառաջ բերաք 'ի ծանօ-
թութիս վարուց սբ̃յն պօղիկարպոսի զքանս
սորին երանոսի ը̃դէմ մոլորելոյն փլորինո-
սի՝ նոր թարգմանութ̃բ. զոր և արժան է
երկրորդել աստանօր ը̃ հին թարգմանուե̃.
* Զայս (ասէ) ուսմունքս՝ փ՛լորինէ, չէին
առողջք, և ոչ էին միաբան ը̃ եկեղեցւոյ.
զայս ուսմունքս երիցունք՝ որ եղեն յառաջ
քան զմեզ, որք էին աշակերտք առաքելոցն,
ոչ ետուն քեզ. զի տեսի ես զքեզ յասիա
ներքին, և մինչ տղայ էի առ պօղիկարպոսի
'ի սրահս փողոցացն՝ և սքանչելապէս գնայ-
իր դու, և զօրանայիր զփորձ տալ և զհան-
դէս ցուցանել առ նա. զի առաւել յիշեմ ես
զայն՝ որ յայնմ ժամանակի էր, քան զայս՝
որ այժմ գործի. զի ուսումն մանկութ̃ ը̃
նմին ը̃ շնչոյն աճէ, և խառնի ը̃ նմա: Ու-
մ̃ւ այնորիկ կարեմ ասել զտեղին, յորում
նստէր և ուսուցանէր պօղիկարպոս. և յի-
շեմ զելս նր̃ և զմուտս նր̃, և զնմանութի̃
վարուց նր̃, և զուսումն՝ զոր ուսուցանէր ժո-
ղովրդեանն, և զգնացսն՝ որ գնայր նա ընդ
յովհաննու աւետարանչին, և ընդ այլս՝ որ
տեսին զտ̃րն մեր, ոնպ̃ պատմէր մեզ՝ թէ զի-
արդ յիշէ նա զբանս նոցա ... և լսէի ես, և

դնէի

ղնէի զնմ 'ի մտի, և հանապազ շնորհօքն տ̃յ սիրով յիշեմ զնմ. և կարեմ վկայել ես առաջի տ̃յ, զի եթէ լսէր ինչ երանելին՝ որ արտաքոյ վ̃դ̃պութե առաքելոցն էր, խնոյր զականջս իւր, և ասէր. ով բարերար տ̃ծ, որոց ժամանակաց պահեցեր զմեզ, զի համբերից և յայսմ, և լուայց զայսպիսի բանս. և փախչէր 'ի տեղւոջէ անտի՝ յոր կայրն, կմ̃նատէր անդր, յորժամ լսէր զայսպիսի բանս խոտանս ||:

Որդ՝ ոմ 'ի սրբյն պօղիկարպոսէ ուսեալ էր երանելին երանոս զն̃մ ողջամիտ վ̃դ̃պութի, նոյնպէս և 'ի սրբյն պապիայ յերապօլսոյ եպիսկոպոսէն ուսաւ բազում ինչ. վ̃յ նր̃ և աշակերտ առի. մինչ զի և վրիպական կարծիքն պապիայ՝ որ վ̃ս հազարամեան թագաւորութե ք̃ի, ածանցեալ գտաւ 'ի գիրս երանոսի. բայց առանց իրիք վ̃նասու, զի չև էր 'ի ժամանակին մանրախուզիւ սահմանեալ յեկեղեցւոյ հակառակն սխալական այնմ վ̃դ̃պութե: Հմուտ էր երանոս և արտաքին իմաստից, և անվեհեր յաղթահարէր զհելլենացիս զօրաւոր բանիւ և գրով. քանզի գրեաց և բազում գիրս և թուղթս լի իմաստութբ և առաքելական հոգւով ընդդէմ հեթանոսաց և հերձուածողաց ժամանակին, կէս մի յերիտասարդութե, և կէս մի 'ի ծերութե, եթէ 'ի յոյն բարբառ, և եթէ 'ի հռովմայեցի:

Օ ի մինչդեռ էր նա յերիտասարդական հասակի, ձեռնադրեաց զնա սրբն պօղիկարպոս

'ի

'ի սարկաւագութին և 'ի քահանայութին. և
տեսեալ զերանգն հոգւոյ նր և զաջողակութ
յառաքելական պաշտօն՝ առաքեաց զնա յա-
մի տն իբր 157, յարևմուտս յԾն գաղղիաց-
ւոց՝ լինել օգնական սրբյն պոլթինոսի կմփո-
տլինոսի առաջին եպսին ղուգդունայ. զի էր
նա ծերացեալ յոյժ և կարօտ պաշտօնակցի
'ի հովուել զեկեղեցի իւր 'ի մէջ հալածա-
նաց: Սոյն անտուստ՝ յամի 178. առաքեցաւ
'ի հռովմ առ Սբ հայրապետն Եղևթերիոս՝
վս պիտոյից ինչ եկեղեցւոյ. ուր յետ 'ի
գլուխ տանելոյ զգործն՝ վիճեցաւ և ը վա-
ղենտիանոսի հերեսիովտապետի, և ը եր-
կու աշակերտաց նր փղորիանոսի և բլաստո-
սի. և յամօթ արար զնս բանիւ և գրով:
Սոյն եղև յորժամ դարձաւ 'ի ղուգդունն գաղ-
ղիացւոց, 'ի նմին իսկ տարւոջ յարեաւ հալա-
ծումն մեծ 'ի վր քրիստոնէից 'ի վերուստ կայ-
սերէ. և նահատակեցան բազումք 'ի գաղ-
ղիա ընդ Սբյն պոլթինոսի, որ. անցեալ էր
զիննամենիւք: Որոց զպանծալի վկայութ
գրեցին երիցունք եկեղեցւոյն ղուգդունայ
և վիեննայու առ արևելեայս 'ի յորդոր քա-
ջալերութն ամ հաւատացելոց. իսկ բուն
շարագրող նամակին՝ զոր ամբողջ 'ի մէջ բե-
րէ եւսեբիոս, կարծի լինել նա իւքն Սբ ե-
րեցն երանոս. որ և միաձայն հաւանութբ բո-
լորեցուն կալաւ զաթոռ եպսութն ղուգդու-
նացւոց, եղեալ երկրորդ եպկս ղուգդունայ
զկնի պոլթինոսի. և ծանուցաւ արդեամբք
արժանաւոր գլուխ եկեղեցւոյն գաղղիաց-
ւոց,

ւոց, և հովիւ քաջ բանաւոր հօտի՝ լցեալ բարեպաշտութեամբ և աստուածային նախանձու, պատկառելի յաչս ամենեցուն՝ մերձաւորաց և հեռաւորաց. որ և զբազումս դարձոյց յանհաւատից գեղեցիկ քարոզութեամբ բանին Այ՝ նշանօք և արուեստիւք հանդերձ. և պահեաց զհաւատացեալս յամ փորձանաց չարին :

Եղև և ըստ արդեանց անուան իւրոյ խաղաղարար 'ի մէջ եկեղեցւոյ՝ 'ի յոյժ երկպառակութենէ արևմտեայց և ասիացւոց վասն աւուր տօնի զատկին. զի ըստ գրելոյ ճառընտրաց մերոց 'ի բանից Եւսեբի, եկեղեցիք ասիացւոց՝ այս է փոքուն ասիոյ, և այլք բազումք՝ իբրև յառաջին տուչութենէ զչորեքտասան օր լուսնին պահէին, և առնէին զօր տօնի փրկութեն զատկին, յորում աւուր և դիպէր 'ի մէջ շաբաթուն. զի զօր չարչարանացն կատարէին յաւուր՝ յորում զգառնն զենուին հրեայքն, ըստ նմին և զօր յարութեն՝ ըստ որում աւուր և դիպէր 'ի շաբաթուն, և ոչ բերէին 'ի միաշաբաթն : Եւ այս ոչ եղև հաճոյ այլոց հովուաց, մանաւանդ երանելւոյն բեկտորի եպսին հռովմայ. որ յԱյ շարժեցաւ և արար ժողով եպսաց. Նոյնպէս և երանոս արար ժողով 'ի գաղղիա, և այլք յաթոռոց տեղեաց տեղեաց. և ամենեքին 'ի միոջէ խորհրդոյ 'ի մի միտս միաբանեցան ըստ բեկտորի, և գրեցին թուղթս առ ամ եկեղեցիս յամ Այս, թէ մի՛ եղիցի պաշտել զխորհուրդ յարութեն տն մերոյ ՅԻ ՔԻ, բայց յաւուր

ւուր միաշաբաթոյ։

Բայց քանզի տակաւին անհաւան լինէին ա- սիացիք, վ՟ն եպսն հռովմայ բեկտոր՝ զի էր յաթոռ առաքելոյն, կամեցաւ զա՟մ եկեղե- ցիսն ասիացւոց հանդերձ ա՟մ եկեղեցակա- նօքն՝ որ ոչ հաւանէին այսմ կանոնի, հատա- նել ընկենուլ զամենեսեան միանգամայն 'ի հաստատութենէ հասարակաց եկեղեցեաց. և քարոզեաց և կարդաց 'ի ձեռն թղթոյ 'ի միաւորին զա՟մ եղբարսն։ Յայնժամ միւսան- գամ ժողով արարեալ ս՟րբյն երանոսի 'ի ղուգ- դոն միաբանութ՟բ ուխտի եկեղեցւոյն իւրոյ՝ գրեաց առ բեկտոր, թէ ո՛չ էր արժան հա- տանել զա՟մ եկեղեցիս խստութ՟բ, այլ խրա- տել զն՟ս եղբայրաբար վ՟րդպութ՟բ գրոց. զի և ն՟ք ո՛չ յանձանց հնարեցին զայս, այլ զի այնպէս գտին սովորութի յառաջին հօրանց իւրեանց. ո՞րպ և զպահսն՝ որ յառաջ ք՟ զտ՟ն յարութ՟ն, ոմանք սակաւ աւուրբք, և ոմանք բազմօք սովորեցան պահել 'ի ժամանակս եպսաց եղելոց յառաջ ք՟ զմեզ. և թէպէտև բաժինք պահոց էին, սակայն միաբանութի հաւատոցն հաստատութն էր։

Զայս ա՟մ և առաւել քան զսոյն գրեաց Ե- րանոս, որ կատարեալ միաբանի անուան իւ- րոյ՝ խաղաղարար գոլ. և զնոյն խաղաղութի աղաչէր և խնդրէր 'ի բեկտորէ. և նա ան- սաց նմա սիրով, ո՞րպ և այլ աթոռոց միջնորդ եղելոց խաղաղութե. և ոչ ստիպեաց զասիա- ցիսն. մինչև յետ ժամանակաց եղև ն՟ց միա- բանիլ ը՟ն հասարակաց սովորութե եկեղեց- ւոյ,

ւոյ , առ որ խնամով յորդորէր զամենեսին և նա ինքն երանելին երանեաս զա̃մ աւուրս իւր ։ Սոյնպէս հետևեալ քարոզութե̃ առաքելոցն կարգօք և կրօնիւք , և լուսաւորեալ վկայութե̃ գրով և բանիւք զեկեղեցիս նոյ՝ արժանի եղև 'ի վախճանի նաև վկայական պսակի յամի տն̃ 202 կմ̃ 203 , ըս̃ այլոց 207 ։ Իսկ զօրինակ վկայաբանութե̃ նր̃ գտեալ 'ի բարբառ հռովմայեցւոց 'ի հին ձառընտիրս եկեղեցւոյն գաղղիացւոց , որում ձայնակցին և նքն գրիգոր տուրոնեցի և ադոնն վիեննացի , թարգմանաբար գիցուք աստանօր , ունելով բանին այսպէս ։

'Ի ժամանակին՝ յորում ըժնդակ հրովարտակք սևերոսի կայսեր հրատարակէին ընդ ա̃մ տիեզերս՝ բնաջինջ առնել զքրիստոնեայս , մինչև սաստկութե̃ հալածանաց ըղմնտալուս կատարած թուի սպառնալ , 'ի յառանել քաղաքական կռոց ը̃դէմ նր̃՝ ինքնին սևերոս դիմեալ անցանէ 'ի գաղղիա ․ և ըսպանեալ առ լուգդոն քաղաքաւ զկղօգիոս ալբինոս՝ որոյ անդանօր անձամբ զանձն կեսար էր կացուցեալ , իբրև լուաւ՝ թէ քաղաքն այն բարեկեցիկ 'ի ձեռն նքյն երանուսի դիմակաց գտանի իւրոցն պաշտամանց , ընտրեաց ըս̃ իւրումն մոլեգին բարուց արս սրիկայս գազանամիտս ․ և պատուէր տուեալ նց̃ շուրջ պատել զքաղաքն յա̃մ կողմանց , առէք ասէ զդրունս , պատեցէք զտունս ․ և որ միանգամ ոչն զոհիցեն ա̃ծոց մերոց , կոտորեցէք անողորմ 'ի բերան սրոյ ։

Բայց մարդասիրութիւն Քրիստոսի յայտնեաց նորին Երանոսի զվտանգն առաջիկայ՝ պատգամաւորութեամբ հրեշտակի. զի ուր տքնութեամբ զգիշերն անցուցանէր յաղօթս՝ աղօթակից ունելով զերանելի երէցն զԶաքարիա, զհասարակ գիշերաւ յանկարծակի եկն եկաց առ նմա հրեշտակ տեառն, և այսպէս խօսեցաւ առ նա քահանայն Երանոս. Մի՛ հաւատարիմ զօրական Քրիստոսի՝ զօրավար նորընտիր զօրու, զքեզ յետ թագուոր վաստակոց տեառն հանդերձ ժողովրդեամբ քով յերկնից արքայութիւն հրաւիրէ բարեխնաւ վկայութեամբ. և արդ քաջալերեա՛ զեղբարս, զի աներկիւղ լիցի հարազատութիւն նոցա. զի ահա մերձ Քրիստոսի՝ զոր կատարեալ հաւատով սիրեն, 'ի վերայ հասեալ կայ նոցա մարտախոշոշ թանաւորն, և սպասեալ մնայ նոցա պանծալի հանդէս նահատակութեան. Մի՛ երկիցեն 'ի սպառնալեաց հինի թշնամւոյն, և ոչ յայնմանէ՝ որ զմարմինն սպանանէ, այլ զհոգին ոչ կարէ սպանանել: Այլ զնա միոյ ժամու չարչարանքն կատարեսցէ. իսկ քեզ մնայ երկարատև նահատակութեան և պանծագոյն յաղթանակ: Եւ զԶաքարիա երէց փութա՛ խնամով թաքուցանել, զի զկնի ելանելոյ քո յաստեաց փոխանակեալ զտեղի քո՝ հաստատեսցէ զեղբարս 'ի Քրիստոս:

Զայսպիսի լուեալ նորին Երանոսի՝ ասէ. գոհանամ զքէն տէր Յիսուս Քրիստոս, լոյս յաւիտենական, ծագումն արդարութեան, աղբիւր գթութեան, զի այսպէս արժանի համարեցար ուրախ առնել զիս 'ի ձեռն հրեշտակի քո և մխիթարել.

տուր ինձ և ժողովրդեանս քո այսմ հաստա-
տութիւն, զի մի ոք 'ի նոցանէ պակասեսցի 'ի
խոստովանութենէ անուանդ քո. այլ քոյով ամ-
րացեալ զօրութեամբ՝ արժանի լինիցին ընդունել
զմեծ խոստմանց քոց զբրաբիոն պանծալի յաղ-
թանակաւ, և մահուամբ զանմահութեան ստա-
նալ զփառս :

Նա կատարեաց զաղօթսն՝ քաջալերել սկսաւ
զեղբարս 'ի Քն : Նա էր այնուհետև տեսա-
նել, զի այր իւրաքանչիւր զինչս իւր բաշխէր
կարօտելոց, և բուրէր 'ի նմա ծաղկահոտ ա-
նուշութիւն վկայութեան. և զցայգ և զցերեկ
հանապազորդէին յաղօթս և 'ի բանս ած-
այինս, ակնկալեալք ժամուն՝ որ աւետարա-
նեցաւ նց 'ի Քնէ : Իսկ անօրէն կայսրն յետ
պաշարելոյ զօրօք զքաղաքն՝ զայս պայման
առաջի առնէր, զի թէ ոք զմի 'ի քրիստոնէից
'ի բաց արձակեսցէ, կմ պաշտպանել խորհես-
ցի, զնմանօրինակ վճիռ մահապարտութեան
յանձին կրեսցէ. ոչ զի համարձակ լիցի մեզ,
ասէ 'ի քաղաքի անդ մերում պաշտել և զոհս
մատուցանել ածոց մերոց, որք ոչ իւիք հաճին
ընդ խառնուածս պատարագաց մերոց ընդ պա-
տարագս քրիստոնէից :

Սկիզբն եղև այնուհետև կոտորածի ընդ ամ
վայրս առհասարակ՝ առանց խնայելոյ ա-
րանց կմ կանանց, մեծի կմ փոքու. և՛ս առա-
ւել ամենեքին նոքա յօժարամիտ և զուար-
թագին տուեալ զանձինս վն հաւատոցն ճըշ-
մարտութեան՝ սրախողխող լինէին ընդ քաղաքն
ամ. մինչև վտակաց պատուականս արեանցն
խաղ

խաչաւն ը̄ հրապարակս, և մերձակայ գետոց զգենուլ զգոյն կարմիր 'ի յորդուէ արեան սպանելոցն ։

Իսկ զմին Երանոս, հռամանն եւ ամպարիշտ կայսրն ածել զաւաջեալ. և այնչափ անագորոյն մոլեգնութե փութեցաւ ը̄դէմ նր, մինչ զի յերկար լինէր մի առ մի ձառել զգժնդակ անցս նր. զոր լիով արձանագրեն գիրք վըկայութե նր։ Այլ իբրև կատարեաց զանպարտելի զհանդէս նահատակութե երանելւոյն, մարմին նր գիշերայն 'ի ձեռն ոմ երիցուն զաքարիայ թաղեցաւ 'ի խորագոյն այրի միում. յորոյ վր այժմ խորան է կանգնեալ' 'ի վկայութի, եթէ հաճոյական ոչ եղև պատարագ. այն' որ 'ի տեղւոջ պատարագին քնի կանգնեալ' կերակրէ զժողով հաւատացելոց խորհրդովք, յանձանձէ պաշտպանութբք, և զօրացուցանէ նշանօք զօրութեց' ըստ յաջողելոյ պարգևաց ոգն և փրկչին մերոյ յսի քնի ը̄ հօր և ը̄ հոգւոյն սբյ. ամէն ։

Մոդ ը̄ որում քաղի 'ի զանազան յիշատակարանաց եկեղեցւոյն ղուգդոնացւոց, զառաջինն մնաց մարմին ոբյն Երանոսի թաղեալ յայրի անդ' որ կոչիւր այր ոբյն յովհաննու աւետարանչի. այն է յարոմ՛արձանս ղուգդոն ( կմ լիոն ) քաղաքի 'ի մացառուտ վայրի 'ի մէջ խիտ առ խիտ թփոց, մինչև ցամ տն 480. և յայնժամ ոբն պատրիկս կմ բարձիկնս ենփս ղուգդոնի շինեաց անդ երկու եկեղեցիս. յորոց մին էր նոյն իսկ այրն, յորում կային և մարմինք ոբց նահատակելոց քաղ-

մութեամբ ընդ Երանոսի . և միւս ևս 'ի վեր այրին , յանուն սրբոյն յովհաննու , որ յետոյ կոչեցաւ տաճար սրբոյն Երանոսի . զի անդ հանգուցին զմարմին նորա 'ի խորանի :

Այլ մօտ յայն տեղի և այլ տաճար յանուն սրբոյն յուստոսի . ուր էին և այլ բազմութիւնք նշխարաց սրբոց . ընդ որս համարէին լինել գըղերք այնր եկեղեցւոյ և զմարմին սրբոյն Երանոսի . վասն և յետ դարուց բազմաց անցելոց եղև սաստիկ մաքառումն 'ի մէջ ժառանգաւորաց երանոսեանց և յուստոսեանց՝ զամս երիս , այս է յամէ տեառն 1410 մինչև 'ի 1413 . մինչև անդրէն ստուգեցաւ հաւաստի քննութեամբ , թէ մարմին սրբոյն Երանոսի է յեկեղեցւոջ անդ Երանոսի , և ոչ յուստոսի : Յայնժամ առեալ եդին զնշխարս սրբոյն Երանոսի 'ի նոր տապանակի , և հանգուցին 'ի վերայ խորանի ընդ մէջ երկուց վկայից եպիպոդիոսի և աղեքսանդրոսի . ուստի սահմանեցաւ առ լուգդոնացիս առանձինն տօն փոխադրութեան նշխարաց նորա յապրիլի 5 :

Այս այնչափ աճեաց յարգութիւն հաւատացելոց առ սուրբն Երանոս , զի ոչ Յականք միայն , այլև քահանայք անգամ չիշխէին մերձենալ 'ի տես և 'ի համբոյր նշխարաց սրբոյն , եթէ ոչ՝ բոկ ոտիւք , և այն հանդերձ նախընթաց խոստովանութեամբ մեղաց իւրեանց : Այս ըստ յաճախել ջերմեռանդն պաշտաման յաւել և տէրն հրաշս ներգործել բազումս 'ի տապանէ սրբոյն . մինչև ամբողջ մատենիւք պահել լուգդոնացւոց զյիշատակ սքանչելեացն եղելոց :

լոց, ցորչափ ամբողջ պահեալ կային և ու-
կերք Սրբոյն: Բայց Է ցրուելով նշխարաց նորա յանհաւատ նորագանդից՝ և մատեանքն այն ընդ այլ բազում գիրս հուրբ դատեցան. քանզի յամի Տեառն 1562. յապրիլի 29. կալվինեան աղանդաւորք առեալ զքաղաքն ղուգդունայ՝ աւար հարին մեծաւ մոլեգնութեամբ. զոր մատեանս և զյիշատակարանս և զպատկերս եկեղեցեաց հրոյ ետուն ճարակ, զսեղանս կործանեցին, և զոմանս յեկեղեցեաց հիմնայատակ արարին. և զսպասս սրբութեան պղծեցին և եղծին, և զնշխարս Սրբոց ցիր և ցան արարին:

Ընդ որս և զպատուական մարմին Սրբոյն Երանոսի հանեալ ՚ի տեղւոջէն՝ ընկեցին ՚ի կիցս ճանապարհաց. և յետ ջրուելոյ զմասունս ոսկերացն կէս մի այսր անդր, և կէս մի ՚ի գետն, առեն անօրինաց զգլուխ Սրբոյն՝ ձեռն ՚ի ձեռն ձգեին իբրև գնտակ. և ապա առաթուր հարեալ ընկեցին ՚ի խաղ մի գետոյն: Զոր դիտեալ զգուշութեամբ բժիշկ ոմն վիրահատ՝ ուղղափառ և բարեպաշտ, չոգաւ և եհան լուելեայն, և պահեաց ՚ի ծածուկ մեծաւ երկիւղածութեամբ և պատուով: Մինչև ՚ի զօրանալ կաթողոսի իններորդի արքային գաղղիացւոց, և ՚ի վանել զթշնամիս եկեղեցւոյ, բերեալ եդաւ պատուական գլուխ Սրբոյն ՚ի տեղի իւր առաջին շքով մեծաւ: և եղև ուրախութիւն մեծ մեծաւ ժողովրդեան ՚ի գիւտ անգին գանձուն. որ և կայր մնայր մինչև ցաւուրս մեր:

# ՎԱԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

## Սրբոյն Թեկղի կամ Թեկղեայ փառաւորեալ կուսի. որ և ասի նախավկայուհի:

Հ. Յ. սեպտ. 24: Լ. սեպտ. 23: Տօմարն. Ա. նաւա = նշք: Գր. ամձՃ = ամձկ: Գր. յձՃ = յձաշ: Բռանեալ սեռնէկիտացի, և այլ հին հարք: Բազմաներ յամի 47: Բռնադատութեանն սաէւլերինգ. 'ի Է հար. սեպտ. էՂ. 546 = 568:

ԹԵԿՂԱ ԱՌԱՔԵԼՈՒՀԻ հոյն քեռ և աշակերտուհին պօղոսի, որ և Թեկղի կամ Թեկղա կոչի, այնչափ համբաւեցեալ եկեղեցւոյ՝ 'ի սկզբանէ և այսր, մինչ զի չիք նման նը 'ի մէջ կուսից վկայուհեաց. վոյ և ամենապատիւ գրիգոր՝ Ը առաքեալս և ընդ. աշակերտս համապատուեալ յառաջ բերէ զնա 'ի ճառն Ա. Ընդդէմ յուլիանոսի. * Աղ պատկառեցար (ասէ) 'ի պատարագաց մատուցելոց Ը քեզ. 'ի յովհաննէ (մկրտչէ), 'ի պետրոսէ, 'ի պօղոսէ, 'ի յակոբայ, 'ի ստեփաննոսէ, 'ի ղուկայ, յանդրեէ, 'ի Թեկղեայ‖: Նոյն իսկ գրիգորոս պեղուսացի (Գիր. Ա. Թղթ. 87.) անուանէ զԹեկղ * գլուխ կանանց ազգին յաղթութեանց և յաղթանակաց,

տմ՛ գովութեամբ հռչակեալ, և ինքն սուրբ առ- ձանացեալ անմահական պարկեշտութեամբ ∥:

Նոյնօրինակ խօսին և այլ հարք և վկայք եկեղեցւոյ. ոմ՛ք և ոք վկայք և վկայուհիք տեղ յիշեն զնա յընթացս մրցանաց իւրեանց: Եւ զի այսպէս մեծ էր անուն նո՛ր, և մեծամեծ՝ գործք նո՛ր, անդստին 'ի ժամանակաց նո՛ր գրեցան զնմանէ բազմապատիկ բանք հաւաստիք և անհաւաստիք, և յա՛մ դարս յոյզք եղեն խնդրոց վ՛ր ստոյգ և անստոյգ պատմութեց նո՛ր. արդ մեզ անկ է զառավորական աւանդս ընդունելիս առ նախնիս արձանագրել աստանօր, և զանընդունելիս կ՛մ զերկբայականս նշանակել ուրոյն 'ի կարգի ծանօթութեց: (1)

Սրբուհի կոյսս այս Թեկղ էր յիկոնիոն քաղաքէ լիկայոնացւոց, դուստր մեծատուն կրնոջ այրւոյ և հեթանոսի՝ կոչեցելոյ Թեկղիա կ՛մ Թէոկղիա, խօսեցեալ առն միում իշխանի, որում անուն էր Թեմերոս կ՛մ Թամիւրիս: Եւ եղև սրբոյն պօղոսի առաքելոյ յետ բազում հալածանաց գալ միանգամ և միւս անգամ յիկոնիոն քաղաք, և իջևանել 'ի տան ոնեսիփորայ. ուր գային բազմութիք արանց և կանանց 'ի լսել զբանն ա՛յ: Եւ զի մերձ էր տունն Թեկղեայ, եկեալ կուսին նստաւ առ պատուհանի միոջ սենեկի իւրոյ, և առանց քաղ տեսանելոյ զպօղոս՝ լսէր ըզբանս նո՛ր, զոր խօսէր վ՛ր օրհնու և հոգևոր բարութեց, այսպէս ասելով.

Լուարուք ինձ՝ որ ժողովեալդ էք նորանոր լսել

լսել բան յաւանէ ստարէ. քանզի արդարեւ ունիմ ասել ձեզ ստարս և նորալուրս, բայց միանգամայն և ա՟ծայինս և փրկարարս, զոր ՚ի նմին խսկ ՚ի բանէն ա՟յ ուսայ՝ ծնելոյ ՚ի մարդկային կերպարանս և ՚ի բնութե՟, և յերկրի երևելոյ. որ զհրեշտակականն մեզ ղայս և զերկնայինն ուսոյց քաղաքավարութի՟. Երանի ասէ այնոցիկ՝ որ ո՟ղ են սրտիւք, զի նք՟ զա՟ծ տեսցեն. Երանի որք պահեն զմարմինս իւրեանց սրբութե՟, զի նք՟ կոչեսցին տաճար ա՟յ. Երանի ոյք ճնշիցեն զանձինս իւրեանց վ՟ն ա՟յ, զի ը՟ նմ խօսեսցի ա՟ծ. Երանի որոց արհամարհիցեն զա՟շ, զի նք՟ հաճոյ եղիցին ա՟յ. Երանի ոյք այնպէս ունիցին կանայս՝ ո՟պ թէ չունիցին, զի նք՟ ժառանգեսցեն զերկիր և զերկինս. Երանի ոյք ունիցին զերկիւղն ա՟յ ՚ի սիրտս իւրեանց, զի նք՟ հրեշտակք կոչեսցին. Երանի որք դողայցեն ՚ի բանիցն ա՟յ՝ զոր լսեն, զի զնա կոչեսցէ ա՟ծ. Երանի ոյք ընկալան զիմաստութի՟ յի՟ քի՟, զի նք՟ որդիք ա՟յ լինիցին. Երանի ոյք պահեն զմաքրութի՟ մկրտութե՟, զի նք՟ հանգիցեն առ հօր և որդւոյ սիրելւոյ հոգւոյն նրա. Երանի ոյք առնուցուն զօրինակն քի՟, զի նք՟ եղիցին ՚ի լոյս մեծ. Երանի որք վ՟ն սիրոյն ա՟յ ելանեն ՚ի մարմնոյ, զի նք՟ ժառանգեսցեն զկեանսն յաւիտենից, և կացցեն մշտնջենաւոր ընդ աջմէ որդւոյն ա՟յ. Երանի իցէ հոգւոց և մարմնոց կուսանաց, զի նք՟ հաճոյ լիցին ա՟յ, և ոչ կորիցէ վարձք սրբութե՟ նց՟:

Եւ մինչ պօղոս [illegible] զայս ա՟մ զմեծամեծս ա՟յ,

ա̃յ․ կոյսն Թեկղ 'ի բոլոր սրտէ ըղձանէր զպա-
տացեալսն, և 'ի միտ առնոյր զա̃ն անյագ-
փափաքմամբ. և ոչ մեկնէր 'ի պատուհանէ
անտի մինչև ցերիս աւուրս. քանզի ստէպ
քարոզէր առաքեալն որոց գային առ նա՝ զօ-
գուտ ժամն 'ի տուէ և 'ի գիշերի։ Իսկ մայրն
Թեկղի քանզի բազում անգամ ջանացաւ քե-
ցել զդուստր իւր 'ի բանից առաքելոյն, և
ոչ կարաց, ետ կոչել զխօսեցեալն նորա, և
ասէ ցնա. ասեմ քեզ Թեմերոս, զի զքաղաքս
իկոնացւոց ապականեաց այրն այն. և բա-
զում կանայք և երիտասարդք աշակերտին
նմա, որոց ուսուցանէ պաշտել զմի ա̃ծ, և
բնակել սրբութ̃. մինչ Թեկղ ես պատեցաւ
զնովաւ իբրև սարդն զոստայնիւ, և ըմբռնե-
ցաւ 'ի նմին ցանկութեան. և 'ի չարաշշուկ
գործս ուշ եդեալ՝ ոչ առնու զակն 'ի վեր 'ի
տանէն, ուր նա քարոզէ։ Ապա մատեաւ
յինքնին Թեմերոս առ Թեկղ, և խրատէր մեկ-
նիլ 'ի պատուհանէ անտի. դարձ առ իս ասէ,
և ամաչեա՛ յինէն, զի ինձ խօսեալ է զքեզ.
իսկ Թեկղ ոչ արար զնա արժանի պ̃խնւոյ.
զի միտք իւր կապեալ էին 'ի բանս ս̃բ առա-
քելոյն։

Յայնժամ Թեմերոս լի եղև ցասմամբ, ըն-
թացաւ 'ի հրապարակն, և հայեցեալ ընդ
մարդիկն՝ որ մտանէին և ելանէին առ պօ-
ղոս, հարցանէր՝ թէ ո՞ իցէ այրն, և զի՞նչ
ուսուցանէ. և ես տաց ձեզ ասէ արծաթ բա-
զում։ Իսկ դեմաս և հերմոգինէս պղնձա-
գործք և դարբինք օտարացեալքն 'ի պօղոսէ
և

և Թշնամիք ճշմարտութեան, որք կային 'ի փա-
ղոցի անդ, ասեն ցԹեմերոս. այրն այն է մի
'ի գլխաւորաց քրիստոնէայ անուանելոց, և
մեկնէ զերիտասարդս 'ի կուսանաց, և զկոյսս
յերիտասարդաց. և ասէ՝ թէ ոչ կարէք յառ-
նել դուք 'ի մեռելոց, եթէ ոչ պահեսջիք
զանձինս ձեր սրբութեամբ : Լուեալ Թեմերոսի
զչարախօսութիւն նց, ընկալաւ զնա ուրախու-
թեամբ 'ի տուն իւր, և հանգոյց զայն գիշեր.
և ընդ առաւօտն դիմեաց բազմութեամբ բրաւորաց
և արանց անօրինաց 'ի տունն Ոնեսիփորայ,
և ձգեաց զպօղոս յատեան դատաւորին՝ որ
կոչիւր կեստիղիոս անթիհիւպատոս, եդեալ
վկայս սուտս, թէ այրս այս ոչ տայ թոյլ
կուսից՝ լինել արանց իւրեանց :
Եւ դատաւորն ասէ ցպօղոս. ասա՛ ինձ ա՛յր
դու, զի՞նչ է՝ զոր ուսուցանես. զի չեն սա-
կաւք՝ որ չարախօսեն զքէն : Պատասխանի ետ ա-
ռաքեալն, և ասէ. ես պատմեցից քեզ զոր
ուսուցանեմն. լո՛ւր դա՛տաւոր, ուսուցանեմ
զմի ած բարձրեալ և ճշմարիտ. ած՝ որում
ոչ այլ ինչ է պիտոյ, բայց միայն սրբութի և
փրկութի որդւոց մարդկան. նա առաքեաց
զիւր քարոզել և աւետարանել ձի, զի փրկես-
ցին 'ի կորստենէ և 'ի պղծութե և յամ ցան-
կութենց մեղաց և մահու. զի այլ մի՛ ևս մե-
ղիցեն զեղխութբ, այլ երկիցի 'ի նմա ահ և
երկիւղ 'ի ձեռն հաւատոցն այ. զի ծանիցեն
զերկիւղ և զսէր ճշմարտութե, որ ուսուցա-
նէ արանց և կանանց զարժանն իւրաքանչիւր
զմիջակի՝ հանդերձ պարկեշտութբ և հնա-
զանդ

զանդուլթը. արդ՝ եթէ զոր ած ուսոյց ինձ, զայն ուսուցանեմ, զի՞նչ պարտապան եմ չարախօսաց իմոց։ Իբրև լուաւ զայս դատաւորն, հրաման ետ՝ զի կապանօք երթիցէ 'ի բանտ. մինչև եղիցի տեղի լսել նմա բարւոք։ Իսկ Թեկղ 'ի նմին 'ի գիշերի առ զապարանջանս իւր, և տարաւ ետ դռնապանին տան իւրեանց. և այնպէս բացեալ զդուռն՝ գնաց առ բանտապետն՝ որ պահէր զպօղոս. ետ նմա զայլ ևս ոսկի զարդս, զի մտցէ 'ի բանտն. չոքաւ նստաւ առ ոտսն պօղոսի, և լսէր 'ի նմանէ զբանս կենաց. և մեծաւ ուրախութբ համբուրէր զկապանս և զշղթայս զոտից և զձեռաց առաքելոյն։ Իբրև ազդ եղև ընտանեացն Թեկղի և Թեմերոսի մր բանիս այսորիկ, գնացեն պատմեցին դատաւորին. և հրամանաւ նր ձգեցին անդրէն զպօղոս յատեան. բայց Թեկղ կայր տակաւին 'ի տան բանտին, և արտասուօք թանայր զտեղին՝ ուր նստէրն պօղոս կապեալ։

Հրաման ետ դատաւորն ածել և զԹեկղ յատեան. և հայեցեալ ը նա՝ ասէ. ընդէ՞ր ոչ լինիս կին խօսնառն քում ըս օրինաց մերոց. իսկ Թեկղ իբրև յափշտակեալ 'ի մտաց՝ անթարթափ հայէր 'ի պօղոս. և բնաւ ամենեքին պխնի ինչ ոչ առնէր դտւորին։ Յայն ժամ աղաղակեաց ամբոխն ըդէմ պօղոսի և Թեկղի, կորուսէք զմոգս. և մայրն իսկ Թեկղի մոլեգնէր ըդէմ դստերն՝ ձիչ բառնայր ասելով. կորուսէք զանմիտդ 'ի մէջ թէատրոնիս. զի ամ կանայք՝ որ ընդ դա

հայեա

հայեսցին , զահի հարեալ սարսեսցին , և այլ
մի՛ ևս ուսցին զայդ ուսումն չար ։

Իսկ դատաւորն հրամանն ետ գան հարկա-
նել զպօղոս , և հանել արտաքս քան զքա-
ղաքն . և սկսաւ բազմօք խրատել զԹեկղ ,
զի 'ի բաց կացցէ 'ի քն͞է և 'ի պօղոսէ , և
դարձցի առ մայր իւր և առ այր իւր . և իբ-
րև ոչ կարաց հաւանեցուցանել զնա ողոքա-
նօք կամ սպառնալեօք զաւուրս քանի մի .
տայր վճիռ վ͞ս կուսին՝ զի այրեսցի հրով 'ի
Թէատրոնի , փոխանակ զի ելիք ատէ զայր
իւր զգլխաւոր քաղաքին , և յարեցաւ յայր օ-
տար ։ Եկն 'ի տեսարան անդր և դատաւորն
ինքնին , և բ͞մ զօրքն է͞ր նմա համդերձ բազ-
մութ͞բ ամբոխին ։

Յայնմ վայրի զո՛ր օրինակ ոչխար մոլորեալ
'ի լերինս՝ խնդրիցէ զհետս հովուի իւրոյ ,
այնպէս և Թեկղ խնդրէր զպօղոս . և հայէր
ը͞ն մարդիկն՝ տեսանել զնա 'ի մէջ նց ։ Եւ
ահա նոյնժամայն ետես զտ͞ր յս͞ քս͞ , զի նս
տէր դէմ յանդիման նր 'ի նմանութ͞ի պօղո-
սի , այլ լուսափայլ և անձառ փառօք . յոր-
մէ լցաւ սիրտ նր ուրախութ͞բ , և քաջալե-
րեալ զօրացաւ . և մինչդեռ պշուցեալ հայ-
էր , յարեաւ անտի տ͞րն , և ել յերկինս . իսկ
կոյսն զգեցաւ ոգի զօրութ͞ե՝ աներկիւղ մե-
ռանիլ 'ի սէրն ք͞սի ։

Յայնժամ բերին բ͞մ բազմութ͞ին յա͞մ կող-
մանց փայտս , մինչև մանկտին և կանայք
կուսանք անգամ , և կուտեցին 'ի Թէատրո-
նին այրել զԹեկղ . ապա բուռն հարկանէին
զնմա-

զնմանէ զինուո՟րքն, զի եկեալ ՚ի վ՟ր դիպելոց փայտից. և նա ինքնին զուարթամիտ յառաջ մատչէր, և անդէն զհուրն լուցանէին. մինչև յարտասուս հարկանիլ դատաւորին, և զարմանալ ը՟ն զօրութիւն՝ որ էր ՚ի Թեկղ: Արդ յորժամ էր երանելին կոյսն ՚ի մէջ հրոյն բորբոքելոյ, և տարածեալ զձեռս իւր ՚ի նմանութի խաչափայտի՝ կայր յաղօթս, մազ մի ՚ի հերաց նո՟ր ոչ խանձէր. զի գթացաւ հոգին ս՟բ ՚ի վ՟ր նո՟ր: Եւ ահա ամպ ցօղագին հովանի լինէր ՚ի վ՟ր նո՟ր, և ձայն գոչման ելանէր յերկնէ և յերկրէ. և կարկուտ և անձրև սաստիկ յերկնից հեղոյր. մինչ զի ահ և դողումն և սաստկումն լինէր յամբոխին. անդ հուրն շիջաւ, և Թեկղ ապրեցաւ. և ՚ի ցրուիլ ամբոխին՝ ելեալ խնդրէր գտանել ըզպօղոս:

Իսկ պօղոս ՚ի պահս էր արտաքոյ քաղաքին՝ Թաքուցեալ ը՟ն Ոնեսիփորայ և ընտանեաց նո՟ր յայրի միում իբրև յաղքատին տան. և իբրև ոչ գոյր նո՟ց ինչ ուտելոյ և ոչ դրամ գնոյ, եհան պօղոս զվերարկուն, և տուեալ ցպատանեակ մի Ոնեսիփորայ՝ առաքեաց գնել հաց և կերակուր, և բերել լուր ինչ վ՟ս Թեկղի. և նա ՚ի դառնալ իւրում եգիտ զԹեկղ դիմացի իւր, զարմացաւ և ասէ. Թեկղ յո՞ երթաս. և նա ասէ. պօղոսի զհետ երթամ, զի ապրեցայ ՚ի հրոյ անտի: Եւ պատանեակն ասէ ցնա. եկ ես տանիմ առ նա. քանզի այս վեց և եօթն օր է, զի յոգւոց հանէ և լայ, պահէ և խնդրէ յա՟յ վ՟ս քո:

Եւ

Եւ 'ի մերձենալ Թեկղի 'ի տեղին՝ լուաւ զձայն պօղոսի , զի կայր 'ի ծունր և աղաչէր զա̃ծ վ̃ս նորա , ասելով ․ Հա՛յր մեր՝ որ յերկինսդ ես , խնդրեմ 'ի քէն՝ զի մի մերձեսցի հուրն 'ի Թեկղ ․ այլ շիջո՛ զնա 'ի նմանէ ․ զի քո է ։ Եւ Թեկղ 'ի վ̃ր եհաս , և ասէ 'ի ձայն գոհութե̃ ․ Հա՛յր մեր՝ որ արարեր զերկինս և զերկիր , դո՛ւ ես հայր որբոց ․ գոհանամ զքէն վ̃ս ա̃ծի՝ զոր արարեր ը̃ իս , և կեցուցեր զիս , զի տեսից զպօղոս ։

Եւ յուրախ լինել յոյժ առաքելոյն ը̃ տեսանել զԹեկղ կենդանի , հանդերձ ամենեքումբք՝ որ ը̃ նմայն էին 'ի Թաքստի , եբեր նո̃ց պատանեակն հինգ նկանակ հաց և խաւարտ և աղ և ջուր ․ և ճաշակեցին ուրախութ̃բ 'ի տ̃ր ։ Յետ այսորիկ ասէ Թեկղ ցպօղոս ․ փոքրեցից զհերս իմ , և եկից զկնի քո՝ ո՛ւր և երթիցես ։ Ասէ պօղոս ․ պատերազմ ժամանակ է , և դու կին գեղեցիկ ․ գուցէ այլ պատերազմ եկեսցէ 'ի վ̃ր քո չար ք̃ն զառաջինն , և ոչ կարասցես համբերել ։ Թեկղ ասէ ․ միայն զդրոշմն ք̃ի տո՛ւր ինձ , և փորձութի̃ առ իս ոչ մերձենայ ։ Եւ առաքեալն ասէ ցնա , երկայնամիտ լեր , և առնուցուս զոր ինչ խնդրես ։

Յայնժամ արձակեաց պօղոս զոնեսիփորոս դառնալ ընտանեօք հանդերձ 'ի տուն իւր ․ և մեք հեռասցուք ասէ 'ի քաղաքէս ․ և առեալ ը̃ իւր զԹեկղ՝ գնաց յանտիոք ․ այն է անտիոք մեծն յասորիս , ուր հաւատացեալքն նախ քրիստոնեայ կոչեցան , ասէ բասիլիոս

սե-

ան Լեւկիացի. Թէպէտեւ պիսիդացիք առնէ զայն կամին՝ զի իցէ անտիոք պիսիդեայ մօտ 'ի Լե-կայոնիա :

Բայց եւ անդ յարեւս սատան ՟Է՟ դէմ կուսին . քանզի աղեքսանդրոս ոմն այր երեւելի՝ որ արքայակերպ փառօք Չոխանայր 'ի քաղաքին , իբրեւ ետես զԹեկղ , սիրեաց զնա . եւ փաղաքշէր պօղոսի իբրեւ հօր կմ ազգակցի՝ տալ ինքեան զկոյսն 'ի կնութի . եւ բռնան հարեալ զԹեկղեայ՝ կամէր զիրկս արկանել նմա : Իսկ կոյսն մաքուր մերժեաց զնա . եւ 'ի բռնանալ նր՝ զօրացեալ կուսին մր՝ պատառեաց զպատմուճան աղեքսանդրի , եւ ըզխոյր նորա պսակակերպ հանէր 'ի նմանէ եւ յերկիր ընկենոյր . եւ զնա մերկ կապուտ կողոպուտ Թողոյր , եւ առօԹալից 'ի մէջ հրապարակին :

Յայնժամ զսէրն յատելութի փոխեալ՝ չաքաւ այրն վաղվաղակի եհան հրաման 'ի դատաւորէ 'ի վր Թեկղի , զի արկցեն զաղանաց . եւ ինքն աղեքսանդրոս էր՝ որ տայր 'ի տեսիլ քաղաքին զգազանսն . եւ զայն օր եդաւ Թեկղ 'ի պահեստի ՟ը՟ խնդրոյ իւրում իբրեւ յերաշխի առ տիկնոջ միում մեծատան , որում անուն էր տրիփոնա կմ տրիփենա . որ եւ սիրով ընկալաւ զնա 'ի յիշատակ դստեր իւրոյ վախճանելոյ՝ որ կոչիւր փալկոնիա կմ փալկոնիլլա :

Ի վաղիւն անդր գրեցաւ տախտակ 'ի դատաւորէն , եւ ցուցաւ բազմութե ժողովելոց 'ի տեսարան գազանամարտի , Թէ Թեկղ դատե-

իբրև սեղանակապուտ դևից մ̅ն անարգելոյ զմեծ իշխանին աղեքսանդրոս ։ Եւ իբրև տեսանէին զԹեկղ, գայր ը̅ նմ̅ և Տրիփոնա, լայր և ասէր ․ զգաստրիկն իմ յուղարկեցի 'ի գերեզման, և զքեզ Թեկղ յուղարկեմ այժմ տալ գազանաց կերակուր ․ ա̅ծն քո լիցի քեզ օգնական ։ Եւ Թեկղ ասէ արտասուօք առ ա̅ծ ․ տ̅ր իմ և ա̅ծ իմ ես դու ․ հաւատամ յոր ապաւինեցայդ, և փրկեցեր զիս 'ի հրոյ անտի ․ տուր հատուցումն բարի Տրիփոնեայ տիկնոջ՝ որ արկ զգութ իւր 'ի վ̅ր աղախնոյ քո, և պահեաց զիս սրբութ̅բ ։

Յայնժամ մերկացին զանարատ որոջն ք̅ի, և ածին նմա անկզած կտաւի ․ իսկ Թեկղ դարձեալ գոչեաց առ ա̅ծ, և ասէ, հա̅յր ա̅նւ մերոյ յի̅ ք̅ի ա̅ծ մեր, դու ես ա̅ծ օգնական հալածելոց և վերակացու որբոց ․ տես հայեաց յաղախին քո, որ կայ մերկ խայտառակ առաջի այսչափ զօրաց ․ տ̅ր իմ և ա̅ծ յիշեա՛ զաղախին քո 'ի ժամուս յայսմիկ ։ Յայնմ վայրի եղև ազմուկ աղաղակի 'ի բազմութ̅ ․ կէսք զգազանսն գրգռէին, և զԹեկղ անարգէին՝ մեհենակապուտ դևից կարդալով ․ և կէսք ը̅ հակառակն ասէին ․ բողո՛ք առ ա̅ծ վ̅ն անօրէնութ̅ս՝ որ լինի 'ի քաղաքիս ը̅դէմ անպարտ և աննարատ օրիորդիս օտարի ․ անիրաւ է դատաստանդ՝ զոր դատիք դդա ․ Ջնջի քաղաքս յերեսաց չարեացս ․ կորուսանել կամի զամենեսեան դատաւորդ ․ դա՛ռն է տեսիլդ՝ զոր տեսանեմք ։

Բայց զօրք դատաւորին բռնացան, և եստուն

արձակել 'ի վե՛ր կուսին մատակ առիւծ մի . որոյ հասեալ առ Թեկղ , և տեսեալ զնա՝ զի անցեալ կայր 'ի միջի բազկատարած յաղօթս , 'ի բաց եթող զգազանութի̅ իւր , և նստեալ առ ոտս նր̅՝ սկսաւ լիզուլ ։ Արձակեցին և արջ մի . այլ 'ի դիմել նորա 'ի վե՛ր Թեկղի , յարեաւ առիւծն իբրև պահապան նր̅ , և անդէն կալաւ և պատառեաց զարջն . սոյնպէս հերձաւ ը̅ մէջ և լինձն . և առիւծ ը̅ առիւծ ը̅հարան , և Թեկղ անվնաս պահեցաւ ա̅բ. յերեսաց գազանաց , և գոհանայր զա̅յ ։

Յետ այսորիկ արկաւ կոյսն 'ի մերձակայ գուբ ջրոյ՝ որ էր իբրև լի՛ զեռնոց Թունաւորաց . և համարեալ Թեկղի՝ եԹէ հասեալ է վախճան իւր , ասէր , ահա այսուհետև ժամանակ է մկրտելոյ . Տր̅ Յս̅ Քս̅ ահա այսօր 'ի յետին աւուրս մկրտիմ արեամբ իմով 'ի մէջ ջրոյ ։ Եւ իբրև կարծէին ամենեքին , եԹէ չիք նմա հնարս ազատուե̅ , տեսին լոյս ահաւոր իբրև փայլակն բորբոքեալ՝ զի պատեաց զկուսուհի̅ն . և գազանքն սատակեցան . և եղ Թեկղ արտաքս լուսազգեստ , այնպէս՝ զի և ոչ երևելով երևէր , Թէ մերկ իցէ ։ Յայնժամ կարծեցեալ կանանց եղելոց 'ի հանդիսին՝ ա̅ծուհի ոմն զնա գոլ , երկեան և փութացան պատուե̅լ զնա ազգի ազգի խնկօք անուշիւք . և մատուցին նմ̅ 'ի զգեստ հանդերձս ազնիւս ։

Իսկ Աղէքսանդրոս առաւել խստասրտեալ ետ կապել զԹեկղ 'ի մէջ երկուց զուարակաց ,

կաց, և մատուցանել շամփուրս հրացեալս 'ի վ՟ր ազդերաց նր՟, զի առ զայրուկսն կո-բուսցեն զկապեալսն. բայց և այնպէս ողջան-դամ ապրեցաւ կոյսն. և զի Տրիփոնա տի-կինն 'ի սաստիկ անողորմ փորձանաց՝ զոր փոր-ձէին 'ի վերայ Թեկղի, ճչեաց յանկարծա-կի, և պարտասեալ անկաւ իբրև զմեռեալ առ դուրս Թատրոնին, զահի հարաւ աղեք-սանդրոս, զի մի՛ չարիք ինչ անցցեն ի՟ն նա 'ի կայսերէն. զի յազգէ նր՟ էր Տրիփանա. վ՟յ յորդորեր զդատաւորն՝ թողուլ զԹեկղ յա-զատութի՟ ։

Ողորմեաց դատաւորն զկոյսն, և ասէ ցնա. ո՞վ ես դու, և զիա՞րդ ոչ մերձեցան 'ի քեզ գա-զանքն ։ Ասէ Թեկղ. աղախին եմ ք՟ի ա՟յ կենդանւոյ, յոր եսն յուսացեալ եմ. զի վ՟ն նր՟ ոչ մերձեցան յիս գազանքն. զի նա միայն է սահման կենաց և փրկութե՟, և հաստատու-թե՟ անմահութե՟. վտանգելոց ապաւէն, նե-ղելոց յանձանձիչ, և անյուսից յոյս և հովա-նի ։ Եւ արդ ասեմ քեզ դատաւոր, և ա՟մ՟ցն՝ որ կան առաջի քո. որ միանգամ հաւատայ յա՟ծ՝ զորոյ տեսիք զմեծամեծս, զոր արար առ աղախնիս իւր, կեայ, և ոչ մեռանի ըզ-մահն յաւիտենից. և որ ոչ հաւատայ 'ի նա, ոչ կեցցէ, այլ մեռցի յաւիտեան ։ Այս հատուածս բանս երկրորդեալ բասիլիոսի սե-լեւկիացւոյ՝ ասէ. * լա՛ւ է նովիմբք իսկ վկայ-ուհւոյն վարիլ բանիւք. քանզի ունին իմն մեծավայելչագոյն և ա՟ծաբանագոյն՝ քան զոր ը՟ս կանացի գիտութե՟ ‖ ։

Յայնժամ դատաւորն ետ քարոզ կարդալ առաջի ա՟մ ամբոխին, եթէ զԹեկղ ա՟ծ արձակեաց, և ես ձեզ: Իսկ կանայքն՝ որ նստէին 'ի թէատրոնի անդ, սկսան մեծաւ բարբառով ասել. մի է ա՟ծ Թեկղի, որ կեցոյց զնա, և փրկեաց 'ի միջոյ գազանացն: Յարուցեալ ընթացաւ և տրիփոնա զուարթութ՟բ, և փարեալ զԹեկղի՛ ասէր. դուստր իմ Թեկղ՝ այժմ հաւատամ, թէ կենդանի է դուստրն իմ. արդ ե՛կ 'ի տուն իմ, և զա՟մ ինչս իմ քեզ գրեցից: Իսկ չոգաւ ը՟ն նմ՟ կոյսն, և կացեալ 'ի տան նր՟ աւուրս ութ՝ ուսոյց նմա զա՟մ պատուիրանս ա՟յ. և հաւատաց տիկինն տրիփոնա յա՟ծ. և բազումք յաղախնայց նր՟. և եղև ուրախութի՟ մեծ: Ապա ել Թեկղ առնացի հանդերձիւք 'ի խնդիր վ՟պին իւրոյ՝ առաքելոյն պօղոսի. և եկեալ եգիտ զնա 'ի մեռոբ քաղաքի, (որ ըս՟ այլոց միւախս կմ՟ զմիւսին լիկիացւոց,) զի նստէր և ուսուցանէր զբանն ա՟յ. և պատմեաց նմ՟ զոր ինչ անցք անցին ը՟ն նա. և յայնժամ եղևի ընկալեալ զմկրտութի՟, եթէ ցայնվայր չէր մկրտեալ, ո՟չ թուի ցուցանել պատմութ՟ն:

Յետ այսորիկ իբրև լուաւ Թեկղ, եթէ մեռաւ խօսնայրն իւր Թեմերոս, դարձաւ հրամանաւ պօղոսի 'ի քաղաք իւր յիկոնիոն՝ քարոզել զաւետարանն ա՟յ իբրև առաքելուհի՝ բանիւ՛ և օրինակաւ. և եկեալ զառաջինն 'ի տուն անեսիփորայ՝ անկաւ 'ի վ՟ր երեսաց իւրոց 'ի տեղւոջն, ուր խօսէր պօղոս զբանն ա՟յ. և ասէ. Տ՟ր իմ, և ա՟ծ տանս այսմիկ՝

յո-

յորում ծագեաց ինձ լոյս յի քն որդւոյն այ , որ օգնական էր ՚ի բանտին և առաջի դատաւորին , և փրկեաց զիս ՚ի հրոյ , և ՚ի գազանաց չարաց , և ետ ինձ զմկրտութիւն , նոյն տացէ ինձ զարքունի յաւիտենականս յաւիտենից ։ Եւ ապա եկեալ ՚ի տուն իւր՝ եգիտ զմայրն կենդանի , և ասէ ցնա . մայր իմ եթէ կարես հաւատալ , եթէ մի է ած բարձրեալ՝ որ յերկինս է , կեցցես . ապա եթէ զոսկի և զարծաթ և զինչս որ մաշին՝ սիրես , ահա տուեալ է քեզ ։ Եւ յետ բազմօք քարոզելոյ մօր իւրում՝ և ընտանեացն՝ իբրև ոչ ետես ՚ի նմն զպտուղ բանին այ , զոր սերմանեաց , եթող զտունն իւր և զքաղաքն , և չոգաւ ՚ի սելևկիա իսաւրացւոց . և անդ բազում մարդիկ լուսաւորեաց բանիւն այ՝ համդերձ բազմապատիկ սքանչելեօք մինչև ցօր կատարման իւրոյ լի աւուրբք . և եղև յայնմ հետէ քաղաքն սելևկիացւոց նշանաւոր յոյժ նշխարօք սրբոյ կուսին Թեկղի յամ ՚ի դարս ։

Իսկ զվախճան սրբուհւոյն այսչափ միայն նշանակեն գիրք վկայութէ նր , թէ յետ քարոզելոյն ՚ի սելևկիա՝ ննջեաց անդ ՚ի քուն հանգստեան . զոր և բասիլիոս նշանակէ՝ * այլ բազմաց , և ստուգագրոյն՝ բան ‖ . բայց ՚ի վր բերէ իբրև հաստատուն աւանդութի սելևկիացւոց , զոր և Ճառընտիրք և յայսմաւուրք յունաց և հայոց յաւելուն գրել Ճոխագոյն , թէ յետ լուսաւորելոյ Թեկղի ըզբազումս ՚ի սելևկիա՝ առանձնացաւ ՚ի մօտակայ լեառն միւսի կամ միւրսինոնա կոչե-

ցէն, յայրի միում՝ ուր կայր և աղբիւր ջրոյ. և յետ կիրակէի ելանէր յայրէն և քաղէր բանջար, և շաբաթն 'ի բուն այնու շատանայր. և 'ի գալ առ նա ոմանց 'ի հեթանոսաց՝ ամենայնի բանիւ և զօրութ̃ լուսաւորեաց զնոսա:

Ապա յետոյ փոխեցաւ յայնմ լեռնէ, և գնաց 'ի լեառն՝ որ կոչի կաղամիոն յաւոդիանէ. և անդ ևս դարձոյց զբազումս յարանց և 'ի կանանց 'ի հաւատս քրի. և զբազում հիւանդս բժշկէր, և զդևս հալածէր անուամբն քրի: Ապա 'ի խափանիլ բժշկաց սելևկիոյ 'ի շահուց իւրեանց՝ կոչեցին արս անառակս, և առաքեցուցեալ զնա՝ հանին 'ի լեառն, և արձակեցին 'ի ձգնարանն Թեկղի: Ապա յաղաչել Թեկղի զա̃ծ փրկել զնա 'ի ձեռաց անօրինաց, նոյնժամայն ձայն եղև յերկնից. Թե՛կղ ճշմարիտ աղախին իմ մի՛ երկնչիր, զի ես ընդ քեզ եմ. ահա վէմդ՝ որ առաջի քո, պատառեսցի և տացէ զքեզ 'ի ներքս. և եղև այնպէս, մինչև խսպառ անյայտանալ սրբուհւոյն. բայց միայն մասն ինչ 'ի վերարկուէ գլխոյն մնաց ասեն արտաքոյ վիմին. զոր տեսեալ արանցն՝ զահի հարան. և եկեալ 'ի քաղաքն՝ պատմեցին զսքանչելիսն, զոր տեսին:

Արդ յայտնէս աստի լինել ննջումն և կատարումն խոստովանող վկային և մեծանուն կուսին Թեկղի. զոր և դնեն վախճանեալ իննսունն ամաց. որպ̃ թէ ժը̃ ամաց աշակերտեալ իցէ պօղոսի, և հը̃ ամ կեցեալ 'ի հալածանս և 'ի

՚ի լերինս ։ Սորա թէպէտև չէ մարթ ստու-գութեամբ սահմանել զթիւսն, սակայն այս ինչ ստոյգ է՝ զի լի աւուրբք կատարեցաւ․ վ՟յ և նախավկայուհի կոչի և է ա՟ առաջին հան-դիսից նահատակութեան, և ա՟ որում հանդի-սացեալ յա՟մ եկեղեցիս․ այլա թէ ոչ՝ բազ-մօք յառաջ եղև կատարումն մերոյս սրբոյն սանդխտոյ կուսի ՟Ը ամ՟ք առաքելոյն Թադէի․ Նմին իրի ա՟ այլևայլ տեսութեան նախավկա-յուհի կոչին երկոքեանն պանծալի կուսանք անարատք և ձեռնասուն աշակերտք առա-քելոյն ։

Իսկ ՚ի տեղւոջ անդ գերեզմանի սրբուհւոյն Թեկղի արտաքոյ քաղաքին սելևկիացւոց՝ շի-նեցաւ ՚ի վաղ ժամանակաց վկայարան գե-ղեցիկ, և հաստատեցաւ տեղան ն՟ք և ա՟ծայ-ին խորհրդոյ՝ սիւնապատ և արծաթափայլ շքեղանակաւ բոլորեալ յա՟մ կողմանց, ուր բասիլիոս ականատես՝ որ և էր ժամանա-կակից ոսկեբերանի և մտերիմ սիրելին նո՟ր ։ Նա ՚ի վերայ բերէ․ * Ուստի իբրև յականէ կուսական բարերարութեան իւրոյ առատաձեռ անդ հասեցելոյ՝ ՟Ը՟դ՟է՟մ ա՟մ ցաւոց և հիւանդութեանց բղխէ զբժշկարար աղբիւրս գեղոց, որոց կարօտին և խնդրեն․ մինչ զի տեղին այն եղև հանդիսական դեղարան, և հասա-րակաց՝ տիեզերաց քաւարան ։ Այ՟յ ղտա-ձեռն նո՟ր, մանաւանդ թէ զքաղաքն, քանզի էանց զկնի ՚ի ձև և ՚ի փայլեցութեան քաղաքի, ոչ երբէք գտցես առանց քաղաքացեաց (սե-լևկիացւոց) և օտարականաց, որք առ հա-

սարսափ ընթանան անդր յամ կողմանց՝ մինչ 'ի պատուել զտեղին, և 'ի կատարել զուխտ իւրեանց, և 'ի նուիրել ինչ յընծայ սրբուհւոյն փութացեալք, և յընդունել զբժշկութիւն ախտից և ցաւոց, եւս և զազատութիւն յայսոց՝ յորոց ոք թերևս հարեալ իցէ .... և առ հասարակ զխնդրելին առեալ՝ օրհնութիւն, գոհութիւն և ուրախութիւն դառնան, խոստովան լինելով՝ եթէ առաւել քան զոր համբաւեն էր և անկնկալութիւն մեր, տեսաք սքանչելիս և բժշկութիւնս ցաւոց ։

Առնչելու Թուղթ ։

Թողեալ զհին հրաշս, զորս պատմեն Ճառընտիրք առ կենդանութեամբ որդւոյ կուսին Թեկղեայ Տ̃ աւանդից իսաւրացւոց, ծաղկաքաղ առաջի դիցուք՝ զոր միանգամ պատմէ բարսիլիոս սելևկիացի յեպիսկոպոս գիրս յաղագս սքանչելեաց Թեկղի․ ուր ասէ 'ի յառաջաբանին․ * Փոքր մի աշխատասիրեալ՝ զափիւգատեալ նորա սքանչելիս հաւաքեցաք, և 'ի դոյզն շարագիրս եդաք առաջի․ ոչ եթէ զամ̃ն, այլև ոչ զյոլովագոյն մասն յամէն, այլ զսակաւագոյնս ամի, զոր առ մեօք, և զոր փոքր մի յառաջ քան զմեզ հանդիպեցին ևեթ․ և 'ի սոցունց ասուր դարձեալ զսակաւս, և զոր 'ի Ճշմարտախօս արանց կամ 'ի կանանց ժողովել մարթացաք ։ Արդ քաղուած բանից նհ̃ բովանդակի յերեսուն թիւ հրաշիցս ․

ա․ Յորմէ հետէ Թեկղ բնակեաց 'ի սահ-մանս իսաւրիոյ, խափառ կարկեցաւ դիւա-կան պատգամախօսութի՛ քրմաց տեղւոյն, զոր ամենեքին յանուն սարպեդոնի կիլիկեցւոյ՝ առ մեծամեծ չարեացն 'ի համար չա՞ծոց դրե-ցելոյ առ իսաւրացիս ։

բ․ Բազում կին հեթանոս անկաւ 'ի պարսպէ, և խորտակեցան սրունք նր(ա), և ոսկերքն փշրե-ցան․ և անյայս լեալ 'ի դիցն իւրոց և 'ի բժշ-կաց և 'ի կախարդաց և 'ի հրէից՝ յորս դի-մեաց, ածաւ 'ի տաճար սրբյն Թեկղի, և ար-տասուօք աղաչէր զնա զերիս աւուրս․ և յա-ւուրն երրորդի երևեցաւ նմա Թեկղ, և ած-քերեալ զաղտս վկայարանիս և փանդակացս, և օծ նովիմբք զցաւագնեալ ոտս քո ։ Եւ նա արար ըստ բանի նր(ա)․ և առժամայն կանգնե-ցաւ 'ի վ(եր)այ ոտից, և վազվազէր և գնայր մին-չև 'ի տուն իւր․ * Եւ այս սքանչելիք մինչե-ցայսօր հռչակ հարկանի 'ի կնոջէ անտի, և յորոց տեսինն զնա զառաջինն գնալ և ըն-թանալ և ներգործել ոտիւքն ։ Եւ որ մեծն է, քրիստոնեայ իսկ եղև 'ի հրաշից անտի․ և այն՝ այնպիսի, որպէս լինել արժան էր յայսպիսի փորձոյ ‖ ։

գ․ Ռաախանէ կին ազնուական քրիստոնեայ 'ի կետիդաց գաւառէ կայր պատանդ 'ի սե-լեւկիա․ սա անկեալ յախտս դժնդակս՝ ստէպ կանխէր 'ի տաճար սրբյն Թեկղի, և հայցէր զբժշկութի ։ 'Ի միում գիշերի ամառնային ննջեալ յոյժ 'ի ջերմութենէ՝ թաւալէր ընդ-քարայատակ գաւիթ տաճարին․ և ոչ գտեալ դիւ-

դիւրութիւն՝ ընկէց զանձն 'ի ջրհոր, որ կայր անդ մօտ: Յայնժամ երեւեցաւ նմա Թեկղ, և բուռն հարեալ զհանդերձից նր՝ կորզեաց 'ի դուրս, և յանդիմանեաց զնա. ապա ձայնեալ առ աղջիկ մի՝ որ Թուէր կալ զկնի նր ողորմածիշտ, ասէ. բեր այսր զայն կուժ ջրոյ. յոր մտեալ Թեկղի զձեռն՝ մերձեցոյց 'ի ձակատ կնոջն և 'ի պարանոցն, և եղև աներեւոյթ. և բասխանէ գտաւ բոլորովին ողջացեալ, և զովացեալ իբրև 'ի հովանաւոր վայրս փափկութե. և այս եղև յարթնութե, և ոչ 'ի քուն երազոյ. * Նաև վկայ այսմ որդի կնոջն այնորիկ մոդեստոս անուն. որ ցարդ եւս կենդանի է, և զսքանչելիս զայս գեղեցիկ քարոզէ ‖:

Է. Միխանոս զօրավար՝ որոյ մեծամեծ քաջութիւս արարեալ էր ընդդէմ պարսից, անուանի էր յոյժ վարուք. մինչ և կին նորա գանգատ կալաւ ընմանէ առ Թեկղ 'ի տաճարի նր. և նա սքանչելագործ դարձոյց զզօրավարն 'ի զգաստութի. մինչև զարմանալ ամենեցուն ընդ փոփոխութի նր:

Ը. Յաւուր հարսանեաց դստեր պաւղոսի մեծի տիկնոջ ընդ խուխսերմանի հռետորի՝ գողն եբարձ 'ի սենեկէ անօթ հարսանեաց զոսկի գօտի ականակապ. որով անկաւ աղմուկ մեծ 'ի տան, և ոչ ուրախութի 'ի սուգ դարձաւ. այլ 'ի դիմել բարեպաշտուհւոյն պաւղայի առ Թեկղ՝ երեւեցաւ նմա, և յայտնեաց բղխեղին՝ ուր պահեալ էր գողոյն զգօտին:

Թ. Գողացեալ ուրումն զխաչ մի փառաւոր
'ի

՚ի տաճարէ սրբոյն Թեկղի՝ թաքոյց. և ՚ի շփո-
թիլ պաշտօնէից ը այն՝ երևեցաւ կոյսն սր-
բուն ՚ի նոցանէ, և եցոյց զտեղին ։

Է։ Պաւսիկակոս նաւավար ծանուցեԼ յամ սելևկիայւոց՝ առ խօթութեն իմիք եղև աչա-ցաւ. և անպիտանացեալ յաչաց՝ չեգիտ ուս-տեք առողջութի. ապա դիմեալ ՚ի տաճար սրբոյն Թեկղի՝ ստէպ կայր յաղօթս ՚ի գաւ-թին, որ երբեմն բնակարան սորա լինել կու-սին. և ոչ մեկնեցաւ անտի, մինչև ընկալաւ զկատարեԼ առողջութի աչաց. * Վկայ սքան-չելեացս ամ քաղաքն սելևկիացւոց, որ և
հայրենիք նր և քաղաք ‖ ։

Ը. Մանուկ ոմն որդի պարդամիոսի յոլքայ քաղաքէ հուպ ՚ի սելևկիա՝ այն ինչ հաստու-ցեալ ՚ի ստեանէ, առ ստէպ լալոյ կամ յայլ պատահարաց կորոյս զտեսութի միոյ ական. զոր առեալ դայեկին՝ եբեր ՚ի տաճար Թեկ-ղի, և աղաչէր ողորմիլ մանկանն տղայոյ ։ Նոյ-նին յարտաքին գաւթի անդ տաճարին բազ-մութիք թռչնոց՝ բերեալք ՚ի զանազան տե-ղեաց ՚ի պատիւ կուսին, աղաւնիք, բադք, կարապք, կռունկք ևն. և ՚ի տալ սպասա-ւորաց կեր թռչնոց, եկն և միականի տղայն խաղալ ը նոս. և մին ՚ի կռնկանց եհար կրու-ցաւ զցաւագնեալ ակն նորա. ճչեալ ճկաւ տղայն, և ՚ի վր եհաս դայեակն հանդերձ բազմութբ՝ ցաւագնելով, ոնց թէ չարն չար եւս եղև. այլ յետ պահու ծորեցաւ հիւթ մնասակար յաչաց մանկանն, և բացաւ ակն նր՝ ողջացեԼ իբրև զմիւսն. և ՚ի միտ առեԼ

ա-

ամենեցուն զսքանչելիս Թեկղի՝ գոհանային զՏր̃յ. յորոց սակի է ցարդ ևս կենդանի, ոչ միայն մանուկն, այլև հայր նր̃, և հաւ նորին տ̃ր Անատոլիոս՝ մի յերիցանց եկեղեցւոյ սր̃յն Թեկղի :

Թ. * Եւ զի զայս յիշեցաք, բնաւ և ոչ զայ-
„ նու զանց արասցուք, որ 'ի մօտ ժամանակս
„ եղև, և ամենեքին մեք գիտակ եմք եղե-
„ լոցն, որ և սքանչելեաց և բժշկութե̃ կցորդ
„ եղեաք ||: Քանզի (ասէ) յամարայնի անցեալ տարւոյն բովանդակ քաղաքս սելևկիացւոց կրեաց զցաւ աչաց. որում ոչինչ օգնեաց և ոչ մի դեղ և դարման բժշկաց : Ապա 'ի դիմել մեր միաբան առ սրբուհին Թեկղ՝ երևեցաւ նա 'ի տեսլեան միում 'ի ցաւագնելոցս, և պատուիրեաց՝ զի ա̃մ աչացաւ երթիցէ և լուացէ զաչս 'ի ջուր աւազանին իւրոյ. և էր տեսանել զեկեալ բազմութիւն, զի զմիմեամբք ելեալ ջանային առաջին լինել յառնուլ զջուր, զի մի 'ի սպառիլ սակաւ ջրոյն՝ ինքեանք զրկեսցին. այլ ամենեքին՝ որոց եկեալ էր խփեալ և պատատեալ աչօք, դարձան աչօք բացօք և զուարթութե̃ : Միայն զատան և քանի մի անձինք, որք կամ չեկին առ թերևհաւատութե̃, և կամ 'ի հանդէս արդարութե̃ն ա̃յ չընկալան զառողջութի̃. և այսպիսիքս իսպառ կուրացան. որով յայտնի եղև, եթէ ոչ ջ̃ր ինքեան դիւրաբուժելի էր ախտն, այլ՝ զօրաւոր բարեխօսութի̃ Թեկղի փարատեաց զայն ցաւ անփարատելի :

Ժ. Օ քաղաքն Դալիսանդայ՝ որոյ աւերակք տե-

տեսանելին յաւուր յայսմիկ, բազում անգամ ազատեաց 'ի պաշարմանէ սրբուհին Թեկղ՝ երևեալ փառօք 'ի վ̃ր մօտակայ լերին, և երկնային հրով ահ արկեալ թշնամեաց. քանզի երբեմն բնակեալ աստ և սրբուհին 'ի տեղիսն յայնոսիկ ։ Աւանդութի̃ էր բնակչացն, թէ 'ի տօնի Թեկղի տեսեալ իցէ զնա ոմանց հրեղէն կառօք դիմեալ 'ի սելևկիոյ 'ի քաղաք անդր՝ այց առնել բնակչացն ըստ հաւատոց նց̃ ։

ժա. 'Ի վ̃ր սեղինունտ քաղաքի երևելւոյ՝ որ պատեալ է 'ի ծովէ իբրև ժայռ անմերձենալի, հնարեցան թշնամիք յարձակիլ ճարտարութ̃բ. այլ 'ի դիմել բնակչաց առ ն̃րն Թեկղ՝ երևեալ միում 'ի նոցանէ՝ հրաման ետ շինել տաճար յանուն իւր 'ի բարձրաւանդակին, և ոչ երկնչել ուստեք այնուհետև. և այնմ̃ պահեցաւ ք̃ղքն աներկևան ։

ժբ. 'Ի հարստանալ տաճարին Թեկղի 'ի սելևկիա իսաւրացւոց բազմութ̃բ սպասուց ոսկւոյ և արծաթոյ՝ եկին երբեմն բազմութիւք հրոսակաց 'ի լեստրիգոնիոյ, որ է յարևմտից սելևկիոյ. և կողոպտեալ զերևելի զարդս՝ տանէին 'ի քաղաքն իւրեանց, որ 'ի վ̃ր բարձրաբերձ լերանց. բայց մոլորեալ 'ի ճանապարհէ՝ իջին 'ի դաշտն սելևկիոյ, և մատնեցան 'ի ձեռս զօրաց քաղաքին. և այնպէս կորուսին զկեանս աւարօքն հանդերձ, որք բերեալ եղան անդրէն 'ի տաճար սրբուհւոյն. ուր և արձանագրեցաւ յիշատակ անցիցս ։

ժգ.

ԺԶ. Մարկիանոս ոմն անարժան եպիս. Տար-սոնի մեծի քաղաքին Կիլիկեցւոց ոխս կալեալ ընդ Դեքսիանոսի եպիսին Սելեւկիոյ. եւ առ-ցայլոյթ սրտին՝ 'ի մերձենալ տօնի նորին Թեկղի, յորում ամ՟ կիլիկեցիք յԻսաւրիա ըն-թանային ը՟ այլ անթիւ բազմութե՟ 'ի տե-ղեաց տեղեաց, յարուցեալ յեկեղեցւոջ իւ-րում հրապարակաւ արգել, զի մի ոք ամենեւին երթիցէ 'ի Սելեւկիա յուխտ նորին Թեկղի՝ որ 'ի վիճակին Դեքսիանոսի. բայց մինչչեւ հասեալ էր տօնի նորին, մեռաւ Մարկիանոս յանկար-ծակի. եւ յայտնի եղեւ ամենցն վրէժխնդրութ՟ առ 'ի նորին. եւ այսմ վկայ են ամ՟ քաղաքք եւ գաւառք ը՟ մեզ:

ԺԷ. Այլ որ մեծն է, կաստոր լիկայոնացի բնակեալ 'ի Սելեւկիա՝ սատիկան զօրաց եւ այր առաքինի յոյժ, տեսանէր 'ի հսկման տօնի նորին Թեկղի, զի կոյս մի փառաւոր եւ ահա-ւոր յածէր ը՟ քաղաքն զայրագնեալ դիմօք՝ սպառնացեալ վրէժս խնդրել 'ի Մարկիանոսէ վ՟ թշնամանաց անձին իւրոյ: Այլ իբրեւ զարթեաւ 'ի քնոյ, եւ պատմեաց զոր ետես, էառ զլուր յանկարծամահ լինելոյ Մարկիա-նոսի. եւ 'ի տարածիլ համբաւոյն՝ ահ պա-տեաց զամենեսին, եւ առաւել քան զառա-ջինն մեծարեալ պատուէին զԹեկղ:

ԺԸ. Ասուերիոս Հռետոր դամասկացի այր երեւելի 'ի տուն աստեղին Սելեւկիացւոց խնդ-րեաց 'ի Մաքսիմոսէ եպիսէ քաղաքին, (որ երբեմն աշակերտակից էր Ոսկեբերանի,) զի զքաղաքակից իւր եւ զմտերիմ բարեկամն

իպեր-

խպերքիոս զմախձանէն՝ տացէ թաղել պատ-
ուով ՚ի տաճարի սրբյն Թեկղի կմ ՚ի դաւթի
նր ։ Իսկ ՚ի զինջանիլ եպսին մն մեծունէ աղա-
չաւորին և մեռելոյն, իբրև եկին բանալ
տեղի գերեզմանի ՚ի տաճարի անդ, ՚ի մր
եհաս սրբուհին Թեկղ, և սաստեաց նոցա .
և ՚ի վերստին ձեռնարկել նց՝ միւսանգամ
յանդիմանեաց և դողացոյց զոսկերս ամե-
նեցուն . մինչև ձեռնթափ լինել նց ՚ի գոր-
ծոյն ։ Իսկ յաւել սրբուհին երևիլ եպսին
մաքսիմոսի ՚ի տեսլեան գիշերոյ, և ասել
ցնա . * մի այդպէս թշնամանօք բերիլ ՚ի տա-
ճարն, մինչև զբազմութե դիականց և զգե-
րեզմանաց զժահահոտութի ՚ի նոյն փոխա-
դրել . քանզի և չիք միաբանութի չիրմաց և
տաճին աղօթից, եթէ ոչ արդեօք իցէ և մե-
ռեալն ոչ մեռեալ, այլ՝ կենդանի ոյ, և ար-
ժանի բնակակից և յարկակից լինելոյ վը-
կայից ։

ժԴ . Ո յանցանս իմ լինիմ խոստովան ( ասէ
բասիլիոս ) , զի հեղգասիրտ և անփոյթ էի
՚ի հետազօտել և ՚ի գրել զսքանչելիս սրբ վը-
կայուհւոյս՝ յուսակատուր ՚ի քննելոյ և յըս-
տուգելոյ . և մինչ եսս յայսպիսում կայի յու-
լութե , տեսի զվկայուհին մերձ բազմեալ
առ իս , որ սովորութի էր իմ զբօսանիլ ըղ-
գրովք . որ և ՚ի ձեռս առեալ զթուղթն՝ յո-
րում գրեալ էր իմ ձեռամբ իմով զսքանչե-
լիս նր՝՝ ՚ի հաստատուկանի դրչութե այլոց ըօրի-
նակեալ , սկսաւ վերծանել և ժպտիլ ուրա-
խութե . և այնպէս զուարթութբ դիմաց ցու-

ցա

ցանել զհամձութին իւր է գրեալն իմ զայսա-
ւորկ, և ակնարկել յառաջ տանել զգործն.
վոյ և յետ տեսլեանն՝ յորմէ անկաւ ահ մեծ
յիմ վի, խնդամիտ ՚ի ձեռն առի զգրիչ,
գլխաւորել զկրսն ըստ ակնարկութեն նր:

ԺԷ. Դեքսիանոս եպս՝ որ յառաջ քան զնա
նստաւ յաթոռն սելևկիոյ, մինչդեռ էր փա-
կակալ եկեղեցւոյ ճրյն թեկղի և վերակա-
կացու սպասուց տաճարին, երկուցեալ յի-
սաւրացւոց՝ որք աւար հարկանէին զբազում
տեղիս, զամ ոսկի և արծաթի անօթս տա-
ճարին փոխադրեաց ՚ի քաղաքն. (զի տա-
ճարն էր արտաքոյ քաղաքին սելևկիոյ.)
բայց թեկղ երևեալ կուսանաց՝ որ ՚ի տա-
ճարի նր տքնէին, ասէ. զիա՞րդ վատասիրտ
դատաւ փակակալն, ոչ թէ չկարեմ ես ինք-
նին պահել զսպասս տաճարին իմոյ. զայն
իբրև գիտաց դեքսիանոս, դարձոյց զամ
անդրէն ՚ի տաճարն:

ԺԸ. ՚Ի մերձենալ աւուր տօնի ճրյն՝ հայհոյեաց
զնա պիղծ բերանով ուրբանոս իրենուպօլ-
սեցի. և առ օրն հարեալ յայսոյն պղծոյ՝
յետ չարաչար լլկանաց եհան զոգի յաւուր
երրորդի:

ԺԹ. Երկու և այլ երիտասարդք ժանտք ՚ի
նմին քաղաքէ իրենուպօլսոյ եկեալ էին ՚ի
հանդէս տօնի ճրյն, ոչ աղօթից աղագաւ,
այլ ՚ի լրումն տռփանաց իւրեանց. որով և
հափափեցին զաղջիկ մի ՚ի բազմութէ, այլ
ոչ կարացին բռնաբարել զնա ՚ի կամս իւ-
րեանց. և ՚ի մեկնիլն ՚ի նմանէ մոլեգին ցաւ-

մամբ՝ մին 'ի կամրջաց 'ի վայր անկաւ, և կո-
րեաւ 'ի գետն. և միւսն յանկարծամահ սա-
տակեցաւ :

Ի. Պապպոս ոմն իշխան վերակացու՝ յետ մե-
ռանելոյ պաշտօնակցին իւրոյ աւելերիոսի՝ ա-
նիրաւեցաւ յորդիս նորա. վասն կշտամբեալ
տեսլեամբ 'ի տրբոյն Թեկղեայ՝ ըստ գուշա-
կելոյ նորին մեռաւ յաւուր ութերորդի :

ԻԱ. 'Ի տապ ամառայնոյ անկաւ տապանակ,
այն է ախտ կոտորածի յամ անասունս իսաւ-
րիոյ, 'ի ձիս և 'ի ջորիս, յարջառս և յոչխարս.
և եղեն աղէտք անհնարինք 'ի գիւղս և 'ի քա-
ղաքս. զի ոչ գոյր հնարք բժշկութեան նոցա :
Այլ 'ի դիմել հաւատացելոց առ տրբն Թեկղ՝
յանկարծակի բղխեաց նոր աղբիւր յարև-
մտից կուսէ տաճարի սրբուհւոյն. յոր բերէին
ամենեքեան զախտացեալ անասունս իւրեանց
երամակս երամակս. և իսկ և իսկ 'ի մերձե-
նալ 'ի ջուր անդր՝ բժշկէին. մինչև իսպառ
փարատիլ անտանելի ցաւոյն. ուստի շինե-
ցաւ 'ի տեղւոջն մատուռն 'ի պատիւ սքան-
չելագործ կուսին Թեկղի :

ԻԲ. Յայնժամ Մարիանոս ոմն այր երևելի
'ի քաղաքիս սելևկիացւոց կամեցաւ փորձել
զտրբն Թեկղ, թէ արդեօք զտապահաճո՞ս ևեթ
յանասնոց գիտէ բժշկել, եթէ և զայլ ախ-
տացեալս. և զի էր նորա երիվար մի խեղացեալ
և անպիտանացեալ մերձ 'ի սատակումն, տա-
րաւ յաղբիւր անդր և մխեաց յաւազան ջր-
բոյն. և ահա նոյնժամայն ողջացաւ գրաստն.
և անկաւ ահ մեծ 'ի վ՛ր առն :

իգ. Նոյն կիպրացի ոմն պատրիկ կուրացեալ աչօք՝ լուեալ զսքանչելիս աղբերն Թեկղի, եմուտ 'ի նաւ, և եկն 'ի տեղին. և իբրև լը-ուացաւ յաղբիւրն՝ բացան աչք նր. և դար-ձաւ ուրախութբ 'ի քաղաք իւր:

իդ. Մղիկիոս հայրն ողիմպիասի գրամա-տիկոսի, որ ուսուցանէր 'ի սելևկիա զքերա-կանութի, անկաւ 'ի հիւանդութի ծանր. և անյոյս լեալ 'ի բժշկաց՝ դիմեաց առ սբն Թեկղ. և նա երևեցաւ 'ի տեսլեան գիշե-րոյ, ետ նմա քար մի գեղեցիկ, և ասէ. սո-վաւ բուժեսցիս. և իբրև զարթեաւ, և ոչ-ինչ գտաւ 'ի ձեռին, համարեցաւ երազ լի-նել անրջական. իսկ որդին նորա ողիմպիոս գտեալ 'ի վաղիւն անդր 'ի վր ճանապարհի քար պատուական՝ եբեր խնդութբ 'ի տուն. զոր տեսեալ հօր նր հիւանդին՝ ասէ. այս էր պարգև վկայուհւոյն՝ զոր ետ ինձ. և առեալ 'ի բուռն իւր՝ պինդ պահէր. և առ ժամայն փարատեցաւ ամ ցաւ նր և ողջացաւ:

իե. Ասկաս ոմն սոփեստէս հեթանոս յե-գիա քաղաք կիլիկեցւոց անկեալ 'ի խօթութի եւ արտաքոյ քաղաքին, և ագաւ մօտ 'ի վը-կայարան մի Թեկղի. և խորհէր ընդ միտս, եթէ սքանչելագործ կոյսն այն տանիցէ՞ առ-դեօք և ինքեան այցելութի: Նոյն 'ի քուն մտեալ՝ տեսանէր, զի եկն սբն Թեկղ, և յետ կշտամբելոյ զմոլորութի նր և յորդորելոյ 'ի հաւատս քսի՝ աննախանձ պարգևեաց նմ զառողջութի. և ահա զարթեաւ՝ եգիտ զանձն ողջացեալ. վղյ և քրիստոնեայ եղև: Օ՛այս

պատա

պատմեաց մեզ եւգոքսիոս տարսոնացի այր
երեւելի եւ հաւատարիմ ։

ԻԴ. Այլ եւ ’ի սեւլեւկիա իմաստակ ոմն հե-
թանոս արեւտարքոս անուն . որ ’ի սաստիկ
ցաւ երիկամանց ըմբռնեալ՝ խնդրէր անձին
զմահ . իսկ Ս՛րբյն Թեկղի եկեալ առ նա ’ի տեսի-
լեան՝ ասէ . ա՛ռ ’ի ձիթոյ անտի՝ որ վառի ’ի
տաճարի իմում , եւ օծանիջի՛ր նովաւ , եւ ապ-
րիս . եւ նա եւս բերել առատութ՟բ . եւ ընդ
օծանիլն առողջացաւ . բայց ո՛չ դարձաւ յան-
հաւատութէ իւրմէ . զի թէպէտեւ խոստո-
վան լինէր , թէ ձեռն այն Թեկղի բժշկեաց
զիս , բայց այլում զօրութե ընծայէր զայն ,
եւ ո՛չ քմի ։

ԻԵ. ’Ի մերձենալ աւուրց տօնի Ս՛րբյն Թեկղի՝
պատրաստեալ էր իմ ( ասէ բասիլիոս ) ասել
ճառ ներբողենի ’ի պատի՛ւ նր . այլ միով ա-
ւուրբ յառաջ քան զտօնն անկայ ’ի տկարու-
թի , եւ ցաւ անհնարին ունէր զունկն իմ՝ որպ
թէ ճարճատիլ յարմատոց , եւ ուժգին թըն-
դայր գլուխ իմ ։ Նաւ իմ անյոյս եղեալ եւլա-
նել առ վաղի՛՛ն ’ի բեմն , վարանէի յանձն իմ
խորհրդովամօթ կրեւլոյ առաջի ժղ՟վրդեան ,
որպ թէ պատճառանօք խոյս տուեալ իցէ իմ
’ի քարոզէ անտի ։ Նաւ ’ի կալ իմում տխուր
յոյժ զայն գիշեր , եկն եկաց առ իս Ս՛րբ կոյսն
Թեկղ , եւ կալեալ զունկն իմ՝ ճմլեաց մեղ-
մով , եւ փարատեցոյց զցաւն ողջոյն . մինչեւ
համարձակ խօսել ինձ զճառն ’ի ցերեկի , եւ
պարմանալ՝ որոց գիտէինն զտկարութի իմ ։
Նոյնպէս եւ յայլ նուագս եղեն ասէ առ իս

 այցե-

այցելութիւնք 'ի նոյն. զորս մի առ մի ստորա-
գրէ :

ԻԸ. Սկալլիսթէ բարեպարիշտ կին պապիայ աւան չարի դեղեալ յանզգամ կնոջէ ումեմնէ՝ կորոյս զտեսիլ դիմացն, և յայլանդակ կեր-պարանս եղև. այլ 'ի դիմել առ նոյն թեկղ՝ ընկալաւ զառաջին վայելչութիւն իւր :

ԻԹ. Նաւախանէ ոմն կին կորոյս 'ի տաճարի նոյն թեկղի զոսկի մատանին և զապարան-ջանս. այլ 'ի կարդալ առ թեկղ՝ գողն ինքնին դարձոյց 'ի նա զինչս նր :

Լ. Նազումք 'ի յայտնի մեղաւորաց յարանց և 'ի կանանց՝ դիմելով 'ի տաճար նոյն թեկ-ղի, կմ 'ի բարեխօսութիւն նր, դարձան 'ի չա-րեաց իւրեանց, և եղեն զարմանալի օրինակ փառաց առաքինութեան. յորոց էր զի յականէ ճանաչեմ, և էր զի լուեալ է իմ 'ի մերձաւո-րաց նոցա : Մին 'ի զգաստացելոց ասէր ետ կազմել աւետարան մի ճարտար գրչութ, և տարեալ 'ի տաճար կուսին՝ մատուցանէր նմ միամիտ հաւատով յընծայ. և 'ի կայուհին ակն յայտնի երևեալ նմա՝ ընդունէր զայն սի-րով. և ասէ. տա՛ր մատո՛ քահանայից տա-ճարիս, զի նց անկ է ընթեռնուլ զայն՝ քան ինձ : Յայս վայր ծաղկաքաղ բանից բասիլեա-սի եպիսկոպոսին սելևկիոյ :

Յիշեն զայս տաճար թեկղի իբրև նշանաւոր ուխտատեղի 'ի սելևկիա իսաւրացւոց՝ գրի-գոր ածաբանն, իսիդորոս պեղուսացի, և այլք. յորոց միջի թէոդորետոս պատմէ 'ի վարս նոցին մարանայ և կիւրայ, թէ զո՛ր օրի-նակ

նաւ ծովաբերանով գնացին յուխտ սրբոյ Գե-
րեզմանի փրկչին յեէմ, նոյնպէս և * յոր-
ժամ( ասէ ) 'ի տաճար անդր յաղթականին
Թեկղեայ` որ յիսաւրիա է, յայց ելանել կա-
մեցան, առ վաւելոյ ամիէ զաւ ամծ սիրոյ
զբոց` անձաշակ գնացին և դարձան ||։ Գրէ
և եւագրիոս պատմիչ, ( Գիրք ․ Գ ․ Գլ ․ 8 ․ )
Թէ որպէս զենոն կայսր` որ էր իսաւրացի ;
առանձին ձիրս ընկալեալ 'ի սքանչելեաց սրբոյն
Թեկղի` ետ շինել այլ եկեղեցի 'ի պատիւ
նորա ։

Այլին յաւուրս կայսերութեն յունաց 'ի կոս-
տանդինուպօլիս երեք և չորք եկեղեցիք յա-
նուն սրբոյն Թեկղի` շինեալ 'ի զանազան կայ-
սերաց, 'ի տեղիսն կոչեցեալ կոնտարի, և
դուռն յուլիանոսի, և վլաշերնա, որպ և 'ի
գալաղա` որ յառաջն սիւկա կոչիւր ։ Նոյնց
ասել և զայլ վկայարանս և զվանս Թեկղի
յայլևայլ քաղաքս արևելից և արևմտից,
հանդերձ յիշատակօք անպակաս սքանչելեաց
նր ։ Այլ ամ է ասել և զնշխարաց նր սակա-
ւուք ։

Ր․ ատպատմեն աղօթ կամ քարոզի սրբոյն Թեկղի յօրէն ար-
քայէ հայոց առ յանձն արքայ ազգանիշաց ։

Զանց զայլովք արարեալ` որ ինչ բանք են
յաղագս նշխարաց սրբ կուսին և վկայուհւոյն
Թեկղի` եղելոց 'ի բոյեմիա, 'ի բոնոնիա, 'ի
մեդիոլան, 'ի հռովմ, 'ի վենետիկ, 'ի գաղ-
ղիա, և յայլ տեղիս, արժան է մեզ յառաջ

բերել զպատմութիւն պատուական աջոյ նր., զոր ազգ մեր ընծայեաց ազգին սպանիացւոց 'ի ժամանակս թագաւորութեան կիլիկեցւոց . որ և ցարդ պահի 'ի մայր եկեղեցին տարրակոնայ՝ որ յանուն Թեկղի , 'ի կատաղոնիա սպանիոյ ։ Արդ ըստ որում գրեն սպանիական վկայագիրք ըստ դոմենեկկոսի երևելի մատենագրի՝ 'ի ժէ. մայիսի . յակոբ երկրորդ արքայ արագոնայ 'ի սպանիա՝ գրեաց նամակ առ օշին արքայ հայոց , որ ունէր օրինակ զայս .

* Վեհափառ և մեծաշուք պետի , բարեկամի մերում սիրելւոյ (Օ)շնի՝ շնորհօք այ Հայաստանեայց արքայի , Յակոբոս նովին շնորհօք արքայ Արագոնաց , զաճող յաջողուածոց աճման ( մաղթէ ) հանդերձ ողջունիւ ։ Վսեմութեան ձերում 'ի կարգէ նամակիս յայտնի լիցի , զի որդ իսկ եհաս 'ի լսելիս մեր 'ի պատմելոյ արժանահաւատ արանց , թէ մարմին երանելի կուսին Թեկղի , կամ մասն մարմնոյ նր., կայ 'ի սահմանս թագաւորութեան ձերոյ ։ Արդ քանզի 'ի քաղաքն տարակոնայ՝ որ ըստ սահմանօք մերում թագաւորութեան , մայր եկեղեցին հիմնեալ է յանուն նորին երանելւոյն Թեկղի , որոյ հիմնարկութիւն սկիզբն կալաւ 'ի վաղուց անտի յառաջնոց մերոց , սերտ փոյթ ջերմեռանդութեան զմեզ վառէ , զի որովհետև նախասացեալ մայր եկեղեցին՝ որ է մեծապատիւ յոյժ , և 'ի կողմանս յայսոսիկ հնութբ նախապատիւ , մինչ զի 'ի հիմնարկութե նր. և այսր աւելի քան զամս հազար

զար և երկերիւր, ուր գտանի Հին՛ յիշատակագրովք, յինքեան կրէ զանուն կուսիդ, ինչ ինչ 'ի նշխարաց նո՛ր լցի մեզ ունել յեկեղեցւոջ անդ. որով և՛ մերս և՛ Հպատակացս և ամ՛ եկեղեցեաց Հաւատացելոց 'ի կողմանս յայսոսիկ ջերմեռանդութիւն աճեսցէ, Հաւատքն արծարծեսցի. և նմա պատիւ և յարգ ջերմագոյնս ընծայեսցի ։ Այլ եթէ այսմ արթուն մտօք փափաքեմք, ջերմեռանդն սրտիւ գործ առնեմք բարեպաշտութէ, զնախորդաց մերոց գնալով զՀետ շաւղաց՝ որք բարեպաշտութ. և ջերմեռանդութ. զմայրաքաղաք եկեղեցին յանուն և 'ի պատիւ նորին կուսի Հիմնեցուցին ։

Այլ արդ՝ զվսեմ բարձրութի ձեր և զսիրուն բարեկամութիւդ 'ի սեռն սրտէ և 'ի ներքին յօժարութէ, որչափ և սիրով կարօղ իցեմք՝ աղաչեմք, զի 'ի փառս և 'ի պատիւ ամենակալին այ, և 'ի բարձրութի և 'ի պարծանս նախաձառեալ երանելոյն Թեկղի կուսին, միանգամայն՝ զի ոչ միայն առ այսպիսի մասունս, այլև դէպ 'ի կողմանս՝ ուր ամփոփեալ Հանգչի բովանդակ մարմին նորին կուսի, կողմանցս այսոցիկ Հաւատացելոց բնակչաց ջերմեռանդութիւն ևս քան զևս աճեսցէ, և դարձեալ վն առանձնական շնորՀի մերոյ, կամիջիք և Հաճեսջիք 'ի նշխարաց անտի երանելի կուսիդ զմեծ ինչ մասն յղել այսր. որով մարթասցուք ոչ միայն զբուն մայրաքաղաք եկեղեցին, այլև զայլ ևս առ Թոռանիստ եկեղեցիս նմին վիճակեալս զար-

դարել և շինել` ՚ի պատիւ և ՚ի բարձրութիւն ա͞ն մերոյ և նորին երջանիկ կուսի, և ՚ի ջեր-մեռանդութիւն և յորդորումն մեր և ա͞մ հաւա-տացելոց ։

Արդ եթէ դուցէ արդեօք չկայցեն ՚ի մե-ծակի ձերում մարմինն այն կմ՛ մասունք նո-րին, հաճոյ թուեսցի վսեմութեան ձերում փոյթ տանել ՚ի ձեռս բերել ողջինկ, զի ըստ նախագրեալ օրինակի առաքեսջիք այսր առ մեզ. հաւատալով եթէ կամ իցէ, մի այսց բանից` զոր ինչ միանգամ բերան ՚ի բերան պատմեսցէ ՚ի մեր կողմանէ սիմոն սարկ͞ւ, հպատակ մեր հաւատարիմ` բերող նամա-կիս, զոր մ͞նկ առաքեմք առ ներկայութիւն ձեր։ Այց քանզի այսպիսի սրբութիւնք ոչ այնպէս վայելչական կարգօք մարթին մատակարա-րիլ ՚ի ձեռն Տաճկանաց, որպէս ՚ի ձեռն ժառան-գաւորաց, սմին իրի զերկուս ՚ի ժառանգա-ւորաց զերիցունս` զվիճակաւորս նախաձա-ռեալ եկեղեցւոյն տարակօնայ, զարս գովե-լիս ՚ի համեստ վարս և ՚ի քաղաքավարութէ, հոգացաք յղել ՚ի կողմանս ձեր ը͞ն յառաջա-սացել սիմոնի. որք զայն նշխարս կնքով ձե-րով ընկալցին ջերմեռանդապէս, և վայել-չապէս պահեսցեն, և բերեալ հասուսցեն առ մեզ ը͞ն դեսպանիդ մերում։

Պաքէն սմին այսորիկ և ո͞յ և նմին կուսի պաշտօն ընծայեսցէք հաճոյական, և հաղորդ եւս լինիջիք բարեաց գործոց` որ անտի յա-ռաջագայցին. և մեք ունիցիմք ը͞ն այդ հա-ճուն մեծ յոյժ, և ձեզ շնորհս կալցուք մե-

ծա

ծածկէս . և 'ի գործս ձեզ հաճոյականս համարեսցուք զանձինս մեր այդր առանձին պարտականս եղեալ ։ Տուեալ 'ի Բարկինոն . 'ի Է. սեպտեմբերի . յամի տն 1319 ։

Օ այս Նամակ արքունի առեալ դեսպանաց՝ մտին 'ի մեծ նաւ գուլիելմոսի կուէռայ վաճառականի տարակոնացւոյ, և հասին 'ի կիլիկիա 'ի տէրութին Հայոց արքային, որ տէրն էր և երկրին իսաւրիոյ՝ ուր տապանն էր սրբոյն Թեկղի 'ի սելևկիա . և յանդիման եղեն Թագաւորին հանդերձ ազնիւ պատարագօք ։ Իսկ արքայ օշին բազում մարդասիրութբ ընկալեալ զնս, իբրև 'ի վր եհաս պատճառաց դեսպանութեն, և դիտաւորութեն նամակին, խորհուրդ արար ընդ իւրոն . և զայս արար պինի դեսպանաց սպանիացւոց . տաց առէ արքայն արագոնայց զաջ սրբոյն Թեկղի, բայց լինձ պահելով զբոյթ մատն . և այնպէս արար . եւ արքայ զբազուկ սրբուհւոյն՝ բաց 'ի մատնէ անտի, պատեալ ոսկեթել զարդուք և եդեալ յարծաթի տփի, և այն ամփոփեալ 'ի մէջ այլոյ փայտեայ տապանակի . յաւել օշին արքայ և զվաւերական յիշատակարանս 'ի վկայութի ստոյգ նշխարաց սրբոյն Թեկղի . և գրեալ նամակ առ յակոբ արքայ արագոնայ՝ դարձոյց զդեսպանսն նր հանդերձ մեծամեծ պատարագօք ։ Իսկ մտեալ դեսպանաց 'ի նաւ հանդերձ ուղեկցութբ միոյ յառաջինի երիցանց արքային Հայոց՝ յաջող նաւարկութբ հասին 'ի բարկինոնն յամի տն . 1320 ։

Ընկալեալ յակոբայ արքայի զս͞բ զանձն ան-
պատմելի ուրախութե՛ք՝ եւ զարդարել և եւ
զտապանակն նշխարաց կուսին արծաթի թիթե-
ղամբ . և յղեաց զայն ընդ դեսպանաց ՚ի նա-
ւահանգիստն սալաւրի՝ որ և սալօ , և անտի
՚ի գոստանսա . մինչև ժամ լիցի տանելոյ հան-
դիսապէս ՚ի տարակոն . ուր եկեալ ինքնին
հանդերձ աւագանւովն , կարգեաց որ մ͞ծ
հանդիսիւ ս͞բ նշխարացս . ժողովեաց և արքե-
պիսկոպոսն տարակոնայ ո͞ր էքսիմենոս տէ
լունա զեպիսկոպոսունս վիճակի իւրոյ , զաբբայս և
զժողովրդապետս և զերևելիս ՚ի ժառան-
գաւորաց : Այս էին զարդարեալ ա͞մ տեղիք՝
ընդ որս ունէր անցանել թափօրապէս ս͞բ բա-
զուկն Թեկղի :

Այնչափ էր մեծութիւն թափօրին , զի բաց ՚ի
զանազան եղբայրութեանց՝ որք յառաջոյ եր-
թային , և յամբոխէ բազմութեան զհետ եկա-
ւորելոյ , չորս հազար անձինք էին՝ որք մոմե-
ղէնս բարձեալ բերէին . իսկ թիւ եկեղեցա-
կանաց էր եօթն հազար երեք հարիւր յիսուն
և չորս . յետ ն͞ր գայր արքեպիսկոպոսն էքսիմենոս՝
բարձեալ զաջ ս͞րյն Թեկղի ընդ մեծահարուստ
հովանեաւ . յաջմէ ն͞ր թեւակից էր յակոբ
արքայ , և ընդ ահեկէ ալփոնսոս արքայորդի .
զհովանոցն բարձեալ էին ընդ այլ աւագաց եր-
կու այլ որդիք թագաւորին , պետրոս յաջ-
մէ , և հռայիմունդ բերենգարիոս ՚ի ձախ-
մէ . թո՛ղ զբազմութի՛ մեծամեծաց՝ որ գային
զկնի ս͞բ նշխարաց . և այնպէս մեծափայլեալ
հանդիսիւ և արքայական շքով բերեալ եդեւ
ս͞բ

սբ̃ այն Թեկղի յաղթական կուսի 'ի քաղաքն տարակոնայ , և եդաւ 'ի մայր եկեղեցին՝ որ յանուն Նորին Թեկղի , ամփոփեալ 'ի խորան սբյն փրուկտուոսի ․ ուր և արքեպիսն մատոյց զձայնաւոր պատարագ՝ պաշտօնակցութբ̃ եպիսկոպոսացն կեսարաւգուստացւոց և իլերդացւոց ։ Եւ այս աւր լինել 'ի մայիսի 18 ․ կմ̃ 19 ․ յամի տն̃ 1323 ․ և յայնմհետէ հաստատեցաւ կատարել զտօնախմբութի փոխադրութե սբ̃ նշխարացս յեկեղեցին տարակոնայ՝ 'ի հինգերորդ կիրակէի զկնի զատկի կմ̃ պենտեկոստէի ։

Օ այս տմ̃ երկրորդեն և բոլլանդեանք բանիւ սպանիական յիշատակարանաց ․ և 'ի վր̃ բերեն , թէ զփոխադրութիս զայս երևելի հրաշիւք պայծառացեալ գոլ վկայէ դոմենեկկոս , և յետ նր̃ վկայագիրն սպանիացւոց , ունելով բանիւն այսպէս ․ * Ո՛չ պակասեցին այսպիսի հանդիսի փոխադրութե՝ սքանչելիք ․ քանզի քահանայ ոմն հռայիմունդ կաստեղին անուն՝ որ 'ի վեշտասան ամաց հետէ կուրացեալ էր աչօք , 'ի կարդալ անդ զանուն սբյն Թեկղի կուսի և վկայի՝ իսկ և իսկ ընկալաւ զտեսութի աչաց ․․․ Դարձեալ կինն հռայիմունդոսի պալմերայ տէ վալս , որ զամս երկուս վերնոտութբ̃ տագնապէր , իբրև ածաւ յեկեղեցին՝ զի ագանիցի զայն գիշեր առաջի խորանին , ուր եդանն նշխարքն , ուխտեաց մատուցանել սբյն Թեկղի կուսի և վկայի վեց լիտր մոմ ․ և 'ի տքնիլն 'ի նմին գիշերի՝ եգիտ զանձն առողջացեալ , և պատ-

մեաց

մնաց առաջի ժողովրդեանն ||:

Յետ այսորիկ յամի Տն 1387. որբուհին Թեկղ պաշտպանեաց եկեղեցւոյ իւրում՝ ի զինուորական յարձակմանց. և 'ի յանդգնել պետրոսի չորրորդի արքային արագոնայ առաքել զօրս և կողոպտել զգանձս տաճարի կուսին 'ի տարականս, 'ի գիշերի միում երևեցաւ Թեկղ, և եած ապտակ Թագաւորին, սպառնացեալ նմ զվաղահաս վախճան. այլ մինչև էր նա հանեալ զոգին՝ պատուիրեաց իւրոցն առաջի եպսաց և աւագաց՝ դարձուցանել զամ սպասս եկեղեցւոյն: Ուրղ և զայլ սքանչելիս 'ի յետագայ դարս 'ի զանազան տեղիս. զի յամ Ժմկս և ամ ուրեք փառաւորեալ է անուն Թեկղի կուսի սքանչելագործի՝ 'ի փառս քնի այ մերոյ:

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Առաջինկայս հին վկայաբանութիւն, որ և կոչի գիրք Թեկղի, կամ գործք պօղոսի և Թեկղի, որոյ անկիղծն է ը ճառընտրաց, * Եւրև ելեալ երթայր պօղոս յիկոնիոն քաղաք յետ հալածանաց իւրոց ||, միօրինակ զտանեմք և 'ի յոյն բնագրի, և 'ի հին թարգմանութիւս լատինացւոց և այլոց ազգաց. և զնոյն քաղեն ամ վկայաբանք և յայսմաւուրք. և նոյն այն էր՝ զոր 'ի ձեռին ունէին ամ նախնի հարք, որք առեն զԹեկղ աշակերտեալ պօղոսի, և զերծեալ 'ի հրոյ և 'ի գազանաց. որ այն իսկ է գոյացուն վկայաբանութեան. Թող զբազմիցս ակնարկեալ, որ զնոյն գործ ճառօրէն երկրորդէ 'ի ներբողեանն Թեկղի: Այլ կարևոր է զհնագունից հարց վկայութիւն նշանակել աստանօր:

Աթանասիոս 'ի ճառն նախատակաց գրէ 'ի ձև ազօթից.
'ի

'ի բերանոյ նշ · * Լեր մեզ հպատոր, որպ պօղոսի 'ի կա_
,, պանս, և թեկղի 'ի հուր ||։ Եւ յաղօթս կատարման
խւրոյ · * ազատեա զնս 'ի միջոյ յաւիտենիս այսորիկ,
,, որպ զթեկղ ազատեցեր 'ի միջոյ ամփիթէատրոնին ||։
Գր· Ածաբան 'ի յորդոր կուսանաց · * Զես ինչ անտե_
,, ղեակ, եթէ թեկղ 'ի հրոյ և 'ի գազանացն յարձակ_
,, մանէ ապրեցաւ ||։ Իսկ 'ի պատուէրն առ կուսանս
ոտանաւոր բանին ·

* Որ զթեկղ ապրեցոյց 'ի վտանգէ մահու և բոցոյ ·
,, մ՚ զբոսան ձիրանս կապեաց, և զկատաղութն գազա_
,, նաց ։
,, Կուսութն ։ Ո՛վ գործ սքանչելի 'ի գարս տմ ·
,, կուսութին կարող եղև զհրագոյն տախւծս թմրեցու_
,, ցանել ·
,, և ոչ իշխեցին անմաքուր ժանեօք զատամքինի անգամս
,, կուսին ճմլել, և անողորմ ըմբռշխմամբ գիշատել ||։

Գր· Նիւսացի · ցէրգ էրգ · ճառ Ժ · * Զմուռս այսպիսի
,, կաթեցուցանէր երբեմն պօղոս 'ի բերանոյ իւրմէ_
,, խառն ը մաքուր շուշանի ամօթխածութե 'ի սբյ կու_
,, սին լսելիս, թեկղի ասեմ, որ արուե քաջութ կաթե_
,, լով զկաթիլս 'ի շուշանէ՝ զարտաքինն մարդ մահու_
,, ապանանէր, զամ խորհուրդ և զցանկութն շիջուցա_
,, նելով ||։

Եպիփան 'ի հէբյ · հէ · * Թեկղ հանդիպի սբյն պօղոսի,
,, և 'ի հարսանեաց արձակի, խօսնայր ունելով զայր գե_
,, ղապանծ՝ զկնաւոր քաղաքին, մեծատուն, ազնուա_
,, կան և շքեղ ։ 'Ի կենցաղումս արհամարհէ զերկրա_
,, ւորս որբութին, զի երկնայնոցն լեցի ժառանգորդ ||։

Ոսկեբերան · ճառ ԻԷ · գործ առաք՞ · * Լուր զի երանել_
,, ւոյն թեկղի · նա առ 'ի զպօղոս տեսանել՝ զոսկեն իւր
,, ետ (բանտապանին) · իսկ դու առ 'ի զՔս տեսանել՝
,, և ոչ իբրեւէշ տաս ||։

Եւ 'ի ճառ ԻԸ · առ անտիոքացիս · * Խնդրեա զպօղոս հան_
,, գոյն թեկղի · զի լուիցես՝ զինչ քեզ ասի նմա ||։

Ամբրոսիոս · յղ· կուսանաց · Գիրք · Բ · * Թեկղ ուսուցէ
,, զանձն պատարագել, որոյ փախուցեալ 'ի զուգաւո_
,, րութէ ամուսնութե, և զխօսեցելոյն արհամարհեալ
,, զցասումն, զբնութիւն գազանաց զկնովքն փոխեաց
,, կուսութեն յարգանօք ։ Քանզի պատրաստեալ տաւ_
,, ջի գազանաց, այն ինչ 'ի հայեցուածոյ անգամ խոր_
,, շէր արանց, և զիւր կենդանութն մատնէր գժնդակ
,, տախւծու, այլայ՝ զի որքյանդպարկեշտա ձգեալ եւն
,, զաշս ·

էր զնա պօղոսի , թէ եւս Թեկղի իշխանութիւն ոչ միայն քարոզելոյ , այլեւ մկրտելոյ ․ որ է օտար յառաքելական օրինաց ․ զի կանայք ոչ կարեն լինել կարգաւորել պաշտօնեայ մկրտութե՝ բաց ՚ի վերջին վտանգէ մահու ։ Եւ Հերոնիմոս ցուցանէ ․ ՚ի Գլ․ Ե․ յաղագս եկեղեցական մատենագրաց կմ երեւելի արանց , թէ ինքն ՚ի պատմութե Թեկղի ընթերցեալ իցէ անհեթեթ ինչ * պատմու-
,, թն առիւծու մկրտեցելոյ || ․ զայս Է անյայտ գրուածս գտանեմք առ զայն ․ որպէս իբրք գտեալոց եւ գեղասիրա հռովմայ հայրապետս ։

Յայսոսիկ հայեցեալ՝ սովորաբար ասեն քննիչք ․ թէ չիք այժմ ուրեք օրինակ այնր անհարազատ պատմութե ․ վն զի չկան այժ. բանք ՚ի կարգի հարազատ վկայաբանութե ։ Այլ յայսր անի վն ունիմք ասել , թէ կամ ոմանք ՚ի խեղաթիւր գրչաց ՚ի սկզբանէ անտի մուծեալ իցեն զայնպիսի օտարոտի հանգամանս ՚ի բուն պատմութիւն , որպս երեւի կարծել տերտուղիանոս , որ պատմէ յանստոյգ աւանդից՝ թէ զայն արարեալ իցէ երէց ոմն ասիացի առ ՚ի մեծացուցանել զպօղոս , եւ թէ յանդիմանեալ ՚ի յովհաննէ՝ ընկեցեալ իցէ ՚ի պատուէն ․ եւ կմ թէ գոյզն վրիպակաւ գրչութե՝ մեծամեծ սխալանք ՚ի ներքս սպրդեալ իցեն ․ մինչեւ չփոթել զմասունսն Թեկղի ՚ի լիմ , ուր յիշեաց զխորհուրդ մկրտութե՝ յետ զերծանելոյ յառիւծուց , եւ կարծել մկրտութիւն ինն առիւծու ․ նոյնպէս եւ զտալն պօղոսի իշխանութիւն Թեկղի ՚ի քարոզել զաւետարանն քսի , կարծել հանդերձ իշխանութբ մկրտելոյ ։ Օրինակ այսմ , զի եւ յովհան դամասկացին ՚ի համաձայն բանից վկայաբանութեն քաղեալ զայն անկարծելի կարծիս՝ թէ փաւլինիլլա դուստր արիփոնայ ազատեալ իցէ ՚ի գժոխոց աղօթիւք Թեկղի ․ ուր վկայաբանն այսչափ միայն գրէ , թէ արիփոնա պատմեաց Թեկղի՝ այդ թէ տեսեալ իցէ յերազի զմեռեալ դուստր իւր , որ ասէր մօրն տանել ՚ի տեղի իւր զԹեկղ ․ զի աղաչեսցէ նա զած վն ազատութե իւրոյ ․ եւ Թեկղ ը մեռելոց հաւատոց նր արար աղօթս այսպէս ․
* Այ՝ որ յերկինս ես , հայր բարձրելոյ , տուր արիփո-
,, նայ ըստ կամս իւրոյ ․ զի կեցցէ դուստր նր
,, յաւիտեանս յաւիտենից || ։ Որ է անորոշ առացուած ․ եւ մարթի լսել այն մօրք հայիլ եւ առ նոյն ինքն Թեկղ , որ եղեւ իբր դուստր արիփոնայ ․ այս թէ ոչ՝ ոչ միայն չգրէ վկայաբանն , թէ եղեւ այցելութիւն գաւեր նորա , այլեւ ենթադրէ զնա մնացեալ ՚ի մեռեալս ․ զի արիփո-

նա



# ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Սրբուհւոյն Վառվառեայ կուսի · ըստ նմին և Յուլիայի :

Հ. Յ. Լ. · դեկտ. 4: Ճառընտ. Ր. · դխԹ = դԾ : Յովհան դամասկացէ 'ի ներքոյ վասպուրականայ · հար · Ե · երես · 895 = 910: Մ՝եօթներ · և գալիսեններ առ առընդ : (1)

ՄԵԾ ԵՒ ՊԱՏՈՒԱԿԱՆ 'ի վկայուհիս՝ վարդադեղ և շուշանափայլ նոյն կոյսն Վառվառուհա, ( որ և Վառվառա ասի ի յունաց , և պատուպատեալ ի Հռովմայեցւոց , ) էր յերկրէն արևելից 'ի Հեղիուպօլսոյ , այն է արեգ քաղաք կամ քաղաք արեգական 'ի պամփղագոնիա՝ մօտ յեւքսինոսայ և 'ի գելասայ գիւղ (2), միամօր դուստր մեծի իշխանի՝ դիոսկորոս կոչեցելոյ · որ և էր այր մեծատուն յոյժ և ազնուական , բայց հեթանոս հաւատովն · այլ դուստր նր̃ իմաստուն՝ էր 'ի ծածուկ հաւատացեալ 'ի քս̃ : (3)

'Ի ժամանակին յայնմիկ 'ի Թագաւորել ամպարշտին մաքսիմիանոսի զօրանայր հալածանքն 'ի վր̃ քրիստոնէից , առաքելով դատաւորս և զօրագլուխս ը̃ ա̃մ գաւառս ա̃րրու

թէ իւրոյ՝ չարչարել և բռնադատել զքրիստոնեայս 'ի զոհ աստուածոցն, ապա թէ ոչ՝ վտանել և կորուսանել զնա, և բառնալ 'ի միջոյ զկարգս և զկրօնս նց: Այսկն և 'ի Հեղիուպալիս Մարկիանոս կամ Մարտիրիանոս դատաւոր անաստուած և վայրենամիտ. և տանջէր զորս գտանէր 'ի հաւատացելոց անտի՝ գործակցութեամբ իշխանաց քաղաքին :

Ջեռնոտու էր նմ բազմօք և Դիոսկորոս հայրն վառվառեայ՝ մոլեալ յոյժ 'ի դիւցն պաշտօն. այլ ոչինչ կարծիս 'ի մտի դնէր զքրիստոնէութիւն դստերն, զոր պահէր 'ի վերնատան ապարանիցն. քանզի հայեցեալ 'ի գեղեցիկ և 'ի վայելուչ հասակ նր և 'ի պատկեր՝ հրամայեալ էր շինել նմա բարձրաբերձ աշտարակ, և անդ բնակեցուցանել զնա՝ որպէս զի մի տեսցի յումեքէ, մինչև հասցէ 'ի կատարեալ չափ հասակի ամուսնանալոյ. քանզի և համբաւ գեղապայծառ գեղոյ նորա ելեալ էր ընդ երկիրն ընդ այն. և բազումք 'ի մեծամեծ իշխանաց խնդրէին զնա 'ի հարսնութիւն որդւոց իւրեանց: Այլ ոչ գիտէր, թէ որպիսում շնորհաց արժանի եղև դուստրն յառանձնութեան անդ Այ կարգաւորութեամբն նոյ. զի ունելով զսէրն քի 'ի սրտի իւրում՝ ցանկայր սրբութբ հարսնանալ քի. և պարկեշտ վարուք պահէր զանբիծ հաւատս և զկուսական մաքրութի :

Յաւուր միում ելեալ հօր նր յաշտարակն առ 'ի տեսանել զդուստրն իւր, և ասէ ցնա. որդեակ իմ վառվառեալ՝ ահաւասիկ պատրաստ-

տեալ

տուեալ եմ քեզ առագաստ Հարսանեաց, տալ զքեզ ՚ի կնութիւն միում յորդւոց մեծատանց ․ և արդ զի՞նչ խորհիս դու ՚ի սրտի քում, ասա ինձ համարձակ ։ Իսկ նորա խոժոռեալ ընդ բանս հօրն՝ խռովեցաւ յոգի իւր ․ և հայեցեալ յերկինս՝ յոգւոց եհան, և ասէ ցնա ․ ով հայր իմ մի՛ հարկ առներ ինձ թշուառականիս՝ անձամբ անձին դատ առնել և դահիճ չար լինել, զրկելով զիս ՚ի քաղցր և յառանց զբաղման կենացս ։

Իսկ նորա ՚ի հիացման եղեալ, և թողեալ զնա՝ իջանէ ՚ի խոնարհ, ուր շինէին մերձ յաշտարակն բաղանիս ․ զոր հրամայեր իշխանն արուեստաւորացն՝ փաղփաղակի փութալ և կատարել զգործ շինուածոյն ․ վասն զի հանդերձեալ էր գնալ ՚ի Ճանապարհ հեռաւոր ․ և զիմ յանձն առնէր գործօնէիցն, և ինքն հեռանայր ՚ի տար[illegible] ․ և անդ առնէր ժամանակս ոչ դուզնաքեայ ։

Յաւուր միում իջեալ վառավառեալ դստեր նորա յաշտարակէն՝ հայեցեալ տեսանէր զշինուածս բաղանեացն ․ և նկատէր զլուսարանս պատուհանացն, զի երկուս միայն էին արարեալ ՚ի հիւսիսային կողմանէն ( որ յօրինակս ինչ՝ Հարաւային գրի ) ․ և ասէ ցնոսա կոյսն ․ ով Ճարտարապետք ո՞չ էք հմուտ գործոյդ, վասն զի երկուս պատուհանս միայն էք թողեալ ։ Ասեն ցնա արքն ․ ով տիկին դու, վասն զի ըզհրաման տեառն մերոյ հօրն քո կատարեցաք ։ Ասէ ցնոսա աղախինն Քրիստոսի ․ եղիցի և միւս և այլ պատուհան հրամանաւ իմով ․ վասն զի երեք

րեք պիտոյ են լուսարանքդ . և փարատեալ 'ի սրտից նց զերկիւղ հօրն՝ եւ կատարել զոր ասացն : Այլ թող երանելին և 'ի մարմարիոն աւազանն՝ որ էր 'ի կողմն արևելից , զնշանակ քրիստոնէութե , ձեռամբ իւրով նկարագրեալ զնշան տէրունական խաչին : Մտեալ վաղվաղակի և յապարանս հօր իւրոյ՝ եթուք յերեսս կուոց նր , և ասէ . նման սոցա եղիցին՝ որք արարին զսոսա , և որք յուսացեալ են 'ի դոսա :

Յետ աւուրց բազմաց եկն դիտակորս հայր նր . և մտեալ 'ի լուանալին , և ահա տեսանէ երիս լուսարանս 'ի նմա , և ոչ երկուս՝ որպէս հրամայեալ էր . և ասէ ցարհեստաւորսն . ընդէ՞ր սատուդանեցիք հրամանաց իմոց , և արարիք զայդ : Պատասխանի ետուն գործաւորքն , և ասեն . ոչ յանձնահաճութե կամաց արարաք զայդ , այլ 'ի հրամանէ ստրեալ զաւակի քո : Յայնժամ կոչեցեալ նր զերանելի կոյսն՝ ասէ ցնա զարմացմամբ . զի՞ ետուր հրաման առնել զայդ զերիս պատուհանս : Եւ նա ասէ . այո ես հրամայեցի . զի երկուսն ոչ ունէր զկատարեալ աւանդնաւորութի երրորդութենն . քանզի երրեակ լուսով լուսաւորի ամ մարդ՝ որ գալոց է յաշխ , և միով անձութե ժառանգէ զարքայութին և զկեանսն յաւիտենից , և վէմն ետու յօրինել զլուսարանսն յանուն հօր և որդւոյ և հոգւոյն սբյ :

Եւ ասէ հայրն ցնա . ո՞վ որդեակ իմ ցուցեցա՞ր արդեօք . ոչ գիտեմ զինչ խօսիս զաւակա-

կաւոր բանսդ ։ առա՛ յայտնապէս · զի իմա-ցեալ ծանեայց զասացեալսդ 'ի քէն ։ Յայն ժամ մեկն և համարձակ յայտնեաց կոյսն զքրիստոնէութի իւր՝ յանձն առեալ վկայել արեամբ 'ի սէրն քրի · եցոյց և զնշան խաչին՝ զոր արարեալ էր նր յաւազանին՝ ոչ ճարտա-րութբ, այլ զօրութբ տն · զի ոչ 'ի վր կա-կուղնիւթոյ կմ մոմոյ տպաւորեալ էին գիծք ձեռացն ։

Օ այս իբրև լուաւ դիոսկորոս, բորբոքեալ 'ի չարէն, և լցեալ անհնարին ցասմամբ, ամ-բարձ զսուսերն իւր՝ նոյնժամայն սպանանել զնա ։ Իսկ 'ի գոչել կուսին առ տր՝ եղեն աղա-չին սքանչելիք · զի վէմն՝ որ կայր յանդիման բաղանեացն, պատառեցաւ խորանաձև յեր-կուս մասունս · և ել կոյսն ողջանդամ և ա-նարատ յայնկոյս 'ի լեռնակողմն ։ Իսկ անօ-րէն հայր նր չէառ 'ի միտ զզօրութիս տն · այլ թերևս սովորական ինչ սասանումն եր-կրի համարեալ՝ դադարեաց առ վայր մի · և ապա ել 'ի լեառն մօտակայ, և տեսեալ անդ հովիւս երկուս՝ հարցանէր վն դստերն · մին 'ի նոցանէ լռեաց, բայց միւսն մատնեաց զնա նշանացի ակնարկութբ ։

Ապա գտեալ զնա հօրն 'ի խորշս լերինն, և ապտակեալ զնա սաստիկ և չարաչար հար-ուածովք՝ բուռն եհար զհերացն նր, և քար-շեալ մինչև 'ի տուն՝ արգելոյր 'ի նսեմ սե-նեակ մի իբրև 'ի բանտի անսուաղ՝ կնքեալ իւրով մատանեաւ · և ապա առնէր դատաւո-րին մարկիանոսի վն նր · և յետ աւուրց ա-

ռեալ եւս Քն ինքեան 'ի դասս զօրագլխացն
ծեր զոմն անօրէն և անօծ, եհան զկոյսն 'ի
բանտէն, և բերեալ մատնեաց 'ի ձեռս դա-
տաւորին, երդմնեցուցեալ զնա չարադեն 'ի
դիս և 'ի բախտ ինքնակալաց․ զի դառն և
անողորմ տանջանօք սպանցէ զզաւակ իւր ։
Յայնժամ դատաւորն մարկիանոս նստեալ
'ի վր բարձրագոյն բեմի ըն սովորութեան 'ի
մէջ բազմամբոխ հրապարակին, և հայեցեալ
ըն նկարագիր պարկեշտ և գեղեցիկ կուսին
վառվառեայ՝ ասէ ցնա․ ո՛վ ազնուական և
վայելուչդ 'ի կանայս դուստր իմ, գիտեմ
զի ո՛չ պիտոյանաս դու զանազան հարցմանց․
վն զի իմաստուն երևիս և հեզ և հանդարտ․
և արդ հարցանեմ զքեզ, զի՞նչ կամիս՝ ա-
սա՛ ինձ․ առնե՞լ զկամս ինքնակալին, և զո-
հել ածոցն, և հաշտեցուցանել զքեզ ըն նս
և վայելել 'ի ցանկալի փառս ծիս, և դուստր
թագաւորաց կոչիլ, եթէ զրկիլ 'ի քաղցր կե-
նացս, և չարաչար տանջանօք իբրև զմահա-
պարտ մեռանիլ, զհետ երթալով կրօնից գա-
լիլեացւոյն, և ած խոստովանելով զայն՝ որ
'ի ձեռաց հրէիցն մեռաւ․ զոր և նախատինս
համարիմ իմաստուն և ազնուատոհմ կու-
սիդ, թողուլ զկենդանի ածսն, և զհետ եր-
թալ մեռելոյ ումեմն, և մատնիլ 'ի դառն
տանջանս, որ մաշեն անողորմ զգեղեցկու-
թիւդ քո․ և քնն այն՝ որ 'ի ձեռաց այլոց չկա-
րաց զանձն փրկել, զիա՞րդ զքեզ ապրեցու-
ցանել կարիցէ ։

Ասնի եւ աղախնին քո, և ասէ ցդատաւ-
որն․

ւորն . Ես պատրաստեալ եմ այսուհետեւ զանձն իմ մատուցանել պատարագ այ կենդանւոյ , և փրկչին մերոյ յի քսի , այն՝ որ արար զերկինս և զերկիր , և որ 'ի նոսա արարածք իցեն . որ խոնարհեալ գթացաւ յարարածս , և եղև մարդ ճշմարտապէս , և կամաւ կրեաց զամ կիրս առանց մեղաց մինչև 'ի մահ խաչի . և տիրաբար խորտակեաց զզօրութիւն իշխանին մահու՝ հանդերձ խաւարային դասուք նր , զորս դուք առ անգիտութե յիմարութե ձերոյ ըստ խոստովանիք . և զայն՝ որ իւրով յարութը շնորհեաց մեզ զանսպառ և զանանց բարութիւն և զկեանսն յաւիտենականն , հայհոյէք ։ Բարի է և կեանք Ձիս . քանզի և սա արարած է մեծին այ . և ո՛չ եթէ ես մահու ցանկացեալ՝ փախչիմ յարարածոց նր . բայց չար այնոցիկ է՝ որ զհետ երթան պատրանաց չարին անառակ ցանկութըք և անմտութը . և ձր դիւան զոր պաշտեն՝ այրելոց են յանշէջ գեհենին ։ Այլ ես այնմ կենաց ցանկացեալ սպասեմ , զոր պատրաստեաց այծ սիրելեաց իւրոց . որոյ տրութին ոչ անցանէ , և արքայութին ոչ փոփոխի . և նմա երկրպագանեմ և փառաւորեմ , որ զայն հանդիստ շնորհէ մեզ ։ Իսկ կուռք հեթանոսացդ ոսկի և արծաթ՝ գործք ձեռաց մարդկան , կորիցեն 'ի ներքոյ երկնից ։ Յայնժամ բարկացեալ դատաւորն՝ հրամայեաց կապել զկոյսն , և չոր արջառաջլօք յանխնայ հարկանել , և մազեղինաւ շփել զվէրս նր . մինչև ամ անդամք մարմնոյն շա

ղախեալ լինէին յարենէն ։ Ապա հրամանս տայր 'ի բանտ տանել զնա, և դնելով 'ի կոձեղ զոտս նր ։ Իսկ ահա 'ի մէջ գիշերին լոյս ծագէր 'ի բանտին իբրև զճառագայթս արեգական․ և երևեալ փրկիչն՝ ասէ․ քաջալերեա՛ց և զօրացի՛ր անպարտելի և սիրելի վկայդ իմ վառվառիկ․ քանզի վկայութի նահատակութե քո ուրախութի բազում է հրեշտակաց և մարդկան․ մի երկնչիր և յայսմ հետէ 'ի սպառնալեաց դատաւորիդ․ քանզի ը քեզ եմ 'ի փրկել զքեզ յամ տանջանաց՝ որ գալոց են 'ի վր քո ։ Իսկ զայս ասացեալ փրկիչն, և կնքեալ զնա՝ վաղվաղակի ողջացոյց զվէրս մարմնոյ կուսին․ և ինքն համդերձ հրեշտակօքն վերանայր յերկինս․ իսկ սբ վկայն քսի ուրախացեալ ցնծայր 'ի վր քաջալերութեց խոստմանց փրկչին ։

Որ և կին ոմն ածապաշտ և երկիւղած յոյժ, անուն նր յուլիա կամ յուլիանէ․ որ զհետ շրջէր սբյն վառվառեայ, և տեսանէր զհանդէս նահատակութե նր․ որ և եկեալ 'ի բանտն՝ ետես զնա ողջացեալ 'ի չարաչար հարուածոցն, և փառաւորէր զած 'ի վր անպատում սքանչելեացն․ և ցանկայր նահատակակից լինել նմա ։ Այլ 'ի վաղիւն անդր՝ յորժամ հրամայեաց դատաւորն ածել զառաջեաւ զվառվառիա, եկն ը նմա և յուլիա ։ (4)

Իսկ դատաւորն իբրև ետես զվէրս վառվառեայ ողջացեալ, և զդէմս նորա զուարթ և կայտառ, յիմարել մտօք ասէ ցկայսն․ տե-

սեր

ամբր արդարոց զխնամս ողծոցն 'ի վր քո , թէ որպէս վաղվաղակի բժշկեցին զքեզ ։ Պիմենի եւտ երանելին և ասէ . ով դատաւոր՝ ողծքն քո կոյրք են և համերք , և անմտագոյնք քն զքեզ . և երբէք ոչ զգան նքն զցաւս մարդկան . վն որոյ ոչ բարի ումեք կարեն առնել և ոչ չար . և մեք՝ որ զգայութիւն ունիմք և ճանաչեմք զած , ոչ կարեմք թողուլ զկռոյսն , և ընթանալ առ խաւարն ։ Բայց դու եթէ զհետ գաս ճշմարտութեան , և ասես և հեռանաս 'ի մոլար խաբէութենէդ , ես քեզ ցուցանեմ զողջացուցիչն իմ ։ Ի՛ իմ ճշմարիտ բժիշկ քն անձին իմ և տր՝ փրկիչն Յի , զոր դու ոչ տեսանես . զի խաւարեալ են աչք հոգւոյդ 'ի խարդախութենէ դիւաց , և 'ի մոլար անցաւոր փառաց յաւիտենիս այսորիկ ։

Յայնժամ արտամտեալ դատաւորն իբրև զառիւծ , և կրճտեալ զատամամբն՝ հրամայեաց կախել զնա և քերել զկողս նորա . և հրամաբոցոյ տարածանել 'ի ներքոյ նորա , և կապարեալ զնտիւք հարկանել զգլուխ նորա ։ Օայս իբրև տեսանէր երանելին աղախինն քնի յուլիա , աղիողորմ արտասուօք լայր դառնապէս ։ Բայց դատաւորն ցզինուորսն . ով արդեօք է կինդ այդ , որ այնպէս ջերմ արտասուօք լայ և կոծէ զանձն վն անօրինիդ փառավառեալ ։ Պիմենի ետուն յառաջնորդքն հանդերձ զինուորօքն և ասեն . քրիստոնեայ է . և վն այնորիկ ցաւակից լինելով զմա ողբայ աղէխարշեալ ։ Եւ դատաւորն դառնացեալ հրամայէր նմա առաւել սաստկացուցանել

Թէ անցուցին և Ը յուլիս չարչարակից վառ-
վառեայ :

Սա իբրև ոչինչ կարաց փոխել զմիտս նց ա-
նօրէն դատաւորն, հրամայեաց որոշել զնս
'ի միմեանց. զյուլիա ետ արկանել 'ի բանտ.
և զվառվառիա մերկ և խայտառակ ձաղա-
նօք և ձաղկանօք շրջեցուցանել Ը քաղաքն,
և արտաքոյ քաղաքին. իսկ երանելի վկայն
սկսաւ աղօթել այսպէս ասելով. Ո՛վ ամե-
նակալ հայր տն մերոյ յի քի սիրելի որդւոյ
քո, որ զգեցուցեր զերկինս ամպով, և ըզ-
գեցեր ես զլոյս ոպ զօթոց, դու ինքնին լեր
զգեցուցիչ աղախնոյ քո, և ծածկեա զմեր-
կութիւն անդամոց իմոց. զի վն քո ուրախութ
զնախատինս և զչարչարանս յանձն առի. և
մի՛ առներ ցոյց և նշաւակ ամպարշտաց և
անօրինաց: Յայնժամ երևեցաւ նմա փրր-
կիչն քս իբրև քրովբէական կառօք, և հրա-
մանն ետ զուարթնոց ծածկել զնա լուսեղէն
զգեստուք. և այնպէս համարձակութ շրջէր
երանելին. մինչև ածին զնա 'ի գեօղ ուրեմն,
որ կոչէր գելասիս (կմ գիլսիա կմ գիալաս՝)
ոպ երկու մղոնաւ հեռի յեւքայիտայ. (որ
յօրինակս ինչ վրիպակաւ ասկաղոն գրի):
Անդ գայր և ինքնին բռնաւորն. և միւսանգ
գամ հարցափորձեալ զկոյսն, և տեսեալ զան-
փոփոխելի միտս նորա՝ վճիռ ետ 'ի վն սբյն
սուսերաւ հատանել զգլուխ նր. Ը նմին օ-
րինակի կորուսանել և զյուլիա:

Յայնժամ լցեալ մոլեգին սրտմտութ դիոս-
կորոս հայրն վառվառեայ, որ եկեալ էր ԸՆ
դա-

գատաւորին երբեւ խորհրդակից , կամեցաւ ինքնին լինել դահիճ դատեր իւրոյ . վասն ինքնին հաներ զնա 'ի լեառն 'ի տեղին կատարման՝ հանդերձ բազմութբ զինուորաց եւ ամբոխին . եւ բազմայաղթ վկայն երթայր յօժարութբ 'ի մահ . եւ զայս աղօթէր զճանապարհայն . Աստուածութեան տր՝ անսկիզբն եւ անհասանելի լոյս , արարիչ եւ տր բոլորից , եւ պսակիչ սրբց քոց , յս քս , պարգեւեա աղախնոյ քում կատարել զընթացս նահատակութե՝ որ վն սիրոյ քո , եւ գալ հասանել առ քեզ պարզերես համարձակութբ եւ անսարտում ուրախութբ : Տուր եւ շնորհս ոսկերաց իմոց 'ի փառս անուան քո փառաւորելոյ , եւ 'ի պարծանս եւ յօգուտ հաւատացելոց քոց . եւ որք հաւատով կատարիցեն զյիշատակս իմ , կատարեա զհայցուածս սրտից նոցա . եւ փրկեա յամ նեղութեց , 'ի սովոյ , 'ի սրոյ եւ 'ի հիւանդութեց , 'ի ծաղկոյ եւ 'ի տարաժամ մահուանէ . եւ պարգեւեա զթողութի յանցանաց նց . եւ զհոգի իմ ընկալ խաղաղութբ ը յուլիայ նահատակակցին իմոյ :

Եւ 'ի հասանել վառվառեայ 'ի տեղին կատարման , եւ 'ի վեր առաքել զամենն , եւ ահա ձայն եղեւ յերկնից՝ որ ասէր . եկ ով ճգնազգեացդ եւ անպարտելի նահատակդ իմ , եւ հանգիր յայսմ հետէ յշտեմարանս արքայութե իմոյ հանդերձ յուլիայիւ կուսիւդ սիրելի աղախնաւդ իմով . եւ յաղագս որոյ խընդրեցերդ , ամն եղիցի քեզ : Յայնմ վայրի ամպարիշտ եւ անագորոյն հայրն վառվառեայ

եհատ

եհատ սուսերաւ զգլուխ նր̃, և մի ոմն 'ի զին-
ուորաց զգլուխ յուլիայ · և այնպէս կատա-
րեցան բարի խոստովանութ̃ 'ի քս̃՝ յամենեանն
դեկտեմբերի 'ի չորրորդում աւուրն , յամի
տն̃ երր 300 · զոր ոմանք դնեն 288 · կմ̃ և՛ս
յառաջ ։ (5)

Նա և եղև յիջանել ամբոխին 'ի լեռնէն՝ հուր
անկաւ յերկնից ահագին փայլատակմամբք ,
և այրեաց զդատաւորն , և զորդեսպանն ըզ-
դիոսկորոս · որ և փոշին իսկ անյայտ եղև ։
Իսկ այր ոմն վաղենտիանոս անուն՝ ա̃ծա-
պաշտ և երկիւղած 'ի տն̃է , յիշատակ նորա
օրհնութ̃ե , եառ զնշխարս ն̃ցն , և պատա-
ռակալաւ պատեաց՝ օծեալ անուշահոտ խըն-
կովք , և պատուով թաղեաց զն̃ս 'ի նախա-
սացեալ գեօղն գելասիս՝ 'ի տեղին կոչեցեալ
նիւսսոյ · և մինչև ցայսօր ( ասէ վկայաբանն )
սքանչելիք գործեն նշխարք ոսկերաց նոցա
'ի փառս ամենասբ̃ երրորդութ̃ն հօր և որդ-
ւոյ և հոգւոյն ս̃բյ · ամէն ։

Սքանչելիք սրբուհւոյն Սաղոմեայ ։

Ո՛չ յետ բազում ժամանակաց 'ի կատարմա-
նէ անտի մեծի վկայուհւոյն վառվառեայ
կուսի , յորժամ ծաղկեցան տիեզերք քրիս-
տոնէութ̃ առ մեծն կոստանդիանոսիւ , եղև
նշանաւոր ուխտատեղի հաւատացելոց՝ ոչ
միայն տապան ս̃բյ կուսին և տեղի կատար-
մանն , այլ և տուն նր̃ հայրենի , ուր երևեին
փոխադրեալ նշխարք նր̃ · կմ̃ տեղի աշտարա-
կին

կրին և բաղանեացն, ուր թողեալ էր նշն զնը-
շանակս հաւատոց. մինչև առել հին վկայա-
բանի Հաւրընտրաց մերոց. * Յայտնի ե-
րևելին տիպք ձեռաց նր մինչև ցայսօր ժամա-
նակի՝ 'ի զարմացումն և 'ի զղջումն. նոյնպէս
և հետք գարշապարաց նոյն ևս 'ի վմ ջրա-
ժողով քարեղէն աւազանացն նկարեցան. որ
և մերձեցելոցն ապաքինութի շնորհէ ամ
ախտից և հիւանդութե. ոչ երբեմն պրո-
բատիկէ աւազանն և սելովամ աղբիւրն ։
Ամին հանգոյն խօսի լը իմիք և մետափրա-
տէս ։

Ուլ պանծալի ևս են բանք մեծին յովհան-
նու դամասկացւոյ, որ 'ի վերջաբանութե ներ-
բողենի նոյ կուսին վաւվարեայ՝ զայսօրի-
նակ խօսի առ նա. * Այն և արդարութեն
քեզ կայ մնայ պսակ, զոր արժանապէս հի-
սեալ քեզէն՝ յերկինս անդ պսակեցար. այլ
և ոչ աստանօր եթող զքեզ քո անօժիտ. զի
կենդանի եմ ես ասէ տր, զփառաւորիչս իմ
փառաւորեցից ։ Այլ՝ զոր օրինակ խոստա-
ցեալ եղև, 'ի քում աւազանի, ուր են և
պատուական քո նշխարք, հաւատացելոցն
մերձեցելոց՝ առաւել քան զաղբերակունս
բղխեն զամենապատիկ ցաւոց զբժշկութիւս.
և որոց կեղիւք ժանտիւք, կմ այլով ախտիւ
վարակելոց, և այլ ևս խաղաւարտիւք հա-
շելոց մարմնոքն՝ 'ի փրկարար ջուրսդ մեր-
ձեալ, վաղվաղակի 'ի մահառիթն 'ի բաց
որքին ախտածեռուէ. և է մերձաւորաց և
հեռաւորյնս ուրեք տարաբնակելոց՝ անցին
նշա

Նշանաւոր և հռչակաւոր, և որոց պէտս ու-
նէին բժշկութե՝ ուխտիւք փափաքելի։ Այլ ոչ
յայնմ ևեթ վայրի պարագրի՝ որ քեզն պար-
գևեալ բարեփառութն և շնորհք բժշկարար,
այլ և որ միանգամ յամ տիեզերաց ջերմե-
ռանդն հաւատով մատչին առ քեզ, և զքոյդ
տարևոր կատարեն յիշատակ, 'ի սրածութե
ապաքինելին արկածից ( [illegible] 'ի ժանտախտէ ).
և ամ հասակի դժնդակ պատահարք և ա-
ղէտք 'ի բաց փարատին. և դիւական ներ-
գործութիք՝ քոյին սաստիւքդ յետս նահան-
ջին. և միանգամայն՝ յամ վտանգաց և 'ի
ձախողութեց ազատին, որ միանգամ զքեզ
կարդան 'ի հեշտալուր օգնականութի ||։
Նոյնօրինակ հռչակեալ է սքանչելագոր-
ծութի վառվառեայ կուսին յամ դարս յե-
տինս, առաւելապէս յետ սփռելոյ ոսկ. նշ-
խարաց նր 'ի զանազան տեղիս, և յաճախե-
լոյ շինութե եկեղեցեաց և խորանաց յա-
նուն նր Է ամս։ Այլ առանձին բարեխօս
ճանաչի ոչ միայն վն ծաղկի և տապաստկի.
այլև վն վտանգաց հրկիզութե և կայծա-
կանց և ժանտախտի և յանկարծահաս մահ-
ուան. որպս և նաւավարք յանուն նր կոչեն
զպահարանն վառօդոյ 'ի նաւի, և պաշտպան
իւրեանց ունին ըդդէմ ամ արկածից։ Որդ
'ի բազմապատիկ հրաշից եղելոց 'ի վերջին
դարս՝ զմի և զերկուս պատմեսցուք աստ բա-
նիւք ականատես և հաւատարիմ վկայից։
Այր ոմն հենրիկոս գօգկ տրայեկտացի՝ եր-
բեմն մասագործ և ապա հողագործ՝ պանդխ-

տա

տանայր 'ի գործոմ քաղաքի հոլլանդացւոց հանդերձ որդւով իւրով անդրէիւ և քանի մի դստերօք. և էր ինքն երկիւղած յայ, և ունէր սովորութիւն յամ աւուր առանձին աղօթիւք պատուել զսբ վկայուհին քոի զկոյսն վառվառիա. Քզի լսելով լուեալ էր, թէ որ պատուէ զնա 'ի կեանս իւրում, ոչ մեռանի առանց խոստովանութե և հաղորդութե: Նու եղև 'ի ծերութե իւրում իբր յեօթանասուն ամաց հասակի՝ յամի տն 1448. 'ի 27 օգոստոսի, եկեալ յագարակէ 'ի տուն իւր՝ խոնջ և վաստակ 'ի քուն եմուտ. և ճրագն լուցեալ անկաւ 'ի յարդեայ անկողին, և սկսաւ իսկ և իսկ ճարակիլ հուրն ընդ ամ տունն. մինչև մազապուր փախչիլ ամենեցուն 'ի տանէն խանձողեալ հանդերձիւք:

Բայց տեսեալ հենրիկոսի՝ թէ ամ ինչք իւր յաճիւն դառնան, փութացաւ մտանել անդրէն 'ի ճողոպրել գոնեա զպատրաստական դրամս իւր. այլ մինչչև էր հասեալ 'ի սենեակ դրամոցն, պաշարեցաւ 'ի հրոյն. և իբրև սկսաւ բոցակիզիլ, մոռացաւ զմարմինն, և հոգայր զհոգին. զի առանց խորհրդոց եկեղեցւոյ մեռանի. վոյ յամ սրտէ կարդայր առ բարեխօսն իւր՝ ասելով. Ով սրբուհիդ վառվառէ՝ որ կարօղդ ես յամի անախտ փեսայիւդ, հաս 'ի թիկունս թշուառականիս, զի մի 'ի մեղս իմ մեռայց. եղիցի յիս քոյին բարեխօսութբ՝ որ ինչ խոստմունք եղեն առ քեզ 'ի ժամ կատարման քո յերկնից. յուշ լիցի անմահ փեսային քո քոի՝ ա-

րիւն

ըխուն քո վարդանգոյն և կուսական . յուշ լիցի ողջախոհ և ջերմեռանդն սէր քո , զի մի զուրկ 'ի խոստովանութէ և անհաղորդ ել-

ցէ հոգիս 'ի մարմնոյս ։

Ա.յն ինչ բանքն 'ի բերան նր էին , եկն ե-կաց առ նմա Տր կոյսն փառափառս փայլեալ-դեղ զարդու 'ի կերպարանս պատկերի իւրոյ եղելոյ յեկեղեցւոջ . և վերարկուաւ իւրով 'ի բաց ցրուեալ զբոց հրոյն` կորզեաց զՀեն-րիկոս կիսամահ 'ի տեղի անքոյթ . և ասէ ցնա . քանզի սակս մեծարէիր զիս հաճոյա-կան պաշտամամբք , և այժմ ես զիս կալար միջնորդ 'ի հայցել 'ի տնէ զողորմութի , ահա տուեալ է քեզ իմով բարեխօսութբ ժամա-նակ կենաց մինչև 'ի վաղորդայն ըն արևա-դալն , զի մարթասցիս ընդունել զխորհուրդս կենաց ըն քումդ փոխաքման ։ Օ այս ասա-ցեալ` եղև կոյսն աներևոյթ ։ Յայնմ վայրի տարածեալ էր ազդուածն հրդեհին 'ի ձայն պահապանաց և զանգակաց ըն ամ քաղաքն . և հասեալ բազմութբ` փութային շիջուցա-նել . և շատք ևս այն էին` որոց մոռացեալ զհրդեհն , 'ի զնին կային սքանչելի կենդա-նութն Հենրիկոսի խանձողելոյ յոտից մինչև 'ի գլուխ , և իբրև ածուխ սևացելոյ . և ոչ գոյր 'ի նմա տեղի ողջ , բայց միայն աչքն և

լեզուն ։

Ա.յլ որ սքանչելին է , յարուցեալ Հենրիկոս նոյնժամայն ընթացաւ գիշերի 'ի տեղի հե-ռաւորոյն` անցանելով ըն գիւղս երկու , մինչև 'ի տուն դստերն իւրոյ դետուհարդայ , որ այն

ինչ տուեալ էր 'ի կնութիւն նեւատոնի որդւոյ ատենոլ գաւի . ուր պատմել ամենեցուն զմարդասիրութիւն նոյ՝ որ եղև առ նա բարեխօսութբ նոյն վառավառեալ , սկսաւ հայրաբար խրատել զբազմութիւն ժողովելոցն՝ լինել յամենի երկիւղած յայն , և արհամարհելով զանցաւորս՝ երկնայնին անանց բարեաց լինել ցանկացող . և ջերմեռանդն սրտիւ պաշտել ըզտիրամայրն , և տաճարին պատուով մեծարել զկոյսն վառավառեա . զի ոչ այսօք ձերովք տեսանէք , սա պահեաց զշունչ 'ի դիւահարեալ մարմնի իմում առ ի ունել յառաջ քան զմահ զխորհուրդս փրկութեան . և զի և մանջիք , թէ անհնար էր ինձ կեալ առանց սքանչելեաց և ոչ զմի վայրկեան յետ խման . ձողելոյս այսպէս նորքոյ և որտաճոյ , շօշափեցէք զամ անդամս մարմնոյ իմոյ , և տեսէք զի անպախտանացեալ են խոտա : Եւ նոցա զննեալ , և լցեալ զարմանալեօք՝ կոչեցին ՚ի խնդրոյ նորա վաղվաղակի զքահանայն . որում խոստովանեցաւ խոստովանութիւն հանրական զամ մեղս իւր 'ի մանկութենէ հետէ , երիցս և չորիցս ժամ 'ի ժամէ նորոգելով զի մի ինչ մնացեալ թողուցու անհոգութիւն : Եւ ապա ընկալեալ զօհ հաղորդութեան 'ի թիւղակ վերջին և զօծումն հիւանդաց , ամ պատրաստութբ ուշ ունէր ելանել 'ի կենաց . քանզի և ասէր իսկ ամենեցուն , թէ ի՞ արշալուսն նախ քան զծագել արեգական մերկացի հոգիս 'ի խանձողեալ մարմնոյս . որպէս և եղև իսկ : Օր հասեալ 'ի նշանակեալ ժամադրութին

թն նոյն փառափառեայ , աղօթելով առ ա̅ծ , և կարդալով զանուն նր̃ ա̅ծածնի և փառափառեայ կուսի՝ աւանդեաց զոգին , և թաղեցաւ է̃ երեկս 'ի տաճարին գործկամացուց մօտ յամպիոնն ։

Օ այս ա̅մ Ձոխագոյն գրէ առ սուրիոսի թեադորիկոս քահանայ հայր խոստովանութե̃ հենրիկոսի 'ի ժամ վախճանի նր̃, կնքելով զբանս իւր այսպէս ․ * Ես թէոդորիկոս պաւլի 'ի գործոմայ , որ առաջիկայ գտայ այսոցիկ , և զնորին հենրիկոսի զխոստովանութի չորից լռնայ և մատակարարեցի նմին զխորհուրդս , և շօշափեցի զվէրս նր̃ և զանդամս , և այլոց ես ետու շօշափել , և 'ի մէջ բաղկաց իսկ կալայ զնա 'ի մեռանելն , և ոչ առ փոքր մի ժամանակ մեկնեցայ 'ի նմանէ՝ աղաչեցեալ և 'ի գստերաց նր̃ և 'ի բարեկամաց , ոչ կարեմ լռել վկայութի այսպիսի մեծահրաշ սքանչելեացս , և չանցուցանել զայս ա̅մ 'ի գիր 'ի փառս ա̅յ ‖ ։

Օ նոյնս յառաջ բերեալ և հռենալդոսի 'ի շարունակութե գործոց բարոնիոսի յամի 1448․ համար ․ ծա̅ ․ 'ի վ̅ր̅ ածէ ․ * Յաւելցուք զմիւս այլ նշանաւոր հրաշս աղօթիւք նոյն փառափառեայ եղեւ , զոր պատմէ յովհաննէս նիդեա՝ լուեալ 'ի հաւատարիմ առնէ 'ի պարապիլ խորում ա̅ծաբանական ուսմանց 'ի կողմնիս ։ 'Ի ստորին գերմանիա ( ասէ ) հրգկլէնցայ՝ երիտասարդ ոմն գերի անկեալ 'ի պատերազմի եղելոյ 'ի մէջ իշխանաց գաւառին , արկաւ է̃ այլս 'ի բանտ անմաճաղ ․ ուր մեռանն

'ի սովէ բազումք յընկերաց նր̄, և ինքն ան-
ցոյց զաւուրս երկոտասան առանց կերակրոյ .
և ապա աղաչեաց բերել առ ինքն քհ̄նայ
զոմն՝ առ ը̄ունելոյ 'ի նմանէ զխորհուրդս ,
եդեալ վկայութ̄ի ('ի խոստմանէ նր̄յն վառ-
վառեայ ), թէ ոչ մեկնի 'ի կենցաղոյս , մինչ-
չև զօրացեալ իցէ խորհրդովք . և իբրև ընկա-
լաւ զնոսին , առժամայն հանգեաւ բարե-
պաշտութ̄բ ||:

Մեծ է յոյժ և այն , զոր բերէ հռեննալդոս
'ի վկայութէ լանդինոսի ականատեսի , որ գրէ
այսպէս . * Յամի տն̄ 1486. յորժամ էի 'ի
գրագովիա մայրաքաղաք պողոնիոյ պարա-
պեալ յուսումն դիտութեանց , պետութ̄ինն
ետ գլխատել 'ի հրապարակի զչորեսին գի-
շերապահս՝ զարս զօրաւորս և նորին քաղա-
քի քաղաքացիս . վն̄ զի զըմբռնեալ գողն՝
կաշառս առեալ՝ թողեալ էին գիշերի 'ի բաց
երթալ . արդ՝ զառաջինն և զերրորդն և ըզ-
չորրորդն քաջ կառափնատեաց դահիճն ,
բայց երկրորդին 'ի կարգի անդ ոչինչ կարաց
ստնանել , այլ միայն թեթև ինն հարմամբ
հպիլ մարթացեալ՝ դոյզն ինչ վիրաւորեաց .
վն̄ զի՝ որպ̄ս յետոյ պատմեաց այրն , 'ի նմին
իսկ ժամու ուխտիւք չափ յանձն արարեալ
էր զինքն 'ի բարեխօսութ̄ի նր̄յն վառվառեայ :
Եւ այնպէս նորին պաշտպանութ̄բ մարգա-
պուր ձողոպրեցաւ 'ի մահուանէ . և եկաց
՟Ի՟ երկայն աւուրս . և այսմ տեսարանի ա-
րեան ես ինքն հանդիսատես եղէ հետաքը-
քրութ̄բ ||:

Իսկ

Իսկ մի՛ նշխարաց սրբոյն մառմառեայ, զոր եւս բերել յարեւելից ալփոնսոս արքայ արագոնացւոց՝ առ ժամանակօք, գուցէ և ձեռնտուութի՛ լեւոնի հայոց արքայի որդւոյ օշնի յամի ՉՀԷ իբր 1328, այսպէս գրէ անդանօր հռենալդոս ՚ի կանոնըն. ԿԷ. թէ * ՚ի խնդրել թագաւորին (ալփոնսոսի) ՚ի հայրապետէն (հռովմայ ՚ի յովհաննէ ԻԲ), զի թոյլ տացէ յղել նաւս երկուս ՚ի ծովեզերս անհաւատից, և առաւելապէս սուլտանին բաբելոնի, եթէ ՚ի բերել զնշխարս սրբուհւոյն մառմառեայ, և եթէ առ առնել ղայլ ինչ ինչ տուրեւառս, ետ պհի հայրապետն, թէ անդ դադար բողոք ՚ի կողմանց կիպրոսի և հայոց ծին տանջէ զլսելիս մեր, թէ վաճառք բերեալ լինին անհաւատից (յեւրոպից). որովք զօրացեալք՝ եւս քան զեւս անագորոյն եղանին. բայց ՚ի պատճառս նշխարացն նոք մեկայուհւոյն տամք քեզ ատէ հրաման առաքել զմի նաւ, և զմիւս այլ ։

XXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXXX

## ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՔ.

(1) Մյս ստուգիւսի կրկին օրինակք են միկայութանութե սրբոյն մառմառեայ կուսի՝ ԻԸ իմաստից քան ըստ բառից նմանեալք Ճառընտրին մերում. մին՝ նոր, որ է գործ պետրոսի գալեսինիոսի՝ տաղերկական կոչեցեալ գարդպետի ՚ի ԺԶ դարու, որ և տպի քաղեալ ՚ի գամասկացւոյն և յարանելիսւկ. և միւսն իբրև հին յանուն մետափրաստեսի, որ առաւել միաբանի ԵԶ մեզ. Բայց յար և նման Ճառընտրի մերում՝ իբրու բնագիր նորան երեւի հնագոյն օրինակն յունական, զոր տեսեալ է լեքեն ծա-

նօթարար դամասկացւոյն 'ի կարի հին մատեանն գոլ-
բեան գրատան. ուստի յայտ է 'ի յառաջաբանէն և 'ի վեր-
ջաբանութենէն, զոր օրինակէ յունարէն. և իրաւամբք
հաստատէ, թէ յայնպիսի ընտիր օրինակէ է քաղեալ և
որ յովհան դամասկացի զպատմութիւն սրբոյ կուսին վա-
վառեայ 'ի ներբողեանն նորա. որոյ ապացոյց է և այն,
զի և ը ճառընտրիս մերում քաջ միաձայնին ընթացք
բանից դամասկացւոյն՝ քան այլոցն:

Զայս եղեալ՝ չկարօտիմք այլոց քննութեց 'ի վաւերա-
կանութիւն հին վկայաբանութեանս. և ոչ կարևոր վարկա-
նիմք նշանակել զթեթև տարբերութիւնս օրինակագրաց.
յորոց միոյն կմ միւսոյն հետևօղ գտանին և այլ մատե-
նագիրք և յայսմաւուրք. որպէս և մեք առաւել զճառըն-
տիր մեր քաղեցաք կամ ը օրինակեցաք՝ ակնարկելով և
յայլս: Միայն օտար ինչ կայր 'ի ճառընտրի ը ռամկա-
կան աւանդութեան, (զոր պահէ և Հ.) զի դնի՝ թէ հո-
վիւն որ մատնեաց զվառվառիա հօր իւրում, * անի-
,, ծեալ 'ի սրբոյն՝ նոյն ժամայն արձան աղի մածեալ քա-
,, րանայր հանդերձ ոչխարօքն իբրև զկինն ղովտայ. և
,, մինչև ցայսօր ժամանակի նովին օրինակաւ կան ար-
,, ձանացեալ 'ի նմին տեղւոջ 'ի ցոյց տեսողացն ||: Որոյ
սուտն երևի նախ՝ անտի, զի դամասկացին զամ սքան-
չելիս՝ որ կան 'ի ճառընտրի, անթերի գրէ. այլ զայս
ոչ ընաւ: Երկրորդ՝ զի որովհետև յարևելս դուն ու-
րեք էին և են արձանք կմ վիմափոր նկարք, սովոր են
նք՝ որ միանգամ տեսանեն այնպիսի ինչ, առ արկանել
տղայոց՝ թէ այսպիսիկ երբեմն կենդանի էին, և ած 'ի
պատիժ մեղաց քարացոյց: Երրորդ՝ զի օրինակագիրն
մետափրաստեան զայլ պատիժ 'ի մէջ բերէ. որ է առա-
ւել ծաղրական. * Իբրև անէծ (ասէ) վկայն զոչխարս
,, նր, ոչ ևս մնացին ոչխարք, այլ փոխեցան 'ի բզէզս,
,, որք 'ի յաւերժական կշտամբանս ապիրատութեան հա-
,, նապազ թռչին զգերեզմանաւ սրբուհւոյն վառվա-
,, ռեայ ||: Ո՛չ կարի է առասպելս, այլև առասպելեաց
առասպել, անհեթեթ գիւտ տղայամիտ գրչաց, և ոչ
իմաստուն մատենագրաց. զորոց զանունն այսպիսի կըց-
կցուճածով անյարիր կարկատանաց աղօտացուցանեն
տխմար իմաստակք:

(2) Քանզի արևելք յունարէն անատօլի ասի, իսկ առ
յետինս այս անուն սեպհականեալ իմն է մասին արևե-
լից՝ որ անկանի հանդէպ բիւզանդիոյ, նմին իրի ոմանք
'ի լատին մատենագրաց համարեցան՝ թէ հայրենիք վառ-

վա-

վառեալ իցէ նիկոմիդիա բիւթանացւոց՝ Բայց որպ ծա_ռընտիր մեր, նոյնպէս և յունական սկզբնագիրն մեկն_դրեն հեղինակօքն կամ ելինակօքն արեւելից. և թէպէտ այսու անուամբ կան այլ և այլ քաղաքք 'ի սահմանս ե_գիպտոսի և կիլիկիոյ, յորոց մի է և բիւրիոսն, այն է պէրիւթ, բայց քանզի վկայաբանն դնէ մօտ 'ի յեւքրայիա (որ է 'ի պարփղագոնիա), նմին իրի այլ երևի և 'ի նո_ցունց: Ցայն բնագիրն առէ ը ծայնի, * 'ի անեղին ի_
,, լիուպօլիս կոչեցեալ. որ հեռի յեւքրայիաէ առան եր_
,, կու ասպարիզաւ ||. զոր ծառընտիրն մեր թարգմանէ քան. իսկ լեքէն՝ երկտասան: Իսկ գիւղն՝ որ երկրա_մղոնաւ հեռի յեւքրայիայ՝ 'ի յունականն կոչի գելասիս. 'ի Ծ. գիլոսիս, զոր և ասկաղոն կոչէ. առ սուրիոսի գելասոոս. և Ն: Իսկ Հ. գրէ գիալասա, թերևս փոխ գրելոյ գիալասա, խառնելով Ը հեղինակոլսոյ՝ որ թարգ_մանի արեգական քաղաք, այսպէս. * Եւ առաւն զնք
,, կոյսն 'ի գեօղ մի, որ կոչիւր գիալասայ. և էր այն
,, անեղին արեւու, այս է արեգակն. . . . և այր մի հա_
,, ւատացեալ էառ զմարմին նը կանանցն, և թաղեաց 'ի
,, անեղի մի՝ որ կոչի արև ||:

(3) Ջեղանակ գործի վառավառեալ 'ի քրիստոնէութիւն ոչ բացատրէ վկայաբանն մեր, որպէս և ոչ զամա_կացին, և ոչ մետափրաստէս. մնյ 'ի զուր է՝ զոր ինչ մակաբերութեամբ հիւսէ ծախաբանն գալեսինիոս, 'ի փոխ առեալ ըստ իմիք 'ի վարուց քրիստոնէայ կուսի: Անյարմար են և այն բացատրութիւնք գալեսինիոսի, որպ թէ վառավառիս կանխաւ յայտնեալ իցէ զքրիստոնէութիւն. և վա այն հեռացեալ իցէ հայր նր 'ի տանէ առ ժամանակ մի, զի կարօտով հօր իւրոյ սորջացի վառա_վառիս. և այլ այսպիսի աւելորդ պատաճառք բանից. ուր Է հեքեն զառաւել հրաշալիս 'ի բանից՝ զոր մետա_բան գրեն ամենեքին, ինքն զանց առնէ. մանաւանդ զահագին պատասուաւն վիմին՝ Է որ եանց վառավառիս. զոր յոր և նման ծառընտրի մերում երկրորդեն զա_մաստկացին և մետափրաստէս. որ և յաւելու օրինակ 'ի մէջ առնուլ զամփոփիլն թեկղի աքանչելեաց 'ի մէջ վի_մին պատառելոյ. ունէաք և մեք 'ի մէջ բերել զնոյնպի_սի հրաշս 'ի կատարման սրբոյն սանդխտոյ. այլ զայսպի_սիս ինքնին ընթերցօղք ունին 'ի միտս բերել:

(4) Հ. որպ և այլք 'ի վկայաբանից՝ յուլիանէ անուա_նեն զնահատակակիցն վառավառեայ. բայց քանզի Ծ. անխափր. գրէ յուլիա և յուլիանէ, մեք զառաջինն 'ի

կոմի և հեթանոսի, և մօր քրիստոնէի եւ-
թուղեայ, յաւուրս հալածանաց մաքսիմիա-
նոսի կայսեր (հերակլեայ, կմ գաղերիոսի),
մանուկ կայտառ դիմօք և իմաստուն մտօք,
համեստ 'ի գնացս և գովելի յամի։ Այլ եղև
մօր նր բարեպաշտի վախճանիլ, մինչև էր
պանտալէոնին տեղեկացեալ ճանապարհին
ճշմարտութն. զի և ոչ հայրն թողացուցա-
նէր նմա անսալ բանից մօրն, այլ տուեալ էր
զնա յուսումն դպրութն 'ի դպրոցս հեթանո-
սաց։ Այլ իբրև եգիտ զմանուկն մտավարժ
և յառաջադէմ յուսմունս, ետ զնա յուսումն
բժշկականին առ ոմն եւփրոսինոսի բժշկա-
պետի, որ էր բժիշկ արքունեաց թագաւո-
րին. և ուր և երթայր նա, էր և պանտալէոն
ընդ նմա։

Յաւուր միում տեսեալ զնա թագաւորին՝
եհարց ցվրդպ նր. ո՞յր է պատանեակս այս։
Պնի ետ եփրոսինոս, և ասէ. որդի է եւս-
տորգիոսի՝ որ 'ի դասէ սինկղիտոսիդ. և ես
զդա յիս ուսուցանել զբժշկութի։ Յայնժամ
ասեն և նախարարքն. արժանի է պատա-
նեակդ թագաւորի։ Այլ արքայ ասէ ցվրդպ
նր. յոյժ լիցի քեզ ամ հոգաբարձութբ և
փութով մարզել զդա յարուեստիդ. զի պի-
տոյ է ինձ։

Այլ էր 'ի նիկոմիդիա երէց մի ծերունի և կա-
տարեալ յաստուածպաշտութն՝ երմողայոս կամ
երմողէոս անուն, ապրեալ 'ի կոտորածէ եր-
կուց բիւրուց, և առանձնացեալ թաքստեամբ
'ի խցկան միում հանդերձ երկու ընկերօք.
և

և էր հանապազ Պանտալէոնի անցանել առ նորքօք յերթևեկել՝ ի տուն վժ̃պին իւրոյ. և զօր ամ̃ տեսանէր զնա երամողայօ՝ պարկեշտ ՚ի գնացս, վայելուչ, երկիւղած և բարեսէր. քանզի ոչ ոք հաւանեցոյց զնա յընկերաց իւրոց անամօթել, կամ հայել՝ ի կին մարդ, կմ̃ մտանել՝ ի թատերս խաղուց, կմ̃ ծիծաղել՝ ըստ սովորութե̃ մանկանց. և իմացաւ ծերն հոգւովն ՚որպ, եթէ անօթ մեծ և պատուական լինելոց է պատանեակն: Այս յաւուր միում կոչեաց քահանայն զպատանեակն գաղտ, և ասէ. եկ այսր ժամ մի: Այս իբրև եմուտ, ողջագուրեաց զնա ծերն, և ասէ. ողջ լեր որդեակ լի ամ̃ բարութ̃: Այս պանտալէոն ասէ ցնա. ողջ ես և դու հայր արժանի ամ̃ պատուոյ:

Այս կալաւ զձեռանէ նր̃ երէցն, և նստոյց մօտ առ ինքն, և ասէ. որդեակ ո՞յր ես, և զի՞նչ գործ է քո: Պանտալէոն ասէ. որդի եմ ես առն միում սինկղիտոսի, զի անուն է նր̃ Եւստորգիոս, և եւբուղայ մօր. և մայրն իմ՝ ժամանակք են, զի վախճանեալ է: Այս ծերն ասէ. որո՞ւմ պաշտաման պարապես որդեակ: Պանտալէոն ասէ. մինչ կենդանի էր մայրն իմ, ընդ նմա էի, որ փարժէր զիս բարի կարգօք, և կամէր ընդ իւր ունել, և հայրն ոչ եթող, այլ՝ ի դպրոց յղեաց, և խրահէր յարքունիս զինուորել զիս. և ես ը̃ մօրն խնամ կամէի լինել. այլ՝ ի մեռանիլ նորա՝ հայրն իմ ուր կամեցաւ եդ զիս:

Ասէ երէցն. արդ զի՞նչ է՝ զոր ուսանիս առ-

առ

առ վճռային քուն : Պանտալէոն ասէ . զասկ-ղեպիոսի, զիպոկրատեայ և զգաղենոսի ճար-տարութիւն պատուիրէ ինձ վճռայն , և ասէ . եթէ ուսանիս զնոյն խրատն , բժշկես զամ հի-ւանդութի յամ մարդկանէ : Իսկ երէցն ասէ . ոչինչ է ասկղեպիոս , և ոչ իպոկրատէս , և ոչ գաղենոս . և յոչինչ համարեալ են ամենքն գլխովին՝ զոր պաշտէ մաքսիմիանոս թագա-ւորն . ե՛կ որդեակ լո՛ւր ինձ , և հաւատա՛ 'ի քս , որոյ անուամբն զամ հիւանդութի բժշ-կես . քանզի նա զմեռեալս յարոյց , և կուրաց լոյս շնորհեաց , և զամ ցաւս փարատեաց . զերկոտասանամեայ բղխումն արեան կնոջն՝ որ 'ի քղանցս հանդերձից նր մերձեցաւ , ցա-մաքեցոյց . որ և զջուրն 'ի գինի փոխարկեաց , և զդևս հալածեաց . և բազում սքանչելիս արար՝ որ ոչ գոյ թիւ . և մերձ է նա առ ծա-ռայս իւր , և փրկէ զնս յամ նեղութեց նց . և որք 'ի նա հաւատացին , եւս առաւել քան զայս մեծագոյն շնորհեաց առնել :

Իսկ պանտաղէոն իբրև զերկիր բարի և պա-րարտ ընկալաւ յինքեան զբանն կենաց 'ի հարիւրապատիկն պտղաբերութի 'ի փրկու-թի անձին իւրոյ և բազմաց . և ասէ ցծերն . տէ՛ր եթէ հնար է , զայդ՝ զոր ասես դու , յայտնել վճռային իմոյ . զի և նա գիտասցէ զոր քարոզեսդ , և օգտեսցի իբրև զիս . քան-զի և իմ յռջագոյն լուեալ էր զայսպիսիս յե-րանելի մօրէն իմմէ . զի յորժամ յաղօթս կայր , կարդայր զքս՝ զոր դուդ աւետարանես : Իսկ ծերն ասէ . դու որդեակ մի յայժմուս զվճռայն

քո

քո հոգացնիս, այլ փութա՛ աշակերտիլ երկնաւոր վարդապետին քոյ. յուսա՛ 'ի նա, և նովաւ զօրացիր յամենայնի. քանզի ո՛չ երբէք հեռանայ քո 'ի ծառայից իւրոց. հաւատա՛ այսու հետև 'ի քեզ, և ա՛ռ զմխիթարութիւն վերին շնորհացն։ Իսկ յայնմ հետէ օր ըստ օրէ երթայր առ ծերն, և հաստատէր 'ի հաւատսն. և ո՛չ երթայր 'ի տուն իւր յառաջ՝ 'ի դառնալն 'ի տանէ վարդապետին, եթէ ոչ նախ զնա տեսանէր. և այնպէս ընթայր շնորհօք Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յաւուր միում հրաժեշտ առեալ էր Պանտալէոն 'ի վարդապետէն իւրմէ, զի երթիցէ 'ի տուն իւր. և հեռացեալ նա սակաւիկ մի 'ի ճանապարհէն՝ եգիտ մանուկ մի 'ի քարբ օձէն խածեալ և մեռեալ. և օձն մերձ կայր առ նմա։ Իբրև ետես զայն Պանտալէոն, զարհուրեալ յերկիւղէն՝ փոքր մի փախեաւ. ապա եղեալ 'ի միտս իւր՝ ասէ. այժմ պատեհ է ինձ գիտել, եթէ ճշմարիտ են ասացեալքն 'ի ծերոյն Երմողեայ։ Իսկ հայեցեալ յերկինս՝ ասէ. Տէր Յիսուս Քրիստոս՝ եթէ արժանի եմ կոչմանդ քում, և կամիս զիս 'ի ծառայութիւն քեզ, յանուն քո յարիցէ մանուկս այս։ Իսկ իբրև նա զայս ասաց, վաղվաղակի յարեաւ մանուկն; և գազանն հերձաւ ընդ մէջ։ Իսկ ասէ Պանտալէոն. օրհնեցից զքեզ Տէր իմ Յիսուս Քրիստոս, զի արժանի արարեր զիս ընդ ծառայս քո 'ի թիւ անկանիլ։

Ապա ընթացեալ 'ի տուն Երմողայոսի՝ անկաւ առ ոտս նորա, և խնդրէր անյապաղ զմկրտութիւն. և ծերոյն հարցեալ զպատճառն՝

իբրև լուծաւ զերդեալսն , գնաց է՟ նմա մինչև
'ի տեղին . և տեսեալ զանկեալ զազանն՝
փառս ետ այ : Յայնժամ դարձան երկո-
քեանն 'ի խցիկն . և արարեալ ծերոյն զժամ
եր՟ օրհնացն՝ ետ նմա զկնիքն որ մկրտութե ,
և եկաց առ նմա աւուրս եօթն : Եւ յաւուրն
ութերորդի գնաց 'ի տուն իւր . և տեսեալ
զնա հօրն իւրոյ՝ ասէ ցնա . ո՞ւր էիր որդեակ
այսքան աւուրս . զի ես մահուչափ նեղեալ
տառապէի վն քո : Եւ պատանեակն ասէ ա-
ռակաւ . զայր ոմն բժշկեցաք 'ի սաստիկ հի-
ւանդութենէ 'ի դրան արքայի . և վն զի սի-
րելի էր այրն արքայի , եղէ առ նմա աւուրս
եօթն , մինչև կատարեալ առողջացաւ հի-
ւանդն . որով իմանայր զիւր զհոգևոր առող-
ջութի 'ի հաւատս . իսկ հայրն համարեցաւ
զայլմէ ասել ը՟ մարմնոյ . վոյ և լռեաց 'ի
հարցանելոյ այլ ևս :

Եւ 'ի վաղիւն չոգաւ պատանեակն առ եփրո-
սինոս վանս իւր . և նա ևս հարցանէր . ասա՛
ինձ պատանեակդ՝ ո՞ւր էիր այսքան աւուրս :
Ասէ և ցնա առակաւ աւետարանին . հայրն
իմ ագարակ գնեաց , և առաքեաց զիս գրա-
ւել զագարակն . և եղէ անդ աւուրս եօթն ,
մինչև ստացայ զիշխանութի նր . քանզի և
քան զժամ մարգարիտս պատուականագոյն
էր ստացուածն այն . և ոչ իմանայր եփրո-
սինոս՝ եթէ վն մկրտութե իւրոյ ասէ . վոյ
լռեաց և նա 'ի հարցանելոյ :

Իսկ պատանեակն շնորհօք քի լցեալ , և ըղ-
ձանձս հաւատոց շահեալ , բազում հոգս ու-
նէր՝

նէր՝ զի զհայրն իւր յաստուածածանօթութիւն ածցէ . և զնոյն աւուրս խօսէր առ նա առակաւ զզօրութիւն Քրիստոսի և զկարողն տկարութենէ : Ի միում նուագի ասէ ցնա . հա՛յր ծեր աչքն քո՝ որ յոտն կան , յոտն կան , և ոչ նստին . և որ նստին , ոչ երբէք յառնեն : Իսկ հայրն ասէ . երդուեալ իմ՛ ՚ի փրկութիւն անձին իմոյ , բանդ՝ զոր դու խնդրես , ծանր է . և ես չեմ բաւական պատմել քեզ : Յայնժամ որդին Պանտալէոն լցեալ ուրախութեամբ՝ ետ փառս Աստուծոյ , զի միով բանիւ՝ եբաց հօրն զդրունս աստուածգիտութե . մինչ զի յօրէն յայնմանէ յերկուացեալ Եւստորգիոսի ՚ի կռոցն՝ ոչ զոհէր նոցա , ոչ յառաջն . քանզի ունէր ՚ի տան իւրում կուռս : Իսկ Պանտալէոն կամէր փշրել զնոսա . այլ արգելոյր զանձն՝ ասելով . ոչ է բարւոք խռովեցուցանել զհայր իմ . այլ նախ հաւանութեամբ ածից զնա ՚ի հաւատս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի :

Իսկ մինչդեռ նա զայն խորհէր , ածին ՚ի տուն անդր կոյր մի կալեալ զձեռանէ . և բախեալ զդուրսն՝ հարցանէին , եթէ ՚ի ներքս իցէ բժիշկն Պանտալէոն , և աղաչէին՝ զի եկեալ բժշկեսցէ զկոյրն : Իսկ լուեալ նորա՝ մեծաւ փութով ել , առեալ ընդ իւր և զհայրն : Որպէս ետես Պանտալէոն զկոյրն , ասէ . զի՞նչ կամիս . և կոյրն ասէ ցնա . աղաչեմ զքեզ , ողորմեա՛ ինձ խաւարելոյս , զի ՚ի քաղցր լուսոյ արգելայ . և ամենայն բժիշկք փորձեալ յիս՝ և ոչինչ կարացին օգնել ինձ . այլ զոր և ունէի զստակս լուծին՝ զայն ես խափանեցին յինէն . և զնոյն ստացուածս իմ առին .

և

և ես մնացի կոյր և չքաւոր : Պանտալէոնն ասէ . այլոց բժշկաց զստացուա՛ծս քո ետուր . մեզ զի՞նչ տացես , եթէ ընկալցիս զտեսութիւն : Եւ կոյրն ասէ . որ ինչ մնացեալ է յընչից իմոց , զայն քեզ տաց : Նա ասէ ցնա պանտալէոնն . զպարգևն լուսոյ տայ քեզ իմ և քո . և դու մե՛րթ տո՛ւր զայդ աղքատաց՝ զոր ինչ ինձ խոստացար :

Իսկ հայրն պանտալէոնի արգելոյր զնա , և ասէր . որդեակ տեղի՛ տուր յառնելդ յայդմանէ . զի ոչ ես դու ճարտար քան զբազում բժիշկս՝ որ ձեռնարկեցին 'ի դա : Եւ պանտալէոն ասէ ցհայրն իւր . դեղն՝ զոր ես տամ դմա , անգիւտ է . և յայլոց բժշկացն ոչ ոք կարէ տալ . քանզի վ՟դ՟պն իմ ճարտար է քան զա՟մ բժիշկս . և բանի՛ւ լոկով բժշկէ զհաւատացեալսն 'ի նա . և հայրն կարծէր՝ եթէ վ՟ս եփրոսինոսի ասէ : Իսկ պանտալէոնի կալեալ զկոյրն՝ մ՟նադրեաց զաչս նո՟ր , և ասէ . յանուն յի՟ քի՟ , որ լուսաւորեաց զառաջին խաւարեալսն , և կանգնեաց զառաջին զնեղեալսն , և ժողովեաց զցրուեալսն , և դարձոյց զմոլորեալսն , կամօք նո՟ր տե՛ս և դու զլոյս զա՟մ աւուրս կենաց քոց . և ես լոյս մեծ տեսցես դու , եթէ հաւատասցես 'ի ք՟ս :

Եւ մինչդեռ նա խօսէր զայն , կոյրն բացեալ զաչօն՝ տեսանէր . և նոյնժամայն հաւատաց 'ի ք՟ս հայրն պանտալէոնի հանդերձ բժշկելովն :

Յայնժամ երթեալ պանտալէոնի առ մ՟ծ երէցն երմողայոս՝ պատմեաց զա՟մ որ ինչ եղեւն .

զլեն. և նր ուրախացեալ յոյժ 'ի տր՝ եկն 'ի տուն նորա տեսանել զկոյրն և զհայր նորա. և եդև անդ աւուրս բազումս. և մկրտեաց զհայր նր և զկոյրն, և լուսաւորեաց զնս 'ի լոյսն երկնաւոր։ Իսկ եմուտ եւստորգիոս 'ի տուն իւր, և խորտակեաց զկուռսն, և ընկէց զնս 'ի խորխորատ մի. զայն տեսեալ
պանտալէոնի՝ ետ փառս այ։

Իսկ յետ անցանելոյ փոքր մի աւուրց՝ մեռաւ հայր նր բարեբաստանիկ. և պանտալէոն ազատեաց զամ ծառայս իւր՝ տուեալ նոցա ինչս. և զմնացեալ ինչս աղքատաց բաշխեաց. և ինքն առ հիւանդս և կարօտեալս, և որք էին 'ի բանտս և 'ի տառապանս վս անուանն այն, երթայր. և քաջալերէր զնս բանիւք և արդեամբք. և ողջացուցանէր զամենեսին. և գործակից նորա քս էր յամի. և բազումք
'ի բժշկաց նախանձէին ընդ նմա։

Յաւուր միում 'ի ժողովիլ ամ բժշկացն 'ի միասին՝ մերձ գտաւ կոյրն, որ 'ի պանտալէոնէ բժշկեցաւն. և տեսեալ զնա՝ սկսան ասել ցմիմեանս. ո՞չ այս այն կոյր է՝ զոր մեք ոչ կարացաք բժշկել. արդ ո՞ իցէ արդեօք՝ որ բժշկեաց զդա։ Իսկ կոչեցեալ զկոյրն հարցանէին. ո՞վ բժշկեաց զքեզ. և նա ասէ. պանտալէոն որդի եւստորգի։ Յայնժամ այլ բժիշկքն ասեն ցեփրոսինոս. ո՞չ քո աշակերտ է պանտալէոն. արդարև մեծի բժշկապետի արժանաւոր աշակերտ է նա. զայս նք անգիտութն զասկղեպեայ չքյ ասէին. այլ զճշմարիտն վկայէին ակամայ վս քնի.

ԼԼ. բայց

բայց յորէ յայնմանէ խնդային է պանտա-
լէոն , և կամէին պատճառս ինչ գտանել 'ի
նմա : Այլ իբրև լուան և տեսին , զի մտանէ
'ի բանտս , և դարմանէ զխոստովանօղս ,
մատնեցին զնա Թագաւորին , և ասեն . ա-
ւանիկ պանտալէոն շրջի և բժշկէ զանար-
գիչս ծնողաց մերոց՝ կամելով է նմ լինել . արդ
եթէ ոչ արագ կորձես զնա , զբազումս ար-
գելու 'ի զոհելոյ , և զբժշկուն ասկղեպեայ
'ի քն դարձուցանէ . պատմեցին նմա և զանցս
կուրին , որ խոստովանէր զինքն բժշկել ան-
ուամբն քի 'ի պանտալէոնէ :

Հրամայեաց Թգրն կոչել զկոյրն բժշկեալ .
եհարց զնա և ասէ . այր դու որպս բժշկեցաց
զքեզ պանտալէոն . և նա ասէ . կարդացեալ
նորա զքն՝ կնքեաց զաչս իմ , և նոյնժամայն
տեսի : Ասէ Թագաւորն . դու զի՞ ասես վս
քո . ծնողացն զօրութի բժշկեցար , եթէ քի
անուամբն : Այլ բժշկեալն ասէ ցԹագաւորն .
Թող վկայեսցեն դոքա ինքեանք բժիշկքդ ,
որ շատ սնավաստակք եղեն . զինչս իմ զամ
առին , և ոչինչ կարացին օգնել ինձ . այլև
փոքր մի ճաճանչ լուսոյ կայր , և զայն ևս
արգելին յինէն : Ասէ Թգրն . ասա ինձ ,
ո՞վ է մեծ . ասկղեպիո՞ս՝ զոր բազումք պաշ-
տեն , եթէ քս՝ զոր պանտալէոն միայն : Այլ
նա ասէ . քս՝ զոր պանտալէոն կարդաց , և
լոյս շնորհեաց ինձ . ուր ասկղեպեայ պաշ-
տօնեայք ոչ կարացին զիս բժշկել :

Բարկացաւ Թգրն , և ասէ ցնա . 'ի բաց լեր
այր դու , և մի փոխելանար՝ անուանելով

դ.քս • Քեզի ածքն մեր շնորհեցին քեզ զլոյսդ : Այս բժշկեալն ասէ համարձակ • դու մի փա-խելանար • քս է՝ որ շնորհեաց ինձ կրկնակի լոյս, բանալով զաչս իմ 'ի ձեռն ծառային իւրոյ պանտալէոնի, և լուսաւորելով զմիտս իմ նորոգութբ հոգւոյն սբյ • քանզի ածք քո կուռք են ամլ թփր, և ոչ կարեն այլոց լոյս տալ : Այս թփրն ասէ • երդուեալ յածոյն, ոչ կարծեմ՝ արդեօք էին ամբաստանութիւք բժշկացն • և նոյնժամայն հրամայեաց տա-նել զերանելի կոյրն և գլխատել, ասելով, եթէ կեայ դա, զբազումս ստարացուցանէ յածոցն : Օ այն լուեալ պանտալէոնի՝ դա-հացաւ զնյ • և տուեալ ինչս սպանողացն՝ էառ զմարմին վկային, և թաղեաց առ հօր իւրում :

Յետ այսորիկ հրամանս ետ մաքսիմիանոս բե-րել առ ինքն զպանտալէոն • և նա յերթալն ասէր զսաղմոսն • ած օրհնութե իմոյ մի լռեր, զի բերան մեղաւորի՝ բերան նենգաւորի բա-ցաւ 'ի վը իմ • և եմուտ եկաց առաջի թա-գաւորին • այլ աչք նր ամբարձեալ յերկինս : Ասէ ցնա մաքսիմիանոս • տաս ինձ պանտա-լէոն, եթէ ճշմարիտ է՝ զոր լուայ վը քո • ոչ ես պատուէր ետու վճռյին քում, զի հա-դաբարձութբ ուսուցէ զքեզ, կամեցեալ ունել առ իս վը վայելչութե անձին քո : Այս պանտալէոն ասէ • արդ զինչ ապաքէն իցէ մրքայ, զոր լուարն վը իմ : Թագաւորն ա-սէ • զոր լուայ զքէն՝ ոչ հաւատացի • զի կա-րէ համբաւ սուտ լինել • լուայ զքէն, եթէ

զոր

զորս մեքն տանջեմք և հալածեմք, վն զի ոչ հաւանին լծոյն զոհել, դու շրջիս բժշկես զնա, և կերակուր ես տաս նց. և պատուիրես ած անուանել զքն, և զդիս մեր անարգել:

Յայնժամ պանտալէոն լցեալ հոգւով սբվ ետ պխնի, և ասէ. Թագաւոր՝ գրեալ այսպէս է, եթէ ածք՝ որ զերկինս և զերկիր ոչ արարին, կորիցեն. նոյնպէս և չէն ածք՝ որ զմեռեալս ոչ յարուցանեն, և կուրաց լոյս ոչ շնորհեն, և հիւանդ զոմն 'ի մահիճս ոչ բժշկեն. և արդ հաւատայցեմք արդեօք նց. մի խաբիր ով արքայ: Իսկ Թգրն ասէ ցնա. իսկ զոր քրիստոնեայքն պաշտեն, զայդ ած առնէ՞: Պանտալէոն ասէ. և կարի իսկ քաջ. քն զամ ինչ արար և առնէ. և եթէ կամիս զփորձ առնուլ արքայ, հրամայեսցես բերել անդամալոյծ մի 'ի քաղաքէս. և զոր կամիս 'ի պաշտօնէից քոց բեր, զի կարդասցէ 'ի վր նր յանուն լծոցդ ձերոց. և ես կարդացից զանուն քնի իմոյ. և դու տես, թէ յորոյ անուան բժշկի լուծեալն. և ծանիր թէ յո պարտ է հաւատալ:

Հաճոյ թուեցաւ թագաւորին. հրամանն ետ և բերին լուծեալ մի 'ի փողոցէն, և եդին առաջի դագաղովք. կոչեցին և զբազմուն քրմաց. և ասէ թագաւորն ցպանտալէոն. ածովքն, զի բարիոք ասացեր. եղիցի այդպէս՝ ոպ դու ասացեր: Յայնժամ ըս ակնարկելոյ արքայի քաջալերեցին քուրմքն զմիմեանս հանդերձ իմաստասիրօքն 'ի մնոտի

յոյժ իւրեանց. ոմն 'ի նոցանէն կարդայր զԱսկղեպիոս, ոմն զԱրամազդ. ոմն զԱստղիկ, և ոմն զՀերակղէս. և այլք զայլ աստուածս։ Իսկ պանտալէոն կայր և հայէր 'ի սնափառութիւն նոցա; և ժպտէր զնոքօք և արհամարհէր. զի էին ամենայն կարդացմունք նոցա ընդվայր։

Թագաւորն ասէ. արդ արասցէ՛ և պանտալէոն զիւր կարդացումն։ Իսկ օծեալն հայեցեալ յերկինս՝ ասէ. Տէր լուր աղօթից իմոց, և աղաղակ իմ առ քեզ եկեսցէ. մի դարձուցաներ զերեսս քո յինէն. յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի լուր ինձ. և ցոյց չարախորհուրդ մտացն՝ որոց ոչն ճանաչեն զքեզ, եթէ դու ես՝ որ բժշկես զյուսացեալսն 'ի քեզ։ Եւ կալեալ զձեռանէ անդամալուծին՝ յարոյց 'ի վեր, և ասէ. յանուն Յիսուսի Քրիստոսի եղիջիր առողջ յօրէս յայսմանէ։ Եւ վաղվաղակի յարեաւ հիւանդն, և գնաց 'ի տուն իւր ուրախութեամբ՝ օրհնելով զԱստուածն քրիստոնէից. և բազումք հաւատացին 'ի տէր յաւուր յայնմիկ՝ հեռացեալք 'ի սնոտի պաշտամանց իւրեանց։

Իսկ քուրմքն հանդերձ բժշկօքն կրճտէին զատամունս իւրեանց, և ասէին ցթագաւորն. եթէ արդարև պանտալէոն ապրի, լուծանէ զզօրութիւն աստուածոցն. վասն զի զամենեսեան հեռացուցանէ յերկրպագութենէ նոցա. արդ մի այսուհետև հաւանիր նմա, քանզի անդամալոյծն զօրութեամբ աստուածոցն հաստատեցաւ։ Եւ թագաւորն 'ի բանս նոցա եղեալ՝ ասէ ցպանտալէոն. հա-

հաւանեալ ինձ , և զոհեալ կռոցն . ապա թէ ոչ՝ չիցէ՞ քո լուեալ , եթէ քանիք մեռան՝ որ ոչն հնազանդեցան ինձ : Պանտալէոն ասէ . որք վն քոյ մեռան , կեան զյաւիտենական կեանս : Ասէ Թգրն . շատ է քեզ պանտալէոն անուանել ցայս վայր զքոն քո . խնայեա՛ ’ի մանկուն քո , և մատիր զոհեա՛ . քանզի տեսանեմ բազում և մեծամեծ տանջանս քեզ պատրաստեալ , եթէ ’ի դժին անհաւանութէ կայցես :

Պնտնի ետ վկայն քոյ . զչարաչար տանջանսդ՝ որպէս կամիս՝ մատո ինձ . քանզի ես պատրաստ եմ այ համբերել վն քոյն իմոյ : Մաքսիմիանոս ասէ . գիտացեր զինչ անցք անցին ը ծերն անթիմոս յօնջ քան զաւուրս զայսոսիկ : Պանտալէոն ասէ . և դու գիտացեր՝ թէ որպէս համբերեաց վն այ ծերն այն , և չգայթակղեցաւ ’ի բարեպաշտութէ անտի , այլ՝ այ յօժարութբ մատնեաց հատողին զդողդոջուն զմարմինն իւր . եւս առաւել մեք՝ որ ’ի տիս մանկութե եմք , պարտիմք իբրև զօրաւորս հաւատովք յառաջ մատչել . զի արժանի լիցուք անանց պսակին : Տեսեալ Թգրին զանշարժ հաւատս նր՝ հրամայեաց կապել և քերել զնա , և ջահս լուցանել ’ի ներքոյ կողից նր : Իսկ երանելին յերկինս հայեցեալ դիւրաւ համբերէր տանջանացն , և ասէր . տր յս քս որպս ’ի տկար մերձեցիր առ իս , և ’ի տանջանս մօտ լեր առ իս , և տուր ինձ ’ի պատերազմիս կատարեալ զօրութի : Յայնժամ երևեալ նմա

քո 'ի նմանութի ծերոյն երմոզեայ՝ ասէ ցնա . մի՛ զարհուրիր և մի՛ զանգիտեր պատերազմել սիրելոյ իմ . զի ես ը̃ն քեզ եմ յա̃մի : Եւ անդէն վաղվաղակի քաջալերեցաւ երանելին . և կապանքն լուծան , և հուրն շիջաւ .

և դահիճքն պատուակեցան :

Իսկ Մաքսիմիանոս իբրև ետես զեղեալսն , ասէ . զի՞նչ պիտի է արուեստ մոգութեդ քո , ասա՛ ինձ . զի զջահսն խափանեցեր , և զատանջանս 'ի ոչ կարութի դարձուցեր : Ս̃ն ասէ . իմ զօրութի քն է , որ զդամբարան շիջոյց , և զքեզ և զարբանեակս քո յամօթ արար : Մաքսիմիանոս ասէ . մեծամեծ տանջանս ածեմ 'ի վ̃ր քո , և ապա 'ի հարկէ զոհես : Պանտալէոն ասէ . եթէ մեծամեծ չարչարանս ածես 'ի վ̃ր իմ , և քն այլ ևս մեծամեծ

զօրութի տայ ինձ :

Եւ զայն լուեալ թգ̃րին՝ հրամայեաց բերել տապակ երկաթի մեծ , և հալեալ կապար՝ արկանել 'ի ներքս զարդարն : Եւ յետեալ տապակին իբրև եկին դահիճք մերկացուցանել զս̃րբն և արկանել 'ի ներքս , հայեցեալ նա յերկինս՝ ասէ . լո՛ւր տ̃ր աղօթից իմոց յաղաղակել իմում առ քեզ , յերկիւղէ թշնամւոյն փրկեա՛ զանձն իմ . ծածկեա՛ զիս 'ի ժողովոց չարաց՝ որ գործեն զանօրէնութի : Եւ յաղօթել նր զայս՝ երևեցաւ նմ հրեշտակ 'ի դիմաց փրկչին , և կալեալ զձեռանէ նորա՝ եմուտ ը̃ն նմա 'ի տապակն . և վաղվաղակի հուրն շիջաւ , և տապակն ցրտացաւ . և նր մկայն սաղմոսէր . ես առ ք̃ծ աղաղա-

կե-

կեցի , և Տէր լուաւ ինձ յերեկոյս , 'ի վաղոր-դայն , 'ի հասարակ աւուր . պատմեցի և ա-սացի , և լուիցես ձայնի իմում ։

Իսկ որ մերձն կային , զարմանային ընդ տե-սիլն ընդ այն . և թագաւորն ասէր ցմերձաւորսն իւր . զի՞նչ արդեօք իցէ այս , զի կախարդն այն զհուրն շիջոյց , և զկապարն ցրտացոյց . և արդ որո՞վ ք տանջանօք յաղթեսցուք նմա ։ Եւ մտերիմքն ասեն . 'ի խորս ծովու ընկեցէ՛ք զդա . մինթէ կարէ՞ և զծով կախարդել ։ Յայնժամ ընդ հրամանի թագաւորին առեալ զնա պաստաւորաց՝ արկին 'ի մակոյկն . և վէմ մի մեծ կապեցին 'ի պարանոց նորա , և տարան 'ի խորս իբրև ասպարէզս երեսուն , և ընկեցին յանդունդս . եկեալ էր և ինքնին Մաքսիմիա-նոս յեզր ծովուն՝ տեսանել զկատարածն ։

Եւ ահա երևեալ Քրիստոս 'ի կերպարանս ծերոյն Երմողեայ՝ սաստեաց ծովուն . և ծովն յեր-կիւղէն նորա սարսեալ՝ բառնայր զսուրբն 'ի վեր ալեացն , և վէմն որպէս տերև լուղեալ գայր 'ի վերայ ջրոյն ։ Իսկ սուրբն փառաւորէր զԱստուած և ա-սէր . գոհացայց զքէն Տէր բոլորով սրտիւ ի-մով , և պատմեցից զամենայն զքանչելիս քո , և որ զկնի այսորիկ . և այնպէս սաղմոսելով եկն ել 'ի ցամաքն առաջնորդութեամբ Քրիստոսի ։

Ասէ թագաւորն . կախարդութիւն քո և զծովս խա-փանեաց ։ Պանտալէոն ասէ . ո՛չ ես , այլ՝ որ ընդ իս է Տէր Քրիստոս , զոր դու ոչ ես արժանի տե-սանել զնա ։ Յետ այսորիկ հրամայեաց թա-գաւորն բերել յամենայն ազգէ գազանաց , զի նոքօք մաշեսցէ զարդարն . և ասէ ցնա . տե-

սանեմս, զի պատրաստեալ են դոքա ծախել
զքեզ, եթէ ոչ զոհես դիցն. և ես ողոր-
միմ գեղեցիկ հասակիդ քո, զի մի՛ չարաչար
մեռանիցիս, ո՛չ յաւալ քան զքեզ ոմանք
յանդգնամաց՝ ոչ միայն յարանց, այլև 'ի կա-
նանց: Անուն իմ պանտալէոն. այսու ա̃մբ,
ո՛վ մոլորութե՛ լի, որով կամիս ինձ ահ ար-
կանել, հզօրագոյն ևս արարեր զիս. զի թէ
և կանայքն զա̃մ մեքենայսն քո լուծին ա̃վ,
ո՞րչափ պարտ է ևս առաւել ինձ, զի այնպի-
սի պտակի արժանի եղէց. և ոչ երկեայց ա̃վ
խմով և 'ի գազանաց. զի որ զա̃մ սքանչելիան
արար և յա̃մէ փրկեաց զիս, նոյն և զվայրե-
նի գազանսն զգօնացուսցէ. իսկ դու քոյին
մոլորութե՛դ տանջեալ վախճանեսցիս:
Այս եղև ը̄ բանին մքյն. զի յասպարիզի անդ-
դարձեալ երևեցաւ նմա քն̄ կերպարանօք
երմողէի ծերոյն, և զօրացոյց. և գազանքն՝
որք արձակեցան, շուրջ պատեալ զերանե-
լեաւն՝ մարդասիրագոյն քան զմարդիկ գտա-
նէին. առիւծքն թաթի՛ն զերեսսն ջնջէին,
և ինձքն զոտսն լիզուին. և այլքն մնջելով
և մռնչելով զմիմեանս կոտորէին, և 'ի բաց
գնային: Յայնժամ ա̃մ ժղովրդն գոչեաց
ընդդէմ թագաւորին. մե՛ծ է ա̃ծն քրիստո-
նէից, արձակեա՛ զարդարդ: Ընդ որ սրտմը-
տեալ և գազանացեալ թ̄գրին՝ սպան յաւուր
յայնմիկ 'ի գուշողացն իբրև հազար այր. և
հարկ զմարմինս նց̄ գազանաց. այլ ոչ մերձե-
ցան 'ի նս̄. վ̄ոյ և զգազանսն հրամայէր կո-
տորել: Իսկ արդարն ասէր. փա՛ռք քեզ յա̃
քն̄,

քո, մեծ են սքանչելիք քո․ զի ոչ միայն ազգ-մարդկան վն սիրոյդ քո մեռան, այլև գա-զանք վայրի մատուցան 'ի սպանդ վն քո, չառեալ յանձն մերձենալ 'ի խոստովանօղս անուան քում բարձրելոյ ։

Իսկ Թագաւորն ետ արկանել զդիակունս 'ի խորխորատ մի մեծ․ և զպանտալէոն բան-տարգել արարեալ՝ ասէ ցխորհրդակիցսն․ զիա՞րդ առնեմք զմանուկս զայս, զի կախար-դութեամբն իւրով զբզմս օտարացոյց յածոցն․ և իբ՟ւ չըջեցուք զմիտս ամբոխին՝ որք պատ-րեցան 'ի մոլորութէ նր ։ Ապա ը՟ խորհրդոյ նց ետ կազմել անիւ մեքենաւոր, յորմէ ան-հնար էր մարդոյ ապրիլ․ և ասէ․ քարոզե-ցէք 'ի քաղաքիդ, զի ժողովեսցին և տեսցեն ամենեքին զկորուստ պանտալէոնի․ և որք 'ի քոն հաւատացին, զղջասցին և դարձցին յածոցն մեր ։ Այս յաւուր ժամադրութեն հրա-ման ետ հանել զպանտալէոն 'ի բանտէ, և ածել յատեան․ իսկ զինուորն քի գայր և սաղմոսէր․ խոնարհեցո տր զունկն քո, և լուր ինձ, զի աղքատ և տնանկ եմ ես․ պա-հեա զանձն իմ տր տր, փրկեա զծառայս քո ած իմ, որ 'ի քեզ յուսայ․ և որ 'ի կար-գին ։

Այս 'ի կատարել նրյն զաղօթսն՝ առեալ կա-պեցին զնա 'ի վր անուոյն, և սկսան հոլո-վել զնա ը՟ զառ 'ի վայրն․ և անդէն վաղվա-ղակի կապանքն խզեցան, և անիւն լուծաւ․ և պահեցաւ նրն ամենևին անվնաս՝ օգնա-կանութե քի․ և անիւն հոլովեալ սպան 'ի

հե-

հեթանոսացն և 'ի սպասաւորաց իւրոց հինգ-
հարիւր այր ։ Եւ եղև երկիւղ մեծ 'ի վ̃ր ա-
մենեցուն . և թագաւորն ինքնին իսկ զար-
հուրեալ՝ կոչեաց զնոսն և ասէ . մինչև ցե՞րբ
ածնես զայդ . զոմանս կենդանւոյն յուծոցն
հեռացուցեր , և զոմանս մահուամբ սատա-
կեցեր ։ Յայնժամ երանելին յանդիմանեաց
զխստասրտութիւն բռնաւորին , և ասէ . ով
լիրբ և անամօթ որդի՛ սատանայի , բարիոք
ուրեմն ասաց վ̃ն ձեր մարգարէն , թէ դարձ-
ցին ցաւք 'ի գլուխ նց , և 'ի վ̃ր գագաթան
նց անօրէնութիւնք նց իջցեն ։

Մաքսիմիանոս ասաց . ո՞ է՝ որ ուսոյց քեզ
զայդ ա̃մ ։ Պանտալէոն ասաց . ծնօղն իմ ը̃ս
հոգւոյ՝ տ̃րն իմ Երմողէոս երէց ։ Ասէ թա-
գաւորն նենգաւ . կարե՞մք մեք տեսանել
զնա . զի և ես ուսայց 'ի նմանէ ։ Իսկ պան-
տալէոն ոչ ծածկեաց զնա , զի գիտէր զյօ-
ժարութիւն նր 'ի հանդէս վկայութե . միան-
գամայն և ակնունէր՝ թէ շահեսցի 'ի նմէ
թագաւորն . վ̃ոյ ասէ . եթէ հրամայես ինձ ,
ես երթամ ածեմ զնա առ քեզ . և թ̃գրն ա-
սէ . երթ հանդերձ պահապանօք ։ Եւ եր-
թեալ պանտալէոն՝ եմուտ 'ի տնիկն , ուր
թաքուցեալ էր ծերն . և տեսեալ զնա՝ ասէ .
տ̃ր իմ հայր , կոչէ զքեզ թ̃գրն . և ծերն ասէ .
բարիոք եկիր որդեակ , քանզի յայսմ գիշերի
երևեալ ինձ ք̃ս՝ ասէ . Երմողէ ունիս և դու
այժմ պատերազմել , ոպ̃ և ծառայն իմ պան-
տալէոն . և յարեաւ գնաց ը̃ն նմա ուրախու-
թ̃բ մեծաւ ։

Իւրև

Իբրև ետես զնա Թագաւորն, ասէ ցնա. զի՞նչ անուն է քո. և ծերն ասէ. տէրունականն ա-նուն իմ քրիստոնեայ է. այլ ՚ի ծնողաց իմոց Երմողէոս կոչիմ։ Թագաւորն ասէ. ունի՞ս դու այլ ընկերս քան զքեզ. և ծերն ասէ. են այլ ևս երկու։ Թագաւորն ասէ. զի՞նչ են անուանք նոցա. ծերն ասէ. Երմիպպոս և Եր-մոկրատէս քրիստոնեայք իբրև զմեզ։ Թա-գաւորն ասէ. կոչեսցի՛ն և նոքա. և իբրև մատու-ցին զնոսա, ասէ ցնոսա. դո՞ւք էք՝ որ զպանտա-լէոնն որոշեցիք յաստուածոցն։ Մինչ ետուն նոքա և ասեն. զարժանիսն իւր կոչէ առ ինքն Քրիստոս։ Թագաւորն ասէ. հաւանեցուցէ՛ք զնա այ-սուհետև զոհել աստուծոյն, և լինիջի՛ք ինձ սի-րելիք և մօտակայք անձին իմոյ։ Նոքա ա-սեն. մեք աղաչեմք զԱստուած մեր երկնաւոր, զի նմա միայնոյ լիցուք սիրելիք և մերձաւորք։ Զայս ասացեալ՝ կացին չորեքեանն միաբան յաղօթս առ Տէր, և ասէին. Տէր Աստուած ցո՛յց ըզ-զօրութիւն աստուածութեան քո ժողովրդեանս յանուն քո։ Եւ երևեցաւ նոցա Քրիստոս. և անդէն վաղվա-ղակի շարժեցաւ տեղին, ուր կային յաղօթս։ Ասէ Թագաւորն. ահա տեսանէ՛ք, զի և զերկիր շարժեն դիքդ իմ։ Մինչ ետես սուրբն պանտալէոն, և ասէ. եթէ զերկիր շարժեն, և ինքեանք ընդէ՞ր կործանեցան։ Զայսն բանին եկն ոմն ՚ի մեհենաց Թագաւորին, գոյժ ար-կանէր և ասէր. ո՜վ արքայ դիքն քո անկեալ փշրեցան։

Զայս լուեալ Թագաւորին՝ խռովեցաւ յոյժ, և ասէ. Երդուեալ յարևն իմ, եթէ ոչ ա-

րարդ

հեթանոսացն և 'ի սպասաւորաց իբրև հինգ-հարիւր այր ։ Եւ եղև երկիւղ մեծ 'ի վր̅ ամենեցուն ․ և թագաւորն ինքնին իսկ զարհուրեալ՝ կոչեաց զծերն և ասէ ․ մինչև ցե՞րբ առնես զայդ ․ զոմանս կենդանւոյն յա̅ծոցն հեռացուցեր , և զոմանս մահուամբ սատակեցեր ։ Յայնժամ երանելին յանդիմանեաց զխստասրտութիւն բռնաւորին , և ասէ ․ ո՜վ լիրբ և անամօթ որդի սատանայի , բարիոք ուրեմն ասաց վ̅ն ձեր մարգարէն , թէ դարձցին ցաւք 'ի գլուխ նց̅ , և 'ի վր̅ գագաթան նց̅ անօրէնութիւնք նց̅ իջցեն ։

Մաքսիմիանոս ասաց ․ ո՞ է՝ որ ուսոյց քեզ զայդ ամ̅ ։ Պանտալէոն ասաց ․ ծնօղն իմ ը̅ս հոգւոյ՝ տ̅րն իմ Երմողէոս երէց ։ Ասէ թագաւորն նենգաւ ․ կարե՞մք մեք տեսանել զնա ․ զի և ես ուսայց 'ի նմանէ ։ Իսկ պանտալէոն ոչ ծածկեաց զնա , զի գիտէր զյօժարութիւն նր̅ 'ի հանդէս վկայութե̅ ․ միանգամայն և ակնունէր՝ թէ շահեսցի 'ի նմէ թագաւորն ․ վ̅յ ասէ ․ եթէ հրամայես ինձ , ես երթամ ածեմ զնա առ քեզ ․ և թգ̅րն ասէ ․ երթ հանդերձ պահապանօք ։ Եւ երթեալ պանտալէոն՝ եմուտ 'ի տնիկն , ուր թաքուցեալ էր ծերն ․ և տեսեալ զնա՝ ասէ ․ տ̅ր իմ հայր , կոչէ զքեզ թգ̅րն ․ և ծերն ասէ ․ բարիո՛ք եկիր որդեակ , քանզի յայսմ գիշերի երևեալ ինձ քս̅՝ ասէ ․ Երմողէ ունիս և դու այժմ պատերազմել , ո՛րպ̅ս և ծառայն իմ պանտալէոն ․ և յարեաւ գնաց ը̅ն նմա ուրախութբ̅ մեծաւ ։

Իբրև

Իբրև ետես զնա թգւորն, ասէ ցնա. զի՞նչ անուն է քո։ և ծերն ասէ. քրիստոնեական անունն իմ քրիստոնեայ է. այլ ՚ի ծնողաց իմոց Երմողէոս կոչիմ։ Թագաւորն ասէ. ունի՞ս դու այլ ընկերս Գ քեզ. և ծերն ասէ. են այլ ևս երկու։ Թագաւորն ասէ. զի՞նչ են անուա՛նք նց. ծերն ասէ. Երմիպպոս և Երմոկրատէս քրիստոնեայք իբրև զմեզ։ Թագաւորն ասէ. կոչեսցին և նք. և իբրև մուծին զնս, ասէ ցնս. դո՞ւք էք՝ որ զպանտալէոն որոշեցիք յա͞ծոցն։ Մինչ ետուն նոքա և ասեն. զարժանիսն իւր կոչէ առ ինքն քս։ Թագաւորն ասէ. հաւանեցուցէք զնա այսուհետև զոհել դիցն, և լինիջիք ինձ սիրելիք և մօտակայք անձին իմոյ։ Նոքա ասեն. մեք աղաչեմք զա͞ծն մեր երկնաւոր, զի նմ միայնոյ լիցուք սիրելիք և մերձաւորք։ Ցայս ասացեալ՝ կացին չորեքեանն միաբան յաղօթս առ տր, և ասէին. տր ա͞ծ ցոյց ըղզօրութի ա͞ծութե͞դ քո ժողովելոցս յանուն քո։ Եւ երևեցաւ նց քս. և անդէն փաղփաղուկի շարժեցաւ տեղին, ուր կային յաղօթս։ Եւ ասէ թագաւորն. ահա տեսանէ՞ք, զի և զերկիր շարժեն դք իմ։ Մինչ ետ ս͞րն պանտալէոն, և ասէ. եթէ զերկիր շարժեն, և ինքեանք ընդէ՞ր կործանեցան։ Զայն բան եկն այն ՚ի մեհենաց թագաւորին, դոյժ առկանէր և ասէր. արքայ դք քո անկեալ փշրեցան։

Ցայս լուեալ թագաւորին՝ խռովեցաւ յոյժ, և ասէ. երդուեալ յարևն իմ, եթէ ոչ ա-

րաք

բաղ կորուսանեմ զդոսա, այլ և խռովութիւն
մեծ առնեն ինձ. տեսանէ՞ք զմոգսդ, որպէս
չորեքեանն միաբանեալ իշխեցին և յա̄ծն
ձեռն արկանել: Հրաման տայր զպանտա-
լէոն 'ի բանտ արկանել, և զերեսին վկայսն
բազում տանջանօք չարչարել և գլխատել:
Եւ մինչդեռ յաղօթս կային երանելիքն, բար-
ձին դահիճքն զգլուխս նց̄, զոր երիցուն եր-
մողեայ ծերունւոյ, և զերկուց եղբարց եր-
միպպոսի և երմոկրատեայ. զորս բարձեալ
քրիստոնէից՝ թաղեցին:
Յետ այսորիկ կոչեաց մաքսիմիանոս զպան-
տալէոն, և ասէ ցնա. մի՛ կարծեր՝ եթէ փըր-
կել ոք կարէ զքեզ 'ի ձեռաց իմոց, բայց
եթէ զոհեսցես և կեցցես: Պանտալէոն
ասէ. չէ՛ պիտոյ պնդել քեզ վ̄ն բանից այ-
դորիկ: Ասէ ցնա թգ̄րն. ահա վ̄րդ̄պն քո
երմողէոս, և երմոկրատէս և երմիպպոս հա-
ւանեալ ինձ՝ զոհեցին դիցն. և են զուա-
ջաւորք յարքունիս: Պանտալէոն ասէ. հրա-
մայեա՛ թագաւոր, զի տեսից զնս̄, և ը̄ նս̄
եղէց և ես յաւիտեանս ժամանակաց 'ի նոյն
արքունիս: Եւ թգ̄ւորն պատասխանս եդեալ
ասէր. պէտք ինձ եղեն 'ի քաղաք մի, անդ
արձակեցի զնս̄: Պանտալէոն ասէ. բարւո՛ք
ասացեր ո՛վ անամօթ. կամէիր ստել, և զար-
դարն ասացեր. քանզի են նք̄ յերկինս 'ի քա-
ղաքին ք̄նի և յերկնաւոր արքունիսն:
Իսկ թագաւորն բարկացեալ 'ի վ̄ր ս̄ր̄յն, ետ
դան հարկանել զնա յոյժ, և տանել գլխա-
տել. և երթայր ն̄րն սաղմոսելով զուար-
թու

թուլթն , բազում անգամ մարտեան ընդ իս
'ի մանկութենէ իմմէ , և ինձ ոչ յաղթեցին .
զթլկութս իմ հարին մեղաւորք , և երկայ-
նեցին զանօրէնութիւն իւրեանց . Տր արդար
խորտակէ զուլն մեղաւորաց : Եւ տարեալ
զնա դահճաց արտաքոյ քաղաքին Նիկոմիդաց-
ւոց ՟Է աւելմուտս կոյս իբրև մղոն մի՝ կապե-
ցին զնա ՟Է ծառոյ միոյ ձիթենւոյ . և մատու-
ցեալ մի ոմն 'ի դահճացն՝ եհար զնա սուսե-
րաւ . և եղև երկաթն իբրև զմոմ կակուղ ,
և ծալեցաւ յեսս , և ոչ մերձեցաւ յարդարն :
Յահի հարան դահիճքն , և ասեն . մեծ է
զօրութիւն քոյ . և անկեալ յոտս նորա՝ աղա-
չէին աղօթս առնել վն նց . զի և մեք հաւա-
տասցուք ասեն յածն քո :
Յայնժամ ամբարձ սբն զաչս իւր յերկինս ,
և ասէ . Տր ած իմ կատարեա՛ զցանկութիւ
իմ 'ի տեղւոջս յայսմիկ . և արանցս այսոցիկ
շնորհեա՛ զթողութի մեղաց , և տո՛ւր սոցա
մասն յարքայութեն երկնից . զի 'ի քեզ Տր ա-
պաւինեցան : Ձայն եղև նմա յերկնից , և
ասէ . պանտալէոն ճշմարիտ ծառայ իմ , ա-
հա կատարեցաւ ցանկութի քո , և բացան քեզ
դրունք երկնից . արդ ահա այսուհետև մի
կոչեսցի անուն քո պանտալէոն , այլ պան-
տէլէիմոն ( այս է ամենողորմ ) . զի բազմաց
ողորմեցար և ողորմեսցիս դու , և ապաւէն
եղիցիս 'ի նեղութեն նց . և նշխարք ոսկերաց
քոց բժշկեսցեն զամ ախտաժէտս :
Զայս լուեալ երանելւոյն՝ կարդաց զարան ,
և ասաց կատարել զհրամանն արքունի . այլ

նք

նքա ոչ կամեցան ձեռն արկանել 'ի նա ։ Ասէ ցնս վկայն Քի ․ եթէ ոչ կատարէք զհրամանս թագաւորին, ոչ ունիք ընդ իս բաժին ։ Այլ նքա համբուրեալ զձեռն մարմնին նրա՝ ապա հատին զգլուխս նոցա ։ Այլ ահա զոյգ ընդ արեան, կմ փոխանակ արեան՝ կաթն բղխեաց ․ և տեսաւ մարմինն երանելւոյն սպիտակ իբրև զձիւն ․ և տունկ ձիթենւոյն լցաւ պտղով ։ Այլ տեսեալ բազմութի քաղաքին նիկոմիդեայ զմեծամեծ սքանչելիսն՝ ետուն փառս այ, և բազումք հաւատացին 'ի տր յաւուր յայնմիկ ։ Այլ լուեալ թագաւորին զայս ամ հրամայեաց հատանել զծառն, և այրել զմարմին նրյն ․ բայց զպատուական ոսկերս նորա առին քրիստոնեայք գործակցութբ դահճաց, և ամփոփեցին յանքոյթ վայրի մօտ 'ի տեղի կատարմանն 'ի կալուածս ադամանտիոսի սքոլաստիկոսի, ուր և զկաթնախառն արիւն նրյն հաւաքեցին ։ Արդ կատարեցաւ նքն պանտալէոն, որ և պանտէլէիմոն հրեշտակատիպ երիտասարդն յամի տն իբր 300, կամ 303 ․ յամսեանն յուլիսի՝ որ օր քսան և եօթն էր ամսոյն ․ որ 'ի Ճառընտիրս ինչ գրի նաւասարդի Ի, կմ Է ։ * Այլ սննդակիցք նրյն պանդալէիմոնի լաւրենտիոս և բասոս և պոռոմփինոս զկնի երթային նահատակութե նր յառաջնմէ, մինչև կատարեցաւ նքն ( ասէ յայսմաւուրքն մեր ) ․ և գրեցին նք զպատմութի նրյ վկային պանդալէիմոնի ստոյգ և հաստատ ։

Սեպտ-

կմ կաթնախառն արիւն նըյն. * որ և մինչև ցայսօր երևի, և պարգևէ մերձեցելոցն հաւատով զբժշկութիւն, առէ բասիլեան յայսմաւուրքն յունաց՝ գրեալ հրամանաւ վասլի կայսեր արշակունւոյ 'ի Թ դարու :

Գրէ և միայնակեաց ոմն արևմտեան 'ի կողոնիոյ ագրիպպինայ 'ի վանաց նըյն պանտալէոնի 'ի ԺԶ դարու, թէ տակաւին յաւուրս իւր կայր այն շիշ կաթին և արեան 'ի կոստանդինուպօլիս՝ երկգունի հիւթով սպիտակ և կարմիր. զոր ամ ՌՆ ամէ հանէին 'ի տօնի նըյն 'ի տես ժողովրդեան. և ասիւր՝ թէ երբեմն արիւնն 'ի վեր երևէր, և կաթն 'ի խոնարհ. և երբեմն կաթն 'ի վեր, և արիւնն 'ի վայր : Նաև 'ի յետագայ դարս յիշին զանազան շիշք արեան նըյն պանտալէոնի յարևմուտս, յայտ է թէ 'ի պէսպէս փոքրիկ շիշս բաժանեալ :

Նաւ առաւել բազմապատիկ մասունք նշխարաց նըյն սփռեցան յարևելից յարևմուտ 'ի զանազան գաւառս և 'ի քաղաքս. զորոց բազում են բանք առ մատենագիրս. գլ է և բազուկ մի նըյն 'ի նէապօլիս 'ի վանս նըյն գրեգորի հայաստանեայց լուսաւորչի. և այլ երևելի մասն 'ի պորտուգաւ քաղաք լիւսիտանիոյ՝ յեկեղեցւոջ նըյն պետրոսի 'ի փողոցն կոչեցեալ հայոց Ճանապարհ. թող զորս 'ի հռովմ, 'ի կողոնիա, 'ի լուգդոն գաղղիացւոց. եւն : Ուր թողից զայն, զի կան և այլ երկու համանուն նըք՝ պանտալէիմոն վկայ միթիլինացի, և պանտալէոն միայնակեաց. ո-

 րոց

րոց նշխարք մարթին շփոթիլ ը̄ պանտալէոնի բժշկի․ զորմէ մեր բանքս են ։

Իսկ յաղագս սքանչելեաց՝ զոր գործեաց ա̄ծ ՚ի ձեռն նորայն պանտալէոնի բժշկի, եթէ ՚ի ձեռն նշխարաց նր̄, և եթէ լոկ կարդալով զանունն, որ բան բաւական իցէ ասել․ շատ է այն՝ զի արդեամբք հաւատարմացեալ ՚ի գործոց, կոչի նա վկայս առ յոյնս Թաւմատուրգօս և Խոմարեգօս․ այ̄ սքանչելագործ և ողջացուցիչ ։ Միայն քաղեցից զքանի մի հրաշս, զորս ստուգագոյն տեղեկութ̄ պատմէ նախանշանակեալ կողմնիացի միայնակեացն ՚ի ժա̄ դարու ։

Ռոլդոս արքայ ռուսաց, որ տակաւին կենդանի է ասէ ՚ի գրել մեր զայսոսիկ, ելեալ երբեմն յորս երէոց, և զատուցեալ առ փոքր մի ՚ի ծառայից իւրոց ՚ի ներքսակողմն անտառին, պատահեցաւ արջոյ․ որոյ յարձակեալ ՚ի վր̄ թագաւորին կատաղութ̄՝ պատառեաց զորովայն նր̄, մինչև վայթել զաղիս նորա ՚ի դուրս․ լուեալ իւրոցն զձայն գոչման նր̄՝ հասին ՚ի վր̄, և սպանեալ զարջն՝ բարձին զտէրն իւրեանց կիսամահ, և բերեալ յապարանս՝ եդին ՚ի մահիճս իբրև զմեռեալ ։ Այլ էր մայրն արքայի գիտա՝ կին բարեպաշտ՝ գրեալ քոյր միաբանութե̄ վանաց նորայն պանտալէոնի․ սա յանձն արար զորդին՝ որ չէր ապրանաց, ՚ի զօրաւոր բարեխօսութ̄ ն̄րայն․ առաւել թախանձ արկանելով նմա տալ որդւոյն կեանս; զի մարթասցէ կատարել զուխտ իւր յեջմ․ յորմէ թերևս զուրկ մ̄նայր յետ մահ

Հու որդւոյն ։

Եւ եղեւ 'ի միում գիշերի՝ մինչդեռ անբար-
բառ եւ անզգայ անկեալ դնէր առ ոլորտս ար-
քայ , եկն եկաց առ նմա երիտասարդ մի
շնորհալի՝ քաղցր եւ զուարթ . եւ ասէ . գի-
տեա՛ ո՛վ թագաւոր , զի բժիշկ եմ ես , եւ ա-
նուն իմ պանտալէոն կոչի . եւ բնակեմ 'ի
վանս կողոնիոյ . եւ այժմ եկի 'ի պէտս բժշ-
կութե քո . արդ յաւուր յայսմիկ հասցէ քեզ
առողջութիւն , եւ մահ ը՟ ցաւոց 'ի բաց փախի-
ցէ 'ի քէն ։ Յայնժամ զօրացեալ արքայի բա-
լորովլին , եւ իբրեւ 'ի խոր քնոյ զարթուցեալ՝
ոչ զոք ետես , բայց միայն զոփկլին մայր իւր
գիտաց . եւ պատմեաց նմա զտեսիլն ։ Իսկ նա
լուեալ զանուն պանտալէոնի բժշկի՝ ասէ
խնդալից արտասուօք . պանտալէոնն այն՝
զոր տեսեր որդեակ , ո՛րն իմ եւ պաշտպան
իմ է . նա առողջացոյց զքեզ ։ Եւ որ զար-
մանալին է , 'ի լուսանալ առաւօտուն եկն
ինքնին յարքունիս ոմն բժիշկ ծաղկահասակ՝
յար եւ նման երեւեցելոյն 'ի տեսլեան , եւ
դարմանեաց զարքայ . եւ այնպէս ստացեալ
նա զկատարեալ առողջութիւն՝ յղեաց զմայր
իւր յեղմ՟ 'ի կատարել զուխտն ։

Դարձեալ՝ կայր ասէ առ մեօք տիկին ոմն
ազնուական եւ մեծատուն անդրղիկայի , որ յետ
մեռանելոյ առն իւրոյ՝ եղեւ առն այլում , եւ
այնչափ կողոպտեցաւ 'ի նմանէ , եւ մերկ
թափուր յամ՟ ընչից , մինչեւ սկսաւ ձեռնա[illegible]-
ծով ապրել . բայց այլն ժանտ [illegible]
է աղօթաձեռնութե նր՝ կորուսանեաց դ[illegible]-
կաւ

կաւ զմկանունս բազկացն նորա. որով անպիտանացաւ տիկինն 'ի գործ, և ցաւագին էին կեանք նորա : Սա ահա երևեցաւ նմա յանուրջս երիտասարդ գեղեցիկ, որ պատմեաց զանձնէն՝ թէ ես իցեմ եմ պանտալէոն բժիշկ, և շնորհօքն քո վկայ նո. արդ ասէ՝ եթէ կամ էք քեզ գտանել զառողջութի քո, ուխտ մի դի'ր ինձ անյեղլի. և նա ուխտեաց հրաժարել 'ի մսոյ զամ աւուրս. և առժամայն զարթեաւ եգիտ զանձն ողջացեալ բոլորովին, և յաջողակ 'ի գործ իբրև զառաջինն : Պէտք եղև նմա գնալ երբեմն 'ի տուն ազգականաց իւրոց. ուր իբրև առաջի եդաւ նմա խորտիկ, ոչ կամէր ուտել. այլ իբրև ստիպեցին զնա ճաշակել վս սիրոյ իւրեանց, զիջաւ նոց. և ահա 'ի յաջորդ գիշերի երևեցաւ նմա նոյն տեսիլ երիտասարդի. և յանդիմանեաւ զնա վս անցանելոյ զուխտիւն՝ ասէ. հեռի է այսուհետև 'ի քէն առողջութի. և այնպէս մնաց 'ի տկարութեն առաջնում. մինչև 'ի միւս անգամ տեսողաց և լսողաց զծանրութի ուխտազանցութե :

Այր յառաջ քան զաւուրս մեր (ասէ նոյն գրիչ) այր մի կաղ յոտից, և լուծեալ յամ անդամոց. որ հազիւ յեցեալ 'ի նեցուկս իւր չ փայտեղէնս՝ սողապաճեմ սողէր. զսա ածին ազգականք իւր 'ի վկանոց նորին պանտալէոնի 'ի կողոնիա, զի թերևս գտցէ զբժշկութի. և հանգուցին զնա եղբարք 'ի տնանկի միում մօտ յեկեղեցին. և զարմանային ընդ փոյթ աղօթից նր և պահոց և աղքատութեանց, որովք

հայցէր օգնութի՛ն 'ի նոյն ջերմեռանդն հաւատով: Եւ քանզի վաղայարոյց լինէր այրն, վաղագոյն բանային եղբարքն զդուրս տաճարին, զի ը̃ փափաքանաց իւրոց կանխեսցէ յաղօթս: Եւ եղև 'ի միում յաւուրց գիշերախառն եկեալ նր̃, և գտեալ զդրունս փակ, տքնէր արտաքոյ յաղօթս. և ահա եհաս առ նա ն̃րն պանտալէոն վայելուչ և փառացի տեսլեամբ երիտասարդի, և կորզեալ 'ի ձեռաց նր̃ զնեցուկն՝ յորս սովոր էր յենուլ, ընկէց հեռագոյնս. և ինքն եղև աներևոյթ: Եւ 'ի գոչել առն մեծաձայն առ ահի, և առ կորստեան պիտոյից, լուեալ եղբարք, և եկեալ հարցանէին զպատճառն. և նա պատմեաց զանցս իւր՝ զանգատ եդեալ, թէ կորուսի զնեցուկն: Իբրև սկսան նք̃ այսր անդր ընթանալ 'ի խնդրել զնեցուկս նորա, սկսաւ և այրն ինքնին վազվազել ը̃ նմ̃. զի գտաւ բոլորովին ողջացեալ. և յայտնի եղև ամենեցուն գեղեցիկ սքանչելիք նոյն. և փառս տային այ̃: Եւ նա ինքն ողջացեալն 'ի յիշատակ մեծի հրաշիցս՝ յօրինեաց իւրով ձեռամբ զպատկեր իւր 'ի մանրիկ քարանց 'ի յատակ եկեղեցւոյ նոյն պանտալէոնի 'ի մէջ դասուն. և զնեցուկս իւր կախեաց առաջի խորանի նր̃. և եկաց 'ի ծառայութի նոյն և եղբարցն ոչ սակաւ ժամանակս՝ փառաւորելով զա̃ծ:

Որպէս պատմեն ասէ բազումք մինչև ցայսօր, թգ̃րազն որ սաքսոնիացի հարեալ յայսոյն պղծոյ՝ ոչ գտանէր ուստեք բժշկութի.

լուեալ

լուծեալ մերձաւորաց նորա զսքանչելի անուն սբյն պանտալէոնի 'ի կողմնիս, ածին զնա հաւատով անդր՝ կապեալ շղթայիւք 'ի սայլ մի. և եդեալ զնա առաջի սեղանոյն՝ աղաչեցին զմիաբանս վանացն՝ բերել և մերձեցուցանել 'ի դիւահարն զնշխարս սբյն պանտալէոնի: Եւ երբ այն ինչ 'ի վայր առնուին զտապանակ նշխարացն, չհանդուրժեալ դիւին առաջի զօրութեան սբյն՝ լլկեաց զայրն չարաչար յոյժ, և վերացուցեալ զնա 'ի բեմն սայլիւն հանդերձ՝ կործանեաց ընդ աշտիճանսն 'ի վայր, և ել 'ի նմանէ:

Լուաք ասէ և յեղբօրէ ումեմնէ վանացն՝ որ կոչիւր հելմվարտէսհուսիմ 'ի սահմանս սաքսոնիոյ, զի վանականք տեղւոյն յառաջ ժամանակաւ ընտանութիւն յոյժ ունելով ընդ միաբանս սբյն պանտալէոնի, 'ի յիշատակ սիրոյ կամեցան և ինքեանք կատարել զտօնախմբութիւն նորին սբյ մեծահանդէս նուագերգութեամբք, վերածեալ զպատմութիւն վարուց նր 'ի ձայն երգոց. և զի մի թուլասցին 'ի սովորութենէ անտի՝ սահման եդին առնել և ուրախութիւն ինչ 'ի նմին աւուր 'ի սփոփանս դպրաց առաւելագոյն կերակրովք քան զսովորական աւուրց: Յետ ժամանակի ինչ 'ի վր անցելոյ նոր առաջնորդ տեղւոյն անփոյթ եղև առնել զայն ուրախութիւն. և եղբարքն համբերեն զերիս ամս՝ ապա 'ի չորրորդումն միաբանեցան չկատարել և զտօնն. վսն 'ի նախատօնակի սկսան ասել զայլ ժամերգութիւն երեկոյեան առանց տօնական կարգի.

քեզ 'ի յետին կարիս ։ Մինչ այս մինչ այն՝ տարեալ էր ընկերաց նորա գոյժ 'ի քաղաքն . և ահա եկեալ բազմութիւն հանդերձ քահանայիւք՝ գտին զնա տապաստ անկեալ խոց կարեվէր . և նորա խոստովանեալ և հաղորդեալ 'ի նոր խորհրդոյն՝ ապա դարձաւ յամբոխն , որ զնովաւ , և ասէ . զի՞ է՝ զի չառնէք արժանի մեծարանս նորին պանտալէոնի , որ կայ յանդիմանն ձեր ամենեցուն ։ Իսկ յասել նորա զարմացմամբ , թէ չի՞ք մեր տեսեալ աստ զոք 'ի նմա , նա առաւել ևս զարմանայր , և ասէր . ո՞չ տեսանէք ծրպիսի պայծառ երեսօք և սքանչելի զարդուք կայ 'ի սնարից իմոց , և սփոփէ և քաջալերէ զիս . զայս ասացեալ աւանդեաց զոգին ։ Իսկ և տարան թաղեցին զնա , զաւուրս երեսուն ստէպ երևէր ծանօթից և բարեկամաց , և աղաչէր աղօթս առնել վն իւր . քանզի ասէ՝ յառաջին քնի նոր վկային նորա պանտալէոնի միջնորդեաց վն իմ , զի ամսօրեայ մի ժամանակ կարօտացայց երևիլ կենդանեացդ , և խնդրել 'ի ձէնջ օժանդակութիւն հոգւոյ իմում . առ զի քաղցրացի յիս դատաւորն կենդանեաց և մեռելոց , և փոխեսցէ 'ի հանգիստ նոց ։ Զայսոսիկ և զայլ բազում սքանչելիս նորին քաղեն յոլովք,
Ը տես և բոլլանդեանքն ։

է տուեալ հնագոյն և վաւերական քան զմետափրաս-
տեսին . զի ոչ բարւոք տայ տառանոր պրոքլոս բոլ-
լանդեան , * Իմիք հաւանական է՝ թէ երբեմն ան-
,, հարթն՝ յետոյ ողորկագոյն յօրինեալ իցէ , քան թէ
,, յայսչափ ողորկ ոճոյ յետոյ յայն անհարթ ոճ վեր-
,, ածեալ իցէ ||։

Օրինակ լիցին մետափրաստեան գրութեն այս ձեռքբա-
նից ։ Ընդհանրապէս միշտ 'ի վր բերէ մետափրաստէս
պատճառս և լուծմունս մթին և հոմանձայն բանից . զի
յաւակաբանութիս ոքյն առ հայր իւր և առ վկայն ,
մեկն պարզաբանէ՝ թէ չգոյր սուրթն ինչ 'ի նմանապա-
նութիս անգ ։ Եւ 'ի մասնաւորի՝ զջանս ոքյն 'ի դար-
ձուցանել զհայր իւր այսպէս բացատրէ . * զմնօզն իւր
,, ը մարմնոյ՝ ինքն ը հոգւոյ վերածնել նկրտէր ||, և
թէ՝ * պարտիք ենջ յոյժ գժոռարահատոյց՝ որդւոյ առ
,, հայր . այնմ՝ յորմէ եառ ձրի զգոլ , պատուհասիրա-
,, բար դուն գործել հատուցանել զբարւոքգոլ ||։ Յա-
ւել ոքյն ցկոյրն . * զպայծառ լուսոյ տայ քեզ իմն քն ||,
մետափր" առ յարմարութն տայ . * զպարգեն լուսոյ
,, տայ քեզ իմն հայրն լուսոյ ||։ Ոչ և զգանգատ կոյ-
րին զբժշկաց՝ թէ զինչս իմ առին , և ինձ ոչ օգտեցին ,
այսպէս յօրինէ . * անձանց օգտեցին , զի զոմ ինչս իմ
,, քաղեցին անօտի յուսով լուսոյ . իսկ ինձ և ոչ մի օ-
,, գուտ , այլ վնաս առաւել գործեցին ||։ Իսկ և լաւին
թարգմանն կամեցեալ նոր մետափրաստէս լինել՝ առնէ
պատուհաս աւելորդ 'ի խօսել ոքյն առ թքրն . * զայ-
,, սոսիկ ով կայսր , և կոյրն իսկ՝ ոչ տսի՝ յայտնի տե-
,, սանէ ||։ Բայց չէ աւելորդ , զի մետափր" նմանեցու-
ցանէ զայս կոյր ը կուրին , զորմէ գրեալ է յաւետա-
րանն յովհաննու ։ Եւ յասել հին վկայաբանին , թէ ոքն
* եմուտ առաջի թագաւորին , այլ աչք նր ամբարձեալ
,, յերկինս ||, մետափր" գրէ . * եկաց առաջի թագա-
,, ւորին . կմ լաւ ես ասել , ոչ նր առաջի , այլ՝ անմա-
,, հին և յաւիտենականին . զի առաջի նր կայր սուտ-
,, գապէս , և մտօք քաղաքավարէր ||։ Եւ զհաւատալն
բազմաց 'ի բժշկիլ անդամալուծին , և զնախանձիլն քր-
մոց և բժշկաց այսպէս ճլայնէ . * Եւ ոչ 'ի նմա եսթ
,, զանզի եառ բժշկութին . այլ՝ ուր նա մարմնով , այլք
,, յոլովք հոգւով լուծեալք , և տխուրք ամբարշտութ
,, վարակեալք , ը տեսանելն զեղեալսն՝ յարեան և կանգ-
,, նեցան . և զառաջին մոլորութե խաւարանց դատապար-
,, տեալ՝ եկին 'ի պայծառն ճշմարտութե յոյ ։ Իսկ չարար-
,, ուեստ

,, ուղեւոր քուրմք և բժիշկք, որք իւրեանց կամաւ ան֊
,, բժշկելիք էին, ոչ եւս տեղի յանձինս իւրեանց լու֊
,, սոյն ճշմարտութե || . Են:

Արդիմբք իմանաս, թէ մետափրաստէս ոչ փոխէ զպատ֊
մութիւն, այլ զարդարէ և վայելչացուցանէ. բայց մերս
փոյթ եղև ՚ի վարս սրբց ոչ այնչափ ՚ի խնդիր լինել չքե֊
ղութե ոճոյ, որչափ հնութե, որ առաւել անտպակ
ընծայէ զճշմարտութիւն: Զայս փոյթ կամին ունել և
բոլլանդեանք, բայց ոչ միշտ պահեն. զոր օրինակ և
աստանօր զմետափրաստէս տպեն, իսկ զհին վկայաբա֊
նութեն զհատուածս միայն բերեն ՚ի հաստատութի նր.
զորոյ զհակառակն պարտ էր առնել:

Իսկ զի՞նչ պարտ է ասել զայլոց ոմանց օտար քննչաց,
որք որչափ միաբանութի տեսանեն զհրաշալի պատմու֊
թեն առ ԾՄ հին և նոր վկայագիրս, չկարեն ժոյժ ու֊
նել. վն և զյանդգնութի նց այսպէս ըմբերանէ պոպ֊
քիոս բոլլանդեան. * Քա՛ւ լիցի մեզ (ասէ) յարել կամ
,, ՚ի տիլլեմոնտ, որ զայս ԾՄ վկայաբանուիս սրբյն պան֊
,, տալէոնի նախանշանակեալս՝ ցուրտ բանիւ իշխէ ա֊
,, սել անզօրս և ոչ իմիք մտադրութե արժանիս. կամ
,, բայիլլէտայ, որ Ը իւրումն սովորուե, այլ ոչ եթէ
,, իւրք հեղինակութբ, մանաւանդ թէ Ըդէմ վաղնջա֊
,, կան հեղինակութե, ՚ի բաց ընջեալ զսքանչելիս, այն֊
,, չափ ինչ միայն ճշմարտանման ասդնէ, որ և ոչ յետին
,, դասու վկայից հաւաստէ զմեծ վկայ ծանուցեալն
,, յաւէժաբար: Եւ թէ քանի անիրաւ իցէ այդ, յայտ֊
,, նի լիցի ՚ի ծանօթութեց մերոց ՚ի վր պատմելոցն ՚ի
,, համարն Ե. և Թ. (ի վս բժշկութե օձահարի և կու֊
,, րի). զորս իբրև ամենևին օտարս ՚ի ճշմարտանմա֊
,, նութէ ՚ի բաց տարագրեաց նոր այրս այս՝ վստահուն
,, և առաջի հռովմայ ||:

Զանց առնէ իմաստունն յաչս իւր բայիլլէտ զբժշկութբ
օձահարին, զոր միաբան գրեն ԾՄ վկայաբանք յհմ ա֊
զինս. * յայտ է թէ (ասէ պոպքիոս) առն նորոյ ոչ այն֊
,, չափ ճշմարտանման թուեցան իրքդ, զոր ԾՄ հին հե֊
,, ղինակք՝ որք միանգամ նաև ՚ի կարճոյ անցին Ը վկայ֊
,, բանութի սրբյն պանտալէոնի, միաբան աւանդեցին
,, յետնոց ||: Որպէս և յաղագս կուրին ասէ պոպքիոս.
* Զայս ես սքանչելիս բժշկութե կուրին իբր նուազ
,, ճշմարտանման ՚ի բաց թողու բայիլլէտ յիւրումն հա֊
,, ւաքման, ոչ և զայլսն ԾՄ: Այլ զի՞նչ կայցէ աստ֊
,, նոր, ասա՛ աղաչեմ, օտար ՚ի կերպարանաց ճշմարտու֊
,, թե.

„ թն ։ Բայց եթէ թերևս ոք յայն աշխարհն հասանել
„ կցէ, մինչ զի որ ինչ միանգամ պատմի եղեալ 'ի վեր
„ քան զկարգ բնութե, խել և խել գիցէ 'ի մտի' թէ
„ այն ինչ ոչ միայն չկարէ լինել ճշմարիտ, այլ և ոչ
„ զնմանութին ունել ճշմարտի․ որ է ուղիղն ամենեւին
„ անարժան առն քրիստոնէի ‖ ։ Այս խրատուք կոչէ
զբայինլեա և զնմանիս նորա' որք զանձինս քրիստոնեայ
խոստովանին հաւատով, գիրս և ձախոկ հաւատովք ։

Այլ մեք չէք բան առ այնոսիկս և Է այնոսիկս ։
Բանաւոր տրամաբանութիւնք այն են, յորժամ անհամաձայ-
նութիւնք իցեն առ պատմութեամբս․ այլ առկաւս է տեսա-
նել և զայնոսիկս յայսմ վկայաբանութե ։ Բանաւոր
կարծէ պատճառս և զայն կատակած իւր' թէ զկարգ գա-
հերձքն յետ կամելոյ հաւատալ 'ի քո' յանձն առնին հա-
տանել զգլուխ սրբոյն պանտալէոնի․ վասն խնդրոյ' թէ
գուցէ 'ի յետնոց է մուծեալ այդ պարագայ․ այսմ և
մեք կարեմք զիջանել, բայց ոչ թողլ տայ անաչառութին․
նախ' զի ոչ ոք ասէ, թէ գահերձքն եղեն 'ի ժամուն կա-
տարեալ քրիստոնեայ․ այլ թերևս յետոյ․ մինչև տալ
ամանց' թէ մարտիրոսացեալ իցեն ։ Երկրդ' զի ոչ ան-
ձամբ արարին, այլ 'ի տուփակելոյ սրբյն զնն 'ի կատարել
զհրաման թգրին․ և եթէ յայսմ սխալեն տուիցէ ոք զսին,
կամի թէ առօղն լինէր յայն պարագայ, և յայնժամ
զատոյգն գտանէր․ զի Ը այգմ ոչ էր կատարելի սքն վկայա-
կան մահուամբ ։ Երրդ' եթէ պարզմտուն այնոսիկ եղե
'ի հին վկայաբանն, որ օրինաւոր համարեցաւ և գրեաց
զայնոսիկ գլխատումն սրբյն, միթէ նուազ պարզամիտք
էին գահերձք' որ չկարիցեն գլխատել․ առաւ յայտ է թէ
պարզմտութի հին քրիստոնէից ոչ է կշռելի Է մերոցս
գարուց․ յորս չէք հետք միամտութե ազատնոյ, այլ միայն
կամ խորագիտուն և կմ խորամանկութն օձի ։

Ցայցանէ ասնիս խմաստասիրել' թէ գրեալքն 'ի մէնջ
Ը ճառընտրաց հաստատեալ են 'ի միաբանութե հին վկայա-
գրաց առհասարակ․ թող զթեթև տարբերութիս 'ի պա-
րագայս ինչ, զորս ասելորդ վարկաք յիշել․ թէպէտև
աշխատեալ էր մեր զատուցինն մի առ մի հաւաքել և
նշանակել զնոյն ։ Այս և Է պարձակ քաղեալ էաք, որչափ
ինչ խօսի պատճէնս յաղագս վկայաբանաց, նշխարաց և
պաշտելեաց սրբյն․ այլ սակաւս եթե 'ի բազմաց յառաջ
բերաք․ զի ոչ տանէր չափ հատորոյս և մեծութի առա-
ջիկայ գործոյս ։

Ցոյնք առնեն և զերանելի կոյրն 'ի ժամագիրս իւրեանց'

Է

Է սրբոյն պանտալէոնի ․ 'ի 27 ․ յուլիսի ․ իսկ զերմողայոս և զերկու ընկերս նր 'ի 26 ․ յուլ․ ոչ առանձին պատմութբ̄, այլ՝ երկրորդելով զգրեալսն 'ի վկայաբանութեն պանտալէոնի ․ արդ թէ ոչ՝ օտար է նորահնար պատմութիւն երմողայոսի գտեալ 'ի նոր գիրս ինչ լատինս ։ Լատինք պանտալէոն տօնէին երբեմն 'ի 28 ․ յուլ․ իսկ այժմ գնեն Է յունաց 'ի 27 ․ յուլ ։ Թող զՀռաբանոս՝ որ գնէ 'ի փետր․ 28 ․ և այլք յայլ աւուրս՝ թերևս 'ի յիշատակ փոխադրութեն նշխարաց ինչ ։ Իսկ 'ի Հ ․ եդեալ է 'ի յուլ․ 26 ․ Է երմողայոսի ։

Նշխարք սրբոյն երմողայոսի նշանակին լինել 'ի զանազան տեղիս ․ այլ հռչակեալ է քան զամ՝ եկեղեցի սրբոյն սիմէոնի մեծ կոչեցելոյ 'ի վենետիկ ․ ուր ասի լինել մարմին սրբոյն երմողեայ մարմարեան տապանաւ՝ ոսկ̄ բերեալ 'ի կոստանդնուպօլսոյ անյիշատակ ժամանակաւ ։



ԱՇԽԲ



# ՎԱՐՔ ՍՐԲՈՅՆ

## Եպրաքսեայ ճգնաւոր կուսին, և ծնողաց նորա:

Հ. յուլ. 25. կճ 20: Յ. յուլ. 25: Լ. մարտ. 13: Պապեբրոք. Ա. յԺ = յԺԴ: Բոլլանդեան. 'ի Ե հատ. մարտի. եղ. 264 = 274. և 727 = 735: Սուրիոս: Հատուածք 'ի վարս հարանց. եղ. 351 = 362: Յոյնք. դամասկացի. 'ի Դ ճառն. յղ. պատկերաց: [1]



ԲԱՐԵԳՈՐԾՈ՛Ն ԸՍՏ ԱՆուան, և առաւելեալն ըստ արդեանց՝ աղախինն Քրիստոսի կոյսն Եւպրաքսիա, որ և Եպրաքսիա կամ Եպրակսիա, էր 'ի թագաւորեալ քաղաքէն, որ ըստ ճառընտրին ասի լինել Հռովմ, և ըստ այլոց կոստանդնուպօլիս [2], յաւուրս թագաւորութեան մեծին Թէոդոսի բարեպաշտի՝ որ տիրէր արևելից և արևմտից, միամօր դուստր արքայազուն և մեծատէր ծնողաց՝ Անտիգոնոսի և Եւպրաքսեայ: Անտիգոնոս այս էր ազգական ինքնակալին, և այր երևելի 'ի մէջ դասուց սինկղիտոսաց, իմաստուն և համճարեղ խորհրդակից արքային, գիտակ իրաւանց հռովմայեցւոց, և ճշմա

ճշմարիտ ա̄ծապաշտ . վ̄յ և յամենեցունց սիրեցեալ 'ի մեծամեծաց և 'ի փոքունց . և Թագաւորն ինքնին սիրէր զնա առաւել քան զն̄մ պատուհասորս իւր յաղագս իրաւախոհ

կամացն և քն̄ասէր մտացն ։

Նոյնպէս և կին նո̄ր եւպրաքսիա էր 'ի Թագաւորական տոհմէ , ճշմարտասէր և երկիւղած յա̄յ . որ զցայգ և զցերեկ ոչ դադարէր յաղօթից , մեծաւ ցանկութ̄բ և ջերմեռանդն արտասուօք խնդրելով յարարչէն զայցելութի՛ւն անցանել զ̄է կենցաղս անարատապէս , և արժանաւոր լինել երկնից բարութեցն 'ի քն̄ բարեխօսութ̄բ ա̄մ սր̄ց . Նմին իրի և անընդհատ պտղաբեր լինէր յեկեղեցիս ա̄յ , 'ի պաշտօնեայսն նո̄ր և յուխտաւորս . և զբազում տնանկս մեծացուցանէր առատատուր պարգեւօքն և յառաջ ածելովն . և էր առաւել սիրեցեալ 'ի Թագաւորէն և 'ի Թագուհւոյն ։ Իսկ եղև յետ ծնանելոյ նո̄ր զդուստր մի՝ զոր հայր նո̄ր անուանեաց յանուն մօրն եւպրաքսիա , ասէ Անտիգոնոս ցպարկեշտ ամուսինն իւր . ունկնդիր լեր ինձ բանիցս ով կին դու , որ զանուն քո անուանեցեր 'ի վ̄ր դստերս քո 'ի յիշումն քո հանապազ , զի անցաւոր է երկրաւորս , և անանց՝ երկնայինքն . Եւ անցանէ և վայելչութի սորա , և որ առնէ զկամս ա̄յ՝ մնայ յաւիտեան յանանց կեանսն , զոր պատրաստեաց ա̄ծ սիրելեաց իւրոց . զի աւ առաւելոյն՝ ասէ գիր՝ ութսուն ամ . որ աւելին է քան զայն՝ ցաւօք և հեծութ̄բ , Թէպէտև սակաւուց սակաւ ինչ յաւելուած լինի

նեցի. այսպէս են 'ի վ՟ր երկրի կեանք. նաև մանկանց և երիտասարդաց է մահ երագահաս. և զմեզ ոչ հեռի պարտ է կարծել յայնպիսի ախտից զանխլաբար, զի ոչ գիտեմք զօրն և ոչ զժամն. Համայն 'ի միտ առցուք՝ թէ զի՞նչ է խաբողական անցաւոր կեանքս այս ։

Ասէ ցնա կինն իւր Եւպրաքսիա. Տէր իմ զինչ պարտ է առնել՝ արտասուեսս 'ի հաճոյան Այ. և ես ը՟ քեզ ։ Ասէ ցնա Անտիգոնոս. Շնորհեաց մեզ Ած դուստր մի. բաւական լիցի սա մեզ ժառանգորդ և յիշատակ, թէ պահեսցէ զպատուիրանս Այ. և մեք որոշեսցուք 'ի միմեանց՝ զզաստութիւն և արդարութիւն և Ածպաշտութիւն կացցուք յԱյ, 'ի կատարել զկեանս մեր մատակարարելով ։

Յայնժամ Եւպրաքսեայ յարուցեալ գոհանայր զԱյ, և ամբառնալով զձեռս իւր յերկինս՝ օրհնէր զԱծ, և ասէր ցայր իւր. Օրհնեալ Տր Ած, որ յայց ել մեզ, և արկ զահ իւր 'ի սիրտս քո, և ծանուցեր քեզ զունայնութիւն կենցաղոյս այս, որ ոչինչ են նմ փառք աշխ. զի էր այս հոգ 'ի սրտի իմում, և խնդրէի 'ի Տնէ իմմէ՝ զի ծագեսցէ 'ի սիրտս քո. զի 'ի միտ առցես զարդարութիւն Ճշմարիտ, և ուղղեսցես զհանճար ը՟ կամացն Քի. զի առէ առաքեալն Տրն, որ վարեն զաշխ՝ որպէս թէ չվայելեսցեն. և որ ունին կանայս՝ որպէս թէ չունիցին. և որ խնդան՝ որպէս թէ ոչ խնդան. զի անցաւոր է վայելչութիւն աշխ այսորիկ. այլ որ առնէ զկամս Այ, մնայ յաւիտեան ։ Ով է

զի՞նչ

զի՞նչ շահ է մեզ 'ի բազում ստացուածոց մերոց, 'ի գեօղից և յագարակաց. ո՞չ ապաքէն ասէ մարգարէն, անզգամք և անմիտք կորիցեն, և թողցեն օտարաց զմեծութիւն իւրեանց։ Արդ տ՟ր իմ մի՛ լիցուք անզգամք և անմիտք, այլ իմացուք զի՞նչ են կամք տ՟ն. մի՛ յապաղեսցուք զբարիս գործել, զի մի՛ կորիցուք զյաւիտենական կորուստն. զի ո՛չ գիտեմք յորում աւուր կոչիմք 'ի հանդերձելոյն 'ի քն։ Զայս լուեալ անտիգոնոսի 'ի կնոջէն իւրմէ՝ փառաւորեաց զա՟ծ, ունելով զմիտսն 'ի բարեպաշտութե՟ խորհուրդսն. և բազում ինչ ետ աղքատաց և յեկեղեցիս ա՟յ և 'ի վանորայսն։ Եւ մի ամս կացեալ ը՟ կնոջ իւրում անարատ և մաքուր յամուսնական մերձաւորութե՟, և զա՟մ կարգս բարեձևութե՟ գեղեցկապէս յարդարեալ, և վկայեալ յամենեցունց ո՟պ արդարև ծառայ ա՟յ և ճշմարտեալ յա՟մի, փոխի առ այն կեանսն՝ որում ցանկացաւ, 'ի փառս ամենասու՟ր երրորդութե՟ն։ Եւ սուգ մեծ լինէր Թագաւորին և Թագուհւոյն և ա՟մ քաղաքին։

Եւ կին ն՟ր Եւպրաքսիա, որոյ կացեալ էր ը՟ առն իւրում յառաջագոյն ամս երկուս և ամիսս երեք, և միւս ևս այլ ամ յորոշմանն իւրում, առեալ այնուհետև զդուստրն իւր համանունն՝ եդ առաջի Թէոդոսի Թագաւորին, և Թագուհւոյն՝ (որում անունն էր Գաղղա պլակիդիա) արտասուաթոր բարբառով, և ասէ. Եղիցին խնամքն ձեր 'ի վ՟ր սորա, զհաւատարիմ ծառայն ձեր յիշելով զանուն-

 դո-

գործոց . և մի մոռասցի զյիշատակս ձեր որքա այս , որ զըկեցաւ 'ի հօրէն իւրմէ և 'ի խնամաց նր : Այլ Թագաւորն և Թագուհին յարտասուս եղեալ՝ մխիթարէին զնա բանիւք բազմօք :

Այլ յետ սգոյն անցանելոյ՝ խօսի Թագաւորն և Թագուհին ը̅ Եւպրաքսեայ՝ տալ զդուստրն իւր 'ի կնութիւն որդւոյ զօրավարի ումեմն մեծի և խորհրդակցի . և նր հաւանեալ կամաց նց՝ յանձն առնոյր . այլ զի դեռ մանուկ էր դուստրն իբրև ամաց հնդից , մնացուցանէր կատարման ամացն . և առհաւատչեայ առեալ՝ այնպէս կային մնային երկոքեան կողմանքն : (3)

Իսկ յետ խոստմանցս այսոցիկ՝ մին 'ի սինկլիտոսացն խորհեցաւ առնել իւր կին զանտիգոնեայ զկինն զԵւպրաքսիա . և յղեաց առ Թագուհին միջնորդ կանայս , զի տացէ զնա նմա 'ի կնութիւն : Այլ Թագուհին հաւանեալ կամաց առնն՝ առաքեաց առ Եւպրաքսիա կանայս , զի հաւանեսցի յօրինաւոր ամուսնութիւն սինկղիտիկոսի մեծի : Լուեալ Եւպրաքսեայ զպատգամս Թագուհւոյն՝ խռովեցաւ յոգի իւր , զայրացաւ , և ելաց դառնապէս . և ասէ . զի՞ հրապուրէք զիս բանիւք սնոտեօք , և յուսով երկրաւորացս հանել յանանց կենացն . և այժմ յայսմ մոլորեցայց՝ յետ տալոյ զանձն իմ այ . քաւ լիցի ինձ այդմ հաւանել . և անարգանօք դարձոյց զպատգամս Թագուհւոյն :

Լուաւ և Թագաւորն , և բարկացաւ Թա-

գուհւոյն յաղագս անիրաւ խորհրդոյն . զի գիտակ էր որքասէր բարուց եւպրաքսեայ . և ասէ . զիա՞րդ այսպէս նանրացար 'ի խորհուրդս անարժանութե . և ոչ յիշեցեր զանետրգոնեայ զբարեպաշտութիւն . և զեւպրաքսեայ զհամեստութիւն , որ 'ի կեանս իւրեանց ողջախոհ եղեն 'ի սրբութի բարեպաշտու , հանդերձ ամ արդարութբ զարդարեալ վն երկնից արքայութեն . և այլ բանիւք բազմօք մեղադրէր թագաւորն վն նր . և թագուհւոյն զամօթի հարկանէր , և ոչ կարէր տալ պխնի . և եղև խռովութի մեծ առ թգւորն և թագուհւոյն վն այսր պատճառի :

Զայն լուեալ եւպրաքսեայ՝ փարանէր 'ի տարակուսանս , և խորհէր գնալ 'ի քաղաքէն . բաշխեաց զինչս իւր կարօտելոց , և յուխտս արանց և կանանց . և առեալ զդդուստր իւր զեւպրաքսիա՝ որ էր իբրև եօթնամեայ , գաղտագողի գնաց յեգիպտոս . զի էին անդ նց գեօղք և ագարակք և ստացուածք բազում . և պատճառեալ՝ թէ վն նոցին իրաց եկեալ իցէ անդր , կոչեաց զգաւառապետս և զհազարապետս , և արար համարս ստացուածոց իւրոց : Նա երանէր 'ի վերին թեբայիդն , և տեսանէր զեկեղեցիս , և զուխտս արանց և կանանց . և պտղաբերէր 'ի նս առատապէս :

Էր վանք մի անդէն 'ի քաղաքի միում , յորում կային կուսանք ճր հարիւր և երեսուն (4) . զորոց ( ասէ վկայաբանն ) աչանչելի և զարմանալի առաքինութիւն պատմեն մեծա-

Ճակայքն · զի էին նշ̅ հանապազորդ աղօթքն 'ի տունէ և 'ի գիշերի · բայց սակաւ ինչ նիրհէին 'ի վր̅ գետնոյ խոտեղինօք կամ մազեղինօք , փրխայ փոքրիկ ընդ անձին ունելով երկայնութիւն երեք կանգուն , և լայնութիւն կանգուն մի · միով այծեայ հանդերձիւ , և դուզնաքեայ վերարկու · և բարձ մի փոքրիկ առանց պաճուճանաց · և 'ի պահս պնդութե̅ միշտ · և ճաշակէին միանգամ յաւուրն է̅ երեկս · այլ 'ի տօնի և 'ի կիւրակէի և 'ի շաբաթու՝ յերրորդ ժամու , հաց և օսպն և բանջար · այլ վն̅ մսոյ և գինւոյ՝ 'ի լսելոյն ևս զարհուրէին · և 'ի մրգոցն ևս ոչ ուտէին յայլ աւուրսն , բայց միայն 'ի տօնսն ։ Նաև ոչ առնուլ ինչ յումեքէ նոցա էր կամք , այլ՝ իւրեանց ձեռագործովք միշտ կերակրէին , 'ի վաճառականաց ուստեք ծանօթից զպէտսն վճարելով զհանդերձից և զկերակրոց ։ Նաև ոչ ևս լուանային զանձինս՝ ամօթխածութե̅ զարդարեալք · իսկ յորժամ լսելի լինէր նշ̅ որք 'ի բաղանիսն լուանային , զարմանք ունէր զնս̅ և տաղտկային լսել , գործ անվայել զիրսն վարկանելով ։

Որ 'ի նա նախանձ բարեպաշտութե̅ ումն քան զոմն առաւելուլ 'ի պահս և յաղօթս և 'ի վաստակս ձեռագործութե̅ , 'ի հնազանդութիւ սպասաւորութե̅ , 'ի խոնարհութի և 'ի սէր առանց կեղծաւորութե̅ , մերկանալով յամ իրաց չարաց ։ Նաև յորժամ հիւանդանայր ոք 'ի նոցանէ , ոչ բժշկաց կմ̅ դեղոց կարօտանային , այլ՝ ժուժկալէին կամացն այ̅ , և

օգնականութեն միայնոյն Ք՟սի համբերութեամբ բազ-
մաւ։ Եւ ոչ ոք 'ի նոցանէ արտաքոյ քան ըզ-
դուրս ելանէր, այլ 'ի ներքս 'ի գաւթին վը-
ճարէին զպէտս իւրաքանչիւր։ Եւ էր մօր
վանացն դռնապան հաւատարիմ կացուցեալ
'ի վ՟ր. և ինքն վանաց տիկինն էր ընտրեալ
յամիրս առաքինութեն. որ բազում բժշկու-
թիւք լինէին նովաւ, և աղօթիւք ն՟ր ուխտին
սրբելոյ յամ սատանայական հաղթից։

Արդ լուեալ Եւպրաքսեայ զհռչակ բարե-
պաշտութեն և առաքինի վարուց ն՟ց ցանկայր
տեսանել զն՟ս. և առեալ ընդ իւր խունկս և
ձէթս կանթեղացն և մոմեղէնս, և ինչս և
այլ իրս 'ի պէտս ն՟ց առատաբերութեամբ՝ հան-
դերձ դստերբն իւրով, զգացուցանէ զիւր
եկաւորութիւն դռնապանին. և ողջոյն տը-
ուեալ խոնարհամագոյն աւագուհւոյն՝ առաջի
առնէր զպատարագսն, և ասէր. աղաչեմ
ընկալարուք զիրսդ վ՟ն ա՟յ, և իմոյ յօժարու-
թեանս, և աղօթս արարէք 'ի վ՟ր որբոյս այս,
զի կեցցէ արդարութեամբ, և 'ի վ՟ր հօր սորա՝
զի արժանի լիցի արքայութեան։

Ասէ Թէոդուլի սարկաւագուհին և առաջ-
նորդ վանացն. տիկին Եւպրաքսիա՝ ոչինչ
պէտս ունին աղախնայքս այդպիսի իրաց.
զի վ՟ն արհամարհեցին զն՟ս և զսորին բա-
րութիւնս, զի երկնայնոցն և անանց բարու-
թեցն հասցեն 'ի ք՟ս. այլ զի մի առաւել տըրտ-
մեցուցուք զքեզ, առցուք զխունկս և զձէթ
և զմոմեղէն յեկեղեցիս՝ յիշատակ առն քում
և քեզ և դստեր քում. բայց վ՟ն այլ իրաց մի
բռնաս

բռնադատեր, զի մի՛ զրկեսցես զմեզ 'ի բա-
րեացն քոյ․ և այսպէս հաւանեցուցանէր
զնա խրատաւէր բանիւք 'ի կամս այ ։ Իսկ նա
զարմացեալ ընդ անստացուածութիւն նցա որհ-
ներ զած համդերձ դստերբն իւրով։
Իսկ յետ ընտանութեան եղելոյ 'ի մէջ նցա ասէ
վանաց մայրն ցեւպրաքսիա դստր Եւպրաք-
սեայ․ սիրե՞ս զքս որդեակ, և զմր ուխտս և
զաղախնայքս, որք զանձինս իւրեանց քոյ
նուիրեցին պահել։ Իսկ նա ասէ․ այո այն-
պէս համարիմ զքեզ որպէս զծնօղ իմ, և զայլսդ
որպէս զմարս և զքորս․ և ցանկամ յոյժ ընդ ձեզ
լինել յօրհնել ընդ ձեզ զքս։ Ասէ վանաց
մայրն․ և զի՞արդ լինիցի զխօսեալն քեզ այր
անտես առնել։ Ասէ եպրաքսիա․ զի՞արդ
փոխանակեմ զքս զերկնաւոր թագաւորն ընդ
երկրաւորիս, որ այսօր է, և վաղիւն կորնչի։
Ասէ վանաց տիկինն․ եթէ այդպէս է, լե՛ր
ընդ մեզ։ Եպրաքսիա ասէ․ ստուգութբ ասեմ,
եթէ ոչ տրտմեսցի տիկինն մայրն իմ, ոչ ևս
այլ մեկնեցայց 'ի տեղւոջէ աստի։
Իսկ մայրն եպրաքսեայ ունկն դնէր բանիցն
ասացելոց, և արտասուօք և խնդութբ գոհա-
նայր զանէ, որ զայսպիսի ածսիրութեան բանս
լուաւ 'ի դստերէն իւրմէ․ զի էր յայնժամ
ամաց ութից։ Յետ այսորիկ ասէ մայրն ցը-
դուստրն իւր․ արի՛ գնասցուք 'ի մեր յարկս։
Ասէ եպրաքսիա․ տիկի՛ն իմ ո՛չ ելից աստի,
մինչև մեռանիցիմ։ Ասէ վանաց մայրն․ արի՛
որդեակ երթ զհետ տիկնին մօր քո, և մի՛
տրտմեցուցաներ զդա․ ո՛չ կարես աստ լինել,

զի մանուկ ես, և պէտս ունիս խնամածութեան և սփոփանաց կենացս։ Այլ ոչ կարացին հաւանեցուցանել զնա հանել ՚ի վանացն. Թէպէտև բազումս զեկուցին նմա զանտանելի կարգ ճգնաւորացն և զկրօն ուխտին. բայց նա յօժարութեամբ ընկալաւ զամենայն. զի եղև ազդումն շնորհացն Քի ՚ի սիրտ նր։

Այնժամ ասէ սարկաւագուհին ցաղջիկն. ոչ կարէ ոք աստ լինել, եթէ ոչ յարեսցի ընդ Քի երկնաւոր փեսային։ Ասէ մանուկն. Ո՞ւր է Քսն։ Իսկ սարկաւագուհին տարաւ զնա հանդերձ մարբն յեկեղեցին, և եցոյց նմա զՏրունական պատկերն. և մանուկն երթեալ համբուրէ զպատկերն. և դարձեալ ասէ ցսարկաւագուհին. ստուգապէս և ես յարիմ ՚ի Քս, և ոչ ևս մեկնիմ աստի ընդ տիկնոջ իմում։ Այլ ասէ վանաց տիկինն ցմայր նր. գիտես սինկղիտոսուհի տիկին, զի շնորհքն Այ եղեն ՚ի վր սորա. Թո՛ղ զդա և տո՛ւր ընծայ Այ, և փոխարէն առցես դու և հայր դորա ՚ի Քսէ. զի արդարադատութն հօր դորա և բարեպաշտութիւն քո աղօթեսցեն դմա ընդ կեանս յաւիտենից։ (5)

Այնժամ եւպրաքսեայ առեալ զդուստրն իւր զեւպրաքսիա, և զմեծուհի մայր վանացն և զուխտն, տարածեաց զձեռս իւր առաջի նորա սեղանոյն Քսի և պատկերին, և ասէ արտասուօք. Տր ած քեզ ընծայեալ լինիմ զծնունդս որովայնի իմոյ. ընկալ զկամաւոր պատարագս, և լե՛ր սորայ հայր և մերձակացու, որ կամաւ յանձն էառ գալ զկնի քո, և

առ-

առնել զհաճոյսն քո . զօրացո՛ զսա , և ան-
սասանելի՛ պահեա 'ի խարդախութէ բան-
սարկուին . զի քո է ամենակարօղ զօրութիւն .
և 'ի քո փառս կատարեսցին ելք սորա քս
փրկիչ մեր : Այլ դարձեալ առ մեծուհի մայր
վանացն և առ ուխտն՝ ասէ . ահա ետու զոր-
դեակս իմ նախ ածն , և ապա ձեզ կամօքն
այ . լինիցի աղօթք ձեր 'ի վր սորա հանա-
պազորդ , և արժանի լիցի առնուլ զձև ձեր :
Այլ մեծուհի մայր ուխտին տարածեաց ըզ-
ձեռս իւր 'ի վեր , և ասէ . Թագաւո՛ր Թա-
գաւորաց և տէր տերանց , արարիչ ամ արարա-
ծոց , ընկա՛լ զպատարագս 'ի հաճոյս քեզ , և
արա՛ զգութ մարդասէր շնորհացդ 'ի վր սո-
րա . զի կացցէ անբիծ և անարատ առաջի քո ,
պահել զպատուիրանս քո , և առնուլ զան-
Թառամ փառաց պսակն ընդ նոքա կուսանսն 'ի
լուսեղէն խորանսն , և ժառանգել զանսա-
պառ բարիսն՝ որ պատրաստի յուսացելոցն 'ի քս :
Այլ յարտասուս եղեալ ամենեքեան՝ օրհնե-
ցին զմանուկն եպրաքսիա . և զգեցուցին նմա
պարեգօտս ընդ խորհրդածութեան և կրօնից :
Այլ ասէ մայրն ցդուստր իւր . քս պահեսցէ
զքեզ յայդ ձեւդ որդեակ , և լիցի քեզ զօրա-
վիգ առ Թշնամին արդարութեան . և քև միշտ
փառաւորեսցիս զածն այժմ և միշտ և յաւի-
տեանս յաւիտենից :

Այլ զայս ասացեալ և հրաժարեալ 'ի դստե-
րէն իւրմէ և յամենեցունց՝ ել գնաց 'ի
տեղի իւր . բայց սիրտ նր էր ընդ նոքա ուխտին՝
յոր եդ զզաւակ իւր ; վն խորհեցաւ տալ

զա͞մ ինչս իւր 'ի վանորայս և ա͞մ չքաւորաց, և դառնալ 'ի վանքն, և զնոյն կրօնսն յանձն առնուլ, և նովին հանդերձիւք կարգաց յառաջանալ 'ի ք͞ս. և արար այնպէս. Եւ որ յոյժ ուրախ եղև և դուստր նորա ա͞մ ուխտիւն :

Լուաւ թագաւորն զայս ա͞մ և թագուհին. և օրհնէին զա͞ծ, եթէ որպէս հռչակեցան առաքինութիւքն եւպրաքսեայ և դստեր նր : Իսկ յետ աւուրց ինչ անցելոց կոչեաց վանաց տիկինն զեւպրաքսիա զմայր կուսին, և ասէ ցնա առանձինն. կամիմ ինչ ասել քեզ սինկղիտուհի. և նա ասէ. ասա՛ մայր իմ հոգևոր : Եւ ասէ ցնա. մի՛ խռովեսցի սիրտ քո, այլ առաւել ուրա՛խ լիցի. Եւ լուեալ՝ զոր տ͞ր եցոյց ինձ. զի տեսի զայր քո 'ի մեծ փառս և յերևելիս. և աղաչեաց զտ͞ր յ͞ս ք͞ս, զի բարձցէ զքեզ առ ինքն յա͞շէ աստի 'ի լուսաւոր կեանսն, որ 'ի ձեռն բարի գործոց ձերոց պատրաստեցաւ ձեզ 'ի հօրէն լուսոյ. արդ զոր ինչ հաճոյն է ա͞յ՝ պատրաստեսցէ. և դու պատրաստեա՛ զանձն քո նմա :

Եւ լուեալ զայս՝ փառաւորեաց զա͞ծ ք͞սասէր տիկինն. քանզի և զայն իսկ խնդրէր յա͞յ 'ի հանապազորդ աղօթսն իւր : Եւ կոչեաց զդուստրն իւր, և ասէ ցնա. ա͞հ պատմեցաւ 'ի մեծահռչակն՝ թէ մերձեալ է վախճան իմ, նոյնպէս կամք ա͞յ կատարեսցին՝ աղաչանօք հօրն քո, զի մի՛ զատեցայց յ͞ձա : Իսկ նորա յարտասուս եղեալ ասէր. ո՞վ զիս հոգասցէ զորբս 'ի հօրէ և 'ի մօրէ : Եւ ասէ մայրն. որդեա՛կ՝ հայր ունիս զհայրն երկնաւոր, և

մայր

մայր զմեծուհին Թէոդուղիա . և զօրավիգ
զքո որում ցանկացար : Արդ լեր իրաւախոհ
որդեակ իմ, և 'ի միտ առ զվարս առաքինու-
թե 'ի գրոց սրոց և 'ի հոգևոր մօրէդ և յա-
ղախնացդ քո 'ի հաւատարիմ քերցդ՝ խո-
նարհութբ և ամ հնազանդութբ ահիւն այ :
Եւ մի ասեր 'ի սրտի քում, եթէ 'ի տահմէ
թագաւորաց եմ, աղախնել պարտին ինձ,
և ոչ ես նց . որդեակ իմ նուաստացիր աստ,
զի մեծացիս յերկինս . և մի թողուր 'ի սրտէ
քումմէ զկամսն քո զբարիս, զհաճոյսն և
զկատարեալն : Ահա տամ 'ի ձեռս քո զգիրս
ստացուածոց քոց բազմաց, որ մնացեալ է 'ի
հօրէն քումմէ և յինէն, առ 'ի տալ ուխտից
և կարօտելոց . լեր ուղիղ մատակարար խո-
հրդածութեան մեծուհւոյս, և տուր սոցա
զևօղս և ինչս՝ որչափ պիտոյ իցէ . և զայլսն
բաշխեա 'ի կարօտեալսն և յուխտաւորսն .
և մի թողուցուս քեզ 'ի բազում ընչիցն . զի
մի այնու պիտոյիւք զոգիդ ապականեսցես
'ի նանիր զբաղմունս : Կացցես 'ի սէրն քո .
և մի իւիք սխալեսցես խորհրդովք կամ բա-
նիւք կմ գործովք յուղիղ ճանապարհացն այ,
և զրկեսցիս յանանց մեծութեցն :

Եւ յանձն արար զնա հոգևոր մօրն և սրց ուխ-
տին . և օրհնեաց զամենեսեան 'ի քս . և յետ
երից աւուրց փախճանեցաւ երանելի կինն .
և թաղեցին զնա 'ի գերեզմանս սրց ուխտին՝
փառաւորելով զած . և գրովք սրբովք մխի-
թարեցին զկոյսն Եպրաքսիա : Եւ նա զպատ-
ուիրեալսն 'ի մօրէն իւրմէ ստուգապէս կա-

տա-

տարեաց . և որ ՟Ծ՟ օրէ յառաջանայր 'ի ճգնա-
ւորական վարսն :

Այս լուեալ զայս խորհրդակից Թագաւորին , որոյ խօսեալ էր զկուսին որդւոյ իւրոյ 'ի կնուԹի , զեկոյց Թագաւորին , Թէ մեռաւ կինն անտրդմնեայ 'ի Թեբայիդ , և մնաց անդ կուսն առանց վերակացուի . և արդ պատուէր տացէ ձեր բարերարուԹիւդ 'ի ձեռն Թղթոյ , զի դարձցի կուսն և տացէ զինքն՝ որում խօսեալն էր՝ յօրինաւոր ամուսնուԹի : Այս Թագաւորն ընկալեալ զաղաչանս խորհրդակցին՝ գրեաց առ կուսն եպարքոսիս մեծամեծ խոստմունս՝ երևելի առնել զնա 'ի կանայս մեծամեծացն , և հուչակաւոր փառօք 'ի քաղաքին . Նա բազում խոստմունք 'ի Թագաւորէն և 'ի Թագուհւոյն գրեցան : Այս եկեալ հասանէր հրովարտակն 'ի ձեռն դռնապանին . և առեալ եպարքոսեայ՝ ընԹերցաւ . գրէ պիտնի իւր ձեռամբն օրինակ զայս :

Մե՟ Թագաւորիդ Թէոդոսի բարեպաշտի՝ յեպարքոսեայ աղախնոյ : Զառաքեալդ 'ի բարերար Թագաւորէդ զպատուականն գիր ընկալայ՝ ո՟մ բարեօք երկրաւորիս խոստմամբք անարժան աղախնոյս . և զարմացայ՝ որ այդպէս խորհուրդ խորհեցայք , որ ոչ է՟ ա՟յ , և ոչ ըստ ձեր բարերարուԹեդ արժանի : Այլ զիա՟րդ զիս 'ի ք՟սէ յերկնաւոր փեսայէն հանէք և յանանց ուրախուԹեցն , և երկրաւոր մահկանացուացս խորհիք տալ և անցաւոր կենացս . ո՞չ լուայք՝ եԹէ մահկանացու են ազգ մարդկան , և նոքա՝ անցաւոր մեծուԹիւն :

Թիս : Եւ արդ ես ոչ խաբիմ յայդմանէ Տէր իմ արքայ. ես քո ընծայեցայ կամօք մօր իմոյ, և իմով յօժարութեամբս. և սիրոյ նորա ցանկացեալ սպասեմ, մինչև ելից յաշխարհէս, և մտից յերկնաւոր առագաստն ընդ իմաստուն կուսանացն. և վայելեցից զանապական բարիսն ընդ հօրն իմոյ Աստուածասիրի և ընդ մօր իմոյ Ճշմարտասիրի : Արդ մի՛ լիցի ինձ թողուլ զուխտ Աստուծեղէն, և դառնալ 'ի փորս Ջիս : Աղաչեմ զքեզ տէր իմ արքայ՝ մի՛ թախանձեր զիս յաղագս այդորիկ. այլ յիշեա՛ զԱստուած, և զհայրն իմ մտերիմ և ազգական քո, և զմայրն իմ բարեպաշտուհի. և աղօ՛թս արարէք վասն աղախնոյ ձերոյ դու և քրիստոսասէր տիկինն իմ թագուհին : Եւ զգեօղս մեր և զստացուածս տացես 'ի վանս արանց և կանանց, և կարօտելոց. և զփոխարէնս առցես յանմահ թագաւորէն յերկրի և յերկինս, որ կայ և մնայ : Ողջ լեր Աստուծով փառօք և պատուով 'ի Քրիստոս Յիսուս :

Երբ և եկն թղթաբերն առ թագաւորն, ընթերցեալ զթուղթն՝ գոհանայր զԱստուծոյ համգերձ թագուհեաւն և պատուաւորօքն իւրովք բարեպաշտ թագաւորն. և ասէ. արդա՛րև բարի արմատոյն բարի շառաւիղ ընտրեցաւ Տեառն կոյսն, և զինքն Քրիստոսի դաւանեաց. և ո՞վ իցէ՝ որ մեկնեսցէ զնա 'ի սիրոյն Քրիստոսի. քաւ լիցի ինձ այլ ինչ խորհել 'ի վերայ այսպիսի կամաց. ինքն Քրիստոս զնա հաստատուն պահեսցէ : Եւ որք լուան՝ փառաւորեցին զԱստուած, և օրհնեցին զՔրիստոս անմահ թագաւորն, և ըզկոյսն Տեառն : Իսկ բարեպաշտ թագաւորն գե-

գեց-

ղեցկապէս յարդարեաց զգեօղսն և զստաց-
ուածսն՝ բաշխելով յուխտսն և յաղքատսն . զի օրհնութիւն կուսին Եպրաքսեայ և հօր և մօր նր̃ եղիցի 'ի վ̃ր թագաւորութե̃ն նր̃ յերկինս և յերկրի ։

Իսկ Եպրաքսեայ զայս լուեալ՝ օրհնէր զա̃ծ և զբարեպաշտ թագաւորն . և էր ինքն յայնժամ ամաց իբրև երկոտասանից , և գեղեցիկ յոյժ . այլ անխնայ զանձն իւր 'ի մեծ ճգնութիւն արկանէր յառաքինութե̃ հանդէս . և մրցէր ընդդէմ հակառակամարտ դիւին հոգևոր մրցմամբ . և միանգամ ճաշակէր յաւուրն՝ կամ յերեկոյն , կա̃մ յերեք ժամուն . և այն՝ հաց և աղ և ջուր . և 'ի տօնս՝ ոսպն և բանջար . և անդադադար աղօթէր . և հմուտ էր գրոց 'ի լսել և 'ի կատարել և յընթեռնուլ միշտ . և էր խոնարհ և հեզ . և այնչափ փոյթ 'ի սպասաւորութի , զի և ոչ ումեք թողոյր յարդարել զանկողինս քերցն , այլ ինքն պարգեւս խնդրէր 'ի մօրէն զայն ծառայութի ։ Եւ կարգ ուխտին , զի յորժամ փորձութի գ̃այր 'ի սատանայէ յանուրջս կամ 'ի խորհուրդս , խոստովանէին մօր ուխտին . և նա յաւելոյր պահս և աղօթս և այլ ճգնունս 'ի փորձանաւորն՝ որքան արժան էր . և ինքն ևս առաւելոյր օգնական լինել 'ի հանդէսս նր̃ ջերմեռանդն արտասուօք , մինչև կարգ փորձութե̃ն վճարէր ։ Իսկ Եպրաքսեայ իմացեալ զայն՝ հոգայր և յաղօթս կայր , զի մի՛ դիպեսցի նմա . եհաս և նմա փորձիլ 'ի սատանայէ յանուրջս . և տրտմեալ էր և լայր ,

և

և ոչ կամէր հաց ուտել , և կամ ջուր ըմպել ։ և ամաչէր խոստովանել ։ Այլ տեսեալ՝ թէ մեծուհին տայր ամանց կրել քարինս , և դնել 'ի ներքոյ մահճին , և ցանել մոխիր 'ի վր̃ քրձոյն , յաւել ինքնին ածնել զայն 'ի փորձանս իւր ։

Եւ իմացեալ քերցն զտրտմութիւն նր̃ և զգործս՝ զգացուցին մեծուհւոյն , և նա կոչեաց առ ինքն վաղվաղակի զԵպրաքսիա , և ասէ . Ընդէ՞ր տրտմեալ ես և լաս , և ոչ ուտես . Թերևս փորձեցար 'ի սատանայէ , և ոչ խոստովանեցար , զի ազատեսցիս 'ի սատանայական փորձութենէցն ։ Եւ նր̃ անկեալ յոտսն՝ ասէ . տիկի՛ն իմ մեծուհի թողութիւն արա ինձ , զի մեղայ այ̃ և քեզ . և ամօթ անկաւ 'ի վր̃ իմ , և ոչ կարացի խոստովանել զմեղսն իմ ։ Ասէ մեծուհին . է ամօթ՝ որ ածէ 'ի փառս , և է ամօթ՝ որ ածէ 'ի մեղս . բայց դու ծանիր զնենգութիւն սատանայի , զի որ զփորձութիւն ածէ , նոյն և զամօթն . զի մի լիցի խոստովանել և կեալ յետ դարձի 'ի ձեռն հոգևոր կարգաց և աղօթից՝ որ վր̃ այսորիկ . այլ դու խոստովանութբ̃ մարտիր զբարիոք մարտն , և զխոստովանութեն պսակն առցես 'ի քէ̃ փրկչէն մերմէ ։

Եւ աղօթս արարեալ 'ի վր̃ նր̃՝ հաստատեաց զնա ըս̃ արդարուեն օրինացն . և յանձն արար զնա աւագագոյն քեռ ումեմն , որում անուն էր յուլիա . որ յոյժ սիրեաց զԵպրաքսիա , և յաւէտ առնէր նմա զխրատս օգեշահս , և յորդոր լինէր խոստովանել միշտ հոգևոր մօրն

զօր

զսատանայի մարտն . զի աղօթիւք նորա յաղթեցէ սատանայի . զի երեւելի հանդէպ ենս նորա ասէ առաջի այ . զի կատարեաց նա զօրն անհանգիստ յաղօթս և 'ի պահս՝ ոչինչ ճաշակելով , և ընդունակ եղև երկնաւոր փառաց . և վա այսորիկ ընտրեցաւ 'ի վերակացութի , և գիտէ որոշել զճ արդարութե օրինաց զնա .

սուց հրս :

Իսկ եպրաքսեայ լուեալ զայն՝ ոչինչ թաքուցանէր 'ի հոգևոր մօրէն . և նա խրատէր զնա և վարժէր յառաքինութե հանդէսն , և ասէր . քաջալերեաց որդեակ , անարատ կուսութեամբ նահատակեցիր ընդդէմ հանապազորդեան թշնամւոյն . և մի երկնչիր 'ի ձանձրութենէ նորա . զի քս է օգնական քեզ և զօրավիգ , որում ցանկացարն . որով կարող ես յաղթել ամենահնար չարեաց սատանայի : Իսկ նա խնդութեամբ ընդունէր զխրատն , և յաւելոյր և մրցէր 'ի բարեպաշտութե ջանն . և աղաչէր զմեծուհին՝ զի հրամայեսցէ յաւելուլ 'ի պահսն , և յետ երկուց աւուրց կամ երից ճաշակել կերակուր , մինչդեռ էր նա ժԵ , կամ ժԷ ամաց : Իսկ սարկաւագուհին կամեցաւ փորձել զնա , և ծանրացոյց 'ի վերայ նորա զգործն . և հրամայեաց կրել քարինս 'ի տեղի ինչ՝ որպէս եթէ 'ի պէտս շինուածոյ . և նա կրէր ուսովք իւրովք մեծամեծ քարինս , զոր երկու 'ի քերցն ոչ կարէին շարժել . վա զի նա էր ուժեղ , և կարօտանայր թառամեցուցանել զգեղեցկութիւն իւր պահօք և աշխա-

տութեամբ :

Իւ.

Իբրև կրեաց զլծ բաւականին զաւուրս հնգե-
տասան , միանգամայն և 'ի պահօն պնդելով ,
դարձեալ տայր հրամանս զբարինան կրել
յայլ տեղիս առ 'ի փորձել զնա . և նա նոյն
յօժարուԹբ կատարէր զհրամանսն դարձեալ
հնգետասան օր . և յայն աշխատուԹն ա-
ւուրցն երեսնից ոչ երբէք նուաղեաց 'ի սո-
վորական գործոցն կմ 'ի պահոցն . և զարմա-
ցան ամենեքեան , և օրհնէին նովաւ զԱծ ,
որ տայ ժուժկալուԹն սիրողաց իւրոց :
Հրամայեաց նմա մայր ուխտին՝ լինել փռ-
նապան , զի արասցէ հաց , և կերակրեսցէ
զամենեսեան իւրով աշխատուԹբն . ոչ զի
օրհնեսցի 'ի քերցն . և նա խնդուԹբ ընկա-
լաւ , և առնէր առանց օգնականի . բայց ե-
Թէ 'ի քերցն ողորմելով ոք՝ օգնական լինէր
նմ առ 'ի գործոյն փոյԹ . զի ինքն բերէր
փայտ , և կոտորէր , և հարկանէր հայս . և
յետ այնորիկ սպասաւորէր քերցն :
Եւ եղև յետ աւուրց ինչ՝ զի էր 'ի քուն , և
տեսանէր յանուրջս , զի կերպարանեալ դի-
ւին 'ի կերպարանս խօսեցելոյն զնա՝ եկեալ
էր հանդերձ բազում ամբոխիւք , որպէս զի
հանցէ զնա 'ի վանաց՝ տանել 'ի Թագաւո-
րեալ քաղաքն և առնուլ իւր 'ի կնուԹ : Եւ
նա մռնչելով հեծէր զարհուրանօք . մինչև
լսելի եղև մօր ուխտին . և հրամանաւ նմ
եկին զարԹուցանել զնա քորքն . զի էր Թմբ-
րեալ յերեսաց երազոյն . և զարԹուցեալ
եպրաքսեայ՝ պատմեաց նմ ամօԹխածուԹբ
և արտասուօք զփորձուԹիւն : Ասէ մեծուհին .
մի

մի երկնչիր օրդեակ, զի Քս̃ ը̃դ քեզ է 'ի տանէ և 'ի գիշերի՝ յարթնութե և 'ի հանգստեան. և ոչ թողու զքեզ 'ի չարին կամս խորամանկութեն կործանիլ:

Նա և ժողովեալ զամ ուխտն 'ի գիշերապաշտօնն, զկնի կանոնաց սաղմոսաց հրամայեաց եպրաքսեայ յոտն կալ, և ընթեռնուլ զվարս նոցա կուսանացն. որ և լսելի առնէր գեղեցկայարմար վերծանութք, և զամենեսեան շարժէր յարտասուս. և այնպիս հոգևոր փառաւորութեն կատարէին զգիշերայինն պաշտօնն 'ի փառս ամենասուրբ երրորդութեն: Նա և առաւօտուն յարուցեալ՝ 'ի գործ իւր երթայր. և այնպէս ոչ վեհերէր, և էր փոյթ 'ի գործն և յաղօթսն, զի ոչ զհաւատացեալ գործն իւր խափանէր առ հարկաւոր պէտսն սպասաւորութե ուխտին. և միանգամայն զժամ աղօթիցն, զգիշերապաշտամանն և զառաւօտուն և զերեք ժամուն և զվեցժամուն և զինն ժամուն և զհանգստեանն անխափան կատարէր. և 'ի գործն փութացեալ լինէր հանապազորդ սաղմոսիւք: (6)

Նա և ոչ յծականն խօսս զինքն տայր կմ̃ ունկն դնէր անշահ բանից, այլ էր հանապազորդեալ ջերմեռանդն փափաքմամբ հոգևոր շահից 'ի խօսել և 'ի լսել և 'ի յաւանել միշտ: Նա և ծանուցեալ զշահ խոստովանութեն՝ ոչ ծածկէր յառաջնորդէն զսատանայական փորձանսն. և երթալով երթայր և զօրանայր հոգւով և մարմնով, և ձգնէր յառաքինութիս ամ̃:

ԼԸ Յետ

Յետ այսորիկ աղաչեաց զմայր ուխտին բարեխօսութ(եամ)բ քերցն, մանաւանդ յուլիայի, զի հրաման տացէ անսուաղ կեալ զշաբաթն, ( ո՜պ տեսանէր 'ի մեծուհւոյն, ) բայց միայն 'ի շաբաթուն և 'ի կիւրակէին միայն ճաշակել. զի սաստիկ է ասէ մարտն առ մանկութեւս այժ և 'ի գեղեցկութիւս իմ հանապազ ։ Եւ մեծաւ աղաչանօք հաւանեցուցին զվանաց տիկինն՝ առնել զխնդիրն. վ՜յ կոչեաց զնա, և ասէ. զ՜մ զոր միանգամ գտանիցէ ձեռն քո, արա՛ որդեակ իմ եպրաքսիա. ա՜ծ՝ որ արարն զքեզ, զօրացուսցէ զքեզ, և տացէ քեզ յաղթութ՜ն ը՜դէմ թշնամւոյն. միայն զգուշացի՛ր որդեակ 'ի հպարտութենէ, զի մի՛ անկցիս յորոգայթ սատանայական վ՜ն առաւել պահոցդ ։ Իսկ նա խոնարհ սրտի՛ւ և ամբիծ հաւատով զհինգ աւուրսն անսուաղ հանէր 'ի գլուխ զպահսն. և ոչ գործոյն ինչ խափան լինէր և սահմանելոյ աղօթիցն. այլ քաջապէս արիացեալ խրախուսէր 'ի ք՜ս՝ առ որ անձկացեալն էր. և զինքն վերջին համարէր քան զամենեսեան 'ի ճգունս. և ամենեքեան սիրէին զնա, և աղօթս առնէին անշարժ մնալ 'ի մրցմանն ։

Եւ էր ոմն 'ի քերցն գերմանի կին գերմանա անուն, զորմէ ասէին աղախին լեալ, և ակամայ եկեալ 'ի կարգն յաղագս վնասու ինչ. սա գրգռեալ 'ի դիւէն՝ դսրովանս յարուցանէր մախանօք ը՜դէմ եպրաքսեայ, ո՜պ թէ 'ի ցոյցս ինչ առնիցէ զպահսն. թո՛ղ զի ասէր՝ եթէ և մեզ հրամայեսցէ տիկինն զնոյն

կարգ, զի՞նչ ունիմք առնել ։ Իբրև լուաւ Եպրաքսիա զտրտմութիւն նորա և զթշնամանս, ոչինչ խռովեցաւ, այլ անկեալ յոտս նր՝ ասէ. աղաչեմ զքեզ տիկի՛ն իմ, թողութի՛ արա՛ ինձ, զի 'ի մեծուհւոյն առի հրաման, և ոչ յանձնէ զայս առնեմ. զի մեղաւոր եմ, և սաստիկ է պատերազմ ինձ առ դևս. և զայն ես գիտեմ, զի մեծ տիկինն մեր ասաց ճգնիլ իւրաքանչիւր ը̅ իւրում կարգի, և ո՛չ 'ի հարկէ եդ յիմ վ̅ր̅ զայս լուծ ։ Եւ նա ասէ. ո՛չ այդպէս, այլ զի երևեսցիս մարդկան առաքինի և պահօղ առաւել քան զայլոդ. զի այսպիսի կերպարանօք յափշտակեսցես զմեծակացուն ուխտիս, խաբուհի՛ և խորամա՛նկ կեղծաւոր ։ Իսկ Եպրաքսիա աղաչէր զնա և ասէր. մեղայ յերկինս և առաջի քո, թո՛ղ ինձ. և նա զհակառակսն խօսէր ։

Լուեալ զայս մեծուհւոյն՝ կոչեաց զդերմանի̅, և ասէ. աղախի՛ն չար և անընդել բարւոյ, զի՞նչ մեղաւ քեզ Եպրաքսիա դուստր մեծաց և տոհմակից թագաւորին, որ կամաւ աղախնէ ստոյգ աղախնոյդ ։ Եւ նա մնաց անպատժի. և մայր վանացն որոշեաց զնա 'ի հաւասարութե̅ պաշտամանն յեկեղեցւոյ և արտաքոյ և 'ի կերակրոյն զաւուրս երեսուն (կամ եօթանասուն). թէպէտև մեծ աղաչանս առնէր Եպրաքսիա վ̅ս̅ նր̅ առ մեծուհին, այլ նա ոչ թողացոյց զկարգն. և յետ այնորիկ բարեխօս ունելով զա̅մ̅ քոյրսն՝ հազիւ լուծանէր զկարգն, և դայր 'ի հաշտութի̅ վ̅ս̅ յոյժ աղաչանացն Եպրաքսեայ.

Իսկ

Իսկ հակառակամարտքն դեռ ոչ դադարէր 'ի պատերազմելոյ ԺԷ եպարքոսեայ . և նա ոչ թողունայր 'ի մարտէն , այլ յաւելլոյր 'ի պահսն և յաղօթսն և 'ի գործ խոնարհութեան համբերութեան բազմաւ . և որ յաւելլոյր զճգնութիւն իւր 'ի կոյսն 'ոք : Սա կատարեաց ամս քանիս հինգ կամ քանիս եօթն յերկիւղն ած , 'ի հաւատնել քառասներորդաց 'ոք պահոցն՝ եկն անկաւ առաջի մեծահռչակն՝ բարեխօս ունելով զաւագութիւն , զի հրամայեսցէ անաւարագ անցուցանել մինչև 'ի կատարումն պահոցն . զի նախանձեցաւ ասէ զնախանձ հօրն որ մարտիրն՝ յաղթեցից թշնամւոյն , որ միշտ կռուի . որպէս և դու յաղթեցեր . նաև լուեայ 'ի քէն , թէ այս ազգ ոչ իւիք ելանէ , եթէ ոչ աղօթիւք և պահօք : Սա փանաց ափիկքնեն հաւանեալ ԾՌ աղաչելոյ աւագութեանն՝ տայր զհրաման . այլ ոչ զի 'ի միջոցսն յաղթեմա- նէն քնոյ լիցի հաւանութիւն , ասէ . կամք ած կատարեսցին 'ի վ՟ր քո որդեակ :

Սա նա 'ի սկզբան արարեալ պահոց և ճգնաւորութեան հաստատէր չնորհօքն ած 'ի լրումն քառասնից 'ի բարեբանութեան որն ( որ 'ի ծաղկազարդն ) , անվթար կատարելով զպաշտօնն և զգործն . և կամէր հաստատել նաև մինչև 'ի յարութիւն . վ՟յ աղաչեաց զմեծութիւն՝ զի մի լուծցէ զպահսն և յաւիտեան եօթնեակն . որ զի և արժանաւորեսցի 'ի հինգշաբաթութեան նամակն պահօքն մերձենալ 'ի 'ոք խորհուրդն : Իսկ 'ի հաւանեալ մօրն լսել աղաչանաց նորա , հացիւ հասեալ 'ի հինգ շաբաթն մեծ՝ լրա-

նուաղեցաւ և անկաւ. և բարձին զնա իբրև զմեռեալ, և ածին յեկեղեցին 'ի կատարել զպաշտօնն և զտնօրէնական խորհուրդն. և տայ քահանայն զմարմինն և զարիւնն քի Եպրաքսեայ. և ճաշակեալ զօրանայր, և օրհնէր զԱծ։

Այլ յետ կատարման աղօթիցն՝ ասէ մեծահին ցԵպրաքսիա. որդեակ իմ մի լինիր քան զօրէնսն օրինաւորագոյն, և մի ճարտարեր յաւելորդսն. զի մի լինիցիս 'ի զարմացուցմն այլոց, և թողացեալ 'ի տնէ՝ ննջեսցես 'ի մահ. զի մարմնաւոր ես. այլ կշռեա քեզ զարժանն, և միանգամ յաւուրն ճաշակել կերակուր, զի կատարեսցես զգործն. և այսպէս ընդունելի լիցիս Այ՝ զմիջինն գնալով. մի յաջ խոտորիր և մի յահեակ. շատ լիցի քեզ մինչև ցարդ, զի ահա զօրութբն քի կատարեցաւ քառասուն և հինգ օրն. և քն հատուսցէ փոխանակ ժուժկալութեանն՝ որ զի իւր կրեցեր. արդ այսուհետև արի և ճաշակեա։ Այլ նա հնազանդեալ, և ընկալեալ զհատն՝ եկեր կերակուր. և այլ ոչ ևս եկաց զնոյն սահման, այլ միանգամ ճաշակէր օրըստօրէ, և օրհնէր զԱծ։

Իսկ Թշնամին արդարութե ոչ թուլանայր 'ի մարտնչելոյ ընդ Եպրաքսիայ։ Այլ եղև 'ի միում աւուր՝ 'ի խոնարհիլ նր հանել ջուր 'ի ջրհորոյն՝ եհար զերանելին և ընկէց 'ի ջրհորն գլխ 'ի վայր. և 'ի փչել նր, քն օգնեա ինձ, ազդ եղև այս 'ի վանսն. և ամենեքին անդ ընթացեալ լալով՝ հանին 'ի ջր-

հո

հորոյն, ոչինչ վնասեալ 'ի վերին զօրութենէն կամ զարհուրեալ. այլ առաւել խրախուսէր յուսովն այ յաղթել ամենահնար չար դիւին . և ասէր . կենդանի է Քն իմ, զի ուր մինչև ցայսօր զմի թակոյկ բարձեալ բերէի ջրոյ, այլ յորժ յայսմանէ և առ յապա երկու թակոյկս բերեմ. և այնպէս առնէր :

Դարձեալ յայլում աւուր 'ի կոտորել նորա զփայտ 'ի պարտիզի՝ շրջապատեալ դևն ունէր զփայտահարն, և թիւրեալ եհար անդէն զորտունս նր, և ընկեց զնա . և 'ի սաստիկ վիրացն անկեալ կայր ոպ զմեռեալ : Իբրև եբարձ յուղիս՝ որ առընթեր կայր նորա, և ազդեաց յուխտի զեղծեալսն . որք վաղվաղակի անդր հասեալք՝ լային և աշխարէին զերանելին : Յայնժամ մեծուհին ցանեաց ջուր յերեսս նորա . և նշանագրեալ զնա փրկական խաչիւն՝ ասէ . որդեակ իմ արի կաց յանուն տն . և մխիթարեաց զմեզ 'ի տարաժամ սգոյ՝ զոր ած դևն 'ի վր մեր : Եւ նորա զարթուցեալ ոպ 'ի քնոյ՝ ասէ . մի լայք 'ի վր իմ, զի տր է իմ օգնական , և ես ոչ երկեայց , զի՞նչ արասցէ ինձ չար դևն : Եւ լուեալ զայս՝ գոհացան զայ և մխիթարեցան ոչ սակաւ . և պատեալ զվէրս նորա՝ առին գնացին 'ի վանսն . և նա կայր զուարթ և արի 'ի գործ :

Եւ 'ի միւսում աւուրն գայր ժողովել զկոտորեալ փայտսն . և ըստանձնեալ ծանրագոյն բեռն, իբրև եհաս 'ի սանդուղսն՝ ելանել 'ի տեղին ուր զփայտն դնէր, եհար զնա դևն,

նա ասէ. մի՛ երկնչիք, զի տէր ընդ իս է, և ոչ կարաց վնասել չարին. այլ իբրև զցօղ անկաւ զինև, և ոչ զգացի զսաստիկ ջերմութին. և ամենեքեան ՚ի ձեռն նոր օրհնեցին զած, որ այնպէս անվնաս պահեաց յորոգայթից բանսարկուին :

Իսկ նա ինքն վանաց տիկինն զարմացեալ ՚ի վր այսր ամի անցից անցելոց՝ ասէ ցաւագուհիսն. գիտէ՞ք, զի ՚ի վերուստ շնորհք տուեա́ն յայ որդեկիս մերոյ ընդդէմ կալ հակառակասէր դիւին. որքան փորձեաց զնա՛, և ամի յաղթօղ գտաւ շնորհօքն քի: Իսկ նք տայքն վկայութին ասացելոցն, և միաբան փառաւորեցին զած. և ասեն. արդարև բարի արմատոյն բարի շառաւիղ գտաւ եղբայրսիս :

Իյինէին ՚ի վանս անդ աղօթիւք նր ուխտին և մեծուհւոյն բժշկութիք ախտաժետաց՝ մանկանց և կանանց, որք հաւատով գային առ նո յեէ անտի ՚ի համբաւ բարեպաշտութենն: Այլ անբուժելի թուէր կին մի, զոր ունէր այս չար իշխանական՝ չարագոյն քան ըզչարսն. զսա ոմանք ՚ի մերձաւոր գաւառէն ածին ընկեցին երկաթի կապանօք արտաքոյ ապարանից վանացն, և ինքեանք փախեան. նա գոչէր անհամաձայն բարբառովք և կըրծոտէր զատամունսն, և զարհուրեցուցանէր զամենեսեան զլսօղսն : Իսկ իբրև զգացոյց դռնապանն վանաց տիկնոջն, առեալ նորա զաւագուհիսն՝ եկն ՚ի տեսանել զնա. և աղօթս արարեալ ՚ի վր նր՝ ոչ կարէին հպել

առ նա, այլ շուրջ եղեալ զնովաւ՝ լային զնա
վն անհնարին վտանգին. ապա բերին հաց,
և կապեցին 'ի գաւազան, և այնպէս 'ի հե-
ռուստ տային նմ. և նա ուտէր յանզգայս.
և թէպէտ կայր 'ի կապանս և յերկաթի շղ-
թայս, բայց բազում անգամ 'ի կերակրոյն
խլէր զգաւազանն և զսկաւառակն, և զկնի
ցնդէր բերողացն զկերակուրն. և այսպէս
կայր մնայր եղկելի ամենեցուն. և աղօթք
ստէպ լինէին վն նր 'ի սբ եկեղեցիսն:
Յաւուրսն յայնոսիկ գայ կին մի, և ածէ
եօթնամեայ կմ ութամեայ մանուկ մի ան-
դամալոյծ և խուլ և համր. զգացոյց դռ-
նապանն վանաց տիկնոջն. և նա ասէ ցեպ-
րաքսիա. Երթ ած զմանուկն այսր, և արաս-
ցուք աղօթս վն նր. և երթեալ առ զմանուկն
'ի գիրկս իւր, և խանդաղատեցաւ զնովաւ.
ելաց և ասէ. Տր՝ն որ բժշկեցեր զանդամա-
լոյծն, բժշկեսցես և զսա. և նշանագրեաց ե-
րիցս անգամ յանուն հօր և որդւոյ և հոգ-
ւոյն սբյ. և վաղվաղակի բժշկեցաւ մանու-
կըն. և եպրաքսիա կամէր ծածկել՝ զոր 'ի
ձեռն նր արար ած. այլ յայտնի եղև բանն,
զի վազեաց մանուկն՝ ձայնելով և խնդրելով
զմայր իւր. և ել համբաւս այս ընդ ամ երկիրն.
և ամ ուխտն արժանի համարէին զեպրաք-
սիա այնպիսի շնորհաց յաղագս համեստ և
սբ վարուցն. և նա ևս առաւել ամօթխա-
ծութբ և երկիւղիւ սպասաւորէր քերցն:
Յետ այսորիկ ասէ սարկաւագուհին ցեպ-
րաքսիա. Եթէ ոչ երկնչիս յայսահար կնո-
ջէն:

ջէն, սպասաւորեա՛ նմա, և 'ի ձեռն քո կերակրեսցի : Եւ նա ասէ . ո՛չ երկնչիմ անուճամբն քոյ . և սպասաւորէր նմա, և առեալ տանէր զկերակուրն և տայր առանց գաւազանի . և 'ի դնելն առաջի նր՝ բուռն հարկանէր այսահարն զհանդերձից կուսին, և մըրմռեալ կրճտէր զատամունսն : Իսկ Եւպրաքսիա կալեալ զձեռանէ նորա՝ ասէ . չա՛ր դև կարկեա՛, զի մի՛ առից զգաւազան հօգևոր մօրն, և գան հարից զքեզ . և նոյնժամայն լռեաց և հանդարտեաց . և առեալ կերակուր եկեր 'ի ձեռաց նր . և 'ի ժամէն յայնմանէ հանդարտութբ լսէր նմա յամի : Եւ յորժամ շարժէր դիւահարն յայսոյն չարէ՝ ոչ մերձ լինելով Եւպրաքսեայ, ասէին մերձակայքն . գա՛յ դու կոյսն Եւպրաքսիա գաւազանաւ տանջել զքեզ . և ը լսելն զայս հանդարտեալ լինէր :

Զայս տեսեալ գերմանեայ՝ միւսանգամ չարացաւ յաղդմանէ չարին ըդէմ Եւպրաքսեայ . ասէր առ քորսն . եթէ չէր Եւպրաքսիա, միթէ ոչ ո՞ք էր՝ որ կերակրէր զնա : Եւ յասել նց, թէ նմա տուեալ է շնորհս յԱյ ըստ արժանաւորութեն իւրոյ, ասէ գերմանի . ես տարեալ կերակրեցից զնա : Եւ իբրև մերձ եղև յայսահարն, և ասէ, ա՛ռ կե՛ր զկերակուրդ՝ զոր բերի, յարձակեցաւ նա 'ի վր նր, և բուռն հարեալ զհանդերձիցն պատառեաց, և յաղթահարեալ ընկէց զնա 'ի վայր . և անկեալ 'ի վր նր՝ առամացի ծակոտէր զմարմին նր . և ոչ այլ ինչ գուշակէր ահաւոր տեսութեն,

թին , բայց սպանանել զնա ։ Եւ ձիչ բար- ձեալ գերմանն՝ ասէ ․ ո՞վ փրկեսցէ զիս յայ- սոյ չարէ ․ բայց ոչ ոք իշխէր մերձենալ յայ- սահարն , և թափել զնա ։

Ազդ եղև եպարքսեայ , և փութացաւ վաղ- վաղակի 'ի տեղին , և զերծոյց զգերմանն յայսոյն չարէ զխոշտանկեալն մեծ բռնութե և սաստիկ վիրօք խածուածոց , շաղախեալ արեամբ և պատառեալ հանդերձիւք ․ և ասէ ցայսահարն ․ զի՞ մոլիս ըդդէմ նց՝ որք կերա- կրեն զքեզ ․ լուեա՛ 'ի բարկութէ , և հան- գի՛ր 'ի սրտմտութէ որ առ քորսդ ․ զի մի՛ զա- ւազանաւ մեծուհւոյն հարցեն զքեզ ․ և նա ղօղեալ կայր՝ զարհուրեալ յերանելւոյն ։ Եւ իբրև երեկոյ եղև , գնացին յիւրաքանչիւր տեղիս ․ իսկ եպարքսին զգիշերն ամ կայր յաղօթս արտասուօք առ նր ած՝ այցելուե առնել այսահարին ։

Եւ 'ի ծագել արևուն երթայր եպարքսին առ դիւահարն , և տեսանէր զնա՝ զի պա- տառեալ էր զհանդերձս իւր , և ուտէր զաղ- տեղութիւն իւր մերկ և խայտառակ ․ և բա- կաւ լալ երանելւոյն դառնապէս ․ մինչև ժո- ղովեցան ամենեքեան , և նք ևս լային ․ և ասէին ․ խնդրեսցուք յայ վս եղկելւոյս այ- սորիկ՝ զի ողորմեսցի սմա ։ Յայնժամ տա- րածեալ եպարքսեայ զձեռս իւր 'ի վեր՝ ե- կաց յաղօթս և ասէ ․ Տէր ած ամենակալ հայեաց յերկնից 'ի սրբութէ քումմէ , և ըստ ողորմուի ստեղծուածոյս քո , որ չարաչար տանջի յայսոյ չարէ ․ զի քո արարած է , և

քեզ

քեզ լիցի փառաբանիչ և երկրպագող. և չար դևն նկուն լիցի՝ որ իշխեալն է ՚ի վերայ սորա. զի քո է իշխանութիւն և զօրութիւն և ա-րութիւն, և քեզ վայելէ փառք և պատիւ և արքայութիւն հօր և որդւոյ և հոգւոյդ սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից.

ամէն :

Նա յաւել նմ քերցն զամէնն՝ մերձ եղև եպրաքսիա յայտահարն, և եդ (կմ արար) ՚ի վր գլխոյ նր զնշան խաչին քի, և ասէ. Ել այս չար յանուն յի քի որդւոյն այ : Նա դևն հակառակէր չելանել. և նա ոչ տայր թոյլ զօրութեն քի, այլ հարկանէր երիցս գաւազանաւ մեծուհւոյն, և ասէր, ելցես. և դևն ևս քան զևս պնդէր չելանել : Նա նա ասէր. զի՞նչ կարասցես ընդդիմանալ քի զօրութեն, որ ելոյծ զքո զօրութիւնդ կամաւոր խաչելութեն իւրով : Նա դևն ասէ. ո՞ւր ելեալ երթայց ՚ի բնակութենէս իմմէ : Նա ասէր երանելին կոյսն. ՚ի խաւարն արտաքին, յանշէջ հուրն, ՚ի տանջանսն յաւիտենից՝ որ պատրաստեալ է դիւացդ, և որք առնեն զկամս ձեր զազրագործութիս : Նա նոյնժամայն զարկոյց զնա դևն, և կրճտէր զատամունսն իւր, և ասէր. վա՜յ ինձ, յաղջկանէ միոջէ պարտեալ վատթարեալ՝ ելանեմ ՚ի բնակութենէ և ՚ի դաշնաւորութենէ իմմէ. և զայս ասացեալ՝ իբրև զծուխ պակասեալ չքաւեցաւ. և ահ կալաւ զամենեսեան, և փառաւոր առնէին զած ՚ի վր եղելոցն՝ զոր տր եցոյց ՚ի ձեռն եպրաքսեայ :

Նա

Նա առեալ երանելւոյն զկինն՝ լուծաց 'ի զա-
զիր աղտեղութենէն, և զգեցոյց նմա պարե-
գօտս. և ասէ. զգոյշ կաց աղօթից և պահոց
և ամ առաքինութեանց և ոք վարուց. զի մի
դարձցի չարն 'ի քեզ, և լինիցի վերջինն չար
քան զառաջինն. և առեալ տարաւ զնա առ
մեծուհին՝ համեստացեալ և զգաստացեալ։
Յետ այսորիկ ըստ խնդրոյ նորա տարան զնա
միաբան յաղօթանոցն. և աղօթս արարեալ
օրհնեցին զնա 'ի կարգս կրօնաւորութեան՝ վա-
տակեալ 'ի պահս և յաղօթս հանապազօր։ Իսկ
երանելին եպրաքսիա առաւել ևս նուա-
ճացուցանէր զինքն՝ պնդեալ 'ի հնպզորդ
աղօթսն և 'ի պահսն բազում ժգնութբ. և
զդիւահարսն զբժշկութիւն ոչ իւր անձինն հա-
մարէր, այլ՝ այյ, և աղօթից հոգևոր մօրն։
Նա եղև յաւուր միում տեսանէր մեծուհին
տեսիլ 'ի գիշերի, և խռովեցաւ յոյժ. և
կայր տրտմեալ և տխրեալ, և ոչ ումեք կա-
մէր յայտնել. և կայր յաղօթս անդադար.
և ոչ ցամաքէր արտասուք նր՝ յորժամ տե-
սանէր զեպրաքսիա. և ոչ ոք իշխէր հարցա-
նել յաղագս տրտմութեանն աւուրս ինչ։ Ապա
միաբանեալ աւագուհիքն՝ բռնադատեցին
զնա յոյժ, մինչև ամաչէր, և ասէր. լուա-
րուք ինձ, տեսանէր դստրիկն եպրաքսիա յե-
րից աւուրց ելանէ յաշխէս, և երթայ առ այն՝
որում ետ զանձն 'ի ծառայութին. և զմեզ թո-
ղու յայնքան բարի օրինակացն՝ զոր յանձին
երևեցոյց մեզ, և 'ի նախանձ յորդորեաց
բարեպաշտ բանիւք իւրովք. արդ ո՞ր լսելիք
կա-

կարեն լսել զլուրս զայս , կամ որ տեսանելիք կարասցեն տեսանել զելանել նորա յԹէս ։

Օ այս լուեալ քերցն ամենեցուն՝ լային դառնապէս զերանելւոյն որոշմանն յինքեանց , և այլ ոչ ևս տեսանել զնորն եւպրաքսիա ։ Իսկ նա յայնժամ առնէր հաց 'ի փռանն , և յուղիս օգնէր նմա . ազդ եղև նմա՝ թէ սուգ է մեծուհւոյն և աւագուհեացն . և աղաչեաց զյուղիս երթալ գիտել զպատճառն . և նա երթեալ թաքուցանէր զանձն ուրեք առ դրանն , ուստի ունկն եդեալ լսէր զաւաղական բանս ժողովելոցն . և զի ասէր մեծուհին . մի՛ ոք ասիցէ եւպրաքսեայ՝ մինչև 'ի ժամն . և սկսաւ պատմել զտեսիլն՝ զոր ետես . Երկուք ոմանք ասէ եկին լուսաւորք և վայելուչք , և ասեն . առաքեա զեւպրաքսիա , զի խնդրէ թագաւորն անմահ . և դարձեալ այլք եկին , և ասեն . սա զեւպրաքսիա և եկ առ ամենեցունց տէրն , զի կոչէ զդա . և նոյնժամայն առեալ զդա՝ գնացաք ընդ նմա . և իբրև հասաք 'ի դուռն ինչ գեղեցկագոյն՝ որ ինքնին բացաւ մեզ , տեսի փառս և պայծառութիւն երևելիս՝ զոր ոչ կարեմ պատմել . և 'ի մտանելն մեր 'ի սրբութիւն սրբութեանց՝ զեւպրաքսիա առեալ տարան առաջի տն , և երկիրպագ նմա , և համբուրեաց զանարատ զոտսն տն . և տեսի բիւրս հրեշտակաց և անթիւ բանակս սրբոց , որք քաղցրաձայնութբ օրհնէին զԱծ ։ Եւ ահա մայր տն , որ ցուցանէր եւպրաքսեայ զվայելչութի անձառելի փառացն այնոցիկ , և զանթառամ փառաց պսակն՝

պատկն՝ որ պատրաստեցաւ նմա. և ասէ. այս է վարձս վաստակոց քոց ճգնութեանցն՝ զոր կրեցեր յերկրի. արդ երթ, և յետ տասն աւուր եկեսցես, և վայելեսցես զանսպառ բարիսն ընդ ամ սրբելսն այ: Եւ զայս ասացեալ՝ ծածկեցաւ տեսիլն. և այս եօթն օր է տեսլեանս. և այլ ևս երեք աւուրք են, որ թողու զմեզ, և երթայ առ այ՝ որ կոչեաց զնա յանանց կեանսն. այլ յամի կամք այ կատարեսցին: (8)

Զայս լուեալ յուղխայ՝ դարձաւ տրտմութբ առ եպրաքսիա. և ոչ կամէր յայտնել նմա զոր լուաւն, այլ պատճառէր այլ ինչ: Եւ նա երդմնեցոյց զնա յած կենդանի՝ ասել նմա ստուգապէս: Եւ նա ասէ. տիկին իմ, վա՜ քո՛ է սուգն այն մեծ, որ յետ երից աւուրց թողուս զմեզ, և երթաս առ քս՝ առ որ անձկացեալն ես. ով ցուցաւ մեծուհւոյն. և փղձկեալ յարտասուացն յուղխա՝ ոչ կարաց ճառել զիրս տեսլեանն:

Եւ ասէր երանելին եպրաքսիա. թէ թողու զիս տր ամ մի, զի արարից պտուղ արժանի ապաշխարութեան, կա՛մ է խնձ այս. ապա թէ ոչ՝ զիա՞րդ կարացից այսու կենօքս թողուլ և մեղկ խորհրդով արժանի լինել արքայութեան երկնից. աւա՜ղ ինձ ծուլութեանս՝ որ ոչ յիշէի զելս յաշխէս. կարծէի բազում ամս կեալ. արդ զի՞նչ ունիմ պատրաստութիւն առաջի ահեղ ատենին քի. որ ոչ ունիմ ընդ իս բարի գործս, որով համարձակութիւն առից առ քրիստոսն իմ: Եւ արդ խնդրեմ յամենեցունց և

'ի

[illegible] եղեալ լուսոյն . և փառ ահաւոր տես-
լեանն ահիւ՛ և խնդութեամբ մատուցին գոհու-
թիւն և փառս ամենասուրբ երրորդութեան ։
Յայնժամ ասէ Եպրաքսիա . ով եմ ես , և
զի՞նչ ջան է իմ առաջի այ . բայց միայն յու-
սացեալ եմ յած փրկիչն իմ և 'ի մբ աղօթս
ձեր՝ բարեխօսութբ մբ ածածնին և ամ սրբց ,
զի արժանի եղիցիմ մասին ժառանգութեան
սոցին 'ի լոյս . որում միջնակի մեզ ցանկացայ ,
և 'ի քո ընծայեցայ 'ի մբ կարգս յայս . թէ-
պէտև ծուլութբ վարեցի զկեանս , և ոչ ըստ
քոյ աւետարանին . և արդ քոյ կամքն լիցի
կատարեսցի ։ Եւ դու մայր իմ հոգևոր և
ամ սրբուհիք մի մոռասջիք զիս աղաչեմ՝ 'ի
համապազորդ աղօթս ձեր , որով սնուցիք
զիս , և այ ընծայեցիք . զի արժանի եղէց
սոցին համբաւեան 'ի հանդերձեալսն՝ յոր եկ-
թամ , և այլ ոչ դառնամ առ ձեզ . և քանզի
բարեմտութբ ընկալայք զիս , որհնութի ամե
այ եղիցի 'ի վր ձեր յայսմ հետէ և յաւի-
տեանս յաւիտենից ։

Եւ բազում այլ ևս խօսեցաւ ըստ խորհրդա-
ծութեան բանս հրաժարման . և զի երեկոյ
էր , մտանէ 'ի ժամ գիշերապաշտամանն . և
հանէր զգիշերն 'ի գլուխ յաղօթսն այ՝ մին-
չև յերրորդ ժամ աւուրն ։ Եւ յայնժամ մա-
տուցաւ սպասարագ . և ճաշակեաց զմարմինն
և զարիւնն քի 'ի քահանայէն , և ասէ . ով
եղիցի խնձ 'ի քաւութիւն մեղաց , և 'ի կենդա-
նութիւն յաւիտենական կենացն , 'ի փառս ա-
մենասուրբ երրորդութեանն ։ Որպէս եկն 'ի տեղի
նոյ ։

ւոր, և յուղիս ՟Է՟ նմա. և խօլթացաւ երա-
նելին. և դարձեալ ժողովեցան առ նա ամե-
նեքեան հանդերձ մարբն՝ հրաժարել ՚ի նոր

աղախնոյն քի՟:

Եւ ասեն ամենեքեան ցեպրաքսիա. յիշեա՛ զմեզ սրբուհի տիկին մեր առաջի քի՟, որ առեր համարձակութիւն բարեխօսութեան յաղագս առաքինասէր և նոր վարուց քոց. զի և մեք հաճոյ գտցուք կամացն այ՟ բարեսիրաց, և մի՛ զրկեսցուք ՚ի քոց բարեացն՝ որ քեզն է պատրաստեալ: Եւ բժշկեալն ՚ի ձեռն նորա համբուրէր զձեռս նր՟, և ասէր. նը՟ ձեռքս այս կերակրեաց զիս զանարժանս, և ՚ի ձեռն սորա աղօթից հալածեցաւ յինէն այսն չար. ով երանելի կոյս յիշեա՛ զիս զազատեալս ՚ի դիւէն զաղախին քո առ քն՟, զի մի՛ այլ չար դիպեսցի ինձ յետ քո զկեանս լուծանելոյ: Եւ նա ասէ. երթ քո՛յր խաղաղութը՟, և մի՛ թողուր զերկիւղն այ՟, և պահեսցէ զքեզ ՚ի

չարէն:

Եւ ասէ երանելին ցմայր ուխտին. աղօ՛թս արա ամենեքումբք հանդերձ ՚ի վր՟ իմ, զի վտանգ է ինձ ելանել հոգւոյս իմոյ. զի թէ պէտս հոգիս յօժար է, այլ մարմինս տկար. ոպ՟ ասաց քն՟: Եւ սկսան ՚ի պաշտօնն ՟Ժ՟ խորհրդածութեան վախճանին. և իբրև ասացին զամէնն, հանգեաւ երանելին ՚ի փառս և ՚ի գովութիւն ամենասուրբ երրորդութեան, կացեալ նըյ կուսին ՚ի կարգին ամս Է, ( կմ՟ ըս՟ այլ օրինակի՝ ի՟Է, ՚ի հասակի Է ամաց ) ամ՟ առաքինութբ՟ զարդարեալ, հաճոյ այ՟ և մարդկան

եղեալ . և թաղեցին զնա 'ի գերեզմանին մօրն իւրոյ . և կատարեցին 'ի վ(ե)ր նորա զգերեզմանի կարգն . և գոհանալով փառաւորեցին զԱծ , որ այնպիսի նորա անձինն արժանաւորք եղեն կենաց կցորդուեն , և յուղարկմանն առ Քս :

Իսկ յուղիա՝ որ էր նորա ուսուցիչ հրամանաւ վանաց տիկնոջն , և խանդաղակաթ էր 'ի սէր նորա , ոչ կարէր մեկնիլ 'ի գերեզմանէ նորա զերիս աւուրս . և ահա տեսիլ ցուցաւ նմա երթալ զհետ նորա 'ի հանդերձեալ կեանսն . և եկեալ առ մայր ուխտին՝ պատմեաց նմա զերտեսիլն . և հրաժարեալ յամենեցունց՝ յանձն արար աղօթից . և խօթացեալ յետ երկուց աւուրց փոխեցաւ առ Քս երանելին յուղիա , այն է հինգօրեայ յետ մահու երանելոյն Եպրաքսեայ . և թաղեցին զնա առ գերեզմանին Եպրաքսեայ փառաւորապէս :

Իսկ յետ անցանելոյ աւուրց երեսնից կոչեաց մեծուհին զաւագուհիսն , և ասէ . ընտրեցէք մի ոք 'ի ձէնջ յառաջնորդուհի այլոցդ . զի ահա կամք Այ եղեն բարեխօսութբ որդեկին մերոյ Եպրաքսեայ , կոչեաց զիս Քս առ ինքն , աղ զյուղիա նորին բարեխօսութբ . զի արժանի լիցուք անսպառ բարեացն՝ որ կայ և պահի արժանաւորացն որ 'ի Քս Յս : Իսկ ես զընթացս իմ կատարեցի , և զկարգ նոցա առաջնորդացն պահեցի . և գիտէք ամենեքեան , զի ոչ դադարեցի 'ի խրատելոյ զմի մի իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ հանդերձ արտասուօք առ հաճոյսն Այ , լինել նոցա և անարատս ա-

ռաջի նր̃, և հոգևոր սիրով կեալ մնալ ձեզ անշարժ՝ առ միաբան կեանսդ, խոնարհ և հեզ և աշխատասէր, ոպ̃ երանելին եպրաքսիա, որ եթող ձեզ օրինակ վարուց. և արդ նախանձաւո՛ր լերուք գործոց բարեացն, զի և ը̃ նմ̃ վայելեսջիք զանսպառ բարիսն յանանց ուրախութիւնն. և վն̃ իմ աղօ՛թս արարէք, զի արժանի եղէց անմահ կենացն ը̃ երանելի որդեկիս մերոյ եպրաքսեայ. և մի՛ սգայք 'ի վն̃ իմ, աղաչեմ զձեզ ։ Ընտրեցէք ձեզ վերակացու, զի օրհնեցից զնա յանուն տն̃. զի փութացուցանէ հրաման տն̃ ելանել ինձ 'ի մարմնոյս, և երթալ առ՝ կոչեցեալսն յառաջագոյն ։

Եւ ընտրեցին զԹէոդնիա (կմ̃ զԹէոդոմնիա), որ վկայեցաւն յամենեցունց բարեպաշտօն և երկիւղած յայ̃՝ իմաստուն մտօք և բանիւք, հաճոյ այ̃ և մարդկան. և եդեալ ձեռս 'ի վ̃ր նր̃՝ նստուցին յաթոռ մեծուհւոյն. և երկրպագեցին և ողջունեցին, և օրհնեցին յանուն տն̃ ։ Եւ սէ մեծուհին. զօրացի՛ր և քա՛ջ լեր. մի՛ և մի՛ իւիք տացես պատճառ անկարդութե̃ ուխտիդ՝ որ քեզ հաւատացաւ յայ̃. գիտես զկարգս և զկրօնս ուխտիս. մի՛ և մի՛ իւիք սխալեցուցես 'ի սահմանեալ աղօթիցն և 'ի պահոց և յաշխատասէր գործաւորութէ̃. և մի՛ ստանայցես ստացուածս բազում՝ վանացս, և կմ̃ առանձին ստանալ. և մի՛ ումեք տացես զբաղիլ յայնպիսի իրս՝ որովք ստանայցեն ինչս, և զրկիցին յերկնային բարութեցն. այլ 'ի ձեռն աշխատութե̃ ձեռագործի

ձեր եկեսցէ ձեզ՝ կերակուր և հանդերձ ՚ի Տնէ. զի որ զվայրի խոտն զգեցուցանէ, և տայ անասնոց կերակուր և թռչնոց, և զձեզ կերակրեսցէ զփառաբանիչս անուան իւրոյ Որդյ և զգեցուսցէ. բայց ՚ի սիրոյ նր մի մեկնիք, այլ համապազ լերուք ՚ի սէրն քի ։

Յուշ լիցի ձեզ վարքն Եպրաքսեայ երանելոյն, որ ՚ի միջի ձերում կատարեաց զամ արդարութիւն համբերութբ բազմաւ. զի ո՞վ ոք զնորայն ճգնօղ վարսն կարասցէ պատմել. որ արհամարհեալ էր ՚ի նմանէ երկրաւորաց ցանկութիւն երևելի և աներևոյթ՝ ոչ զաղջ ինչ անարգագոյն. որ ամ հեզութբ և խոնարհութբ աղախնայեր աղախնաց և սպասաւորեր սպասաւորաց. և վերջին քան զամենեսեան և անարգ զանձն երևեցոյց յԾէ. ոչ իմիք պանծայր առ անարգս ոչ թագաւորազն. և վս այնորիկ փառաւորեցաւ ՚ի լոյսն անմատոյց, ուր և ինձ եցոյց տր ըղփառսն. նմանօղք լերուք նր համդիսեցն, զի և նր փառացն հասջիք ՚ի քս յս ։

Այս կատարեալ մեծուհւոյն զխրատական կտակ իւր՝ ասէ առ ամենեսեան. երթայք ՚ի խաղաղութիւն, և տր ած եղիցի ը ձեզ ։ Այս հրաժարեալ ՚ի նոցանէ՝ եմուտ յաղօթանոցն, և ասէ. մի ոք եկեսցէ առ իս մինչև ցառաւօտն. զի եկաց յաղօթս առ տր զգիշերն ամ. և իբրև եղև առաւօտ, աւանդեաց ըզհոգին ՚ի փառս այ. և մտին ՚ի ներքս և գտին զնա հանգուցեալ՝ զձեռս ՚ի վեր ունելով ՚ի փառաբանութիւն այ ։ Այս կատարեցին ՚ի

՚ի վերայ նորա զխորհրդածութեան պաշտօնին ըստ առաջնորդաց հրաժարելոց ՚ի փառս Աստուծոյ. և Թաղեցին ՚ի գերեզմանի նորին եպրաքսեայ ըստ հրամանի իւրոյ։ Այսպէս ամբարեցաւ երանելի մայրն Թէոդուղիա կամ Թէոդուլի (որ թարգմանի՝ Աստուծոյ աղախին), և հանգեաւ ՚ի Քրիստոս, և եդաւ ՚ի հանգստեանն նորին եպրաքսեայ։

Յետ այսորիկ ոչ ևս զոք հրամայեցաւ ՚ի նորին գերեզմանս դնել. և բազում բժշկութիւնք լինէին ՚ի նշխարաց նորին առ ախտաժետս. և լսելի առնէին դևքն, թէ եպրաքսիա հալածեաց զմեզ ՚ի կենդանութեան իւրում, և այժմ մահ և ճգնութիւն նորին նկուն առնէ զմեզ և յամօթ։ Ոի մեծ զփառաւորիչս իւր փառաւորէ ՚ի յերկրի, և յերկինս անճառ փառօք զարդարէ ՚ի Քրիստոս Յիսուս ՚ի Տէր մեր. ընդ որում հօր միանգամայն և սուրբ հոգւոյն վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Այս է վարք եպրաքսեայ, և հոգևոր մօրն, և պատուական ծնողացն, և յուղիայի ուսուցչին նորա, ասէ գրիչ պատմութեանս հնագոյն, Թերևս և ժամանակակից։ Սու արդարև չորեքեանն իսկ անուանեալ անձինք սրբասէրք և աստուածահաճոյք՝ ոչ որոշին ՚ի նմանութենէ սրբութեան եպրաքսեայ կուսին, և ՚ի տօնի նորա զրուց յիշատակին և նոքին. այլ ոչ ոք ՚ի նոցանէ եհաս ՚ի չափ փառաւորել կուսին եպրաքսեայ. որոյ ծնունդն եղև յամի տեառն իբր 380. այն է երկրորդ ամ թագաւորութեան մեծին

և յովհան գաւառակացին․ որպէս յայտ է 'ի հատուածոց՝ զոր բերէ․ և նոյն այն է, զոր գտեալ 'ի վատիկանեան գրատան 'ի մատեանն․ 866․ ապագրեցին բոլլանդեանք՝ համդերձ լատինական հին Թարգմանութեամբ, որ գտանի 'ի զանազան ձեռագիրս․ և նոյն է ապագրեալն կանխաւ 'ի հաւոստեայ 'ի կարգի հարանց վարուց, որպէս և 'ի վերջին տիպ սուրիոսի․ ուր յառաջինեան էր այլափոխեալ բազմօք ըստ ոճոյն ։ Արդ՝ 'ի սոսին առհասարակ անհարկեալ մեր՝ սակաւ բանից և բառից կարօտացաք 'ի պայծառութեանւ զմիտս և զընթերցողաց Ճառընտրին մերոյ․ և բազում մասամբ պահեցաք զշարագրութիւն, որ ըստ ինքեան էր պարզ համդերձ վայելչութեամբ, և բազմօք ընտիր գտեալ քան զայժմու յունական և լատին օրինակս․ որպէս յայտ է որոց բաղդատեն արժանութեամբ և անաչառութեամբ․ թող զքաղուածն նոյն պատմութեան 'ի յայսմաւուրս ամ ազգաց ։

(2) Թագաւորեալ կմ Թիւրական քաղաք անխտիր առն զՀնոյն և զնորոյն հռոմայ յետ կոստանդիանոսի․ վասն ըստ ինքեան անորոշ անոյ յունական ընթերցուածն․ զոր Ծ․ յընթացս նշանակէ լինել հռոմ․ և սուրիոսեան օրինակն լատին գնէ կոստանդինուպօլիս․ այսպէս գնի և 'ի Հ․ պարզապէս․ և յայն միտս են հասարակօրէն քննիչք Ը բոլլանդեանս ։ իսկ բառս սինկղիտոս՝ Թէպէտև Թարգմանի ծերակոյտ, այն է ըստ լտ․ սէնադուս․ այլ 'ի Ծ․ գնի նաև փոխկ բառիս սինկղիտիկոս, այն է սէնադօռ՝ այր 'ի ծերակուտէ․ որ և պատուաւոր կոչի 'ի հայումս ։ իսկ սինկղիտուհի կմ սինկղիտիկէ է կին առն սինկղիտիկոսի ։

(3) Ց․ բա․ չփոթէ զխօսնայլն եպիսկոպոսաց Ը միւս սինկղիտոսի՝ որ խնդրէր առնուլ զմայր նորա 'ի կին․ զնոյն վկայակ ստասնես և առ ոմանս 'ի յետնոց ։

(4) Որպէս 'ի Ծ․ նոյնպէս և յընտիր օրինակս լատ․ գնի Թիւ կուսանաց Ծլ․ այլ 'ի Ց․ բա․ Ճ․ ևեԹ․ որպէս և յայժմու յունարէն վարս՝ զայդ Ը ժամանակ․ յն․ և Հ․ գրէ ՃԳ ։ Այլ զարմանալին այն է, զի բոլլանդեանք (հենշենիոս կմ բափպրոք, որոց աշխատասիրութիւն է հատորն մարտի ) ասեն 'ի ծանօթութիւն․ * յունականն „ է ըն․ 103․ իսկ 'ի ժամագիրս և 'ի յայսմաւուրս յու- „ նաց՝ էգագօն քէ դէսսարէս, 104 ||․ և սակայն յայտ է, Թէ՝ և ըծ է 104, և ոչ 103 ։ ԵԹէ կարէաք, դրոշմ կմ ապագրողի սխալ ասէաք զայսպիսի չփոթութիւն, բայց տեսանեմք յընթացս նոյն վարուց առեալ եբերորդեալ

կմ կաղանդոն , այն է ըստ ոմանց գունդ կարքեդոնի ըստ կարթագինեայ յափրիկէ , և ըստ այլոց՝ քաղկեդոնի 'ի բիւթանիա . զի և ինքն իսկ կալլիստրատոս 'ի գաւառէ անտի էր [2] :

Այլ 'ի չուել լեգէոնին զօրաց ակումբիտացւոց 'ի Հռովմ ( որով ոմանք զնորն Հռովմ ընդտրեն իմանալ զկոստանդինուպօլիս , ) տարան անդր ակամայ և զգունդն՝ յորում էր կալլիստրատոս իբր մասն այնր խմբի , ըստ օրինի տիւրոնաց՝ ըստ դեռակիրթ զինուորաց . և մտին ամենեքին ընդ վերակացութեամբ մեծի իշխանի զօրաց պրեսենտինոսի կմ պերսենտինոսի Հռովմայեցւոյ :

Այլ ոչ ոք էր յայն դասս զինուորաց քրիստոնեայ՝ բաց 'ի կալլիստրատոսէ . զի սա էր զաւակ քրիստոնէից՝ սերեալ 'ի նախնի Հաւատացելոց անտի , որ 'ի հեթանոսաց կամ 'ի Հռովմայեցւոց . քանզի նախահաւն նորա ոկորոս կմ նէոկորոս գտաւ յեմ առ պիղատոսիւ դատաւորաւ . և ետես զքն փրկիչն մեր 'ի խաչին , զմեռանիլն նորա և զթաղիլն 'ի գերեզմանի , և զյարութիւն 'ի մեռելոց . և հաւանեալ ընդ գալիլեացիսն՝ հաւատաց և մկրտեցաւ յաւուր նորայ պենտեկոստէին . և եկեալ 'ի քաղաքն իւր՝ ուսուցանէր զորդիս իւր և զթոռունս յուսալ 'ի տր յս քս : Այլ նքա ուսանելով 'ի միմեանց՝ եղեն ուսումնապահք խորատու հաւուն իւրեանց՝ մինչև յերանելին կալլիստրատոս . որ 'ի զինուորական կարգի գեղեցիկ պահեաց զքնպաշտութի . քանզի էր բարեբարոյ , պառաքինի և լի հոգւով , և հմուտ հին

հէին և նոր կտակարանաց, և 'ի մէջ ծիկ ա-
րանց առաւել բանիբուն և գիտնաւոր, և
զգուշաւոր առանդապահ վարդապետութեանց՝ զոր
լուեալ էր 'ի նախնեաց իւրոց որպիսի և է
օրինակաւ. և ոչ դադարէր 'ի փառաւորելոյ
զԱծ և 'ի պաշտելոյ զնա ջերմեռանդն աղօ-
թիւք և պահօք զանխուլ 'ի հեթանոս զին-
ուորակցաց իւրոց:

Նաև 'ի միում գիշերի՝ յորժամ յարուցեալ կա-
լիստրատոս աղօթս մատուցանէր Այ, ոմանք
'ի զինուորակցաց իւրոց իմացան զայն. և
ապա հասու լեալ նմ ընթացից նր՝ սկսան
անգոսնել զնա իբրև զորդայ մտօք վր պաշ-
տելոյ զնազովրացին. և ասեն ցնա. Մի՞չ է
վայելուչ քեզ միայնոյ մանկաբարոյ լինել 'ի
մէջ մեր ամենեցուն. արդ հաւանեաց և եկ
'ի պատկերն արամազդայ, և առ լիբանան
(այսինքն կնդրուկ) և արկ, և ցայտեա 'ի վր
նր. և լեր ը մեզ սիրելի ընծոցն. ապա թէ
ոչ՝ մեզ մեզ մի՛ դներ, զի հարկ է մեզ պատ-
մել զօրավարին մերոյ զայդ ամ:

Նաև նորին կալիստրատոս ետ պատասխանի, և ասէ.
Եղբարք զի՞ ելից զձեզ սատանայ. ո՛չ ուսմեք
'ի ձէնջ ուսանեցի, և ո՛չ նեղեցի զոք 'ի ձէնջ.
'ի պատերազմի ը ձեզ եմ. յանուանադրի
համարուն թերևս նախադասին կարգեալ եմ
քան զձեզ. 'ի հանդիսի ո՛չ որոշիմ. 'ի գնդի
համարուն ը ձեզ անցանեմ. իսկ արդ զի՞նչ
ունիք չարախօսել վր իմ, ո՛չ գիտեմ: Բայց
զայս գիտեմ, զի յանձառ մարդասիրութէն
յնի փրկչին իմոյ և յուղղափառ պաշտամանէն

որո-

որոշեալ զիս ոչ կարէք՝ ոչ միայն դուք, այլ և ոչ բազումք իբրև զձեզ. զայս վկայեսցէ ինձ քս̄՝ որ վկայեաց առաջի պոնտացւոյ պի-ղատոսի, որում ականատես եղեալ է ոսկորս Հաւն իմ։

Երբև լուաւ զայս, յարուցեալ ը̄ առաւօտն պատմեցին Պրեսենտինոսի զօրավարին, եթէ մի ոմն ՚ի թուոյ զինուորաց՝ որ են ը̄ իշխանութե̄ քո, ապստամբ է յա̄ծոյն պաշտամանէ, և թագաւոր և ա̄ծ կոչէ զոմն՝ որ անուանեալ կոչի քս̄, և խոստովանի զնա խաչելեալ. այլև աղօթս և պահս զանձամբ առեալ է, և զի̄մ խոզենի ուռծիկ և զհաց կարօտելոց բաշխէ. և ինքն միանգամ յաւուր ուտէ՝ աշտուձ հաց ՚ի ջուր թանալով. բայց զի մի՛ զբազումս ապստամբեցուսցէ ՚ի վառեալ զինուորացս գնդէ, վ̄ն այնորիկ պատմեցաք առաջի քո պայծառ իշխանութեդ։ Իսկ Պրեսենտինոս ասէ. ո՞վ է նա, և կամ զի՞նչ անուն նորա. և նք̄ ասեն ՚ի բարբառ Հռովմայեցւոց (քանզի ոչ լսէր զօրավարն յունարէն). պօնտուս մի՛լէս, կմ̄ պօնտա միլիցիա. ո̄ բարի զինուոր, կմ̄ քաջ զօրականութի. զի այսպէս թարգմանի յունականն անուն նր̄ գալլէնսդրադոս։ Եւ Հրամայեաց զօրավարն ածել զնա առաջի իւր. և ասէ ցնա Հռովմայեցի լեզուաւ. քուէ՛ստ տի՛գունդ սա՛չիր դո՛ւր բռօբդէռ դէ. չելե՛ռիուս տի՛գ. որ թարգմանի. զի՞նչ ասեն ընկերք քո վ̄ն քո. տրամ դասմ։ Օ այս Հատուած այսպէս պահեալ յոյն վկայագրի ՚ի բարբառ լատինական՝

կան՝ վկայէ, թէ ազգօրն իսկ պատմութեանց
նախնեացն լեզուաւ գրեցաւ, և անտի յե-
ղաւ 'ի յոյն, և սփռեցաւ յայլ եկեղեցիս: (3)
Ընդ առ այս ետ պխնեի կալիստրատոս (որ
անխտիր խօսէր լատիներէն և յունարէն),
և ասէ. զի՞նչ և ունիցին վր իմ ասել ո՛ տր
իմ, ասասցեն. քանզի ես ոչինչ գիտեմ զանա
ձին խիղճ: Արեսենտինոս ասէ ցչարախօսն.
զի՞նչ գիտէք վր պօնի միլի՛զիս, կամ պօնէ
միլի՛ցիէ, տր կալիստրատոսի: Իւ՛ն նքք ասեն.
հրամայեսցէ քո առաւել պայծառ իշխանու
թիւդ դմա, զի զոհեսցէ մեծ ոյն արամազ-
դայ, և գտցես զչարաթիւր կամս դորա:
Յայնժամ ասէ զօրավարն. զոհեա՛ կալիս
տրատէ ոյն արամազդայ: Կալիստրատոս
ասէ. ես պատարագ որհնութեան մատուցա
նեմ մեծին այ, որ արար զերկինս և զերկիր
և զամ ինչ իմաստութբ իւրով. որ ստեղծ
զմարդն 'ի հողոյ, և ետ զյաւիտենական և
զանանց սահմանն. զի ո՛չ գիտեմ զձեռա
գործ ոծս, այլ՝ զնամ ոմն ուսայ. քանզի
գրեալ է, ամ կուռք հեթանոսաց դևք են.
այլ տր զերկինս արար. և՝ կուռք հեթանո
սաց ոսկի և արծաթ են, ձեռագործք են
որդւոց մարդկան. արդ՝ ես, ո՛ տր կոմս, գոր
ծոց ձեռաց մարդկան երկիր ո՛չ պագանեմ:
Բայց եթէ զինուորեալ եմ քեզ, և ընդ ձե-
ռամբ քո եմ 'ի պատերազմի և 'ի գումարտա
կի, և յամ սպասաւորութեան հնազանդեալ
եմ քեզ, միթէ և ոգւո՞յս իմոյ սպասաւորու
թե իշխանութի ունիս. քա՛ւ լիցի:

Արե-

Պրեսենտինոս ասէ ․ ասա ո՛վ կաղլիստրատէ ճարտարասանութե՟ն ոչինչ ե՟ն պէտք , այլ վ՟ն հաւանութե՟ն մեզ է բան ․ վ՟որ հաւանեալ զոհեա՛ , զի մի՛ չարաչար կորուսանել զքեզ հարկաւորեսցես զիս ․ բայց կարծեմ եթէ գիտես իսկ դու , զի յորժամ ըմբռնեմ զոք 'ի մարդկանէ , յառաջագոյն քան զտանջանս մռնչելով իմով հալեմ զնա ։ Կաղլիստրատոս ասէ ․ քո մռնչելդ և սպառնալդ ժամանակեայ է ․ իսկ լալումն և կրճումն ատամանց՝ յաւիտենական ․ զի եթէ ես ուրացայց զա՟րն իմ յա՟ ք՟ո առաջի մարդկան , փակեսցէ զիս արտաքոյ տանուտ՟րն ․ և անդ եղիցի լալումն
աչաց և կրճումն ատամանց ։

Յայնժամ հրամայեաց զօրավարն պրկել ըզնա , և հարկանել բրօք , մինչև փոխեցան վեց կի՟ութ այր ։ Եւ մինչդեռ հարկանէին , ասէ ս՟բն կաղլիստրատոս ․ երդուեա՛յ և հաստատեցի պահել զդաստատանս արդարութե՟ քո տ՟ր ․ նուաղեցաք յոյժ , այլ կեցո՛ զիս տ՟ր բանիւ քով ․ և մի՛ տացես կորուսչին և բազմագլուխ գազանին խնդալ 'ի վ՟ր իմ ․ այլ զօրացո՛ զիս ք՟ո , և լե՛ր ինձ լեզու՝ առ 'ի պատասխանել ինձ , և բժիշկ առ 'ի յողջացուցանել զվէրս իմ ․ զի բազում տանջանք ունին զմարմինս իմ յերեսաց չարչարանացս ։ Իսկ յորժամ ետես զօրավարն զարիւն ն՟ր , զի առուացեալ խաղայր 'ի վ՟ր երկրի , հրամայեաց դադարել 'ի հարկանելոյ զնա ․ և ասէ ցնա ․ զոհեա՛ կա՛ղլիստրատէ ծ՟ծոցն , զի ապրեսցիս յառաջիկայ տանջանացն ․ քանզի
երդ֊

երդնում 'ի ճառագայթաբերն արտեմիս և յա՟մ ա՟ծոցն ժողովս, եթէ ոչ հաւանեսցիս ինձ՝ մսակոտոր արարից զքեզ, և զմարմինդ քո շունք կերիցեն, և առիւծք լիզեսցեն զարիւն քո։ Կալիստրատոս ասէ. յուսամ 'ի թագաւորն երկնից ա՟ծ, զի հանցէ զիս 'ի բերանոյ առիւծուց, և 'ի ձեռաց շանց զմիամօրութ՟ի իմ. զի մի՛ ես միայն օրհնեցից զնա յայսմ գնդի քո. զի ակնունիմ յառաջադէմ լինելով բազմութ՟ե ընկերաց երթալ առ նա, և յաղթութ՟ե նշանակ ունելով 'ի վ՟ր բանսարկու՟ին՝ որ յարուցանէ զքեզ 'ի վ՟ր իմ։

Յայնժամ հրամայեաց զօրավարն խեցի ծեծել և արկանել 'ի ներքոյ նորա. զի քանցեսցեն զուսս նր՟ և զվէրս խեցեաւն։ Եւ դարձեալ հրամայեաց պրկել զո՟րն յորսայս, և ձագար դնել 'ի բերան նորա, և ջուր սափրով արկանել ը՟ն բերանն. մինչև ուռնուլ ո՟վ զտիկ։ Իսկ քաջ նահատակն ք՟ի արիապէս ընկալեաւ զտանջանսն. և յարուցեալ ասէ. ա՟ծ աբրահամու, սահակայ և յակոբայ՝ զօրացո՛ զիս առ 'ի հնարագիտու՟ին բանսարկու՟ին, և փրկեա՛ զիս 'ի նմանէ. զի մի՛ կորուսցէ զիս, և մի՛ գտցէ տեղի 'ի վ՟ր իմ. այլ ինձ լինիցի քև շահել զբազումս։

Զօրավարն ասէ. զոհեա՛ կալիստրատէ ա՟ծոցն. ապա թէ ոչ՝ բառնամ զքեզ 'ի կենացս. զի մի՛ կորիցեն ոմանք 'ի գնդէս յայսմանէ վ՟ս քո։ Կալիստրատոս ասէ. անարժա՛ն և անամօթ՝ փութա՛ մարտնչել վ՟ս հօտին սատանայի հօր քո, չգիտելով եթէ այս

Հօտ քմին իմոյ է. բայց յուսամ 'ի Թագաւորն երկնից 'ի տէրն իմ յս քս, զի Թէպէտև կարի յոյժ մրցիս ընդ բանսարկուին, սակայն ես գերեցից զնա և յափշտակեցից 'ի Թուոյ զօրաց քոց, և լուսաւորեցից զնս, և հաստատեցից զեկեղեցի քո 'ի մէջ քաղաքիս այսորիկ։ Իսկ զօրավարն ասէ. ո՛յ անոք և երիցս Թշուառական՝ ոչ գիտես, զի հրամանս իմ սաստիկ է առաջի աչաց քոց. և ահաւասիկ նոյնժամայն հրամայէ իշխանութեանս իմ դնել զքեզ 'ի քուրձ, և կնքել զբերանն նր, և տանել ընկենուլ զքեզ 'ի մէջ ծովուն. դու զիա՞րդ կարես այնուհետև հաստատել զեկեղեցի քո, և կմ երբ որսասցես զոք 'ի գնդէ զօրականացս իմոց։

Եւ անդէն հրամայեաց բերել քուրձ կտաւի, և արկանել զնա 'ի ներքս. և կնքեալ կապարով զբերան քրձին՝ ետ 'ի ձեռս նաւավարաց. (զի մերձ 'ի ծովափն էր յայնժամ բանակն 'ի սահմանս հռովմայ և կմ բիւզանդիոյ.) և տարեալ զնա նաւավարացն 'ի մէջ ծովուն իբրև ասպարիզօք քառասուն, ընկեցին 'ի ծովն. և զօրավարն կայր յեզր ծովուն մինչև 'ի գալ նաւավարացն այսրէն (4)։ Իսկ քուրձն՝ զոր ընկեցին 'ի ծով անդր, իջեալ կուռէր 'ի փապարս վիմաց. և մինչդեռ 'ի ներքս կայր կալիստրատոս (ըստ օրինակին յովնանու 'ի փոր կիտին), աղօթս մատուցանէր ասելով. Ած աներևոյթ և անքննին, անհաս և անպատում, որոյ աթոռ փառաց անմերձենալի է. յորմէ դողայ և սարսէ ամ

նայ, փրկեա՛ զմեզ յունայնութենէ Ցիս այսօ-
րինակ. զի և մեք քրիստոնեայք եմք. զի որ-
դւոց մեծ է ա՛ծն քրիստոնէից, որ եհան
զքեզ յայնպիսի անդնդոց. կարօղ է նա և
'ի պատերազմի օգնել ում և կամի. զի նա
միայն է ա՛ծ ։ Այն կալխատրատոս ասաց. Տր
իմ յս՛քս ապրեցուցէ զձեզ, և յայսմ հետէ
անեօշխք զարքայութիւնն երկնից ։ Այս աղօ-
թեաց վս՛ նց այսպէս. Տր որ բնակեալդ ես
յաւիտեանն 'ի լոյս անմատոյց, նայեա՛ց 'ի վս՛
հօտիս այսորիկ՝ որ հաւատաց 'ի քեզ, և պա-
հեա՛ զսոսա. զի ողորմած ես միշտ և յաւի-
տեանս ։

Իսկ պրեսեննտինոս ասէր. երդուեալ յարե-
գակն 'ի լուսափայլ թագաւորն, մեծաւ կա-
խարդութեամբ լի է սա, զի զծոցն եհերձ, և
զնոսա պատրեաց ։ Այս ասէ ցնա. ես զքո
կախարդութիւ յանդիմանեցից. մնա՛ ինձ,
և գիտասցես թէ ո՛վ է պրեսեննտինոս, և
ո՛վ է ա՛ծն՝ զոր դուն պաշտես ։ Այս նստեալ
յատենի՝ հրամայեաց բերել ցուպս. և ետ
կարգաւ հարկանել զքառասուներինն արանս ։
Իսկ նոքա ասեն. Տր յս զայս վս՛ քո չարչա-
րիմք. օգնեա՛ մեզ ա՛ծ փրկիչ, և տո՛ւր մեզ
համբերութի. պահեա՛ և զհոգիս մեր կա-
լխատրատոս, զի կատարելապս ուսուցէ ըզ-
մեզ. զի իբրև զանբա՛ն անասուն եմք 'ի գի-
տութենէ կամաց քոց. հանեա՛ց ՃԷ փրկութի
մեր. զի օրհնեալ է անուն քո յաւիտեանս ։
Յետ այսորիկ հրամայեաց անարժան զօրա-
վարն դնել զնս 'ի բանտի, զի զմտաւ խնչ-

ածցէ վրէժ նոցա · քանզի յոյժ տրտմեալ էր, զի կորոյս յիսուն այր 'ի թուոյ զօրականացն ։ Այս եղեւ մահն նոցա 'ի բանտն, սկսաւ սրբոյն կալիստրատոս աղօթիւք հաստատել զքա-ռասունն և ինն ընկերս իւր · որոց անուանք են այսոքիկ · Ակակիոս, աղպիոս, անթի-մոս, անիկտոս, արադսէոս · բասիլիսկոս, բեմարքոս, (կամ բեքրաքմոս), բիբիանոս, բիտալիոս · գեննադէոս, գերոնտէս, գէոր-գէոս, գիգանդիոս, գրիգորիոս · դամիա-նոս, դեդալիոս, դոմետիանոս, դոմնա-սիոս, դոմնինոս, դորոթէոս, դուլկիտիոս · եղսիդիոս, եւագր, եւագրիոս, եւարես-տոս, եւսեբիոս, եւտողիոս · Թարասիմե-դէս, թերասիոս, թէոդորոս · լամբիոս, լե-մինոս, լորիկոս, լուսիմաքոս · կանդիտիա-նոս, կոստանդինոս · հեղիադէս, հեղիուդո-րոս, հիւսիքոս · մադրինոս, մարկիանոս, մեմնոս, միլինոս · նիկատիոս, նիկողայոս · ողիմպէոս, ողոմպրիոս, ուարիպէոս · քան-թէոս ։ (6)

Սոքա ամենեքեան անկան առաջի սրբոյն կա-լիստրատոսի, և խնդրէին զգիտութիւն քնի ։ Իսկ նորա տարածեալ զձեռս իւր յերկինս՝ ա-ղօթէր · Տր՝ որ զամ ինչ արարեր, որ ամենե-կալ հզօրդ ես, որ յանթիւ զօրաց հրեշ-տակաց օրհնիս · Տր հարցն մերոց հայեաց 'ի դոյն իսկ 'ի հօտս յայս · եկ և հասիր 'ի մէջ մեր, կատարեա՛ տր զանսուտ խոստմուն-քդ, թէ ուր երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նոցա ։ Ի՛ւր

մէջ

մեզ Թագաւոր յաւիտենից, ցրուեա՛ տ՟ր ըզ-
բոց բանսարկուին․ անցո՛ տ՟ր զհնոց հրոյն՝
առ ՚ի չքարձրանալ քան զքառասուն և զինն
կանգուն ( և այրել զոք ՚ի Թուոյ նոր հա-
ւատացելոցս )․ որ՟պ զի տեսցեն ա՟մ հեթա-
նոսք զփառս քո, և փառաւորեսցեն զքեզ
Թագաւոր յաւիտենից։ Տո՛ւր ինձ տ՟ր իմաս-
տութիւն և գիտութիւն, որ՟պ զի հաստատեցից
՚ի հաւատս ճշմարտութեան զծառայքս քո․ զի
օրհնեալ է անուն քո յաւիտեանս։
Այս յասել ամենեցուն միաբան զամէնն, յա-
րուցեալ մի ոմն ՚ի նոցանէ՝ որում անուն էր
Դաղմատիոս, ասէ ցն՟րն․ աղաչեմ զքեզ տ՟ր
իմ կայսրատոս, քրիստոնէացո՛ զմեզ, և
ուսո՛ մեզ զբանն ա՟յ, զի մի՛ երբէք երկմտեա-
ցուք․ ցո՛յց մեզ զլոյսն մեր, և զառ յապա
օգնականութիւն․ պատմեա՛ մեզ զա՟մ իմաս-
տութիւն ա՟յ․ զի և մեք շնորհօքն ք՟ի փառա-
ւորիչք եղիցուք ը՟ն քեզ․ քանզի ոչ երբէք
հարքն մեր ուսուցին մեզ զճանապարհս ար-
դարութեան։ Այս նա ասէ ցն՟ս․ որդեա՛կք իմ
և եղբա՛րք սիրելիք, որ քաղցեալ և ծարա-
ւիդ էք արդարութեան, լցուսցէ զձեզ տ՟ր և
արբեցուսցէ ամենաբարի և ամենաբաւական
շնորհօք հոգւոյն ս՟բ։ Բայց սկզբն Թէպէտ
և ես տրուպ եմ, և տգէտ առ անհասս խո-
րութիւն խորհրդոցն ա՟յ, այլ իւրաքանչիւր ոք
՚ի ձէնջ՝ զինչ և կամիցիք՝ հարցէք․ և ես պատա-
մեցից՝ զոր տայ տ՟ր ինձ խօսել։
Յայնժամ Թեմարքոս անկեալ առաջի նորա՝
եհարց և ասէ․ աղաչեմ զքեզ տ՟ր, ասա՛ ինձ,

զիա՞րդ է իմանալ զԱծ ճշմարիտ, և կա՞մ որո՞վ օրինակաւ ծնաւ քս, կամ վա՞ էր պատճառի. և ընդէ՞ր խաչեցին զնա հրեայքն և սպանին: Տեսաց սրբն կալիստրատոս զերան իւր, և սկսաւ ձօխ բանիւք քարոզել և ուսուցանել զԱծային վճապութիւն հին և նոր կտակարանաց՝ յարարչութենէ Ադի մինչև 'ի միւսանգամ գալուստն քսի. ոչ գրեալ կայ յընդարձակ գործս նր. և 'ի վր եած՝ ասելով. Արդ ով եղբարք, ողորմելիք էին երբեմն մարդիկ, զի 'ի մոլորութե էին պատրեալք. բայց այժմ երանելիք, զի 'ի ձեռն խաչին քսի վերացան 'ի փառս անճառս. միայն թէ կացցեն հաստատեն 'ի հաւատարիմ ծառայութեն քսի. իսկ որ ուրացցի զնա առաջի մարդկան, մատնեալ լինի 'ի ձեռս դժոխոց: Բայց դուք մի կարծէք, եթէ սակաւք են հաւատացեալք 'ի քս, և բազումք են՝ որ երկիր պագանեն ձեռագործաց. զի յուսամ 'ի տր յս քս, եթէ այնչափ մեծասցի հաւատս մեր, մինչև առաւելապէս ծաւալեսցի 'ի վր ամ երկրի: Եւ արդ դուք յայս հաւատս հաստատեսջիք սիրելիք իմ, զոր ուսուցի ձեզ մտերմութե սրտի իբրև հարազատ եղբարց:

Իսկ իբրև կատարեաց սրբն կալիստրատոս զգլուխ բանիցն, յարուցեալ հեղիոդորոս հարցանէր զնա և ասէր. աղաչեմ զքեզ տր իմ կալիստրատէ, յորժամ վախճանեսցի մարդ, զիա՞րդ լինի հոգի նր, և ո՞ւր երթայ, կամ զի՞նչ գործէ. կամ ո՞ւր բնակէ, 'ի տանջա՞նս, եթէ 'ի հանգստեան: Եւ սկսաւ նա

դարձեալ մանրապատում բանիւք ճառել զդժուարին իրացն՝ կէս մի 'ի գրոց, և կէս մի յաւանդութէ հարց իւրոց՝ է զի ուղիղ և է զի վրիպակ հանգամանօք. զորմէ լիցի բան 'ի կարգի ծանօթութեց (1). և յայս կնքեաց զբանն. Այլ արդ մեք եղբարք հետևեսցուք առաքինութե, զի փառաւորեսցուք ը̃ ք̃ի աստ և 'ի հանդերձելումն :

Ապա եհարց եւարեստոս վ̃ն աւուր վախճանի մարդոյն, եթէ ը̃ս սահմանեալ օրաթուոյն լինիցի յա̃յ, եթէ ը̃ս հանդիպման. Նոյնպէս և լուսիմաքոս հարցանէր վ̃ն արարածոցն ա̃յ. և օ՞քն կալլիստրատոս արար ա̃մի պինի ըստ պատշաճի. և յընթացս բանիցն յաւել և յոր-դոր առ ա̃ծպաշտութի և առ փոյթ աղօթիցս, որով լինի փրկիլ յա̃մ փորձութէ. բերելով և յանձնէ օրինակ, թէ ո՛րպէս 'ի բանակին կմ̃ 'ի չուն պատճառէր չարն՝ եթէ չէ՛ աստ տեղի և ժամ աղօթից. և ես զայն պինդ ու-նէի ասէ, թէ ո՛չ միայն որ յեկեղեցիս տաղ-մոսեն և աղօթեն՝ զայն միայն համարի ա̃ծ, այլև զքայլ ոտից և զհետս գարշապարաց՝ որք մտանեն ամբողջ հաւատով 'ի տաճար ա̃յ, համարի ա̃ծ. Նոյնպէս և որ ոչ գտանէ զտեղի աղօթից, ո՛ւր և կացցէ յաղօթս՝ ընդու-նելի ա̃ծ, և լսէ հեծութե սրտին ոչինչ ը̃հաստ 'ի բարբառոյ. Իսկ ուրեմն սիրելիք՝ ոչինչ շահի թշնամին՝ խորհրդովք բազմապիսիս որս կանելով ը̃ աղօթս, եթէ սիրտք մեր առ ա̃ծ իցեն: Այս [illegible] ո՞վ ոք ոչ գիտէ 'ի մարդկանէ, եթէ մարդ 'ի մեղս [illegible]

տրատոսեանց ։ Բայց և ինքն վկայաբանն էր մի 'ի նոր հաւատացելոց ։

Արդ յետ աւուրց ինչ նստեալ զօրավարն պրեսինտինոս յաթոռ դատաստանի՝ հրամայեաց հանել զկապեալսն և բերել առաջի իւր . և ածին զնա 'ի մեծ հրապարակն՝ յորում կանգնեալ կային բազում պատկերք կռոց . անդր ժողովեցան և գլխաւորք զօրուն և ամ թիւ զօրականացն ։ Խօսել սկսաւ զօրավարն և ասէ . զիա՞րդ է Կալլիստրատէ , խրատեցե՞ր զքեզ և զհրապուրեալսդ 'ի քէն զզօրականս թագաւորին՝ զոհել ածոցն , և հրաժարել 'ի տանջանաց ։ Սրբն Կալլիստրատոս ասէ . ես միտ իմ զայս հաստատեալ ունիմ պինդ , զի ոչինչ հաւանեցուսցէ զիս հեռանալ 'ի քէն յուսոյն իմմէ . այլ մի դոցա , ինքեանք իսկ հասակակիցք են , ցդատա՛ հալոց ։ Զօրավարն ասէ . դուք զի՞նչ ասէք , որ պատրեալ հաւանեցայք շաղակրատիդ այդմիկ ։ Միանի ետուն և ասեն . եթէ կամեսցիս ունել զմեզ 'ի գնդի համարու , ոչ ընդդիմացուք . բայց մի պաշտամանս մերոյ յայտնի լիցի , մեք հաւատամք 'ի թագաւորն երկնի և երկրի յածն ամի , և 'ի ծնունդն նր յս քս , և 'ի սբ հոգին . զի նա է ած երեքանձնական , երրորդութիւն և մի ածութիւն , և մի զօրութիւն անարատին այնորիկ և իմաստնոյ , որ էն և է և կայ յաւիտեան . ոպ ուսոյց մեզ վպն մեր Կալլիստրատոս ։

Իսկ նա հրամայեաց տանջել զնա դալար գաւազանօք . և ապա հրամայն եւս կապել զոտս

և

և զձեռս նց, և քարշել զամենեսեան 'ի լըճ-
եզրն. և ասէ ցնս. զոհեցէք տծոցն. ապա-
թէ ոչ՝ հեղձնուք 'ի ջուրսդ: Նոքա ասեն.
մեք հաւատամք 'ի ճշմարիտն տծ. դու զինչ
կամիս՝ արա: Իսկ իբրև հանդերձեցան ան-
կանիլ 'ի մեծ լիճն, որոյ անուն էր ովկիա-
նոս (8), սբքն կալլիստրատոս եկաց յաղօթս՝
ասելով. Տր յաւիտենական՝ որ անհաստ ես
և ամենակալ, որ հաստատեցեր զերկինս
իշխանութբ աթոռոյ քո անշարժ յաւիտեանս,
և զերկիր 'ի պատուանդան ոտից քոց, նայեա
'ի հօտս յայս, և լեր ընդ մեզ. և ապրեցո զզ-
մեզ յապականութէս. և շնորհեա սբց զջուրս
զայս 'ի մկրտութբ վերստին ծննդեանն. ար-
ժանի արա լուանալ զլուացումն յաւիտենա-
կան և սբ. 'ի բաց ընկենուլ զհին մարդոյն
զընդունայնութի, և բաժին առնուլ ընդ աշխա-
տելոցն 'ի խաչ քո. պարգևեա մեզ տր հա-
սանել յօթևանս քո 'ի ձեռն լուացմանս այ-
սորիկ՝ գործակցութբ հոգւոյդ քո սբյ. զի
փառաւորեալ է անուն հօր և որդւոյ և հոգ-
ւոյն սբյ յաւիտեանս յաւիտենից, ամէն:
Իսկ իբրև ասացին միաբան զամէնն, ընկե-
ցին զնս կապեալս 'ի ջրակայն: Եւ նոյնժա-
մայն լուծան կապանք նցն, և վէմք ծա-
նունք ընկլուզան 'ի խորս. և ինքեանք գնա-
լով 'ի վր ջուրցն՝ ելին 'ի ցամաքն 'ի շնորհաց
հոգւոյն սբյ: Իբրև ելին 'ի ջրոյն, երևէին
պայծառացեալք և լուսազգեստք, և սբն
կալլիստրատոս որպս պսակ 'ի գլուխ. և եղե
ձայն յերկնից՝ որ ասէր. քաջալերեցարուք

ակ

սիրելի՛ք իմ, զի ես Է ձեզ եմ. ուրախ լե-
րուք, զի աՀա պատրաստեցի ձեզ տեղի յար-
քայութե իմում. ցնծացէ՛ք, զի զանուանս ձեր
գրեցի 'ի գիրս իմում 'ի դպրութե կենաց :
Այս ել որոտումն անՀնարին, և շարժումն
մեծ. մինչև անկան պատկերքն կուոցն և փըշ-
րեցան : Իսկ իբրև տեսաք (ասէ մկայաբանն)
զլոյսն, որ ծագեաց 'ի վՐ ՈՐցն, և լուաք զե-
րանաւէտ ձայնն, և զշարժումնն, և զխոր-
տակումն կուոցն, Հաւատացաք 'ի զօրակա-
նացն արք Հարիւր երեսուն և Հինգ : (9)
Յայնժամ երկիւղիւ մեծաւ ըմբռնեալ անօ-
րէնն պրեսիդոնն՝ Հրամայեաց տանել
զմկայսն 'ի բանտ. ուր դարձեալ ուսուցանէր
զնս սԲն կալանաւորս, և ասէր. արք եղ-
բարք աՀաւասիկ կոչեաց զմեզ ՏԷր առ ինքն.
և քանզի ես 'ի մանկութէ իմմէ ընկալայ
զմկրտութիւն, և զձեզ այժմ արժանի արար
ՏԷր աւազանի վերստին ծննդեան. արդ ա-
րի՛ք կացցո՛ւք յաղօթս : Այս Համբարձեալ ըզ-
ձեռս իւր՝ սկսաւ ասել. ՏԷր ՏԷր որպէս զի
ոքանչելի է անուն քո յաւիտեան. որ յառաջ
քան զամ անսաՀման բանիւ քո Հաստատե-
ցեր զամ. որ անապական և աներևոյթ և
անվթար գանձուց ՏԷրդ ես. պաՀեա՛ զՀօտս
զայս աշակերտեցուցանելով 'ի բերանոյ առիւ-
ծուն, և Հասո՛ զսոսա 'ի յաւիտենական փըր-
կութե. և արժանի՛ արա զմեզ միաբան վախ-
ճանել խոստովանութեամբ քո. զերծո՛ զմեզ 'ի
մեղսասէր կենցաղոյս անբիծս և անարատս.
մո՛յծ զմեզ Է նեղ դուռն 'ի տաճար թագա-
ւոր,

ւորականս. զի օրհնեսցուք սրբասաց անհամա-գիտ ձայնիւք զամենօրհնեալ անունն Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն :

Իսկ ամպարիշտ զօրավարն պրեսենտինոս խորհեցաւ ընդ վերանի փողարի (10), զի թէ դոքա ապրին՝ մոլորեցուցանեն և զայլ բազմութիւն. առաքեաց 'ի բանտն, և կոտորեաց զնոս գլխերի չարաչար յօշոտմամբ. որք էին յիսուն թուով քաջ զօրականքն քնի, որքն կալխատրատոս՝ և քառասուն և հինն ընկերքն իւր :

Այս կատարեցան սրբքն յամսեանն սեպտեմբերի (զոր հայերէն հոռի կոչէ թարգմանն), որ օր քսան և եօթն էր : Այս 'ի վր բերէ վը, կայսրագիրն իբրև ականատես, * Իսկ մեք զինուորքս, որք հաւատացաք 'ի տեսլեան զքանչելեացն, և մկրտեցաք յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, եկաք 'ի գլխերն դաշտ, և թաղաք զնշխարս սրբոցն, և եդաք 'ի վայելուչ տեղւոջ : Այս զմեզ արժանի արար տէր հաստատել եկեղեցի 'ի հռովմ յանուն սրբոցն. և շինեցաք անուամբ սրբոյն կալխատրատոսի քաւարան մեղուցելոց, և ժողովեալ միաբանութեամբ հրեշտակաց և մարդկան, 'ի փառաբանութիւն և յերկրպագութիւն և 'ի գովութիւն ամենասուրբ երրորդութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ || : (11)

յաւնարէն . քանզի տեսեալ՝ եթէ, ուրեք ուրեք յանդրադիտաց և կմ յանհաւատարիմ գրչաց ինչ ինչ այլայլութիւնք սպրդեալ երեւէին , 'ի խնդիր եղև հնագոյն և անվրէպ օրինակաց . միանգամայն և բաղդատեալ զյունական ընթերցուածն ընդ եբրայական սկզբնագրի՝ 'ի լոյս եհան զնոր օրինակ իւրով գրչութեամբ և ուղղագրութեամբ . որ և ծաւալեցաւ յեկեղեցիս անտիոքացւոց, յետոյ և բիւզանդացւոց՝ ղուկիանեան կոչմամբ :

'Ի հնչել համբաւոյ իմաստութեան ղուկիանոսի պատուական երիցու՝ բազումք գային աշակերտիլ նմա . և ոչ սակաւք յաշակերտաց նորա ընտրելոց եղեն 'ի պատիւ քահանայութեան և եպսութեան . և ոմն զուշակեաց նորա երանելին ղուկիանոս , մարտիրոսական պսակաց եղեն արժանի : Եղեն և ոմանք յանարժան աշակերտելոց՝ որք յարեցան յետոյ 'ի մոլորութիւն արիոսի . թող զի և ինքն իսկ ժանտն արիոս , և գլխաւորն 'ի համախոհս նորա եւսեբիոս նիկոմիդացի մտադիւր ձայնէին զանձինս աշակերտ ղուկիանոսի , և զձայնակիցս իւրեանց ղուկիանոսակիցս կարդային . զի խարխուլ աղանդոյ իւրեանց նեցուկ ունիցին զանունն առն այն : Եւ առիթ այսպիսի յանդուգն չարութեան իւրեանց առին զայն , զի երանելին ղուկիանոս եղև անհնարին թշնամի և ջաղխիչ մոլորութեան սաբէլեանց . մինչ զի 'ի խօսելն ընդդէմ նոցա սաստկապէս՝ թուէր հակամիտել 'ի ծայրայեղ մոլորութիւն անդր . զոր յարոյց արիոս . և իբր այնպիսի բամբասեալ

Նիկոմիդացւոց ։ Ողջէր և ը՟ քաղաքն առա-
քելաբար , և քարոզէր զերկնից արքայութի՟ն ։
և մտէր 'ի բանտս՝ սպաս տանէր խոստովա-
նողաց , և քաջալերէր զնո՟ ։ Եւ ով՟ ասի , 'ի
շրջիլ իւրում 'ի քաղաքին , զորս կամէր տե-
սանել՝ տեսանէին և նք՟ զնա . և յորս ոչ կա-
մէր հայել , և ոչ նք՟ 'ի նա հայէին , և այնպէս
անցանէր ը՟ մէջ նց՟ աներկիւղ ։

Այլ քանզի չէր պարտ ճրագի ծածկիլ ընդ
գրուանաւ , այդ եղև զրո՟յն յականջս թա-
գաւորին Մաքսիմիանոսի կմ՟ դիոկղետիանո-
սի , որ էր յայնժամ 'ի Նիկոմիդիա . և առա-
քեաց զինուորս ձերբակալ առնել զնա , և
բերել առաջի իւր ։ Բայց զի լսելով լուեալ
էր՝ եթէ 'ի տեսութե՟ն ևեթ երեսաց նո՟րա
բազումք հաւատային 'ի քս՟ , երկեաւ դէմ
յանդիման հարցանել զնա և խօսել ը՟ նմա .
վա՟յ ետ կախել առաջի իւր վարագոյր , զի
մի տեսցէ զերեսս նր՟ , մինչև փորձեսցէ զնա
բանիւք ողոքանաց և սպառնալեաց ։

Արդ խօսել սկսաւ բանաւորն , և ասէ . դու
ես Ղուկիանոսն՝ զորմէ լուայ , զի ասեն՝ թէ
մ՟տպ ես աղանդոյն գալիլեացւոց . մինչև
զա՟մ կողմանս անտիոքացւոց հեռացուցա-
նել յերկրպագութե՟ն դիցն , և աստ ևս 'ի
նոյն բերիլ յանդգնութի՟ն . և արդ չի՟ք քեզ
հնար ազատութե՟ , բայց զի 'ի պաշտօն դիցն
եկեսցես , և զոհեսցես նց՟ ։ Պ՟նի ետ սբ՟
քահանայն և ասէ . արդ որ լուարն վս՟
իմ՝ ճշմարիտ է , քանզի քրիստոնեայ եմ .
և զոր ուսայ 'ի մանկութե՟՝ ուսուցի . ուրա-

նաւ ոչ կարեմ · քանզի զմի՛տս խոստովանիմ քարոզէի սրբարիչ ա՟ծի · զնոյն և այսօր և մինչև 'ի վախճան ուսուցանեմ · զոր ինչ ուսանելոց եմ՝ արա՛ վաղվաղակի · զի եմ քրիստոնեայ եմ, և դիւ՛րաց ոչ զոհեմ · այլ անարիւն և կենդանի պատարագ մատուցանեմ ա՟յ, որ արար զիս :

Ասէ ցնա բանաւորն · շարագրեալս և անմիտ և անհաւանող դուլկիանէ, քա՛ջ ծանիր և 'ի միտ առ, թէ վ՟ս ո՛րոյ գործոյ կոչեցար յատեանս : Աշրանեալն ասէ · ես գիտեմ վ՟ս որո՛յ եկի · զի ո՛չ եմ չարին խորհրդով պաշարեալ և անկեալ 'ի մտաց իբրև զձեզ · այլ եկի ես՝ զի մխլայեցից ճշմարտութեն քո՛ ա՟ծութեն, և մեռայց վ՟ս անուա՛ն նո՟ր ո՟րոյ · ո՛ւր նա վ՟ս մեր մեռաւ կամաւորութ՟բ : Թագաւորն ասէ · հաւանեցա՛ց և զոհեա՛ · քեզի ոչ՛ինչ օգնէ. քեզ յամառութիւն : Ասէ սրբն · և մ՟ր այնորիկ ինքնակամ յօժարութ՟բ սպառազինեալ եկի 'ի համբերութեան մարտին, զի անպարտելի մնայ եղեց ճշմարտութե, և իմով համբերութ՟բ յաղթեցից քեզ և հօրն քում սատանայի :

Ասէ թագաւորն · երդուեալ յածածս իմ, եթէ ոչ անկել երկրպագանիցես զիցն անմահից և ոչ զոհեսցես, ունիս ճանաչել՝ թէ ո՛վ ես դու, և կամ ո՛վ են ինքնակալքն՝ որ զա՟ծսն մեծարեն և պատուեն : Դուկիանոս ասէ · ես յուսացեալ եմ յաւիտենական կենացն ժառանգորդ լինել՝ պաշտելով զա՟ծ ճշմարիտ, որ արար զիս · իսկ ա՟ծք՝ որ զերկինս և զերկիր

ոչ

զյամառութիւն, թէպէտև ոչ զոհեա այլոց ա̃ծոցն, զոնեա մատի՛ր և երկի՛ր պագ և զոհեա՛ Ասկղեպեայ, զի բժշկեսցէ զհարուածս վիրաց քոց. ապա թէ ոչ՝ զհօգիդ անջատեմ 'ի մարմնոյդ: Ղուկիանոս ասէ. մարմնոյս ունիս իշխանութի. ահա զոր ինչ կամիս առնել՝ արա. իսկ հոգւոյս իմոյ ոչ ոք ունի իշխանութի, բայց միայն ա̃ծ՝ որ միաւորեաց զհոգի և ըզմարմին. և ոչ ոք կարէ մեկնել զնա 'ի սիրոյ նր. ո՛չ նեղութի, ո՛չ անձկութի, ո՛չ սով, ո՛չ մերկութի, ո՛չ հալածանք և կմ երկիւղ տանջանաց, և կմ այլ ինչ արարած:

Բարկացեալ թագաւորն՝ այնուհետև կրկին եւ հրամայեաց տարածել զնա 'ի վր գետնոյ, և դալար ջալոտիւք ձաղկել՝ փոխանակ անարգելոյ զա̃ծսն: Եւ յետ բազում հարուածոցն ասէ ցդահիճսն. մատուցէք զդա 'ի փայտն, և կապեցէք զոտս և զձեռս դորա 'ի վերայ փայտին, և քերեցէք զկողս դորա. և աղ և բորակ և բարկ քացախ արկէք 'ի վր, զի մորմոքեսցին վէրքն. և լապտերս ջահից լուցեալ՝ մատուցէք 'ի կողս դորա. մինչև զղջասցի, և հնազանդեալ զոհեսցէ ա̃ծոցն. և զինուորքն վաղվաղակի կատարեցին զհրամանսն: Իսկ սբ. վկայն աղօթէր այսպէս ասելով. ք̃ս փրկիչ փրկեա՛ զիս 'ի ձեռաց անօրինացս և ամպարշտացս՝ որք յարուցեալ են 'ի վր իմ, և խնդրեն զանձն իմ կորուսանել. և կակղացո զտանջանս չարչարանաց՝ զոր ածեն 'ի վր իմ: Զայս ասէր, և քաջալերեալ 'ի տ̃ր՝ յոյժինչ գրէր զտանջանսն:

Ընդ

Ընդ որ առաւել ևս բորբոքեալ բռնաւորին չարութեամբ՝ հրամայեաց դահճացն կապար հալել . և մինչդեռ 'ի յեռանդան հրոյն կայր , ետ արկանել 'ի վերայ մարմնոյ սրբոյն : Իսկ նա յանբերելի ցաւս տանջանացն համբերութեամբ գոհանայր զԱստուծոյ , և ասէր . Տէր Աստուած իմ Յիսուս Քրիստոս , որ 'ի բազում վշտաց և 'ի նեղութեանց փրկեցեր զարդարսն և զսիրելիսն քո , շնորհեա զհատուցումն ամպարշտաց՝ նեղչաց մերոց , և բարձրացո զեղջիւր եկեղեցւոյ քում սրբոյ . և բարձ յերկրէ զզօրս պղծութեան . և ողորմեա այնոցիկ՝ որք երկիրպագանեն քեզ հոգւով և ճշմարտութեամբ :

Իսկ անօրէն թագաւորն հիացեալ կայր 'ի վերայ համբերութեան վկային Քրիստոսի , և ասէր . ով երիցս թշուառական և եղկելիդ . Ղուկիանէ վասն որո՞յ յուսոյ այդպէս յամառեալ պնդեցար , և յօժարեալ ես մեռանել . միթէ վասն սպանելոյն 'ի հրէից և խաչելոյն 'ի Պիղատոսէ . զորմէ ասէք դուք՝ թէ կենդանի է . արդ անսա ինձ յայսմհետէ՝ զգաստացեալ 'ի ձեռն տանջանացդ . և եկ ընդ մեզ 'ի տաճար աստուածոցն , և անդ զարժանաւոր զոհս մատուսցես նոցա . և արարից զքեզ քահանայապետ բարձրագունիցն :

Ապա պատասխանի ետ սուրբն , և ասէ ցթագաւորն . յաղագս անաստուածութեանդ՝ որ 'ի քեզ է , չառնուս 'ի միտ ով թագաւոր . թէ շնորհք են ինձ չարչարանքս՝ զոր ածես 'ի վերայ իմ . զի զոր բազում աղօթիւք խնդրէի յԱստուծոյ , և կարօտ էի այսմ բարութեան , այսօր ընկալայ տանջանօքս՝ որ

'ի

'ի քէն . քանզի աղջամղջին մէգ խաւարին 'ի մարմնոյս թանձրութե ծածկեալ էր զաչս հոգւոյ իմոյ , և այսու չարչարանօքս 'ի բաց փարատեցաւ . զիշխանական միտս իմ՝ որ 'ի վաղուց հետէ կայր պաշարեալ փորձութե , յաղթական յայսմհետէ պատրաստեցեր . և փախստական արարեր՝ զորս 'ի վր իմ յառնէին չարիք մեղաց . և անպարտելի ամրացուցեր զպարիսպ իմ . զօրէնս մարմնոյ՝ որք անմահութե յիս քաղաքավարէին , խափանեցեր , և զհոգիս բարուք քաղաքավարեցեր , յորում զանձն անմահութե ծածկեալ է . և ցուցեր ինձ ճանապարհ համառօտ և անաշխատ . քանզի գիտեմ , եթէ տաճար այ եմ , և հոգի նորա բնակեալ է յիս : Այսպիսի ինչ բաղում խօսեցաւ երանելին խորհմաստ վկայութե , յայտ արարեալ զհոգևորական շահս չարչարանաց մարմնոյ :

Յայնժամ ասէ թագաւորն . ա՛յ չարագլուխ այր և օտարացեալ 'ի բարերարուէ ածոցն , և ո՛չ տանջանքդ խրատեցին զքեզ՝ զօգուտն քո իմանալ , և զերծանիլ յառաջակայ մնացեալ տանջանացն՝ որովք հանդերձեալ եմ չարչարել զքեզ : Սրբն ասէ . իմ քն լոյս է , և ածքն քո խաւար . և 'ի լուսոյն աւետարանիլն՝ այնուհետև խաւար փախչի : Թգւրն ասէ . կարծեմ 'ի մահ եդիր զանձն քո՝ զայդ-այդպ̃ բարբառելով . արդ զոր ինչ խնդրեսդ՝ արարից քեզ վաղվաղակի , և սաստիկ տանջանօք յուղարկեցից զքեզ 'ի մահ : Պուկիանոս ասէ . ո՛չ 'ի տանջանաց քոց երկնչիմ ,

և

գիտեմ՝ զի՞նչ գործեմ ․ և զհոգիս իմ ընկա՛լ
խաղաղութեամբ Տէ՛ր Աստուած քո ․ զի դու ես փրկիչ,
և քեզ վայելէ փառք՝ իշխանութիւն և պատիւ
այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից
ամէն ։

Յետ այսորիկ հրաման ետ Թագաւորն ար-
կանել անուր երկաթի 'ի պարանոց նորա, և
տանել 'ի բանտ 'ի խաւարչտին տեղւոջ, և
դնել զոտս նորա 'ի կոճեղս ։ Եւ ընդ առա-
ւօտն հրամայեաց ածել զնա առաջի իւր ․
իսկ դահճացն երթեալ 'ի բանտն՝ իբրև մօտ
եղեն 'ի դուռն բանտին, տեսին երիտասարդս
'ի հանդերձս լուսափայլս, որք ձայնակից
լեալ սրբոյն՝ սաղմոսէին ․ և յետոյ ողջագու-
րել զսուրբն՝ վերացան յերկինս ։ Ընդ այս զա-
հի հարան զինուորքն ․ և պատուով հանել
զերանելին 'ի բանտէն՝ տարան յատեան ար-
քայի ․ և շշնջելով հասուցին յունկն նորա
զսքանչելիսն՝ զոր տեսին ։

Եւ գազանացեալ Թագաւորն ասէ ցնա ․ ո՛վ չա-
րագլուխ այր և անամօթ և մոլորեցուցիչ
բազմաց, աւադիկ եկեալ հասեալ է քեզ
այժմ օր կորստեան և մահու, և դարձեալ օր կե-
նաց՝ եթէ կամիս ․ արդ ընտրեա՛ զկեանս, և
մի՛ զմահ չարագործաց ․ հաւանեա՛ և զոհեա՛
դիցն ։ Ասէ սուրբն ․ բազում անգամ ասացի,
և այժմ ասեմ ․ քրիստոնեայ եմ, և դիւաց
ոչ զոհեմ ․ և յայսմ խոստովանութենէ բնաւին
փոխել զիս ոչ կարես ․ զի ո՛չ հուր և ո՛չ սուր
և ո՛չ տանջանք ազգի ազգի կարող են մեկնել
զիս 'ի սիրոյն Քրիստոսի ։

Յայն

Յայնժամ տեսեալ թշ̃րին զանպարտելի հաւատս վկային քն̃ի՝ այնուհետև գրգռեր ՚ի նամակի վճիռ մահու օրինակ զայս. Զղուկիանոս՝ վրդ̃պ և գլխաւոր աղանդոյն գալիլեացւոց, որ ասաց զինքն քրիստոնեայ գոլ, զանարգիչ անմահ դիցն մերոց, և զարհամարհօղ ինքնակալաց թշ̃րաց, հաճոյ թուեցաւ մեզ ամենեցուն արտաքսահմանել ՚ի քաղաքն արեգ (6). զի անդ բանտարգել լինիցի զամ̃ ժմկս կենաց իւրոց՝ առանց մարմնական դարմանի և հարկաւոր պիտոյից մարմնոյ, մինչև վախճանեսցի ՚ի կենաց։

Որդ յափշտակեալ այնուհետև երանելին յանխ̃ծ դահճաց, և յուղի անկեալ երթայր բազում վշտօք. զի ՚ի ճանապարհին յոյժ նեղեին զն̃ա չար զինուորքն զանազան նեղութ̃ք. և հասեալ ՚ի սահմանեալ քաղաքն՝ աւանդեցին դատաւորի տեղւոյն հանդերձ արքունի նամակաւ։ Իսկ դատաւորն հայեցեալ ը̃դ պատկառելի դէմս ն̃րն, և լուեալ զամ̃ անցս նր̃, խօսել սկսաւ ը̃դ նմա յատենի. և ասէ. զիա՞րդ դու այր բանիբուն և մտացի զհետ գնաս աղանդոյն, զորոյ չես բաւական տալ զպատճառն. ապա եթէ կայցէ ինչ փաստ իրաւացի, և մեք լուիցուք. խօսեա՛ց համարձակ։

Յայնժամ ը̃ստ գրելոյ հռուփինոսի՝ զայսօրինակ ատենախօս եղև ասեն ն̃մն ղուկիանոս. Չէ՛ ինչ թաքուն, թէ զո՞ր պաշտեմք քրիստոնեայքս. այն է մի ա̃ծ՝ քն̃իւ մեզ պատմեալ, և հոգւովն ն̃րա հեղեալ ՚ի սիրտս մեր։

մեր ։ Մ՚է ոպ դուքդ կարծէք, եթէ մոլորու-
թիւն մարդկեղէն կարծեաց պարանիմք, և
ո՛չ հայրենաւանդ սովորութիւն պատրիմք ոպ
զայլան. ուսուցիչ մեր է ած յմյ. քանզի և
անմարթ իսկ էր մեծվայելչութեան բարձրելոյն
՚ի զգայութիւն գալ մարդկայլոյն մտաց, թէ
չէր զօրութիւն հոգւոյն իւրոյ ազդեալ, կամ
թարգմանութիւն բանին իւրոյ և իմաստութեան
նշանակեալ ։ Աստուածն լինիմ, զի և մեք
առ հարբք մերովք մոլորեցաք երբեմն, և
զգործս ձեռաց մերոց յածս համարեցաք.
ուր ոչ գոյր ՚ի նմա առաւելութիւն այլ քան զչափ
ճարտարութեան առնելեացն զկուռս ։ Այլ
ամենակալն ած, որ ոչն է ձեռագործ մար-
դոյ, այլ ձեռակերտող, գթացեալ ՚ի վերայ
մոլորութեան մարդկան՝ առաքեաց յԾս զի-
մաստութիւն իւր մարմնազգեցիկ տնօրէնութք,
ուսուցանել մեզ՝ զի խնդրեսցուք զած արա-
րիչ երկնի և երկրի ո՛չ ՚ի ձեռագործս, այլ
՚ի յաւիտենականս և յաներևոյթս. որ և
սահմանս և օրէնս կենաց մեզ աւանդեաց՝
լինել ժուժկալ, աղքատ, հեզ, համբերող,
խաղաղասէր և սրբասէր ։ Այլ և զմմն՝ զոր
միանգամ այժմ ընդ մեզ անցուցանէք, մեզ
նախապատմեաց, եթէ տանիցեն զձեզ առա-
ջի թգւորաց և դատաւորաց, և ոպ սպանդ
սպանցեն ։

Եւ մնկ որ էրն ինքն անմահ ոպ բան և իմաս-
տութի ածյ, մարմնով ՚ի մահ մատնեաց զանձն
իւր՝ յօրինակ մեզ համբերութեան. բայց քան-
զի չէր հնար ըմբռնել նմա ՚ի մահուանէ,

Ա. Բ. յա-

յարեաւ յաւուր երրորդի ։ Այլ ո՛չ եթէ մահապարտ ոք էր, ո͞պ ստութ͞բ գրեալ կայ առ ձեզ իբրև ՚ի պատմութեանց պիղատոսի, այլ՝ անմեղ, անարատ և Տր. ո՛չ յայլ պէտս յանձն առեալ զմահ, բայց զի մահու յաղթեսցէ յարութ͞բ իւրով ։ Այլ զոր ասեմս, ո՛չ եթէ ՚ի ծածուկ իմն խաւարի գործեցան, և ոչ վկայից կարօտանան. մեծագոյն գոգցես Ձի մասն ձայնակից է ճշմարտութեես, և քաղաքք ողջոյն. վկայ և տեղին՝ համօրէն Եէմ քաղաքաւ, և վէմք լերինն գողգոթայ պատառեալք ը͞ն ծանրութ͞բ խաչի. և այրն գերեզմանի, ուստի յարեաւ՝ որ թաղեցաւն, յետ խորտակելոյ զդրունս դժոխոց, և ապա յերկինս վերացաւ փառօք ։

Այլ եթէ չեն բաւական ՚ի յերկրէ վկայութիւնք, առէք վկայ հաւատարիմ յերկնից. զարեգակն ասեմ, որ ոչն համդուրժեալ ը͞ն գործն ամպարշտութ͞ն երկրի՝ զլոյս իւր քօղարկեաց ՚ի միջօրէի. խնդիր արարէք ՚ի տարեգիրս ձեր, և գտանիցէք առ պիղատոսի՛ ՚ի ժամ չարչարանաց ք͞ի, զի փախստեամբ արեգական ընդհատեցաւ տիւն խաւարաւ ։ Արդ եթէ երկրի և երկնի, և արեան նոցա՝ յորոց տանջանօք հարցափորձէք զճշմարտութիւն, ոչ հաւատայք, զիա՞րդ իմոցս բանից և յիշատակութեանցս հաւատայցէք ։

Օ այս ո͞մ լուեալ դատաւորին՝ զարմացաւ և զահի հարաւ, զի մի՛ ոք ՚ի լսողաց ՚ի բանս նորա լինիցի. վ͞մյ իսկ և իսկ մատնէ զնա ՚ի ձեռս բանտապանաց ը͞ն հրամանի թագաւորէն ։

և տալ նմ վէրս անդրուլութե ։ Ո ի Թէպէտ
և արտաքին ուսմանց էր քաջ հմտուն ,
բայց քաջ և ս գիտէր՝ զի յայնպիսի մրցմունս
չեն պէտք պերճախօսութե , այլ հաւատոց
և հոգւոյ վառելոյ սիրովն այ ։ Ո այս օրի-
նակ վախճանեցաւ ը բարբառոյ ձայնի և ըզ-
կեանս , և գնաց առ անձկալին իւր քս ։(7)
Ա՛րդ ըստ ոմանց ՚ի վերջնում նուագի սաի
զաւուրս չորեքտասան իսպառ անսուաղ մնա-
ցեալ ՚ի բանտի , և սովամահ վախճանեցաւ. և
ըստ այլոց՝ մինչդեռ յօգիս ապաստան կայր՝
գլխատեցաւ ՚ի բանտի անդ. մանաւանդ թէ
՚ի չորս մասունս կտրատեցաւ , և այնպէս ՚ի
ծով արկեալ ։ Ա՛յլ յետ աւուրց եօթանց կմ
չորեքտասանից գտաւ մարմին նրյն ՚ի ծով-
ափն բիւթանիոյ՝ բերեալ ՚ի վր ուսոց դըլ-
փին ձկան . զոր և յայտնեաց նմն ՚ի տեսլեան
միում յաշակերտաց իւրոց , որում անուն էր
գղերիկոս կմ գլիկերիոս . և նր առեալ ընդ
իւր զայլս ՚ի քրիստոնէից՝ եկն ՚ի նշանակեալ
տեղին . ուստի բարձեալ զայն պատուով՝ բե-
րին և ամփոփեցին ՚ի դրեպանա քաղաքի
բիւթանացւոց ։
Յետ քանի մի ամաց անցելոց՝ ծաւալեր դըր-
խոյն հեղինէ ՚ի դառնալ իւրում յերուսղմէ՝ ան-
ցեալ ընդ դրեպանա , որ աւի լինել քաղաք
ծննդեան նորա և կոստանդիանոսի , պա-
տուեաց զտապան նրյն ղուկիանոսի յորմէ լի-
նէին բժշկութիք . և բարեպաշտ կայսրն
կոստանդիանոս ետ շինել մեծավայելուչ ե-
կեղեցի ՚ի վր տապանի նր . և զքաղաքն մե-

ծացուցեալ՝ և ամրացուցեալ պարսպօք՝ կոչեաց յանուն մօր իւրոյ Հեղինուպօլիս, և գրեաց ընդ ազատ քաղաքս. (զոր ոմանք երևին նոյնացուցանել ընդ Հեղիուպօլսոյ, այսինքն արեգ. քաղաքի, ուր եղև կատարումն սրբոյն). և անդ կատարիւր տօն սրբոյն 'ի Հոկտեմբերի 15. ընդ որոյ դնեն և Ճառընտիրք և յայսմաւուրք Հայոց և յունաց. իսկ անտիոքացիք քաղաքակիցք նորա տօնէին զնա 'ի յունվարի 7. որպէս երևի 'ի բանից ոսկեբերանին, որ զներբողեան ղուկիանոսի սկսանի այսպէս. * Նորեկ զինուորն մեր ջրով մկրտեցաւ, իսկ այսօր ծառայն արեամբ մկրտի. յերեկեան աւուր դրունք երկնից բացան, յայսմ աւուր դրունք դժոխոց եղեն կոխան ||. և ընդ այսմ հռովմայեցիք տօնեն զնա 'ի յունվարի. 7: Ոսկեբերան խօսեցաւ զՃառ իւր 'ի քահանայութեան իւրում յամի Տեառն իբր 387. իսկ կատարումն անյաղթ վկային սրբոյն ղուկիանոսի քահանայի կարծի լինել յամի Տեառն իբր 305. զոր այլք դնեն յամի 312. յորում ետես կոստանդիանոս զխաչն լուսափայլ յօդս:

Ըստ աւանդելոյ գաղղիական վկայաբանութեց, զկնի դարուց բազմաց մեծն կարոլոս կայսր ետ բերել զմարմին սրբոյն ղուկիանոսի յարևելից յարևմուտս 'ի քաղաքն արելատայ գաղղիացւոց. և շինեալ եկեղեցի 'ի պատիւ սրբոյն՝ անդ հանգոյց զնա փառօք մեծաւ 'ի ձեռն տուրպինոսի արքեպիսկոպոսին Հռեմայ. և ապա եղև սովորութիւն հանդիսապէս տօնախմբել յարելատ զյիշատակ սրբոյն ղուկիանոսի:

Ն. Ս.-

եղանակի գալստեան սորին Ղուկիանոսի յանտիոքայ 'ի Նիկոմիդիա . ասի թէ մատնութեամբ սաբելեանն բադարա-տայ կալեալ իցեն զնա զօրականք մաքսիմիանոսի, և ածեալ նախ 'ի կապադովկիա . ուր դարձուցեալ իցէ սորին զզօրականս իւր քառասուն յուրացութենէ յառաջին հաւատոյ . և ապա եկեալ 'ի Նիկոմիդիա . զի յընթացս բանից դրչին խառնեալ են միջանկեալ պատմութիւնք այ-լոց վկայից :

(5) Թէպէտև ոսկեբերան 'ի վերջին նուագ բանդար-կութեան սորին ընդարձակէ զներբողեան իւր, և սակայն տեսանեմք յայտնապէս՝ զի յընթացից սասի վկայաբա-նութեան մերոյ առնու զայն ձև բանից . * Զի որ ասէն՝ ,, թէ քրիստոնեայ եմ, միանգամայն զհայրենիս և զազգ ,, և զհրահանգ և զամ ինչ յայտնի կացոյց : Եւ թէ որ-,, պէս, ես ասացից : Քրիստոնեայն ոչ ունի քաղաք ,, յերկրի, այլ զվերինն եճմ . զի վերինն եճմ ազատ ,, է, որ է մայր մեր : Քրիստոնեայն ոչ ունի զերկրա-,, ւոր հրահանգ, այլ 'ի վերինն բերի քաղաքավարութի . ,, զի մեր ասէ քաղաքավարութի յերկինս է : Քրիստո-,, նեայն ազգակիցս ունի զՍրբս ամ, և քաղաքակիցս . զի ,, քաղաքակիցք եմք սրբոց ասէ, և ընտանիք այ || :

(6) Արեգ քաղաք յիշեալ 'ի Ծ . է Թարգմանութեն ան-ուանս հեղինապօլիս . որով անուանմբ անուանի էր 'ի Յունաց քաղաք քրմացն եգիպտացւոց Ը մէջ արաբիոյ և Նեղոս գետոյ՝ շինեալ հրամանաւ փարաւոնի յորդւոցն Իէլի . բայց կային և այլ համանուն քաղաքք յայլ տե-ղիս . յորոց մին առի լինել 'ի սահմանս բիւթանիոյ . մինչ զի մարթ է կասկածել՝ թէ գուցէ տարբերութբ տառից կոչեցեալ իցէ յետոյ հեղինուպօլիս, որ և եր-բեմն գրեալսն ասացեալ . ուր եղաւ տապան սորին Ղուկիանոսի . որ 'ի Հ = Ց ուղիղ գրի եղէուպօլիս . և 'ի Հ . վրիպակաւ եկղէուպօլիս, կմ եկեղուպօլիս, փոխ գրելոյ հեղինուպօլիս : Պատճառ կասկածելոյ մերոյ է այն, զի որք յիշեն զհեղինուպօլիս զտեղի թաղման սորին, ոչ յիշեն զտեղի աքսորանացն զհեղինուպօլիս կմ զարեգ քաղաք . որով կամ նոյնացուցանեն զերկոսեան, և կմ թէ մերձ համարին արդեօք միմեանց զերկոսեանն . զի 'ի միջէն արկեալ մարմին սորին 'ի ծով՝ 'ի միւսն եկեալ իցէ 'ի ձեռն գլբին ձկան . զոր թէպէտև բազումք գրեն, այլ լաւութն է 'ի մերս Ծ . ուր չգիտեմ զիարդ կրկնուբ իմն ( Թերևս յաւելմամբ 'իյեանց Ը ոՃոյ ոսկեբերա-նի ) բովանդակի նախադրեալ հանդէս չարչարանաց

,, նաւորութի քանկեցուք. զի թէ ժամ 'ի վերայ եկեսցէ՝
,, զայնպիսի առ 'ի մէնջ արութէ պահանջօղ, նախամար-
,, տեալք 'ի փորձութիս յայսոսիկ՝ պայծառք երեւեսցուք
,, յասպարիզի. առաջի իշխանաց և թագաւորաց համարձա-
,, կեցաւ նոա, զայդ և մեք արասցուք այժմ. թէպէտև
,, 'ի ժողովս հերձուածողաց ( կամ հեթանոսաց ) փարթա-
,, մաց և երևելեաց բարձակեց գտանիցիմք, համարձա-
,, կութբ զհաւատոյ խոստովան լիցուք, և ծաղրեսցուք
,, զնոցին մոլորութբ. և եթէ ձեռնարկեսցեն լեզուն զիւ-
,, րեանցն մեծացուցանել, և զմերս ընդ վայր հարկանել,
,, մի լռեսցուք, և մի հեզութբ տարցուք. այլ հոլանել
,, զնոցուն անամօթութին՝ զամ ինչ զորխառնեկից իմաս-
,, տութբ բազմաւ և համարձակութբ գովաբանեսցուք. և
,, զնորոգինակ թագաւոր զթագն 'ի գլուխ, նոյնպէս և
,, մեք զխոստովանութին մեր ուրեք զհաւատոյ բարձեալ
,, բերիցեմք. զի ոչ այնչափ զնա պատւէ, որպէս զմեզ
,, հաւատքն և խոստովանութին նր գեղազարդել բնաւորե-
,, ցաւ ։ Ես ոչ բանիւք միայն, այլև արդեամբք զսոյն
,, արասցուք. և վարս արժանի խոստովանութն յանդի-
,, յուցցուք. զի մի յամօթ արասցուք զմեծապատութես գոր-
,, ծոցն վատթարութբք. այլ յանդ զմերն մեր փառաւոր
,, առնելով՝ արժանի լիցուք աստանօր և անդանօր պատ-
,, ուոյն. որում լիցի ամենեցուն մեզ հասանել շնորհօք
,, և մարդասիրութբ տն մերոյ յսի քսի. որով և ընդ
,, որում հօր փառք, զօրութին և պատիւ հանդերձ սբ
,, և կենդանարար հոգւով, այժմ և միշտ, և յաւիտեանս
,, յաւիտենից. ամէն ||։

# ՑԱՆԿ
## ՎԱՐՈՒՑ ՍՐԲՈՑ
որ 'ի հատորս. Զ.

Երես

# ՎԱԽՃԱՆ

Հատորիս ։

